ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՀԶ.

# ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

## ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՏԱՐՍՈՆԻ

ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ
ՀԱՆԴԵՐՁ ԱԶԳԱԲԱՆՈՒԹԵԱՄԲ ԴԱՀ-
ԼԱՒՈՐՆԵՐԱՑ ԵՒ ԼԱՄԲՐՈՆԻ ՀԵԹՄԵԱՆՑ

Ներսէս Լամբրոնացւոյ ծննդեան 800երորդ
տարեդարձի առթիւ.

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1956

# NERSES VON LAMBRON

## ERZBISCHOF VON TARSUS

LEBEN UND WIRKEN NEBST EINER
GENEALOGIE DER PAHLAWUNIER
UND HETHUMIER VON LAMBRON

VON

P. NERSES AKINIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1956

# ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

## ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՏԱՐՍՈՆԻ

**ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ ՀԱՆԴԵՐՁ ԱԶԳԱԲԱՆՈՒԹԵԱՄԲ ՊԱՀԼԱՒՈՒՆԵԱՑ ԵՒ ԼԱՄԲՐՈՆԻ ՀԵԹՄԵԱՆՑ**

Ներսէս Լամբրոնացւոյ ծննդեան 800երորդ տարեդարձի առթիւ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

**ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ**



**ՎԻԵՆՆԱ**

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ**

**1956**

ԱՐՀԻԱՊԱՏԻՒ ՏԵԱՌՆ

# ՊԵՏՐՈՍԻ ՔԷՏԻՃԵԱՆ

ՏԻՏՂՈՍԱՒՈՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ԿՈՂՈՆԻԱՅ ՀԱՅՈՑ
ԽՈՐՀՐԴԱԿԱՆԻ Ս. ԱԹՈՌՈՅ
ԽՈՐԻՆ ՅԱՐԳԱՆՕՔ

ԸՆԾԱՅ ԵՒ ՆՈՒԷՐ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Մեծին Ներսէսի, Տարօնի սրբակեաց եւ տաղանդաւոր արքեպիսկոպոսի ծննդեան 800երորդ տարեդարձը պահանջեց ինձմէ այս աշխատութիւնը:

Լայն էր ծրագիրս եւ կարճ ինծի տրամադրեալ ժամանակը: Հարթ կը համարէի առջեւս ճանապարհը, բայց բախեցայ առապարներու:

Ծանօթ էին Ներսէս Լամբրոնացւոյ ե՛ւ տոհմագրութիւնն, ե՛ւ կեանքն ե՛ւ գրական վաստակները, բայց կը կարօտէին անոնք քննութեան բովէն անցնիլ, զտուիլ եւ նորագիւտ տեղեկութիւններով բարեզարդուիլ:

Ջանացի բստ կարելւոյն սկզբնական աղբիւրներէ, ժամանակակից յիշատակարաններէ եւ արժանահաւատ վկայութիւններէ շտեմարանել ինծ ատաղձներ հիւսելու Սուրբին կենսագրութիւնը, ներկայացնելու գրական վաստակները եւ կազմելու ազգաբանութիւնը սկսած Պահլաւունիներէ:

Յաւակնութիւնը չունիմ պարծելու, թէ կատարեալ գործ մը հրապարակ կը դնեմ: Բայց հաւատացած եմ, որ այս աշխատութիւնս հիմը պիտի ըլլայ կատարելագոյնի մը:

Տակաւին չեն հրատարակուած Սուրբին բոլոր գործերը. իսկ ձեռագիրները դիւրա-

մատչելի չեն, ի մերձուստ զննահատելու համար մէն մի գրուածի բովանդակութիւնն եւ նկարագիրը: Անոնք կը կարօտին մենագրութիւններու:

Այս աշխատութիւնս առաջին անգամ լոյս տեսաւ «Հանդէս Ամսօրեայ» ուսումնաթերթին մէջ, 1954, էջ 1—256: Առաջիկայ հատորս պէտք է նկատել երկրորդ սրբագրուած եւ ընդլայնած տպագրութիւն:

Ներս առնուած է հրատարակութեանս մէջ «Սկեւռայի վանքը», որ «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ կը կրէր Հ. Հ. Ոսկեանի ստորագրութիւնը: Հ. Ոսկեան իր ընդարձակ *գրութիւնը տուաւ նոյն Ուսումնաթերթին* մէջ, 1955, էջ 17—42, 205—236: Խաչատուր Սկեւռացւոյ Ողբը, զոր հրատարակած էր Հ. Ե. Փօղոսեան, Հանդէս Ամսօրեայ 1954, էջ 251—256, պատշաճ համարեցայ զետեղել նաեւ հատորիս մէջ:

Վիեննա, 20 ապրիլ 1956:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ՄԱՍՆ Ա. ԿԵԱՆՔԸ

Էջ



## ՄԱՍՆ Բ. ԳՐԱԿԱՆ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ

Էջ

Էջ

## ՄԱՍՆ Ա. ԵՒ Բ.

# ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ

---

# ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ

### ՄՈՒՏՔ

«Սորայ գերակատար առաքինութիւնն եւ առատաբուխ իմաստութիւնն արժանի է արդեօք, զի մեծահռչակեսցի մշտնջենաւոր գովասանութեամբ մինչեւ ի ծագս աշխարհի»։

ԿՂԵՄԷՍ ԳԱԼԱՆՈՍ

Հայ մշակոյթի պատմութեան մէջ ականաւոր դէմք մըն է Ներսէս Լամբրոնացի, աննման մը իրեն նմաններու մէջ. իր *ծագումով*, որ իշխանական տունէ կ'իջնար, ազգական պահլաւունի Կաթողիկոսներու եւ Ռուբինեան իշխանազուններու, իր *աստիճանով*, որ Տարսոնի եւ Լամբրոնի թեմերուն արքեպիսկոպոսն էր. իր քանքարաշատ *հանճարովը*, որ բազմաբեղուն էր եւ ստեղծագործ, վաղահաս մտքով, արդէն 23 տարեկան հասակին լուրջ աշխատանքի լծուած եւ իր կարճօրեայ կեանքին մէջ *գրական հարուստ եւ ծանրակշիռ վաստակներով* պայծառացած. *յոյն եւ լատին գրականութենէ մեծաթիւ թարգմանութիւններով* արդիւնաւոր հանդիսացած. իր *հռետորական ատենաբանութիւններովը*, որոնք մինչեւ մեր օրերը

պահած են իրենց կորովը եւ տոհմիկէ եւ օտարաշխարհիկէ գնահատուած ծանրագին: Իր բազմահմտութիւնը իմաստասիրական, աստուածաբանական, սուրբգրենական եւ այլ մարզերու մէջ վկայուեցաւ օտարներէ անմրցելի: Իր բարենորոգումները եկեղեցւոյ եղծեալ, խաթարեալ կարգերը ամենապատիկ բարեզարդեցին: Իր կենցաղագէտ եւ խոհեմ քաղաքավարութեամբ ձեռնտու եղաւ հայ իշխանական դարպասին եւ իբրեւ դեսպան ուղարկուեցաւ կայսերական արքունիքներ:

Դարը, որ ծնունդ տուած էր այս մեծ մտքին, ընդունակ չէր եղած ճանչնալու անոր Հանճարը: Մինչ Արեւելք եւ Արեւմուտք կը զուարթանային անոր համբաւով. իր Քաղաքին ընդունելի չէր երեւցած Մարգարէն:

Երբ հրապարակը կ'ազմկէր, գործաւէր մեղուն իր փեթակը առանձնացած՝ ի լռութեան մեղր կը գործէր. կը շահագործէր քանքարը, որ շնորհուած էր իրեն: «Զտաղանդս, զոր ունիմ առ իս — զանգատով կը գրէր Լեւոն Բ.ին — ծրարեալ կայ եւ թաղուցեալ»:

Իր մահէն ետքը, «Մանուկին» ստեղծագործութիւնները, որոնք կենդանութեան ստորագնահատուած էին, հաճոյքով ընդգըրկեց եկող սերունդը, բարձր գնահատեց անոնց արժէքը, հոգ տարաւ բազմացնել ա-

նոնց օրինակները, երկասիրութիւնները հոգեկիր, հոգեշունչ տիեզերական Վարդապետի :

Իր մտերիմ աշակերտները նախահոգ եղան կենսագրութիւններով եւ ներբողեաններով անմահացնել անոր յիշատակը :

Բայց չեղաւ եօթը դարերու մէջ մէկը, որ մանր քննութեամբ կազմէր Մեծ Վարդապետին կենսագրութիւնն եւ գրական գործունէութեան պատկերը : Փորձ մը այսպիսի ձեռնարկութեան պիտի ներկայացնէ երկասիրութիւնս :

ԱՂԲԻՒՐՆԵՐ

1. Սամուէլ Սկեւռացւոյ Յիշատակարանը: *Սամուէլ Ծերունի, որ Սկեւռայի վանական էր, օրինակեց Ներսէս Լամբրոնացւոյ յանձնարարութեամբ անոր Սաղմոսաց Մեկնութիւնը սկզբնագրէն. արտագրութիւնը աւարտած է 1190ին: Որպէս զի ծանօթացնէ ժամանակակից եւ ապագայ սերունդներու Մեկնութեան հեղինակը, խորհած է տալ անոր համառօտ կենսագրութիւնը Յիշատակարանին կից, որ մեզի պահուած է խորագրով. «Պատմութիւն վարուց Ներսիսի եպիսկոպոսի Երգոցն Սաղմոսին քննողի» եւ սկզբնաւորութեամբս. «Ընդ նուազել թագաւորութեան եւ իշխանութեան Հայոց...»: Կը գտնուի ան Սաղմոսաց Մեկնութեան ձեռագիրներու վերջը, նաեւ անջատ անկէ: Հրատարակուած է. Արարատ*, 1878, *էջ* 89—100: *Անկէ՝ Սամուէլ Անեցի, Ժամանակագրութիւն. Վաղարշապատ* 1893, *էջ* 224—243: *Հայապատում, Վենետիկ* 1901, *Մասն Բ.*, *էջ* 413—4 8: *Աւելի խնամով՝ Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.*, 541—550:

2. Ներբողեան եւ յիշատակ *սուրբ եւ երիցս երանեալ տիեզերալոյս հօրն մերոյ սրբոյն Ներսէսի ամենիմաստ վարդապետին եւ արհիեպիսկոպոսին Տարսոն քաղաքի:*

*Սկ. «Սուրբ եւ երջանիկ հայրն մեր Ներսէս էր ազնուական ծնողաց զաւակ...»:*

*Ձեռագիրք. Վիեննա, Թ.* 657, 101*ա* (1768): *Վատիկան, Թ.* 41, 189*բ* (*ԺԸ.*): *Զմմառ, Թ.* 300, 2*ա* (*ԺԸ.*):

*Հրատարակուած՝ Հայապատում, Բ., էջ* 419—424:

*Գրութիւնս պահուած է ուշ ժամանակի ձեռագիրներու մէջ. բայց գրուած է ընդմէջ* 1198—1204 *տարիներու անձէ մը, որ Լամբրոնացւոյ կեանքին ի մօտոյ ծանօթ եղած է: Հաւանօրէն Խաչատուր աշակերտն:*

3. Գրիգոր Սկեւռացւոյ Ներբողեան ի սուրբն Ներսէս Լամբրոնացի: *Սկ. «Բազում զգուշութեան եւ ուէպ արթնութեան պէտք են...»: Գրիգոր Ներբողեանս յօրինած է* 1204*ին, Ներսէս Լամբրոնացւոյ քեռորդւոյն Ներսէս քահանայի խնդրանքով (Էջմիածին, Թ.* 990, *Թղ.* 745*ա*): *Ան գիտէ թէ «ի մտերմայ եւ ջերմագունից նախ քան զմեզ առ այս ձեռնարկեալ» (էջ* 7*). որով կ՚ակնարկէ Սամուէլ Սկեւռացին եւ Անանունը:*

*Ձեռագիրք. Էջմիածին, Թ.* 990, *Թղ.* 745*ա*: 1526, 878*ա*—904 (1294): 2682, 22*ա* (*ԺԹ.*): 2262, 25*բ*—35*բ* (*ԺԳ. իբրեւ Նախերգանք*): *Վատիկան, Բորգ.* 84, 381*ա* (1325. Tisserant, *Ցուց.* 181): *Երուսաղէմ, Թ.* 146, *էջ* 582—623 (1551. *Ցուց. Բ.* 10):

Վիեննա, 166, 235ա (1250. վերջը պակասաւոր, տպ. 86, 16—90. Ցուց. 477):

Հրատարակուած՝ Սոփերք Հայկականք, ԺԵ. (1854), 1—90: Յառաջբերութիւնները ուղղուած են համեմատութեամբ Վիեննայի Թ. 166ի հետ:

4. Պատմութիւն եւ յիշատակ սուրբ եւ լուսափայլ վարդապետին եւ երջանիկ արքեպիսկոպոսին Ներսէսի Լամբրոնացւոյ: Սկ. «Սքանչելի Ներսէս եպիսկոպոսն Տարսոն քաղաքի, էր յաւուրս Լեւոնի Հայոց արքայի..»:

Հեղինակն է հաւանօրէն Կիրակոս Արեւելցի, որուն Յայսմաւուրքի մէջ կը գտնուի Հրոտից Ը. եւ Յուլիս ԺԴ.: Անկէ անցած Ոսկեփորիկներու:

Ձեռագիրք՝ Կիպրոս, Նիկոսիա, Թ. 2, Թղ. 662ա: Վիեննա, Թ. 7, 705, 6բ (1403) եւ այլն:

Հրատարակուած՝ Յ. Տէրոյենց, Խօսակցութիւնք Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ ընդ պատրիարքին Յունաց. Կ.Պոլիս 1861, էջ 105—110 (1302ին գրուած Ոսկեփորիկէ): Յայսմաւուրք Հայոց. Patrologia Orientalis‘ t. 21, p. 726 – 729:

5. Խաչատուր Սկեւռացւոյ Ողբ յարհեպիսկոպոսն Տարսոնի ի Մեծն Ներսէս: Սկ. «Ամ, զահ թողում, զամօթ մոռանամ»:

Ձեռագիրք. Էջմիածին Թ. 2496, 290բ (1293). Վիեննա, Թ. 219, 257բ—258բ

(գրուած ընդ մէջ 1290—1310 տարիներու)· Վենետիկ, Թ. 309, 2ա (1871, արտագրուած 1294ին գրուած ձեռագրէ):

Հրատարակուած՝ Բազմավէպ, 1874, էջ 242—243, 1886, էջ 101—102: Սիսուան, 1885, էջ 94—95· Հայապատում, 1901, էջ 433—435: Աճառեան, Անձնանունների Բառարան, Բ., էջ 469—472: Հ. Գ. Յովսէփեան, Հանդ. Ամս. 1895, էջ 308 (= Միջնադարեան ազգ. տաղաչափութիւն ռամկախառն, Վիեննա 1911, էջ 10—12 (քաղուածաբար): Հ. Ն. Պօղոսեան, Հանդ. Ամս. 1954, էջ 251—256: Տես վարը, էջ 89—93:

6. Վասն կենաց եւ կեցութեան եւ շնորհաց Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ: «Այս երանելի եւ բազմիմաստ...»: Հրտ. Տեսութիւն աղօթից, պատմութեան բանից ննջման աստուածարան աւետարանչին Յօհաննու..., Կ. Պոլիս 1736, էջ 157—159:

7. Ներսէս Լամբրոնացւոյ ինքնագիր գրութիւնք, Պատճառ Թղթոյ, եւ Յիշատակարանք: Եւ Յիշատակարանք ժամանակակից գրիչներու:

8. Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, հատ. Գ., Վենետիկ 1786, էջ 88—95:

9. Հ. Մ. Աւգերեան, Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւն սրբոց, հատոր Ե., Վենետիկ 1813, էջ 343—353:

10. Հ. Ա. Ճ(արեան), Ներսէս Լամբրոնացի, Բազմավէպ 1846, էջ 21—31:

11. Հ. Ղ. Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, Վենետիկ 1873, էջ 281—285:

12. Հ. Ղ. Ալիշան, Դրուագ ի Սուրբն եւ ի Սրբելին Ներսէս Լամբրոնացի. Սիսուան, Վենետիկ 1885, էջ 86—95 (հմմտ. նաեւ էջ 460—462):

Այս Դրուագը աշխարհաբար թարգմանութեամբ՝ Բազմավէպ 1886, էջ 87—102:

13. Հ. Գ. Զարբանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ 1897, էջ 648—661:

14. Հ. Յ. Թորոսեան, Եօթնհարիւրամեակ Ս. Ներսէսի Լամբրոնացւոյն մահուան, Բազմավէպ 1898, էջ 461—470:

15. Սմբատ Ծ. Վ. Սաատէթեան, Ներսէս Լամբրոնացի. ուսարտաճառ. գրուած 1896ին, 380 էջ: Սահակ-Մեսրոպեան մրցանակին արժանացած 1903ին (հմմտ. Ռ. Պէրպէրեանի վկայութիւնը, Բիւզանդիոն 1903, Թ. 2059. եւ Արարատ, 1903, էջ 721—722): Տակաւին անտիպ եւ ինձ անմատչելի:

16. Մաղաքիա արքեպ. Օրմանեան, Ազգապատում Ա., Կ. Պոլիս 1913, էջ 1454—1545 (պատմութեան մէջ հիւսուած):

17. Յ. Օշական, Ներսէս Լամբրոնացի, Սիոն, 1947, էջ 244—246, 275—279, 306—308, 385—386:

18. Ed. Dulaurier, St. Nersès de Lampron, notice sur sa vie et ses écrits: Recueil des historiens des Croisades. Documents arméniens, t. I, Paris 1869, p. 557—603.

19. P. Vetter, Nerses von Lambron: Wetzer und Welte's Kirchenlexikon, IX, (Freiburg 1895), S. 162—164.

## ՄԱՍՆ Ա.

### Կեանքը։

#### 1. ԾՆՈՒՆԴՆ ԵՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

Իշխանական տոհմէ էր Ներսէս։ Իր հայրն Օշին տէրն էր Լամբրոն անառիկ բերդին եւ շրջակայ գաւառներուն, Տաւրոսի սարոտ, Տարսոն ծովահայեաց մայրաքաղաքին հիւսիսային թիկունքը։ Լամբրոնի տէրերը Բիւզանդիոնի կայսրներու ծառայութեան մէջ էին. հաւատարմութեան համար պատուած կայսրներէն սեբաստոս (աւգոստոս) տիտղոսով։

Հեթում Ա. սեբաստոս իր դուստրը Թագուհին հարսնութեան տուած էր Ծովք գիւղակի իշխան Վասիլի, որ երիցագոյն եղբայրն էր Գրիգորիս եւ Ներսէս պահլաւունի կաթողիկոսներու, հայրը Գրիգոր Դ. Տղայ կաթողիկոսի։ Իսկ Վասիլի եղբօր Զօրավարի դուստրը Շահանդուխտ, քոյրն Գրիգոր Զ. Ապիրատ կաթողիկոսի, հարս եկած էր Լամբրոնի տիրոջն Օշնի (տես Տոհմագրութիւնը)։

Շահանդուխտ, որ կը դրուատուի ժամանակակիցներէն իբրեւ «քաջահաւատ», «երկիւղազարդ», «ամենաբարի» եւ «կին ժրագլուխ եւ պսակ տան իւրոյ», մինչպէս վայելուչ

այգի կը ծաղկեցնէ հայրենի սեղանին շուրջը հինգ մանչ եւ երեք աղջիկ նորատունկ զաւակներ: Մարիամի ծնունդէն ետքը անդրանիկ որդին Հեթում Բ. (ծն. 1151) անտիական հասակին պատանդ կ'ուղարկուի Ռուբինեան Թորոս իշխանին քով, փրկանաւորելու համար իր հայրը, որ 1152/53 տարւոյն Մսիսի առաջ գերի բռնուած էր Թորոսէն: Մայրը, որ կը մօրմոքէր իր գրկէն խլուած անդրանիկ զաւակին բացակայութենէն, կ'ողջունէ 1153/4 տարւոյն իր երկրորդ որդւոյն ծնունդը, «վայելուչ գեղով», որուն Սմբատ անունը կու տան ի յիշատակ համանուն հօրեղբօր, որ 1152/3 տարւոյն ինկած էր Մսիսի կռուին: Ինչպէս կը պատմէ ծերունին Սամուէլ, նորածինը սանդեաց հասակին մէջ էր, երբ մահաբեր հիւանդութիւն մը կը սպառնայ անոր կեանքին: «Որոյ ի սանդեաց հասակն պատահեաց ախտ ցաւոց. բերաւ ի հաւատարիմ ծնողացն եւ ընծայեցաւ ամենօրհնեալ եւ միշտ փառաւորեալ Աստուածածնին ի տաճար անուան իւրոյ, որ ի վանքս Սկեւռայ առընթեր բերդին»: Հիւանդը կը գտնէ իր առողջութիւնը: Սմբատ, որ 1168էն ետքը Ներսէս անունը կրեց, կը գրէ ինքնին[1].

Հանգոյն Սամուէլի եմ ես ընծայեալ.
Մօրս Աստուծոյ ի ծնողաց նուիրեալ.
Կրկնոցաւ ի պաշտօն Տաճարիս սնեալ:

---

[1] Ճառ ի վերափոխումն, Հանդ. Ամս. 1925, էջ 360:

Անանունը կը գրէ. «Զաս ի տղայութեանն խոստացան ծնողքն տալ Աստուծոյ ընծայ, զի որպէս Սամուէլն՝ ուխտեալ էր յորովայնէ. սակայն զի տեսին զնա կայտառ փայլմամբ ապագայից շնորհացն, զղջացան դարձեալ՝ չտալ խոստացելոյ ուխտին. այլ կամէին առ ինքեանս պահելով ժառանգ մարմնաւոր իշխանութեան անել: Եւ նոյնժամայն հիւանդացաւ մինչեւ ի մահ. յայնժամ մայր նորա առեալ ի գիրկս իւր եւ տարեալ ընկէց զնա յեկեղեցի Սրբուհւոյ Աստուածածնին, ի մօտակայ վանսն որ Սկեւռա կոչի. եւ առժամայն շնչաբերեալ կենդանացաւ տղայն. եւ ոչ եւս ի վանիցն, այլ անդէն սնաւ» (Հայապատում, 419—420): Ասկէ Գր. Սկեւռացի, 12. «Քանզի ուխտական սա յորովայնէ, ըստ որում եւ Սամուէլն այն ի յարգանդէ. նուէր Տուողին՝ մինչեւ յօր մահուան խոստացեալ»:

Անշուշտ Սամուէլի հետ համեմատութիւնը Լամբրոնացւոյ ազդեցութեան տակ է. «Հանգոյն Սամուէլի եմ ես ընծայեալ»: Եթէ ծնողք ուխտած էին իրենց երկրորդարու զաւակը Աստուծոյ նուիրել, այս կարող էր պատահած ըլլալ 1152/1153էն տարւոյն, Օշինի գերութենէն յառաջ: Իսկ մտքի փոփոխութիւնը տեղի ունեցած է նուիրեալին ծնունդէն ետքը, ատոր պատճառ կարող էր ըլլալ անդրանիկին, մանուկ Հեթումի պատանդ ուղարկուելու դէպքը, երբ ծնողքը

ստիպուած էր խորհիլ մարմնաւոր իշխանութեան ժառանգի մասին։

Սմբատ սկսեալ դեռատիոյ հասակէն, իր եղբայրներուն հետ «վարժէր յուսումն դպրութեան»։ Անոնց առաջին դաստիարակն եղած է քաջահաւատ մայրը․ որ ոչ միայն հոգ տարած է իր զաւակներուն բարեկրթութեան եւ բարեպաշտութեան հոգին ներշնչել, այլ եւ հրահանգել զանոնք յոյն լեզուի մէջ, ինչպէս կը գրէ Սամուէլ ի մասին Սմբատի․ «զի վարժեալ էր ի մանկութեանն ջանիւք մօր իւրոյ զհելլէնացի գիրն» (416)։ Միաժամանակ կ՚այցելէին անոնք Սկեւռայի վանքը, Սմբատ «կրկնօգաւ», ուսանելու հայ հին լեզուն եւ կրօնի ուսումը։ Սմբատ կը դաստիարակուէր յանուանէ Յովհաննէս վարդապետէն, որուն խնամքին յանձնուած էր իր ծնողքէն։ Այս Յովհաննէս ապա եպիսկոպոս ձեռնադրուեցաւ։

1165ին թշնամութիւն կը ծագի Թորոս իշխանի եւ Օշին սեբաստոսի մէջ։ Երբ լսուեցաւ յուրս Հռոմկլայ, Գրիգորիս կաթողիկոս փութացուց իր հարազատը, շնորհալիցն Ներսէս եպիսկոպոս, որպէս զի երթայ եւ հաշտեցնէ երկու իշխանները․ «որ եւ աշխատասիրաբար ճանապարհորդեալ դայր առ նոսա․ եւ զհաւատացեալ գործն՝ արդեամբք կատարէր ի ձեռն իւրոյ միջնորդութեանն»։ Հաշտութիւնը կնքուելէն ետքը Թորոս իր տեղը դարձաւ․ իսկ Օշին իր ըն–

*տանուոյն Ներսէս եպիսկոպոսի հետ բարձրացաւ Լամբրոն[2]. եւ «բոլոր ընտանիքը, տունը, բերդը եւ երկիրը օրհնել տուաւ անոր սուրբ աջովը. եւ աւելի քան որդիական սիրով մը պահեցին ու պատուեցին զնա՝ ինքն եւ կինն Շահանդուխտ. որ եւ անշուշտ միւս որդւոց հետ ներկայացուց հօրեղբօրը՝ Սկեւռայ անապատէն բերելով՝ անարատ տատրակի պէս իր Սմբատիկը, որ յետոյ պիտի Ներսէսանար անուամբ եւ հոգւով պայծառ. եւ այն տանն 12ամեայ մանուկ նստէր առ ոտս այս շնորհազարդ վարդապետին, լսէր ի նմանէ եւ հարցանէր զնա[3]»: Այս այցելութեան ժամանակ անշուշտ խօսք բրած է Ներսէս Շնորհալի Ինովկենտիոս Բ. քահանայապետի այն թուղթի մասին, զոր Աղբերիկ նուիրակը բերած էր 1141ին իր կաթողիկոս եղբօր: Ներսէս Լամբրոնացի 20 տարի ետքը, երբ կը թարգմանէր այս թուղթը, կը գրէր. «Քանզի անդ* լսէաք ի տղայութեանն ի տէր Ներսէսէ, *թէ <անդր ի Տոմ> եկն Աղպրի լեգատն եւ խօսեցաւ ընդ նմին (Գրիգորիսի եւ Ներսէսի). եւ զայն որ զկնի նորա առաքեցաւ պատասխանիս[4]»:*

*Սմբատի հայրը Օշին, ինչպէս կը գրէ Սամուէլ, «Համբերեալ պէսպէս փորձանաց վասն առ Յունաց արքայն հաւատարմու-*

---

[2] *Ներսէս Լամբրոնացի, Պատճառ, էջ* 86:
[3] *Ալիշան, Շնորհալի,* 315—317:
[4] *Էջմիածին, Թ.* 1026, *Թղ.* 228*ա*:

*թեան, լի աւուրբք ի ծերութեան հասակն յաթոռ իւր եւ ի մէջ եղբարց[5] եւ զաւակաց օրհնութեամբ փոխեցաւ առ Քրիստոս. եւ եցոյց անդրանիկ որդւոյն Հեթմոյ զտէրութիւն հայրենի աթոռոյն. իսկ նուիրելոյ որդւոյն որ Աստուծոյ՝ կալ ի գլուխ առ յինքենէ շինեալ եկեղեցւոյ սրբոյ եւ վանիցս» (Սամուէլ)։ Օշինի մահուան տարին չէ նշանակուած։ Ան պատահած ըլլալու է ըստ Հ. Ղ. Ալիշանի «1175էն յառաջ» (Սիսուան, 82)։ Ինձ կը թուի, թէ ճշգագոյն պիտի ըլլայ, եթէ զետեղենք 1167/68 տարւոյն մէջ։ Իր պայազատն Հեթում այս միջոցին ըլլալու էր 17 տարեկան. իսկ Սմբատ դեռ նոր 15ին մէջ մտած։*

*Կ՚ըսուի թէ Հեթում նոյն տարւոյն մեկնեցաւ Կ. Պոլիս ներկայանալու Մանուէլ կայսեր։ Հաւանօրէն առած էր հետ նաեւ իր եղբայրն Սմբատ. եւ այս միջոցին պատահած պէտք է ըլլայ այն միջադէպը, զոր կը պատմեն Գրիգոր Սկեւռացի եւ Անանուն կենսագիրը. «Սա մինչ տղայն էր՝ տարեալ եղեւ առ Կայսրն Յունաց. եւ նա ասէ. Եկ, մանուկ, զի արասցուք զքեզ որդեգիրս եւ ժառանգ մեծի իշխանութեան. իսկ նա տակաւին տղայ գոլով՝ իմաստուն պատասխանեօք զարմացուցանէր զնոսա ասելով, թէ Ես երկնաւոր*

---

[5] *Օշինի եղբայրներէն յանուանէ ծանօթ է միայն Սմբատ* († 1152/53)։ *Հոս հաւանօրէն ազգականք կ՚ակնարկուին։*

*թագաւորին եւ զինուորեալ, մշտնջենաւոր բարեացն ակնկալութեամբ[6]»։*

*Գրիգոր Սկեւռացի կ'աւելցնէ, թէ «դէպ եղեւ յայլում ժամու առ որ մեծին Անտիոքայ էր իշխող[7]՝ ածել. եւ նովին օրինակաւ հարցեալ՝ զնոյն լսէին իմաստութեամբ պատասխանի»* (էջ 18)։

*Օշին կտակած էր, որ Սմբատ ժառանգէ Սկեւռայի եկեղեցին եւ վանքը. եւ ըլլայ անոր առաջնորդը։ Միաժամանակ թողուցած էր անոր համար, ինչպէս կը պատմէ Անանուն,* 30.000 *դահեկան[8]։*

## 2. ՆԵՐՍԷՍ՝ ՔԱՀԱՆԱՅ

*Երբ թեւակոխեց Սմբատ իր տասնուվեցերորդ տարիքը, խորհեցաւ երկիւղած մայրը տանիլ իր աստուածանուէր որդին Հռոմկլայ, որպէս զի իր հօրեղբայրն Ներսէս, որ այժմ կաթողիկոսական աթոռը բազմած էր, շնորհէ անոր քահանայական ձեռնադրութիւն։ Իր խնդիրքը կատարեց Կաթողիկոսը. Սմբատ ստացաւ հայրապետին ձեռքէն քահանայական ձեռնադրութիւնն եւ անոր բերնէն Ներ-*

---

[6] *Հայապատում, էջ* 420*ա. Գր. Սկեւռ.* 15—18։

[7] *Անտիոքի բրինձն, որուն անունը կենսագիրն չի տար, կարող է ըլլալ միայն* Boëmond le Bambe *(մանուկ) կամ* le Baube (le Bègue), *որուն թագաւորութեան աւելի քան* 40 *տարիները կը համապատասխանեն Ս. Ներսէսի կեանքի տեւողութեան։* Dulaurier p. 559, *ծն* 1։

[8] *Հայապ. էջ* 420*բ. «որ հիմակուան արժէքով կէս միլիոն Ֆրանքի մօտ կրնայ ըլլալ». Ալիշան, Շնորհալի,* 284։





ւէս անունը: Սամուէլ կը գրէ. «Այս որ ի կրօնաւորականս էր միծակեալ՝ յետ դաստիարակելոյ մանկան ուսմամբք՝ ի մեչտատանելոց ամէ ընթացից հասակին ածայերկնեղազարդ մօրէն իւրմէ առ կաթողիկոսն սուրբ Ներսէս, որ յաջորդեալ էր յաթոռ եղբօրն Գրիգորի»: «Եւ սա ըստ հաւատոյ հայեցուածոց դասեր եղբօրն իւրոյ զմանուկն ածեալ առաջի՝ ձեռնադրեաց քահանայ ի կրօնաւորական ձեւ. եւ կոչեաց յանուն իւր՝ Ներսէս: Զոր թողեալ մօրն առ սուա նորին ի վարժումն՝ գնաց (ինքն) յերկրպագութիւն սուրբ տեղեացն Երուսաղէմի» (Յովսէփեան, Յիշատ. 54):

Ներսէս Շնորհալի ժառանգեց կաթողիկոսական գահը 1166 ապրիլ 7ին: Սմբատ, որ այժմ Ներսէս անուանուեցաւ, ինչպէս կ՚ըսուի, 16 տարեկան էր, ուստի քահանայութեան ձեռնադրութիւնը ընդունեցաւ 1168/69ին:

Նորընծայ արեղան երկար չմնաց Հռոմկլայ: Ձեռնադրութենէն քիչ յետոյ («փոքր մի աւուրս») մեկնեցաւ ան, շրջելու Սեւ լեռի վանքերը. անոր սիրտը կը տենչար առանձնութեան մէջ նուիրուիլ նկատողական կեանքի եւ ընթերցասիրութեան. «յանդրաղ կեանս միայնութեան եւ ընթերցման»: Կաթողիկոսը նկատած էր անոր «աստ ուսումն», մտքի վաղահաս զարթնումը եւ նկատողական կեանքի միտումը: Սեւ լերան վրայ

գոյութիւն ունէին այն դարուն զանազան վանական հաստատութիւններ, Յունաց, Լատինաց, Հայոց եւ Ասորւոց: Ներսէս շրջելով այդ վանքերը ոչ միայն պիտի ծանօթանար վանական կարգերուն, այլ եւ առիթ պիտի ունենար աչքէ անցնելու այդ վանքերու մատենադարանները: Այս մասին մեզի վկայութիւն պիտի տայ ինքնին քիչ յետոյ:

Այս շրջագայութենէն ետքը կը վերադառնայ նորընծայ քահանան իր հայրենի տունը Լամբրոն, ուր անկողին կը սպասէին իրեն մայրն եւ եղբայրները (1172): Անտարակոյս նոյն տարւոյն Վերափոխման տօնին (13 օգոստոս) արտասանեց իր գեղեցիկ ճառը, որուն սկիզբն է. «Պարտական դատիմ կուսական աւուրս տօնի ընծայել պատուէս բանի, իբրեւ անկեալ ի նմանէ որթ ի մէջ բիւրաւոր ստեղանց աստուածատունկ սուրբ այս Տաճարի...». իբրեւ երախայրիք մը սրտի այգեստանին նուիրաբերուած ամենօրհնեալ Աստուածածնին «ի Ներսիսէ ծնողաց խոստմամբ նմին ընծայեալ ծառայէ»:

Իր հանգուցեալ հօր վերջին կամքն էր, որ աստուածանուէր որդեակն վանահայրն ըլլար Սկեւռայի վանքին: Բայց, կը գրէ Սամուէլ, նորընծայն «ոչ հաւանեցաւ կալ ի գլուխ ուխտին»: Յանձն չառաւ ոչ միայն իր ծերունազարդ դաստիարակներէն վեր իր աթոռն ունենալ, այլ եւ կը խորշէր վարչական պաշտօնէ, որ պիտի զբաղեցնէր զինքը: Ան

կը անձկար «յանդորր կեանս միայնութեան եւ ընթերցման»: Հակառակ իր մօր եւ եղբայրներու ամէն պնդումի՝ որ մնայ Սկեւռայ, առաւ ան հետը իր հոգեւոր դաստիարակը Հայր Յովհաննէս եւ առանձնացաւ Տաւրոսի լերանց մէջ Սագրուի Աստուածածին կոչուած վանքը, ժեռակրա գետին հոսանքին մօտ, ուր կար նաեւ մատուռ մը Ս. Գէորգի անուան: Այս տեղ միայնացաւ անձուկ սենեակի մը մէջ, նուիրուած գիշեր եւ ցորեկ աղօթքի եւ ընթերցումի. «եւ միայն կատարէր զգործ սուրբ պատարագին պաշտաման»: «Քաղցր էր նմա այն, կը գրէ կենսագիրը, քան զամենայն հեշտութիւն»: Երկար չկըրցաւ վայելել ան այս քաղցր պարապմունքը:

Ներսէս 1173ին Սկեւռայ կը գտնուէր: Այս տարւոյն Գրիգոր գրիչ Համկլայէն վանքս կու գայ օրինակելու համար այն տեղ պահուած ընտիր օրինակէ Աւետարան մը, զոր յանձնարարած էր իրեն Ներսէս Շնորհալւոյ սպասաւորն Կոստանդին քահանայ: Օրինակը «շնորհեաց Ներսէս սուրբ եւ ընտրեալ քահանայն, որդի մեծազօր սեւատոսի պատրոն Աւշնի. որ ամենեւին հանգիստ եղեւ գրչիս տկարութեան՝ յիւր սեփհական անապատն Սկեւռայ անուն կոչեցեալ, որ է մերձ յանառ դղեակն Լամբրուն[9]»:

Նոյն գրիչը նոյն տարւոյն նոյն տեղ կ՚օրինակէ Գր. Նարեկացւոյ Աղօթամատոյցը.

[9] Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ 446:

որուն ստացողն է «Ներսէս աստուածամերձ քահանայ[10]»:

## 3. ՆԵՐՍԷՍ՝ ԵՊԻՍԿՈՊՈՍ

1173, օգոստոսին կը վախճանի Ներսէս Շնորհալի եւ սեպտեմբերին կը յաջորդէ գահին վրայ Գրիգոր Դ. Տղայ, որ Լամբրոնեցւոց մօրեղբօրորդին էր: Ան գահին հետ ժառանգած էր Հանգուցեալ կաթողիկոսի ձեռնասունին խնամակալութիւնը: Կաթողիկոսը, հաւանօրէն 1174ի սկիզբները, կանչեց Ներսէսը իր մօտ: Ան, ինչպէս կը գրէ Սամուէլ, «վասն որ առ նա անանջրպետ սիրոյ, եւս եւ վասն թերի ունելոյ զվարժումն գրոց՝ փութացաւ առ Հարազատն իւր Հայրապետն սուրբ»: Կաթողիկոսը յանձնեց զինքը Հռոմկլայի գիտուն վարդապետներուն, որոնց քով «քննեալ տեղեկացաւ Հին եւ Նոր Կտակարանաց իմաստից»: Իր ուսուցիչներուն անունները չէ յիշած կենսագիրը: Գրիգոր Դ. կաթողիկոսի օրով անուանի էր իբրեւ Ս. Գրքի մեկնիչ Իգնատիոս վարդապետ, հեղինակը Ղուկասի աւետարանին Մեկնութեան: Ներսէս ինքզինքը Ստեփաննոս Յակոբցի վարդապետին «հոգեւոր որդին» կը կոչէ, որ Ներսէս Շնորհալւոյ «գրան սարկաւագն» էր. կը յիշուի 1173—1175 տարիներուն (Յովսէփեան,

---

[10] Անդ, 447: Նմանահանութեամբ՝ Յովսէփեան, Քարտէզ Հայ Հնագրութեան, Տախտակ ԼԹ: Տես նաեւ Գարեգին եպիսկոպոս Տրապիզոնի, Նարեկ, Պուէնոս Այրէս, 1948, էջ 323—324:

*Յիշատ.* 446, 481, 575—577)։ *Իր խնդրանքով գրած էր Ներսէս «Էր ընդ եղբարս» աղօթքին տեսութիւնը։ Իսկ իր «ուսուցիչն» կ'անուանէ Ստեփաննոս Տիրացու եպիսկոպոսը, որ Վասպուրականի Ս. Խաչ վանքի առաջնորդն էր (Թուղթ առ Լեւոն, էջ* 224 *«երանելի այրն Ստեփաննոս Տիրացուն ուսուցիչն մեր»), վախճանած* 1200*ին (Յովսէփեան, անդ,* 612—614)։ *Առանց տարակուսի նոյն են այս երկու Ստեփաննոսները, ի մանկութենէ սնած եւ աճած Հռոմկլայի մէջ։*

*Ներսէս քահանայ յաջողութեամբ աւարտեց իր բարձրագոյն ուսմանց ընթացքը, զոր «վարժումն իմաստից» կը կոչէ եւ պսակուեցաւ վարդապետական գաւազանով։ Յովսէփ գրիչ* 1175*ին կ'անուանէ զանիկա «տիեզերական վարդապետ»։*

*Նոյն տարւոյն ստացաւ Կաթողիկոսին աջէն եպիսկոպոսական օծումը, իբրեւ արքեպիսկոպոս Տարսոնի թեմին։ Իր քսաներկրորդ տարիքին մէջ էր Ներսէս։*

*Ներսէս Հռոմկլայ կը գտնուէր, երբ Գրիգոր Տղայ կաթողիկոս Ներսէս Շնորհալի կաթողիկոսի նշխարները ի Հանգիստ փոխադրեց։ Այս առիթով հիւսեց Ներսէս իր Ներբողական գովեստն ի Ներսէս Կլայեցի։ Աւելի ուշ ժամանակի կը պատկանի «ի Նմանութիւն արեւելեան տաճարաց» կառուցուած հոյակապ եկեղեցւոյ շինութիւնը, «պատրաստեալ ի Նմա գիրս երկուց Լուսաւորչացն*

զհօրեղբարցն իւրոց զտէր Գրիգորիսի եւ զՆերսիսի. հանէ եւ ի Ծովուցն զնշխարս մեծին Գրիգորիսի Վկայասէրի եւ դնէ ընդ երկուց Լուսաւորչացն[12]», կ'ենթադրէ ուշ ժամանակ մը:

Այս շրջանը կ'ակնարկէ Ներսէս Պարապմանց գրոց օրինակութեան վերջը զետեղած յիշատակագրութեանս մէջ 1175ին. «Գիրքս Պարապմանց, զոր իմ Ներսիսի տրուպ եւ անարժան բանաւորի ի վարժումն իմաստից գոլով՝ ընթերցայ ընդ բազում բանս սրբոց եւ զսրբոյ Կիւրղի քննութիւն ուղղափառ հաւատոյ. եւ ի դիպող ժամանակի եկեալ ի Հայրենի աշխարհս, սկիզբն եառ առնել սմին ի ձեռն պաշտօնակցի եղբօր մեր Յովսեփայ»: Գրիչը կ'անուանէ ստացիչը «գերամաքուր եւ տիեզերական վարդապետ տէր Ներսէս»: Տե՛ս վարը էջ 79):

1176ին հոս ի Սկեւռայ «ըստ քերթողական արուեստի» սրբագրած է 1163ին նոյն վանքի մէջ թարգմանուած Կաթողիկէ Թղթոց Մեկնութիւնը (տե՛ս վարը էջ 278):

## 4. ՈՒՍՈՒՄՆԱՏԵՆՉ ՁԳՏՈՒՄՆԵՐ

Ներսէս որչափ ալ մեծ էր մօքով, յառաջադէմ մակացութեանց մէջ, բայց երիտասարդական հասակին մէջ դեռ նոր թեւակոխ, կը զգար ինք զինքը տակաւին մանուկ.

---

[12] Սամուէլ Անեցի, 139. ըստ Հնագոյն օրինակին. Մասիս 1853, թ. 69:

եւ սակայն արքեպիսկոպոսական աթոռներին մէջ, Տարսոն աշխարհաքաղաքի եւ նահանգի հովուապետ: Ան գոհ եղած էր ժամանակի չարաչար սովորութեան, չհաս տարիքի մէջ եպիսկոպոսութեան բարձրացած, մինչ եկեղեցական Կանոնագիրքը այս աթոռին համար առնուազն 30 տարի սահմանած էր: Ան ունէր գիտակցութիւնը աթոռին բարձրութեան, պաշտօնին պահանջներուն, պարտաւորութեանց ծանրութեան եւ պատասխանատուութեան եւ իր անպատրաստութեան, հակառակ ժամանակակիցներու իրեն շռայլած «տիեզերական վարդապետ» տիտղոսին: Եթէ մէկ կողմէ կը սարսէր պատասխանատուութեան ծանրութենէն, միւս կողմէ հոգեկան պահանջքն ունէր հեռու ժխորէ, անդորր առանձնութեան մէջ նուիրուիլ ուսմանց, ընթերցման, հեղինակութեան եւ թարգմանութեան: Իր համոզումն էր, թէ «ուսումնասիրութիւնը» համազօր է «աստուածսիրութեան»: Ան աշխարհիկ, պրոֆան ուսմանց հետամուտ չէր: Գոնէ ժամանակ մը, մինչեւ հասուն տարիք, կը կարօտէր անդորրութեան, պատրաստուելու համար ակամայ իրեն վրայ բարձուած պաշտօնին: Ան գիտէր, թէ հովուական պաշտօնին համար անհրաժեշտ էր նուիրական ճարտարախօսութիւնը: Ուսանելու համար այս արուեստը այժմ կը խորհէր յունական շրջանակի մը մէջ ապրիլ. գիտէր յոյն լեզուն, գիտէր նաեւ թէ հետա-

բութիւնը ամէնէն աւելի հելլէններու քով ծաղկած էր: Կենսագիրն Սամուէլ կը գրէ. «Սորա եկեալ (ի Սկեւռա) խուսափէր ի հովուութեան զբաղմանց. եւ ի տենչանս ընթերցման գրոց նկրտէր. եւ զի ոչ կարէր բառ առփման իւրոյ ունել զանգրագութիւն, փախստական լինէր այսր անդր ի հեռաւոր տեղիս»: Կը յիշէ միայն թէ ծածուկ իր մօրմէ եւ եղբայրներէ կ'անցնի Կիպրոս ապրելու հոն «աղքատասպէս» եւ հետեւելու հելլէն իմաստասիրութեան եւ հռետորութեան: Կ'իմանան իրեններու փախստականին թաղուստի տեղը եւ «ածին վերստին անոր բռնութեամբ»: Իսկ Անանուն (ասկէ Գրիգոր Սկեւռացի) կը պատմէ թէ Ներսէս կարդալով Եգիպտական հարանց վարքը՝ «ի նոցին տեղիս փափագէր». լսելով Դարանաղեաց եւ Եկեղեաց վանքերու մասին, ուր ճգնած էր Գրիգոր Լուսաւորիչ, «ըղձայր ի նոյն լինել տեղի»: Այս նպատակով «երկիցս եւ երիցս միով արբանեկաւ յուղի անկեալ գանխլաբար յամենեցունց ի նախանձկոտն ժամանել տեղիս. եւ յոյժս հետիոտս հատեալ, անցեալ յերկարութիւն ճանապարհին, բազում աշխատութեամբ եւ պատառմամբ ոտից բառ անասփորն այնոցիկ եղոյ: Այլ ի գլուխ ոչ ելեալ խորհրդոյն, ի հեռամտայն ըռնաբար արգել լինելոյ. այլ նա յարաժամ մեծաւ ցանկութեամբ ի նոյն թեւակոխէր» (էջ 40. Անանուն, 420):

Ներսէս ինքնին կը հաղորդէ մեզի ան-դիքս. «Ի մանկական հասակ ուսումնասիրու-թեան անձնանօք շրջելով ի վանորայսն որք առընթեր մեծի քաղաքին Անտիոքայ, ի լեառն որ Թասխանձիր կոչի, յափն ծո-վուն, հիանայի ի տեսանելն զաստաքինազարդ միայնութիւն եւ զճգնութիւն հռոմայեցի միաբանակեաց վանորէիցն, որ այժմ կոչին Փռանգք»: «Եւ իմ փոքր մի վարժ գոլով հելլենացի գրոյն՝ ընթերցայ ուսա անդ եւ բորբոքեցաւ յիս ցանկութիւն աստուածային գրոցս թարգմանութեան: Այլ զի ոչ կամէի անձամբ վճարել զգործն՝ խափանեցաւ յայն-ժամ: Եւ թարգմանեցի զնորին Բենեդիկտոսի կարգ եւ զօրէնս կրօնաւորաց նոյնժամայն ի լատին լեզուէն ի փռանգ վանս սուրբ Պաւ-ղոսի, որ ի քաղաքն Անտիոք, ի ձեռն հասա-կակից կրօնաւորի միոյ ի նոցանէ՝ Կիրամ ա-նուն» (տե՛ս վարը էջ 287):

## 5. ՍԱՂՐՈՒԻ ՈՒԽԱՆՁՆԵՐԸ

Երբ ամէն փորձ կը ձախողի, կ'որոշէ միանձնանալ միանգամ Սաղրուի Ս. Աս-տուածածին վանքը. իրեն հետ էր հայրն Յովհաննէս: Կը փոխադրէ այն տեղ իր ձեռք բերած գիրքերը, կը նուիրուի ընթերցանու-թեան եւ գրականութեան: Կը մնայ հոն «ա-մաց ժամանակ» (Սամ., էջ 416ա). որով իմանալու է 1176—1177 տարին: Այս տար-ւոյն անցածագործութիւններն են իր Պա-

*տարագի եւ Սաղմոսաց մեկնութիւնները։ Առաջնոյն Յիշատակարանին մէջ կ՚ըսուի. «Գրեցաւ ի թուականիս ՈԻՁ. յանապատն Ս. Գէորգ ի մէջ լերինս Տաւրոսի»։ Եւ 1192ին կը գրէ. «Այս բանք եւ աստուածային աւրհնադրութիւնք սպասաւորութեամբ մաց եւ ձեռին իմոյ Թշուառ Ներսէսի տացաւ ի Հոգւոյն Աստուծոյ ի նախագրեալ թուականիդ ի ՈԻՁ. եւ ի ժամանակ կենաց իմոց մինչ էի ԻԴ. ամաց եւ կայի ի լռութեան եւ ի միայնութեան ի մէջ լերանցս Տաւրոսի»։ Իսկ Սաղմոսաց մեկնութեան համար կը պատմէ Սամուէլ. «Հոգեւոր հայրն իւր եւ դաստիարակն Յովհաննէս ի նոսին երբեմն երբեմն առ նմա՝ քննէր զմիտս Սաղմոսացն եւ ի լուծանելն՝ աղաչէր գրել զայն եւ թողուլ ի պէտս զկնի եկելոցն»։ Այսպէս սկզբնաւորութիւն առած էր Մեկնութիւնս եւ ապա շարունակուած։*

## 6. ԳՐԱՍԷՐ ՈՒՂԵՒՈՐԸ

1177 *տարւոյն հրաւէր կու գայ իրեն Գրիգոր կաթողիկոսէն, մասնակցելու Հռոմկլայի ժողովին, որ պիտի գումարուէր Մանուէլ Կայսեր եւ Միքայէլ պատրիարքի խնդրանքով, վերսկսելու եւ վերջացնելու Եկեղեցիներու Միութեան այն հարցը, որ սկսուած էր Ներսէս կաթողիկոսի օրով եւ ընդհատուած անոր մահով* 1173*ին։*

*Լամբրոնացիներու սրտին մօտ էր այս հարցը։ Երբ պիտի մեկնէր Ներսէս, խըն–*

դրեց իրմէ իր խմատատէր եղբայրն Հեթում սեբաստոս, որ կազմէ այս հարցին շուրջ Կայսեր, Պատրիարքի եւ Կաթողիկոսի միջեւ փոխանակուած թղթակցութիւնները հաւաքածոյք մը հանդերձ պատճառներով: Իսկ Ներսէս իր ճանապարհին մտադրած էր միւսանգամ հանդիպիլ Անտիոքի (կամ Սեաւ լերան) վանքերը, ուր կը յուսար օգտակար գրքեր գտնել, զորոնք կարելի էր թարգմանել տալ Հռոմկլայ, ուր կը գտնուէր Հայհոռոմ Կոստանդին մետրապոլիտ: Յայտնութեան Յիշատակարանին մէջ կը հաղորդէ մեզի հետեւեալ տեղեկութիւնները. «Ես Ներսէս նուաստս ի Քրիստոս եւ տարտամս յուսումնասիրաց... յընթեռնուլն զՅայտնութիւնն Յովհաննու... այսր անդր խուզելով զՄեկնութիւն նորին ի մեր բարբառ ոչ գտի: Յետ որոյ եհաս ինձ ընթանալ ի մեծն Անտիոք. եւ շրջելով յոր անդ վանորայք Հռոմոց եւ Փռանգաց, այս անենչունն բորբոքէր ի միտս իմ. ուստի եւ քննեալ գտի ի գրեանս հուչակաւոր ուխտին սրբոյն Պաւղոսի՝ ի քաղաքի անդ, զՄեկնութիւն Յայտնութեանս ի Լուսպր (Լոմպարտացի) բարբառ... փափագելով թարգմանել, ոչ գտի զոք որ յայն բարբառոյ ի հայս կարէր յեղաշրջել: Ապա եկեալ արտաքոյ քաղաքին ի Սուրբ լերան, ...գտի զցանկալիս ի Հելլենաց բարբառ (ի վանս Բեթիաս Բասիլ անուն արգելական միայնակեցի քով). եւ խնդրեալ աղաչանօք ի բարեմիտ առնէն՝ առեալ փութացայ

գրովքն ի Հայրապետական աթոռն առ տէրն իմ եւ կաթողիկոս սուրբն Գրիգորիոս» ի Հռոմկլայ: Թարգմանութիւնը կը կատարուի 1179ին: Ներսէս իր հետ ունէր նաեւ Գրիգոր Մեծի Տրամախօսութիւնը, յունարէն թարգմանութեամբ. որուն գիւտի մասին կը գրէ. «Իսկ ապա (նոյն 1177 տարւոյն) եկեալ ի վանսն որ Սիմանակլա կոչի՝ հուպ յԱնարզաբայ, յորում բազում գրեանք ի յունական գիրս աւանդեալ է, մանրամասնաբար խուզեալ՝ գտի զայս գիրս. եւ հրճուեալ ի վերայ անչափ խնդրութեամբ, որպէս գիտեն փորձքն ուսումնասիրութեան, որ է նոյն եւ աստուածասիրութիւն. առեալ գնացի ի Հայրապետական աթոռն, որ է Հռոմկլայ»:

## 7. ՀՌՈՄԿԼԱՅԻ ԺՈՂՈՎԻ ՄԷՋ

1177—1180 անցուց ան Հռոմկլայ: Ներկայացուց այն տեղ Գրիգորիս կաթողիկոսին վերոյիշեալ Յայտնութեան եւ Տրամախօսութեան յոյն բնագիրները, խնդրանքով, որ թարգմանել տայ զանոնք Կոստանդին Հայախօս մետրապոլիտին. կաթողիկոսը սիրով ընդ առաջ եկաւ Ներսէսի գրասիրութեան եւ Կոստանդին յանձն առաւ թարգմանութիւնը: Յայտնութեան Մեկնութիւնը կատարուած է, ինչպէս կ՚ըսուի, Ներսէսի գործակցութեամբ. Կոստանդին կը թարգմանէր եւ Ներսէս գրի կ՚առնէր: Այս տեղ նոյն տարւոյն թարգմանուեցան ի ձեռն Կոստանդնի եւ Ներսէսի

նաեւ Նեղոս Դոքսապատրէսի Գիրն վասն հինգ պատրիարքացն, (Գէորգ Կիպրացւոյ) Կարգաւորութիւնն մայրաքաղաքաց եւ Արժանապատուութիւնք ի Կաթողիկէ Եկեղեցւոյ։

Եկեղեցիներու միութեան համար Մանուէլ Կայսեր եւ Ներսէս կաթողիկոսի մէջ փոխանակուած թուղթերն եւ այս առթիւ անցի ունեցած բանակցութիւնները յանգած էին այն կէտի, որ երկու կողմերն ալ գումարեն միջազգային եպիսկոպոսական ժողովներ, քննութեան առնեն վիճական եւ խորական խնդիրներն եւ գան համաձայնութեան։ Ներսէս Շնորհալի ժողովի հրաւէրները գրուած էր արդէն, երբ վրայ հասաւ իր մահը (1173)։ Յաջորդ ընտրուեցաւ Գրիգոր Դ. Տղայ. որ փութաց հաղորդել Կայսեր Ներսէս Կաթողիկոսի մահն եւ իր յաջորդութիւնը։ Կայսրը յայտնեց իր ցաւակցութիւնը ինքնագիր թղթով մը, զոր ուղարկեց ի ձեռն Թէորիանոս իմաստասէրի, հանդերձ ողջունի գրով առ նորապսակ հայրապետն. «Ակնեայն, ասէ, ի նախնայն եւ յերանելի հօրէն քո ի ձեռն քո կատարեսցի»։ Թէորիանոս կը հասնի արեւելք, բայց չի համարձակիր յառաջանալ մինչեւ Հռոմկլայ, որովհետեւ անապահով էին ճանապարհները. իսկ «զնամակն թագաւորական առաքեաց ի ձեռն հետեւաց ոմանց ճարտարաց եւ հմտից ճանապարհին»։ Այս թուղթին պատասխանը

կ՚ուղարկէ Գրիգոր Կաթողիկոս ի ձեռն Հռոմկլայեցի Կոստանդին յոյն քահանային․ Թուղթին վերջաւորութեան կը միջնորդէ Կաթողիկոսը, որ հաճի Կայսրը այդ քահանան Յերապոլսի արքեպիսկոպոս օծել տալ։ Կայսրը 1175—1176 տարիներուն պատերազմի դաշտի վրայ էր ընդդէմ Ղլիճ-Ասլանի։ Ա՛յնտեղ կ՚ընձեռէ իրեն Կոստանդին Հայրապետական թուղթը։ Կայսրը կը հրամայէ իրեն, որ Կ․ Պոլիս երթայ եւ սպասէ իր վերադարձին։ Մանուէլ կայսր կը վերադառնայ մայրաքաղաք վիրաւոր (1176 աշուն)։ Կոստանդին կ՚օծուի նոյն տարւոյն արքեպիսկոպոս։ Կայսրը կը յանձնարարէ Միքայէլ պատրիարքին գումարել սինոդ եւ վերաքննել Միութեան հարցը։ 1177 յունուարին կը պատասխանեն Կայսրն եւ պատրիարքը Գրիգոր կաթողիկոսին եւ կը ներկայացնեն իրենց առաջարկութիւնները․ Թղթաբերը կ՚ըլլայ Կոստանդին արքեպիսկոպոս։

«Յայնժամ ապա ըստ հրամանի թագաւորին եւ խնդրոյ՝ հրաման եհան (Կաթողիկոսն) ժողովոյ ի Մեծն Հայք եւ յԱրեւելս եւ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ եւ ի Սուրբ Լեառն որ Սեաւ կոչի, ժողովել յամենայն կողմանց եպիսկոպոսաց ի Հայրապետական աթոռ վասն այսր խնդրոյ․․․։ Եւ ժողովեցան յամենայն գաւառաց եպիսկոպոսք ի սուրբ Պասքայն ի Հայրապետական աթոռն Հռոմկլայ, որ է առ ափն Եփրատայ։ Եւ կա-

տարեալ գիրկագործ աւուրս Զարչարանաց Տեառն... ի միասին. եւ յետ այսորիկ պարապեցին ի քննութիւն գրեցելոց թղթոցս ի թագաւորէն եւ յեկեղեցւոյն: Էր ընդ նոսին եւ յեպիսկոպոսապետէն Ասորւոց վարդապետք եւ իմաստուն արք[13]»:

Ժողովական հարք քննութեան առնելով պատրիարքական թուղթին առաջարկութիւնները՝ «գտին զամենայնքս համաձայն սուրբ հարցն եւ ուղղափառ եւ անխոտոր յուղիղ խոստովանութենէն»: Կաթողիկոսն եւ եպիսկոպոսները կը ստորագրեն կայսերական առաջարկութեանց: «Եւ լուծաւ սատանայական կռճիմն հակառակութեանն»:

Կաթողիկոսը կը գրէ առանձին թուղթեր ալ առ Կայսր եւ պատրիարքը, որոնց տակ կը ստորագրեն նոյնպէս եպիսկոպոսները:

Թուղթերս թուական չեն կրեր: Այն պարագան, որ կ՚ըսուի, թէ Միքայէլ պատրիարք «նախ քան զայս փոխեցաւ յաշխարհէ ի Քրիստոս», եւ անոր յաջորդին անունը անծանօթ ըլլալով, թուղթը հանդուցեալի անունով ուղարկուած է, հնարաւորութիւն կու տայ մեզի ժամանակը ճշդելու:

---

13 Ն. Լամբրոնացի, Պատճառ, էջ 180: Վերջաւորութիւնն՝ «էր... վարդապետք եւ իմաստուն արք», պէտք է ուղղել կամ իմանալ՝ «էր... Թէոդորոս վարդապետ եւ իմաստուն այր»: Սա էր Թէոդորոս Վահրուն, Միքայէլ Ասորի պատրիարքին պաշտօնեան, որ ուղարկուած էր լոկ իբրեւ դիտող. նաեւ 1172ին երբ բանակցութիւններ կը կատարուէին Թէորիանոս Իմաստասէրի եւ Ներսէս Շնորհալւոյ մէջ նոյնպէս Հռոմկլայ էր:

*Միքայէլ Գ. պատրիարք վարեց իր իշխանութիւնը* 1169—1177: *Իր յաջորդն եղաւ Քարիտոն* 1177—1178, *միայն* 11 *ամսուան տեւողութեամբ. որմէ ետքը ընտրուեցաւ Թէոդոսիոս Բորադիոտ* (1178—1183), *ծագումով հայ, նախապէս Բիւթանիայի Ս. Աւգսենտիոս վանքին վանական*[14]:

*Ասկէ կրնանք հետեւցնել, թէ Միքայէլ Գ. վախճանած ըլլալու է* 1177 *մարտ—ապրիլին, անոր մահը լսուած է Հռոմկլայ, բայց յաջորդին անունը ոչ:*

1177 *տարւոյն զատիկը հանդիպած է ապրիլ* 24*ին:*

*Ժողովին գումարման այս թուականը կը հաստատէ Ներսէս Լամբրոնացւոյ Ատենաբանութեան սկիզբը զետեղուած ծանօթագրութիւնը.* «Սուրբ եւ տիեզերական ժողովոյն, որ եղեւ ի շրջան ընթացից ժամանակի ՈԻԶ (1177) թուականի հրամանաւ Գրիգորիսի, յաջորդի առաքելական աթոռոյ Գրիգորի, համաձայնութիւն Ներսէսի նուաստ նոցին պաշտօնակցի»:

*Հնագոյն օրինակներու պահած այս տեղիքը յետագայ շրջանին իբրեւ թէ լուսաբանուած է այսպէս. «Յաստուածախումբ եւ ի տիեզերական ժողովն Տարսոնի... ՈԻԶ թուականին Հայոց... եւ քրիստոսապսակ արքային Հայոց Լեւոնի, սակս Միութեան եկեղեցւոյ ատենական խօսք մեծի սրբոյն Ներսէսի*

---

[14] Lebeau, Histoire du Bas-Empire, XVI, 289.

այնմ (!) քաղաքի աթոռակալի եւ աստուածախօս վարդապետի», որ ապա մուտ գտած է այլ ձեռագիրներու մէջ (տե՛ս վարը էջ 188)։

Ներսէս մասնակից էր Հռոմկլայի ժողովին, ինքն ալ ստորագրած է 32 եպիսկոպոսներուն հետ Կաթողիկոսի Թուղթին տակ, իբրեւ վեցերորդ՝ «Ներսէս արքեպիսկոպոս մայրաքաղաքին Կիլիկեցւոց Տարսոնի», թէեւ տարիքով կրտսերագոյնն էր։ Այս տեղ, 1177 զատկին խօսեցաւ ան յիշեալ հոյակապ ատենաբանութիւնը, ուստի սխալ է թէ՛ ժողովին գումարումը 1179ին փոխադրել եւ թէ՛ Ատենաբանութիւնս 1196ին Տարսոն խօսուած ենթադրել։

Ներսէս Լամբրոնացի կը գրէ թէ ժողովականք խնդրեցին կաթողիկոսէն, որ ժողովին որոշումները անյապաղ հասցնէ Կայսեր, որովհետեւ երկիւղ կար, թէ ինքնակալին տուած վէրքը մահաբեր ըլլայ. «եւ աղաչեցին ամենայն ժողովն փութապէս առաքել (Թուղթերը), զի մի, ասեն, պատահեսցի գրեալդ յարքայէն մահուամբ խափանումն առաջարկեալ խորհրդոյս։ Իսկ կաթողիկոսն սուրբ պատրաստեաց վաղվաղակի թղթատար, ընթանալ ի Թագաւորականն քաղաք. եւ հասեալ նոցա ի Կեսարիա՝ արգելան վասն խռովութեան ճանապարհին եւ դարձան յետս[15]. ընդ որ վշտացաւ ոչ սակաւ եւ հնարէր վերստին զընթացսն։ Յայն-

[15] Հմմտ. Lebeau, անդ, էջ 287—290։

ժամ եհաս համբաւ դառնագոյն», թէ վախճանեցաւ Մանուէլ կայսր, ՈԻԹ (1180) տարւոյն, «սեպտ. 27ին»[16]: Այս պատճառաւ ալ, կը գրէ Ներսէս, մեծ խորհուրդս այս եկեղեցւոյ խաղաղութեան անկատար մնաց. «որոյ չիք այժմ յոյս ի ձեռն ուրուք գալ յաւարտումն»:

Ներսէս Լամբրոնացւոյ «Պատճառին» վերջին տողերն են ասոնք. որոնց կը յաջորդէ իր Յիշատակարանը, ուր կը գրէ. «Այժմ ականատես եւ ականջալուր եղեալ նուաստս Ներսէս, համանուն որդի նորին Տեառն Ներսիսի հայրապետի, ըստ փափագման քո, իշխան բարեպաշտ եւ հարազատ եղբայր իմ Հեթում, շարադրեցի համառօտաբար զՊատճառ Նամակացն հանդերձ Թղթովքն...: Քանզի յայս փափագ միայն զքո բարեպաշտութիւնդ ի մերում ժամանակի տեսաք՝ վար արկեալ առ ի խնդրել եւ յուսանել. զոր եւ իմ կամելով ըստ կարի գրեցի» (տե՛ս վարը էջ 218):

Ներսէս ականատես եւ ականջալուր եղած էր յատկապէս 1177—1180 տարիներու դէպքերուն: Ինչ ինչ թերեւս 1170—1174 տարիներուն:

Ներսէս մնաց Հռոմկլայ 1177—1180/1: Այս միջոցին թարգմանել տուաւ Կոստանդին եպիսկոպոսին այլեւայլ թարգմանութիւններ, զորոնք յիշեցի վերագոյն: Ան բերած

---

16 Մանուէլ կայսր վախճանեցաւ սեպտ. 24ին. Lebeau, անդ, էջ 296:

էր հետը իր Պատարագի Մեկնութիւնը, զոր կը փափաքէր քննութեան տակ դնել երիցագոյններու եւ անոնց կարծիքը առնել: Բայց ոչ ոք ունկնդրութիւն շնորհեց իրեն: Իրաւամբ կը գանգատի այս անտարբերութեան մասին, երբ կը գրէ. «Մի անգամ եւ երկիցս հանի զայն յառեան եւ ի ժողովս եպիսկոպոսաց եւ իշխանաց. եւ ոչ եղեւ պարապումն զոնէ ընթերցման կամ ունկնդրութեան»:

Ներսէսի Հռոմկլայ գտնուած տարիներուն, կա՛մ 1173ին եւ կա՛մ 1177ին, պէտք է պատահած ըլլայ հետեւեալ դէպքը: Վերին Հայաստանէն եկան աշխարհական եւ եկեղեցական անձեր, հարցնելու համար, թէ կը գտնուի՞ Կաթողիկոսարանի մէջ Քաղաքական Օրինագիրք մը Հայոց համար, որուն հիման վրայ լուծուէին դատական խնդիրները. ինչպէս կը պահանջէին այլազգի իշխանութիւնները, որոնց ենթարկուած էին Հայերը: Ներսէս Լամբրոնացի կը գրէ առ այս, թէ Կաթողիկոսն եւ ինքը հետամուտ եղած են նման օրինագիրք մը գտնելու. «Եւ խուզեալ ընդ ն(մ)ա մեր յարկեղս գրոց կաթողիկոսարանին՝ ոչ գտաք Օրէնս...: Եւ կարի վշտացեալ հայրապետն խնդիր առնէր առ այլ ազգս. եւ պատահեալ անդ (յ)Ասորւոց Թէոդոս անուն կիրթ իմաստութեան քահանայ, յայտնեաց Տեառնս, զի գոյր առ ինքն այս համառօտ Քաղաքական Օրինադրութիւնս: Եւ հրաման տուեալ ինձ... յեղաշրջեցաւ ի հայս՝ նմին յիշատակ բարի»:

*Այս «Թէոդոսն» է վերոյիշեալ (ծան. 13) Թէոդորոս բար Վահրուն: Օրինագրքիս պէտք անդրադառնամ ապա լայնագոյնս:*

## ՆԵՐՍԷՍ ՅԵՐՈՒՍԱՂԷ՞Մ

*Հ. Գ. Ալիշան, Սիսուան, 87 կը գրէ, թէ Ներսէս 1179ին «յԵրուսաղէմ ուղեւորեալ, թերեւս զատ յուխտից՝ յայլ եւս գործ կարեւոր»: Առանց տարակուսի աչքի առաջ ունեցած է Ալիշան առ այս Ներսէսի հետեւեալ տեղիքս, գրուած 1179ին իր թարգմանած կամ թարգմանել տուած Գրիգոր պապի Տրամախօսութեան վերջը (Հայապատում, Բ. էջ 429).*

*«Երուսաղէմ ի սուրբ քաղաքն յոր ընթացայ,*
*Տեսի պըտուղ սիրոյ սոցին, յոր ոչ հասայ»:*

*Ինձ կը թուի, թէ այլաբանական ասացուածքի մ՚առջեւ կը գտնուինք: Կ՚ակնարկէ թերեւս իր փախստական երթն դէպի Եգիպտոս, անշուշտ Երուսաղէմի վրայէն. երբ կէս ճանապարհէն ետ դարձուցին խնդրակները:*

*Նման այլասացիկ արտայայտութիւն մ՚ալ ունի Ներսէս, 1198էն. «Քանզի ակներեւ աչաց մերոց սուրբ եւ աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ յափշտակեցաւ ի սպասաւորութենէ քրիստոնէից՝ սրով Իսմայելացւոցն ի ՈԼԶ (1187) թուին Հայոց» (Հայապատում, 427):*

*Այս տեղիքէն հետեւցուցած է Մկրտիչ արքեպ. Աղաւնունի, թէ «Ներսէս Լամբրո–*

նայի» «ականատես եղած է Երուսաղէմի» 1187ի առման (Սիոն, 1937, էջ 374—379)։

Բայց Ներսէս իբրեւ դրացի խօսած է։

## 8. ԱՌԱՋՆՈՐԴ ԵՒ ՀՈՎԻՒ

Երբ պիտի մեկնէր Ներսէս Հռոմկլայէն, ազդարարեց իրեն Կաթողիկոսը լրջօրէն, որ կարճելով մտաց սլացումները տեսական կեանքէն գործնականին անցնի, լծուի եռանդով հովուական եւ առաջնորդական պաշտօններու։ Ան խոստացաւ եւ կատարեց։ Սամուէլ կը գրէ. «Եւ բռնադատեալ դարձեալ ի սիրոյ հայրապետին սրբոյ Գրիգորի, որ կոչէր Հրամայական սաստիւ. գնաց առաջի նորա, ողոքանօք եւ ահարկութեամբ հաւանեցուցանէր կալ ի գլուխ ժողովոյն, որ հաւատացաւ նմին ձեռնադրութեամբ։ Եւ այսպէս զսլացումն մտաց ընդ իւրեւ նուաճեալ հոգեւոր հօրն՝ առաքեաց զնա ի նուաստ գձձութենէն յաթոռ իւր պատուով» (էջ 416)։ Կեանքի այս փոփոխութիւնը կ՚ակնարկէ ինքն ալ. «Իսկ յետ ամաց ինչ դարձեալ ածայ յեկեղեցական պաշտօն եւ ի մարմնական գործոյ զբաղմունք»։

Այս 1177—1180 տարիներուն, ինչպէս կը պատմէ Սամուէլ, Ներսէսի եղբայրն «մեծապատիւ սեբաստոս Հեթում ամենապատիկ վայելչութեամբ շինեալ էր զտաճար աղօթից ի սուրբ ուխտս (Սկեւռայ) եւ նկարագրութեամբ պատկերաց զարդարեալ»։

Կիրակոս Գանձակեցւոյ տողերս․ «Ներսէս Լամբրոնացի, եղբայր Հեթմոյ․․ շինեաց եկեղեցի[ս] հրաշազան ի վանքն որ կոչի Սկեւռա, հուպ ի բերդն անառ Լամբրոն» պէտք է իմանալ անշուշտ Հեթումի կատարած շինութեանց մասին․ բայց Ներսէսն էր որ «կարգեաց զպաշտօն վանիցն ըստ օրինակի այլոց ազգաց՝ սարկաւագաւ եւ դպրաւ եւ անծածկոյթ գլխաւ, զոր յոլովք դարովէն ի Հայոց» (Կիր․ էջ 63)։

Առաւ Ներսէս Հոգեւոր Տէրէն հրաժեշտ․ սրտով տխուր, բայց զուարթերես դէմքով։ Ճգնաւորը մերկացած էր իր գձուձ հանդերձիկն եւ զգեցած եպիսկոպոսական փայլուն քղամիդը, զօտեպինդ եւ հովուական ցուպը ձեռքին։ Կը վերադառնար հայրենի տունը իբրեւ առաջնորդ Սկեւռայի եւ արքեպիսկոպոս Տարսոնի։

Յաղթական էր վերադարձը․ բեռները ծանրաբեռն եւ թանկարժէք․ անոնք կը պարունակէին հատորներ, որոնք նոր ծնունդ առած էին իր գրչէն։ Մին ընծայ իր եղբօր, Լամբրոնի տիրոջ։

Ցնցածին Լամբրոնի դրանդիները, երբ նշմարեցին հեռուէն ճանապարհորդները, որոնք դէպի բերդ կը յառաջանային։ Մայրն Շահանդուխտ, եղբայրներն եւ քոյրերը, վանականներն ու բերդապահք դիմեցին կարօտով Սիրելւոյն ընդառաջ․ Սեբաստոսն Հեթում առաջնորդեց Սկեւռայի առաջնորդն

եւ Տարսոնի արքեպիսկոպոսը նորոգ բաբեզարդուած եկեղեցին. «ընկալեալ զելեալ յանապատէ փեսայս զեղեցկացեալ աստուածային հանճարովն որպէս լուսին եւ պայծառացեալ գիտութեամբ որպէս զարեգակն եւ հիացուցանող վարուք եւ բանիւք. կացուցին յաջմէ սորա գլխոյ սրբոյ տաճարիս զարդարեալ եւ պաճուճեալ: Եւ բազմեալ ի քահանայական աթոռն ի տօնի Իսկուհւոյն, ետ զխաղաղութիւն ժողովոյս. եւ յարուցեալ կատարեաց զաքանչելի խորհուրդ սրբոյ պատարագին, յիշատակ փրկագործութեանն Քրիստոսի եւ քաւութիւն ժողովրդեանս. որոյ հազորդեալ տեսութեամբ եւ ճաշակմամբ՝ ուրախութեամբ մեծաւ տուաք փառս Քրիստոսի» (Սամուէլ Անեցի, էջ 547):

Ներսէս, որ յանձն առած էր այժմ ըստ հօրը կտակին, Սկեւռայի վանահայրութիւնը, հոգ տարաւ բարեկարգել զայն ներքուստ եւ արտաքուստ. ինչպէս կը գրէ Սամուէլ. «բուռն հարեալ ի վշտակցութիւն ժողովոյս բարեկարգութեամբ անօրինէր»:

Կ՚իջնար օրըստօրէ Տարսոն մայրաքաղաքի Ս. Սոփիա եկեղեցին, կը խնամարկէր հաւատացեալ ժողովուրդը. «մխիթարէր զնոսին վարդապետական բանիւ եւ հանգուցանէր յիւրքն զամենայն տեսողս եւ զլսողս», ոչ միայն հայ ժողովուրդն, այլ եւ Ֆրանկներն եւ Յոյները, որովհետեւ տեղեակ էր այն ժողովուրդներու ալ ծէսերուն եւ հաւատալիք-

ներուն. «եւ յընտրողութիւնն հաւանեցուցանող կամ հաւանեալ»:

Կը պատմէ Կիրակոս Արեւելցի, թէ «Ներսէս «զի եպիսկոպոս էր եւ կայր նորա հօտ Եկեղեցւոյն», օր մը, երբ կ՚իջնար Սկեւռայէն քաղաք, պատահեցաւ գինովի մը, որ ցեխի մէջ կը տապլտկէր: Տեսնելով զայս սկսաւ լալ, երեսները բախել եւ ըսել. Ի՞նչ պատասխան պիտի տամ Աստուծոյ, որ յանձնեց ինծի այս մարդը եւ ես չխրատեցի: Այն օրէն ի վեր սկիզբ ըրաւ իր Ս. Սոփիա մեծ եկեղեցւոյն մէջ «ի տուէ եւ ի գիշերի» քարոզել եւ բարեկարգութեան ուշ դարձնել:

Մայրն եւ Քոյրերը — կրօնաւոր ի Լամբրոն: Տիկնանց տիկին Շահանդուխտ, իր որդիներուն չափահաս ըլլալէ ետքը[17], իբրեւ այրի, առաւ իր որդւոյն Ներսէսի օրհնութեամբ կրօնաւորական զգեստ եւ Մարիամ անունը, եւ կ՚ապրէր իբրեւ միանձնուհի: Իր օրինակին հետեւեցան իր այրի դուստրները Շուշան եւ Տալիթա: Անոնց հոգեւոր հայրութիւնը ստանձնած էր Ներսէս արքեպիսկոպոս, որ իր օթեւանն ունէր Սկեւռայ վանքին մէջ: Կենսագիրը Սամուէլ կը գրէ այս մասին. «Մայր սոցին Շահանդուխտ ամենաբարի եւ ճգնազգեաց, այժմ կրօնաւորեալ ի ձեռաց որդւոյ իւրոյ սուրբ հօրս, երկուքումբ դստերօքն՝ Շուշանաւ եւ Տալիթայիւ, որք նորին ճգնող շաւղացն հետեւին, զի մխիթա-

[17] Անդրանիկ դուստրը Մարիամ եւ կրտսեր որդին Գրիգոր վախճանած են 1190էն յառաջ:

*բեացին ի կեանս զաւակաց եւ եղբարց. եւ առքօք ընդ նախահանգուցեալսն փրկեսցին յիշխանութենէ խաւարի»* (540)։

## ԼԱՄԲՐՈՆ ՊԱՇԱՐՈՒԱԾ

*Ռուբինեան իշխաններն ի Կիլիկիա զէն ի ձեռին կը հետապնդէին իրենց իշխանութեան սահմաններն օրըստօրէ ընդարձակել նոր նուաճումներով*։ 1180*էն ետքը, օգտուելով Բիւզանդիոնի ներքին քաղաքական խառնակութիւններէն, Ռուբէն Բ. նուաճեց Մամեստիան եւ Անտիոքի բրինձէն գնեց Տարսոնն եւ իր գաւառը։ Կարեւոր էր իրեն համար նաեւ Լամբրոնը, զոր ուզեց Ռուբէն նուաճել. պաշարեց զայն ողջ տարի մը. բայց չկրցաւ տիրանալ անոր։ Յաջորդ տարին վախճանեցաւ Ռուբէն* (6 *մայիս* 1187) *խնդրելով մահուան անկողինին մէջ Լամբրոնացիներու «ներումն թողութեան»։ Լեւոն, Ռուբէնի եղբայրը, որ յաջորդեց, կապեց Լամբրոնացիներու հետ «անանջրպետ խաղաղութիւն»։ Բարեբաստիկ առիթի թողլով անոր նուաճումը։*

*Թէ այս պաշարման տարւոյն* (1185/6) *Ներսէս ո՞ւր կը գտնուէր, մեզի ծանօթ չէ։*

*Գիտենք միայն, որ Ներսէս յետ վերադարձին՝* 1181—1182 *տարիներուն պարապած է Սաղմոսի Մեկնութիւնը աւարտելու* (*Սամ.* 539)։ *Այս շրջանին կարճ ժամանակ մը առանձնացած է Սաղրուի վանքը, ուր սրբա-*

*գրած է ըստ քերթողական արուեստի Կոստանդին եպիսկոպոսի* 1179*ին թարգմանած Յայտնութեան Մեկնութիւնն. «Իսկ սրբաբանեցաւ ի նշանագրութենէն քերթողական արհեստիւ ի յապահով անապատս ի Ս. Գէորգ»* (*տե՛ս վարը էջ* 271)։

Գրիգոր Դ. կաթողիկոս ի Տարսոն։ *Ներսէս* 1185*ին հիւր կ'ունենայ Տարսոնի մէջ Հայոց կաթողիկոսը։ Նոյն տարւոյն հոկտեմբերին կը վերադառնայ Գրիգոր եպիսկոպոս, որ Հայոց կաթողիկոսին թղթատարն էր եղած առ Լուկիոս Գ. քահանայապետ* (1181—1185)։ *Բերած էր Լուկիոսէն թուղթ մը եւ Հռոմէական Ծիսարանը։ Զորոնք յանձնեց կաթողիկոսը Ներսէսի հայերէն թարգմանելու համար։*

Լեւոն Բ. իշխան, *որ Ռուբինեան իշխանութեան գլուխն անցած էր, եւ նորագոյն նուաճումներով Հայկական Կիլիկիոյ կցած էր Սելեւկիա, կը մշակէր Տարսոնի արքեպիսկոպոսին հետ սերտ մտերմութիւն։ Ինչպէս կը վկայէ Սամուէլ, «ի տօնս տէրունականս առ իւր տանէր զհայրս մեր եւ առ ի նմանէ վարդապետական խրատով եւ սրբոյ պատարագին նուիրագործութեամբ մխիթարէր հանդերձ բազմութեամբ ժողովոյն»* (*Սամ. Սկեւ., էջ* 548)։

*Ան գիտցաւ յարգել յանձին Տարսոնի արքեպիսկոպոսին անոր ազնուական ծնունդը, լեզուներու հմտութիւնն եւ անհամեմատ գիտութիւնը։ Եւ ժամանակը կը պահանջէր ու–*

նենալ այդպիսի տրամադրելի անձնաւորութիւն քաղաքական եւ եկեղեցական գործառնութեանց համար։ Լեւոնի ծառայութեան մէջ էին Ներսէսի եղբայրներէն ոմանք, մին Շահնշահ Լուլուայ բերդին իշխանն էր։

## Գ. ՓՐԵԴԵՐԻԿՈՍ ԿԱՅՍԵՐ ԸՆԴԱՌԱՋ

1187, յուլիս 5ին Սալահէտտին գրաւած էր Երուսաղէմը։ Քրիստոնեայ արեւմուտք ցնցուած էր ի լուր Ս. Քաղաքի առումին, որ դարէ մ'ի վեր Խաչակիր իշխաններու դրօշին տակ էր։ Կազմուեցաւ երկրորդ Խաչակրութիւնը. որուն գլուխ անցած էր ծերունին Փրեդերիկոս Բարբարոսա (Շիկամօրուս), Գերմանիոյ հզօր Կայսրը։ Կայսրը 1189 մարտին ճանապարհ կ'ելլէ բազմաձեռն բանակով ընդ ցամաք եւ մանր կռիւներով կը յառաջանայ. 1190 մարտ 18ին կը նուաճէ Իկոնիոնը։ Յունիսին կը կոխէ Հայկական Կիլիկիոյ սահմանը։ Բանակին մէջն էր արքայորդին Փրեդերիկոս Շվաբենի հերցոգը։

Կանխած էր Կղեմէս Գ. քահանայապետ 1189ի վերջերը գրել Լեւոն իշխանին եւ Գրիգոր Կաթողիկոսին, թէ նոր խաչակրութիւն մը ճանապարհ ելած է Կայսեր հրամանատարութեան տակ, որ ցամաքով կը յառաջանայ. եւ կը խնդրէր, որ Հայք նպաստամատոյց ըլլան անոնց՝ ամէն կերպ։

Երբ լսեց Լեւոն, թէ գերման խաչակիրներու բանակը կը մօտենայ հայկական սահ-

մանին, փութաց Հռոմկլայ ուղարկել Տարսոնի արքեպիսկոպոսը, հաղորդելու Կաթողիկոսին կայսեր ընդունելութեան համար տեսնուած նախապատրաստութիւնները։ Իրեն հետ էին Յովհաննէս եպիսկոպոս, իր հոգեւոր հայրը, եւ Գէորգ Սկեւռացի։

Հաւանօրէն Հռոմկլայէն վերադարձին (1190, մայիս) պատահած է դիպուածքս. Կարաւանը Մարաշի մօտերը յարձակում կը կրէ Թուրքմաններէն. մարդիկ կը սպանուին. կը կողոպտուին բեռները. անոնց հետ նաեւ Ներսէսի Պատարագի Մեկնութեան միակ ձեռագիր օրինակը։

Հասած խրխներով ողջանդամ տուն, հրաման կ'ընդունի Լեւոնէն նաւել դէպի Սելեւկիա, կայսեր ընդ առաջ։ Իրեն հետ էր Գէորգ։ Հազիւ ցամաք ոտք դրած՝ կը լսեն դժբախտ լուրը, թէ գետահեղձիկ եղած է կայսրը (10 յունիս 1190)։ Հոն կը ժամանեն նաեւ Կաթողիկոսն եւ Լեւոն։

Կայսեր որդին Փրեդերիկոս հերցոգն եւ Միւնստերի Հերման իշխան արքեպիսկոպոսը կը հիւրասիրէ Ներսէս Տարսոնի արքեպիսկոպոսարանը («որ առ իս իջեւանէր»)։ Կայսրը խոստացած էր Լեւոն իշխանին արքայական թագ։ Ներսէս Միւնստերի եպիսկոպոսին քով գտնելով թագաւորօրհնէքի լատին օրինակը՝ կը փութայ զայն թարգմանել Կաթողիկոսի հրամանով. յուսով, թէ Կայսեր որդին պիտի կատարէ իր հօր խոստումը։ Բայց ան

*թագաժառանգը չըլլալով, ձեռնապահ մնաց։ Այս շրջանին կը հային տողերս, զոր գրած է Ներսէս Լեւոն իշխանին ուղղած Թուղթին մէջ. «Եկեղեցիքն Լատինացւոց, որ աստ յԱրեւելս եւ որք յԱրեւմուտս, որոց հաճոյացաւ մեր իմաստութիւնս՝ ի գ[ն]ալն Ինքնակալին Հռովմայ ժողովով եպիսկոպոսացն, որք տեսեալ զմեզ հմուտ Կարգաց իւրեանց եւ մերոյս լուսաւորիչ՝ ի վերայ բարեզարդութեանն փառաւորեցին զՀայր որ յերկինս»* (էջ 225)։

10. Ի ՍԿԵՒՌԱ ԵՒ Ի ՏԱՐՍՈՆ

*Այս անցուդարձերն, ուղեւորութիւններն, Թուրքմաններու յարձակումը, Կայսեր մահը անշուշտ հոգեպէս եւ մարմնապէս ցնցեցին զինքը։ Ոչ փոքր մխիթարութիւն եղաւ իրեն Պատարագի Մեկնութեան ձեռագրին գիւտը, որ հասաւ իրեն* 1192*ին։ Յաջորդ տարին ձեռնարկեց Սողոմոնի գրքերուն մեկնութեան* (1193—1197)։ 1192*ին Գէորգ գրիչ նոր կարգաւորութեամբ Հարանց Վարք մը կ'օրինակէ «ընդ ձեռամբ հոգեւոր վերակացութեան տեառն իմոյ Ներսիսի արքեպիսկոպոսի սրբոյ, որ այժմ կայ ի գլուխ սուրբ եւ հռչակաւոր այս ուխտի միաբանութեան ժողովոյ եւ հովուէ զմայրաքաղաքն Տարսոն հանդերձ գաւառօք Կիլիկիոյ։ Եւ քանզի այս աստուածային այր ընթերցող գրոց Աստուծոյ եւ Մեկնող, այլ եւ փափաքանօք ի միա-*

*սին հաւաքող. որոյ եղբայրս այս Խաչատուր կամակատար սպասաւոր եւ մաքուր անձինն սրբութեամբ պաշտօնեայ»* (տե՛ս էջ 323):

1193*ին Հեթում եւ Ներսէս եղբարք Աւետարան մը գրել կու տան Կոստանդին գրչին եւ ծաղկողին ի յիշատակ Սկեւռայի Ամենափրկիչ եկեղեցւոյն. որուն Յիշատակարանէն կը քաղեմ տողերս. «Գրեցաւ տիեզերակեցոյց փրկչական սուրբ Աւետարանս յամս Թու՛ ՈԽԲ. ի հայրապետութեան Հայոց տեառն Գրիգորի եւ յեպիսկոպոսութեան Կիւլիկեցւոց նահանգիս տեառն իմոյ Ներսիսի, որ ստացաւ ի պատիւ եւ ի փառս սուրբ եկեղեցւոյս Ամենափրկչիս՝ զայս աստուածաբան մատեանս ի վանքս Սկեւռայ, առընթեր անմատոյց բերդիս Լամբրանի, որոյ տիրէ բարեպաշտ սեւաստոսս Հեթում, հարազատ եղբայր սորա: Քանզի երկոքեան սոքա ի վրդովումս աշխարհաց եւ գաւառաց, որք յայս աւուրքս հոգեւոր եւ մարմնաւոր անդորրութեամբ անվրդով պահեն զսոսա, որոց իշխենս. եւ զարդարեալ պայծառացուցանեն զայս աստուածաշէն միաբանութիւնս՝ հանգստարան նախնեաց իւրեանց: Յորոց լրումն փառաւորութեան եւ զայս աստուածախաւս սուրբ Աւետարանս հրաման ետուն ինձ Կոստանդեայ հոգեւոր երկամբք ծնեալ որդւոյ սատարութեամբ գրչի աւարտել եւ երանգաւք ծաղկոց զարդարել, զի ի խորհրդականժամու սրբոյ պատարագին աւր ըստ*

արէ ի տաճարս Աստուծոյ ընթերցցին։ Եւ ես ըստ կարի տկարութեանս յանդ հանի զպատուէր տերանց իմոց եւ իշխողաց։ Արդ աղաչեմ... զբանիցս Աստուծոյ զարդարող սիրով եւ հաւատովք, որակութեամբ նիւթոյս՝ զտէրս իմ Ներսէս եւ զիշխողս զպարոն Հեթում անմոռաց պահէք ի կարգ յիշատակացն որ ի սուրբ պատարագն...։

«Ստացաւղի սուրբ մատենիս՝ Ներսէսի գերահռչակ վարդապետի, որդիք լուսոյ, աղաւթս արարէք խնկանուէր հայցմամբ ի ժամ սոսկալի պատարագի զենլոյն Յիսուսի» (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., 563—566)։

1195ին կ'օրինակէ Ներսէս Տարսոնի մէջ Ս. Եփրեմի Մեկնութիւնները. ուր կը կարդանք Յիշատակարանս.

«Փառք եւ գովութիւն Նմա, որ սկիզբն է եւ կատարած. ի նուաստ վաստակաւորէ Ներսիսէ։

«Տառապեալ Ներսէս, վրիպեալ յաստուածային խոկմանէ, վերակացութեամբ Տարսոնի քաղաքին եւ որ ի նմա եկեղեցւոյն պաշտամամբ. զբաւսանս իմոյ զբաղմանցն ստացայ զվաստակ գրչութեան ի մատեանս աստուածային. լեզուաւ բազում անգամ զքաղաքականն ընլով հոգս, եւ հիւմամբ ձեռին եւ մտաց սաստ դեգերելով զբանականն եւ զկրթականն խոկմամբ յաստուածայինս կերակրելով զոգի. ո՜հ ո՜հ թերեւս ըստ մեծ Քրիստոսի

*գթութեանն պատահեցայց ի վերկնից արքայութիւնն բնաբարողաց: Ի թու՛՛ ՈԽԴ»* (*Նմանահանութիւնն՝ Սիսուան*, 88):

1196*ին իր Շահնշահ եղբօր քով Լուլուայ բերդին մէջ կը թարգմանէ յունարէնէ «Ծաղկաքաղ Օրէնսգրութիւնքն». «եւ դարձայ ի մեծ եկեղեցին Տարսոնի, յղկեցի զթարգմանեալն աստ գրչութեամբ»* (*ան՛ս էջ* 265):

11. ԴԵՍՊԱՆԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԱՌ ԱԼԵՔՍ Գ. ԿԱՅՍՐ

*Կը պատմէ Սմբատ.* 1196*ին Յունաց կայսրը* (*Ալեքս Գ.* 1195—1203) *պարոն Լեւոնին պատուական թագ մը ղրկեց եւ խնդրեց անկէ «զմիաբանութիւն սիրոյ». եւ ան ընդունեցաւ ուրախութեամբ: Իսկ յաջորդ տարին* (1197) *Լեւոն Կ. Պոլիս կը ղրկէ ընծաներով Տարսոնի տէր Ներսէս Լամբրոնացին, պարոն Օշինի որդին, եւ մեծազարմ իշխանն պարոն Հալկամ՝ իր քեռին եւ պարոն Բակուրանի եղբայրը եւ իր դուքէն պարոն Պօղոսը: Որոնք գացին եւ «ցուցին զկամս սիրոյ Լեւոնի յօժարութեամբ առ նոսա»*[19]*: Տէր Ներսէս իմաստուն եւ գիտուն անձ էր եւ ամէն բանով զարդարուած: Ժողովուեցան Յունաց իմաստունները անոր շուրջ եւ խօսեցան անոր հետ շատ օրեր հաւատքի եւ եկեղեցւոյ*

---

[19] *Ալեքս կայսեր ուղարկած թագի եւ դաշնադրութեան մասին տե՛ս նաեւ Ցովհ. Դարդէլ, Ժամանակագրութիւն Հայոց, Պետերբուրգ* 1891, *էջ* 14—15 (*գլ. ԺԲ*):

կարգերու մասին· եւ նա «հաւանեցոյց զնոսա խելօքն իւր» (էջ 108—109)։

Այս դեսպանութիւնը նպատակ ունէր յատկապէս յայտնել Ալեքս Կայսեր Հայոց Լեւոն Թագաւորի շնորհակալութիւնը իրեն ուղարկուած թագին համար եւ ներկայացնել անոր բարեկամութեան հաւաստիքները։ Ինչպէս կ'երեւայ Կայսեր հրովարտակին ընկերակցած էր նաեւ Գէորգ Բ. պատրիարքի (1192—1199) Թուղթը, որով կը խնդրուէր անշուշտ ի գլուխ հանել Յունաց եւ Հայոց եկեղեցիներու Միութիւնը, այն սկզբունքներու վրայ, որոնք գծուած էին վերջին անգամ Միքայէլ պատրիարքի եւ Գրիգոր Դ. Կաթողիկոսի Թղթերուն մէջ 1177 տարւոյն։ Ուստի Լեւոն Թագաւորի Թուղթին հետ տարած են հայ դեսպանները նաեւ Գրիգոր Զ. Ապիրատ կաթողիկոսի Թուղթը։ Կաթողիկոսը լիազօրած էր Ներսէս Լամբրոնացին, որ 1177ին Հռոմկլայի ժողովին մասնակցած էր, ներկայացնել Հայ եկեղեցւոյ տեսակէտները։

Այս հարցին շուրջը վիճուած է Եկեղեցւոյ մէջ Կայսեր, պատրիարքի եւ եպիսկոպոսներու եւ այլոց ներկայութեան։

Վիճաբանութիւնները կը տեւեն օրեր։ Ներսէս Լամբրոնացի առանձին՝ կը լուծէ Յունաց բոլոր առարկութիւնները։ Վերջին բանակցութիւնը տեղի կ'ունենայ Հոգեգալստեան (12 յունիս 1197)։ Ինչպէս կ'երեւայ, Հայ դեսպաններէն մէկն է, որ ներկայ եղած

վիճաբանութիւններուն, համառօտիւ ամփոփած է երկու կողման առարկութիւններն եւ պատասխանները: Կը վերջացնէ այսպէս. «Եւ յորժամ ել պատրիարքն, եկն ոմն իմաստասէր կրօնաւոր առ սուրբն Ներսէս եւ ասէ, թէ Առանձինն առեր զովութիւն ի մեծարապաշտաց եւ ի կղերիկոսաց եւ յիշխանաց եւ առ հասարակ յամենայն ժողովրդեան. զի որ ի մարտ ելեալն է՝ թէեւ ինքն զիտէ զիւր ամբոխ թափ տալն, բայց հայեցողքն առաւել եւս տեսանեն: Այսպէս եւ մեք զքո յաղթութիւնդ հակառակամարտին: Նոյնպէս եւ իշխանքն գային եւ ասէին զարմացմամբ, թէ մին մարդ զայսքան մեծ ժողովս յաղթել կացոյց: Ե՛ւ ի հարցանելն ե՛ւ ի սորոյն Ներսէսի պատասխանելն ամենեքեան ամ ի բերան եղեն: Եւ շնորհիւն Աստուծոյ Հայոց եկեղեցւոյն եղջիւրն բարձրացաւ. եւ զոր հոռոմ դատէին՝ գտաւ անապակ հայ եւ ճշմարտութեան վարդապետ: Եւ եղեւ զնոսա անօսրացեալ ի գիտութենէ եւ թանձրացեալ ի հեշտութիւն մարմնոյ[20]»:

Ներսէս առած էր իր հետ օրինակ մը Միաբանութեան խնդրոյ առթիւ գրուած (անշուշտ իրմէ կազմուած) թուղթերու հաւաքածոյքէն. որուն վերջը կը կարդանք Յիշատակագրութիւնս.

Բանք Ներսէսի արքեպիսկոպոսի Տարսոնի մայրաքաղաքի:

[20] Խօսակցութիւնք Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ, էջ 22—23:

«Ներսէս նուաստ առաջնորդ մատենիս՝ գրչութեամբ որդւոյ իմոյ Գրիգորիսի, ածի զսուրբ տառս ընդ իս ի Կոստանդնուպոլիս ի թուին Հայոց ՈԽԶ (1197)։ Եւ աստ նամակաւքս արարեալ խօսակցութիւն՝ զտառք զսոսա անծանօթ ի սոցանէ. Թանձրաբարբառք եւ հրէական կամաւք ընդ նիւթս կապեալ. որք ոչ անխորժեն ծառայել Աստուծոյ նորոգութեամբ Հոգւոյն. այլ հնութեամբ գրոյն։ Եւ սորջացեալ ի հոգեւոր կամս մեր՝ դարձաք յիմաստախոհ յուսոյ սոցա ածօթով»։

1197ի երթն ի Կ. Պոլիս կը յիշէ Ներսէս երկիցս Աստկաց եւ Ժողովողի Մեկնութեանց վերջը։

## 12. ԼԵՒՈՆ ԹԱԳԱՊՍԱԿ

Գերմանիոյ Կայսեր Փրեդերիկոս Շիկամօրուսի գրաւոր խոստումը, թէ պարոն Լեւոնի պիտի շնորհէ թագ, թէեւ իր մահուամբ չիրականացաւ, բայց Լեւոն հետապնդեց ստանալ զայն հանգուցեալի ժառանգէն՝ Հենրիկոս Կայսրէն։ 1196ին Հայոց կաթողիկոսն Գրիգոր Դ. ուղարկեց պատգամաւորութիւն մը առ Կայսրն Համայեցւոց։ Հենրիկոս յանձն առաւ կատարել իր հօրը խոստումը։ 1197ին Կոնրադ եպիսկոպոսը, որ քարտուղարն էր Կայսեր, նաւեց գերմանական խաչակիրներու հետ դէպի Պաղեստին։ Իրեն յանձնուած էր երկու ոսկեղէն թագ, մին Կիպրոսի Ամօրի իշխանին եւ միւսը Հայոց պարոն Լեւոնին համար։

Ֆրեդերիկոս Կայսեր խոստումի համբաւը
տարածուած էր։ Ինչպէս Սալահեդդին,
նոյնպէս Յունաց Կայսրը նախանձախնդիր
եղան ուղարկել Հայոց իշխանին թագեր,
իրենց դաշնակից ունենալու համար մեծա-
գոր Լեւոնը։ 1197ի վերջերը հասան Լեւոնի
արքունիքը Ալեքս Կայսեր պատգամաւոր-
ները պսակելու իշխանը ականակուռ թա-
գով։ Յաջորդ տարին ստացաւ Լեւոն Հենրի-
կոս Կայսեր ոսկեղէն թագը։ Թագադրու-
թիւնը տեղի ունեցաւ Տարսոնի մէջ։

Այսպէս ենթադրել կու տան Ներսէսի
երկու Յիշատակարանները, գրուած ՈԽԷ
(1178) տարւոյն, որոնք են. 1. Ներսէս «ՈԽԵ»
(կարդա՛ ՈԽԷ) տարւոյն կը թարգմանէ գիրքն
Օրինաց իր եղբոր Շահնշահի քով Լուլուայ
բերդին մէջ, որ նոր նորոգուած էր. «եւ ըն-
դարձակեաց նուաւ զՀայաստանեայս թա-
գաւորի Լեւոնի ձեռն, որ ի Կիլիկիայս եւ
Ասորւոց գաւառացն տիրէ» (տե՛ս էջ 265)։
2. «ՈԽԷ» տարւոյն Յովհաննու Յայտնու-
թեան վերջը կը գրէ. «յորում ամի վերապա-
տուեցաւ թագաւորն Հայոց Լեւոն... որոյ
հօչակ արութեանն շարժեաց զմեծ ինքնա-
կալսն հին Հռոմայ՝ զՀենրի եւ Նոր Հռոմայ
զԱլէքս, որք պսակեցին զսա քարամբք պա-
տուականօք յեկեղեցի Տարսոնի, որ իմ ա-
նարժանութեամբս հովուի» (տե՛ս էջ 276)։

Կ. Պոլիսէն վերադարձէն ետք։ Ներսէս
օգտուելով գեղեցիկ առիթէն, չմեկնած մայ-

*րաքաղաքէս աչք մը կը նետէ պատրիարքական գրադարանի վրայ. ան կը փնտռէ հոն Սողոմոնի գրքերու եւ Յոբի գրքին մեկնութիւնները: Զբաղած ըլլալով յատկապէս Առակաց գրքին Մեկնութեամբ, հետաքրքիր էր գիտնալու, թէ ի՞նչպէս մեկնած են զայն նախկին մեկնիչները: Կը գտնէ Մեկնութիւն մը. կ'ուսումնասիրէ զայն. եւ կու գայ այն համոզման թէ ինքը շատ հեռու չէ այդ մեկնութիւնէն: Կը վերադառնայ Սկեւռայ: Առակաց եւ Ժողովողի Մեկնութիւններուն կցած է մանր յիշատակագրութիւններ, ուսկից կ'իմանանք. «Յայս ամ գնացեալ իմ ի Կ. Պոլիս... եւ եկեալ ի յարկս իմ... եւ ի Սկեւռայ օթեւանքս բնակեալ ի հանգիստ»: Ժողովողի Մեկնութիւնը. «ի ՈԽԶ. յորում ամի ժամանեալ իմ ի Կ. Պոլիս... աւարտեցաւ ի Տարսոն քաղաքի առընթեր մեծի եկեղեցւոյս» (տե՛ս վարը էջ 143):*

Լեւոն Ա. թագաւոր կ'օծուի: *Պարոն Լեւոն, որուն 1190ին խոստացած էր Փրեդերիկոս Բարբարոսա Կայսր թագաւորական թագ, 1196ին յիշեցուցած էր անոր պայազատին Հենրիկոսի: Սա 1197ին յանձնած էր իր քարտուղարին Կոնրադ եպիսկոպոսին երկու ոսկեղէն թագ, մին Կիպրոսի իշխան Ամօրիի եւ երկրորդը Հայոց Լեւոն իշխանին համար: Կոնրադ 1197ին ի Նիկոսիա պսակեց զԱմօրի թագով: Որովհետեւ հարկադրուած էր Կոնրադ իր նաւատորմիղով ի Պաղեստին Խա-*

չակիրներուն օգնութեան անապարել, ուրիշ ժամանակի թողուց Լեւոնի թագադրութիւնը։ Լեւոն Սիսի Յովհաննէս արքեպիսկոպոսը Կոնրադին պատգամաւոր ղրկեց. նոյն տարւոյն սեպտ. 28ին կը վախճանի Հենրիկոս Զ. Կայսր։ Գերմանացի խաչակիրք կ'որոշեն վերադարձ։ Կոնրադ Լեւոնի թագադրութեան օծումը կը յանձնէ իր համանուն Կոնրադ Վիդդելսբախի Մոգունտիոյ արքեպիսկոպոսին (1198 նոյեմբեր)[22]։

Ձ. Ալիշան կը համարի թէ Յովհաննէս արքեպիսկոպոս երբ իբրեւ պատգամաւոր գնաց Պտղոմայիս առ Կոնրադ քարտուղար, վերադարձին «եբեր ընդ իւր ի գլխոց մեծի քարտուղարի Կայսերն եւ Նուիրակի Քահանայապետին՝ զեպիսկոպոս ումն կամ զոմանս, որք կատարեցին զպատգամաւորութիւն իւրեանց. խօսեցան, վիճեցան, հաւանեցան, երդուան եւ կնքեցին զպայմանս յելս 1197 կամ ի սկիզբն 1198 ամի. եւ այնուհետեւ չմնայր ինչ այլ, բայց պատրաստել զհանդերձանսն. եւ թագաւորեցուցանել զԼեւոն», որ «ի նմին ամի (1198) թագեալ էր, զուգէ եւ կանխաւ եւս» (Սիսուան, 469)։

Այսպէս կը տրամաբանէ Ալիշան, հաշտեցնելու ժամանակագրութեան հետ այն տեղիքները, զորոնք կը գտնենք Կիրակոս Գանձակեցւոյ եւ Ներսէս Լամբրոնացւոյ Յիշատակարաններու մէջ։ Գանձակեցւոյ համա–

---

22 Սիսուան, էջ 464։

ձայն Քահանայապետի նուիրակները պահանջքներ կը դնեն. Հայոց եպիսկոպոսները չեն համարձակիր ընդունիլ: Լեւոն իր վրայ կ'առնէ պատասխանատուութիւնը եւ կը հաստատէ նուիրակին պահանջքներու յանձնառութիւնը: Բայց նուիրակը կը խնդրէ առ այս 12 եպիսկոպոսներու վկայութիւնը. անոնք կը դնեն իրենց ստորագրութիւնը: Կիրակոս կը գրէ, թէ ստորագրող եպիսկոպոսներէն մէկն էր «եպիսկոպոսն Տարսոնի Ներսէս Լամբրոնացի» (Կիր. 76):

## 13. ԲԱՐԵՆՈՐՈԳԻՉԸ

Օտարները, որոնք ծանօթ էին Տարսոնի արքեպիսկոպոսի Գործին, նմանցուցած էին զանիկա Տարսոնցի Պաւղոս առաքեալի հետ: Չէին սխալած: Առաքեալի նախանձախնդրութիւնը նորածին Եկեղեցւոյ պայծառութեան, բորբոքած էր իր սրտին մէջ: Կը տենչար համայն քրիստոնեաներու Միութիւնը միոյն Քրիստոսի դրօշին տակ. կը գործէր Հայաստանեայց Եկեղեցւոյ հովանւոյն տակ. Նախանձախնդիր պայծառացնելու զայն ներքուստ եւ արտաքուստ քրիստոնէական շունչով եւ փայլով:

Ան գտած էր հայրենի եկեղեցին իր մարտիրոս ժողովուրդով ընդ հուր եւ ընդ սուր անցած, Մայր երկիրը այրեցուեր, օտարադէն բռնաւորներու լուծին տակ հարստահարուած, ժողովուրդը ցիր ու ցան վայրավա-

տին, օտար երկինքներու տակ գաղթական, արիւնով եւ սուրով ի խնդիր նոր Հայրենիքի Կիլիկեան դաշտավայրերու եւ լեռնակողմերու մէջ։

Հայրենասէր պատանին, որ ընտրած էր եկեղեցական կոչումը, կը քրքրէր նախնեաց գրաւոր աւանդութիւնները, ծանօթանալու իր Հայրենիքի անցեալ փառքին, իր ժողովուրդին մշակոյթի փուլերուն։ Կը հարցաքննէ հին եւ նոր գաղթականները եւ անցորդները, իմանալու Մայր Երկիրին եւ գաղթ. աշխարհիններկայ կացութիւնն եւ ժողովուրդին Մշակոյթի պայմանները։ Ան կը շրջի Կիլիկիայի եւ դրացի երկիրներու քաղաքներն ու վանքերը, կը յաճախէ զանազան քրիստոնեայ ազգերու եկեղեցիները, յարաբերութեան մէջ կ՚ապրի այդ ժողովուրդներու հետ, դիտելով եւ հետաքրքրուելով անոնց նիւտուկացով եւ մշակոյթով։

Պատանին Ներսէս իր երիտասարդական հասակը հագիւ թեւակոխած՝ կ՚ընդունի Գրիգորիս Դ. Կաթողիկոսէն եպիսկոպոսական ձեռնադրութիւն Տարսոնի եւ Լամբրոնի թեմերու վրայ (1175)։ Ան չ՚աճապարեր Տարսոն, ցոյց տալ ինքզինքը իր ժողովուրդին։ Ան կը զգար ինքզինքը տակաւին «Մանուկ», եւ տակաւին կարօտ ուսման, թէեւ իր վաղահաս միտքով տէր էր ծերունական խելամտութեան։ Կ՚առանձնանայ Սաղրուի անա-

պատը դարմնելու ծրագիրներ իր ապագայ գործունէութեան համար։

Ուսումով, շրջահայեցութեամբ, հարցասիրութեամբ ձեռք բերած տեղեկութիւնները Հայաստանեայց Եկեղեցւոյ անցեալի եւ ներկայի մասին կը դասաւորէ, զանոնք կը համեմատէ քոյր եկեղեցիներու մէջ տակաւին կենդանի կարգ ու սարքերու հետ. եւ կը գրէ իր Պատարագի Մեկնութիւնը՝ յարակից մասերով։

Այս տեղ կը նկարագրէ Հայոց եկեղեցւոյ ժամանակակից վիճակը, երկրի եւ գաղթաշխարհի մէջ. զոր գտած է շատ նսեմ։ Հին կարգերը, որոնք գոյութիւն ունէին ի հնումն եւ այժմ կենդանի էին քոյր եկեղեցիներու մէջ, աղաւաղուած են եւ եղծուած։ Մոռցուած են հին աւանդութիւնները, եւ տեղի տուած նոր սովորութիւններու. շիջած է Եկեղեցւոյ պայծառութիւնը եւ կ՚իշխէ խաւարը։ Եկեղեցիները չունին իրենց առաջնորդները, հօտը իր հովիւը. խորանը իր պատարագիչներն եւ բեմը իր քարոզիչները։

Նորն Պաւղոս սրտացաւութեամբ ձայն կը բարձրացնէ. աղէտին դարման կ՚առաջարկէ։ Լոյս կը ճառագայթէ խաւարը մերժելու, զանգերը կը ղօղանջէ զարթեցնելու ծանրաքուն թմբիրէն։ Դժբախտաբար ժամանակակիցները չուզեցին բանալ աչքերը, եւ խցեցին ականջները։ Ամէն կողմէ լուեցաւ սպառնալիքը. Մի մարգարէանար։

Կ'արժէ արձանագրել այստեղ Համաժողովին այն պատգամները, զորոնք հնչեցուց Ներսէս Լամբրոնի բարձունքէն. Ճշմարտութիւններ, որոնք կ'արժեն բոլոր ժամանակներու համար:

1. Պէտք է բառնալ աթոռներու ժառանգաբար յաջորդութիւնը, ինչպէս կաթողիկոսներու, նոյնպէս եպիսկոպոսներու, որոնք պէտք է յաջորդեն ընտրութեամբ:

2. Պէտք է խափանել կաշառքով եւ այլազգի իշխողներու միջնորդութեամբ եկեղեցական աթոռներու տիրանալը:

3. Քաղաքի եւ գիւղի եկեղեցիները կը պատկանին եպիսկոպոսներու եւ ոչ մանաւորներու. այդ եկեղեցիներու երէց պիտի նշանակէ եպիսկոպոսը. եւ ոչ թէ ժառանգաբար պիտի փոխանցուին ուրիշներու:

4. Եպիսկոպոսները իրենց նիստը պէտք է ունենան քաղաքներու մէջ եւ Կաթողիկէ եկեղեցւոյ կից. եւ ոչ թէ վանքերու մէջ:

5. Եպիսկոպոսներն եւ առաջնորդները պէտք է երեւան խորանի վրայ իբրեւ պատարագիչ եւ քարոզիչ:

6. Պէտք է խափանել քաղաքներու եւ գիւղերու մէջ առատ թիւով եկեղեցիներ կառուցանել չահադիտութեան համար:

7. Պէտք է խափանել անչափահասներն եւ անուսները եկեղեցական աստիճաններու բարձրացնել:

8. *Պէտք է պաշտամունքին մասնակցին պաշտօնեաները իրենց աստիճանով եւ աստիճանին սեպհական զգեստով (դպիր, սարկաւագ, քահանայ)։*

9. *Կրօնաւորութիւնը առանձին կարգ է. անոր կը պատկանի կնգուղը։*

10. *Կրօնաւորը կարող է կոչուիլ եկեղեցական աստիճաններու (սարկաւագութեան, քահանայութեան). աստիճանի փոփոխութիւնը կը բերէ իրեն հետ զգեստաւորութեան փոփոխութիւն։ Նախ կրօնաւորիլ. եւ ապա աստիճաններու բարձրանալ։*

11. *«Չէ պարտ եկեղեցականաց կնկղով կալ յեկեղեցւոջ»։*

12. *Պէտք է խափանել վանական եկեղեցիներու մէջ «քան զԹիւ բնակողացն զսեղանս բազմացուցանել»։*

13. *Պատարագի խորհուրդը պէտք է կատարուի եկեղեցւոյ մէջ. խորանը բաց պէտք է ըլլայ ի տես ժողովուրդին։*

14. *Ժողովուրդը պատարագին պէտք է ներկայ գտնուի եւ ոչ թէ եկեղեցիէն դուրս նախագաւիթի կամ եկեղեցւոյ կից տուներու մէջ կանգնի։*

15. *Պաշտամունքի զգեստները պէտք է ըլլան «յարգոյ եւ ոչ ի կտաւոյ»։ Զգեստներու վայելչութիւնը արտաքին փայլը պիտի ըլլայ խորհուրդին վեհութեան։*

16. *Սաղմոսերգութիւնները պէտք է կատարուին յստակ արտասանութեամբ եւ մեղմաձայն երգեցողութեամբ։*

17. Ինչպէս եկեղեցականները պարտաւոր են պատարագելու, նոյնպէս ժողովուրդը պէտք է հաղորդուի Ս. Խորհրդոյն, առանց չքմեղելու ինքզինքը, թէ արժանի չէ:

18. Վանքերուն եղած նուէրները պէտք է ըլլան ձրի եւ ոչ թէ փոխարէն պահանջքով:

Ներսէս Լամբրոնացի կ՚աւարտէ այս հրահանգները դիտողութեամբս. Գրեցի, կ՚ըսէ «անձին միայն ի յօգուտ եւ ոչ թէ յայլս սփռել: Է՞ր վասն: Քանզի անկար է յայլս ձգել այսօր զիմաստութիւնն, այնու զի գերեալ տեսանեմք զեկեղեցի Քրիստոսի որ ի մեզ ըստ մարմնոյ ի մարմնական ժառանգութիւն. եւ գերեալ ոչ յօտարաց կամ ի հեթանոսաց, այլ յանմիտ մերոց կամաց եւ ի տմարդի վերակացուաց. որք քարշեն տառապեցուցանեն զնա. եւ առեալ բանի ի կուր բարբարոսաց առամանց ձգեն: Ո՛վ աղետիցս, ո՛վ աշխարհելի խմաստնոց գործոցս: Բայց սակայն եւ ոչ ողբալոյ տան թոյլ, զափս ի բերան եղեալ խփեն զջատագովաց ճշմարտութեանն զլեզուս. կա՛մ այպանելով երգիծանեն, կա՛մ սաստիւ կափահարեն, միայն զի մի՛ ի ատութեան սուտք երեւեսցին...: Ես զոր ծանեայ գուշակեմ...» (518):

Արդեամբք ալ իր բազմիցս փորձերը, ներկայացնել աշխատութիւնս Կաթողիկոսին, Եպիսկոպոսներու եւ Իշխաններու, ձախողեցան: Ոչ մէկ կողմէ գտաւ ունկնդրութիւն: Գրիգոր Դ. Կաթողիկոս մահուան անկողնոյն

մէջ խոստովանած է Ներսէսին. «Հարստահարեալ եմ զքո ճշմարտասիրութիւնդ մարդահաճոյ կամօք. ներողութեամբ թող ինձ» (Թուղթ առ Լեւոն, 226/7)։

Այս անտարբերութիւնը թէեւ սրտցաւ պատճառեց իրեն, սակայն չմատնեց զինքը յուսահատութեան։ Ինչ որ գրով աւանդած էր, ջանաց անձամբ իրագործել Տարսոնի եւ Սկեւռայի մէջ։

Սկեւռայի մէջ պատրաստեց հոգելից եւ գիտուն պաշտօնեաներ։ Այն տեղ պայծառացուց եկեղեցական կարգերը, Պատարագի խորհրդածութիւնն եւ ժամակարգութիւնը. նոյնպէս Տարսոնի եկեղեցւոյն տուաւ հրապոյր, ներքին եւ արտաքին բարենորոգումներով. որոնք գտան տոհմիկներէ եւ օտարներէ հիացմունք եւ բաւականութիւն։

1195ին կը գրէր պարոն Լեւոնին. «Եւ Աստուծոյ կամօք ի ճշմարիտ ճանապարհի եմ եւ մեծամեծ ուղղութեանց, որք նսեմացեալ էին, նորոգիչ ի Հայս — թէ ընդունիք — զոր գիտեմ եւ ձեզ վարդապետեմ եւ առաջնորդեմ ձեզ ընդ ճանապարհն որ առ Աստուած ածէ. իսկ եթէ անտես առնէք, եւ ոչ այնպէս լսեմ. եւ ասեմ առ Աստուած. Տէր դու գիտացես, զի զարդարութիւնս քո ոչ ծածկեցի ի սրտի իմում. ասացի եւ ոչ թաքուցի զնոյն ի ժողովրդենէ մեծէ. եւ նոքա շուրջ պատեն զինեւ չարեօք, որոց ոչ գոյ թիւ։ Եւ ամենայնին յօժարութեամբ տանիմ, զի

զՔրիստոս շահեցայց եւ գտայց ի նմա: Եւ բաց այժմ յուսոյ գնամ խնդալով յերեսաց ատենի քո վասն Քրիստոսի անարգեալ»:

Կիրակոս Գանձակեցի կը գրէր, թէ Ներսէս Սկեւռացի մէջ «կարգեաց զպաշտօն վանիցն ըստ օրինակի այլոց ազգաց՝ սարկաւագաւ եւ դպրաւ եւ անծածկոյթ գլխաւ· զոր յոլովք զարմէին ի Հայոց» (63):

Այս զարմացողներն էին Հաղբատացիք, որոնց գլուխն էր Գրիգոր Տուտէորդի: «Նոքա յինձ երկու երեք թուղթ են գրեալ նախատինք. ես գիրք մի բովանդակ եմ գրեալ զՀայոց ազգիս անկարգութիւնս որ յետոյ մտեալ են: Համեմատեմք իրերաց, թէ ո՞ զօրանայ առ ճշմարտութիւնն եւ ի գրոց ձայնակութիւնն, ի՞նչ թէ նոցայն» (Թուղթ առ Լեւոն, 240) կը գրէր Ներսէս առ Լեւոն: «Սոցա ոչ կամեցաք ոչ խօսակից լինել գրով եւ ոչ ընդունելութիւն ունել բանին. եւ ոչ նոցին կայր առ մեզ լեզուագարութիւն եւ ոչ ապերասանութիւն ի տեառն մերոյ Գրիգորի աւուրսն. յորում նոյին կարգաւս երեւելի էաք բնաւիցն» (219):

Հաղբատացիք սկսան «լեզուագարել» Գրիգոր Կաթողիկոսի մահէն (1193) ետքը. յատկապէս 1194էն, երբ Գրիգոր Ե. բանտարկուեցաւ եւ ապա քարավէժ եղաւ:

Գրիգոր Ե. տակաւին «մանուկ», «տղայ» էր, երբ իբրեւ թեկնածու կաթողիկոսութեան ներկայացաւ կամ ներկայացուեցաւ,

*վան զի ծնունդով Գրիգոր Դ.ի քեռորդին, ուստի նկատուած էր առաջին «ժառանգ» կաթողիկոսական աթոռին: Իր ընտրութեան դիմադրած էր Ներսէս, նախ որ թեկնածուն անչափահաս էր, հասակով եւ կրթութեամբ, եւ երկրորդ առհմականութեան չարաչար սովորութեամբ յառաջ կը կոչուէր: Բայց եւ այնպէս, Հաղբատացիներու պնդումի վրայ ընտրուեցաւ ան կաթողիկոս եւ ձեռնադրուեցաւ, պարոն Լեւոնի հրամանով, Ներսէսէն: Այս մասին կը գրէ Ներսէս. «Ձեր աստուածապաշտութիւնդ կոչեաց զմեզ ի մանուկ կաթուղիկոսին ձեռնադրելն. յետ այնր արտաքս հանիք յաթոռոյն. եւ կոչեցիք (զիս) ի քննել. հրաժարեցաք մի եւ երկիցս եւ չորիցս եւ հնգիցս գիր հրամանի ձեր զմեզ բռնադատեաց: Եկաք եւ զոր ինչ արարիք յայն ժողովն՝ համաձայնեցաք: Գիտէաք եւ մեք զի մարդիկ էին մեռեալ ի Կլայն. եւ արծաթ էիք առեալ անտի եւ ոսկի. եւ չէաք ակար լեզուաւ քան զնոսա, եւ ոչ ի ձեզ ի նոյն խորհրդակից որպէս զոմանս... բայց իբրեւ Աստուծոյ հրամանին իշխանութեանդ հնազանդեցաք» (էջ 219/20): «Իսկ եթէ այնր աւուր խաժամուժն ի քո իշխանութենէդ զանդիտեցին եւ զմեզ նպաստակ նախատանաց փոխանակ քո արարին, եւ զամբոխեալ ոգխոն եւ զնափառան ընդ ինքեանս շարժեցին, դու զնախատինս նախատչաց քոց յանձն առցես ընդ նոսի՞ն նախատես» (220):*

«Տուտէորդին եւ ժողովք չարաց Հաղբատացիքն ոչ քննեցին եւ ոչ հաւատացին մեր արդար խրատմբք զՄանուկն նախանձելոյ ի (ապ. եւ) չարակնելոյ իշխանութեանն, որում առընթեր կայք եւ տեղեակ: Այլ ի բացեայ գոլով եւ ի նորին ծանօթութենէն եւ ի մեր ճշմարտութենէն, կամեցաւ ունել մանուկ հայրապետ...: Անտես արարին զաստուածահաստատ Իշխողին գիր եւ զսուրբ ժողովոյ եպիսկոպոսացն, որ ընդ քեզ եւ զարժանաւոր եպիսկոպոսին հրեշտակութիւնն. եւ զՄանկանն անհանճարի գիր այնպիսի մանկանց պատգամաւորութեամբ պատուեցին ...եւ զքեզ... եւ զմեզ ընդ քեզ յանդուգն բերանովք զրպարտեցին հրեշտակութեամբ միոյ մոնոզոնի, որոյ եւ անունն Աստուծոյ էր անգիտելի» (222/3):

Ներսէս այս տողերու մէջ կը յիշեցնէ Իշխողին Լեւոնի, Գրիգորիս Դ. կաթողիկոսին մահէն ետքը Գրիգորիս Ե.ի ընտրութեան պարագաները. երբ Կիլիկիոյ եպիսկոպոսները, յատկապէս Ներսէս ընդդիմացան անոր կաթողիկոսանալուն, բայց Հաղբատացիք պնդեցին եւ ի վերջոյ Լեւոն ակամայ տուաւ իր հաւանութիւնը: Բայց քիչ յետոյ, երբ դժգոհութիւն յայտնուեցաւ կաթողիկոսին դէմ եւ հարկադրուեցաւ Լեւոն ուղարկել Յովհաննէս եպիսկոպոսը Հռոմկլայ որպէս զի կալանաւորէ կաթողիկոսն եւ Կիլիկիա բերէ, Հռոմկլայեցիք ոտք ելան ի

նպաստ կաթողիկոսին․ շրջապատեցին Հռոմկլան․ դուրսէն եւ ներսէն նետեր արձակուեցան, մարդիկ սպանուեցան․ ի վերջոյ յաջողեցաւ եպիսկոպոսը կալանաւորը փոխադրել Սիս․ ուր բանտարկուեցաւ Կոպիտառայ բերդին մէջ։ Մինչ դուրսը դատ կը վարուէր, կաթողիկոսը փորձեց գիշերախառն փախչիլ բերդէն, բայց քարավէժ եղաւ եւ վախճանեցաւ։

Որովհետեւ Ներսէս ընդդիմացած էր անոր թեկնածութեան, համարուեցաւ թէ անոր դրդումով տեղի ունեցած է Կաթողիկոսին կալանաւորութիւնը։ Նոյն իսկ ըսող եղաւ թէ նաեւ Ներսէս մէկն եղած է այն եպիսկոպոսներէն, որոնք կը ձգտէին կաթողիկոսական աթոռի (Օրմանեան)։

Ամէնն ալ գիտէին սակայն, թէ կալանաւորութիւնն եղած էր Լեւոնի հրամանով․ բայց վասն զի չէին համարձակեր Իշխանն մեղադրել, նախատեցին Տարսոնի անմեղ արքեպիսկոպոսը, որ ունեցաւ արիութիւնը յանձն առնել ամէն զրպարտութիւն։ Մեղմորէն կը հարցնէ իշխանին․ «դու զնախատինս նախատչաց քոց յանձն առողս ընդ նորի՞ն նախատես» (220)։

Ոչ միայն օրուան խաժամուժ ամբոխէն նախատուեցաւ, այլ եւ ստացաւ Հաղբատացիներէն նախատալից թուղթեր, զորոնք իր իմաստութեամբը թողուց անպատասխանի։ Անոնք դիմեցին Լեւոնին, բամբասելով Ներ-

ական բարենորոգումները։ Բայց Ներսէս ուշագիր ըրաւ Իշխանապետը, թէ անոնց նպատակը ոչ թէ իր բարենորոգումներն խծբծելն է, այլ Բարսեղ Անեցին կաթողիկոսութեան գահ բարձրացնելը։ Առանց Հաղբատացիներու ձայնը հարցնելու կաթողիկոս ընտրուեցաւ Գրիգոր Զ. Ապիրատ։

## ԲԱՐՍԵՂ ԱՆԵՑԻ

Լամբրոնացի կը գրէր իր թղթին մէջ Լեւոնին. «Որք վասն զԱնեցի արքեայն... ի կաթուղիկոսութիւն քարշելոյ՝ զմեզ նախատեն եւ նմա վկայութիւն տան եւ մեզ պարսաւանս... զի նոցա կամացն լրումն Բարսղի կաթողիկոսութիւնն է եւ ոչ իմ ի ճշմարտութենէ մոլորումն» (227/8)։

Յիշատակագրի մը համաձայն Բարսեղ արքեպիսկոպոս 1172ին «եկեալ ի գաւառէն Մաշենոյ... եղեւ... վերատեսուչ համայն քրիստոնէից Հայոց, որ ընդ զաւապանաւ թագաւորութեանս Վրաց, յաջորդեալ զաթոռ տեառն Գէորգայ (առաջնորդին Հաղբատայ)... էր ի Հարց եւ ի Հաւուց ազատ յազատաց եւ մեծազգի ի մեծազգեաց»։ 1173ին, երբ վախճանեցաւ Ներսէս Կլայեցի, ներկայացուած է Անիի արձանագրութեան մը մէջ «աստուածապատիւ եւ հոգեւոր տէր Բարսեղ Հայոց Կաթողիկոս» (Շիրակ, 85)։ Բայց երբ ընտրուեցաւ Գրիգոր Դ., «կաթողիկոսն» վերածուեցաւ «հայրապետի»։ 1193ին

*Գրիգորիսի մահէն ետքը դարձեալ մէջտեղ կ'ելլէ «կաթողիկոսը», այսպէս Անիի Ս. Փրկիչ եկեղեցւոյ արձանագրութիւնը գրուած է «յամս աստուածապատիւ եւ հոգեւոր տեառն Բարսղի Հայոց կաթողիկոսի... յամի ՈԽԲ* (1193) *թուականիս» (Բասմաջեան, Թ.* 31, *էջ* 47)։ *Կ'ընտրուի Գրիգոր Ե.* (1193/4) *եւ կը վախճանի* 1195*ին։ Հոռոմոսի վանքին արձանագրութիւններէն մին է. «Ի թւ. ՈԽԴ. յառաջին ամի* կաթողիկոսութեան *(ապա կրով լեցուած) տեառն Բարսղի եւ ի տէրութեան վանացս Գրիգորոյ...» (Ծիրակ,* 22)։

*Բարսեղ* 1177*ին մասնակցած էր Հռոմկլայի ժողովին իբրեւ «Բասիլիոս արքեպիսկոպոս Թագաւորանիստ քաղաքին Անւոյ» (Պատճառ,* 198)։ 1187*ին կը յիշուի իբրեւ «եպիսկոպոս Հաղբատայ» (Յովսէփեան, Ա.* 522)։ 1195—1220 *տարիներուն Հաղբատի եպիսկոպոսն էր Յովհաննէս (անդ.,* 591, 735, 749, 795)։

*Այս վկայութիւնները ցոյց կու տան թէ Հաղբատացիք* 1172/3*էն սկսեալ կը ձգտէին կա՛մ կաթողիկոսական աթոռը միւսանգամ փոխադրելու Անի եւ կամ ունենալ իրենց սեպհական կաթողիկոսը։ Եթէ* 1173*ին ան կաթողիկոս կը հռչակուի, պէտք է գաղտնի կաթողիկոս օծուած ըլլար։ Օրինակ ունէին Աղթամարցիները։ Այս մտածումները կը հաստատէ* 1195*ին արձանագիրը, որ նոյն տարին «Ա. ամն կաթողիկոսութեան Բարսղի» կ'ար-*

ձանագրէ: Ուստի իրաւունք ունէր Ներսէս չեշտելու թէ Հաղբատացւոց «կամացն լուծն Բարսղի կաթողիկոսութիւնն է»: Բայց նաեւ այս անգամ չյաջողեցան:

Ներսէս, որ յարձակում կրած էր Ձորոյ գետացիներէն նախատալից թուղթերով, եւ ամբաստանուած էր անոնցմէ Իշխանին առջեւ, հարկադրուեցաւ մերկացնել անոնց դիմակը յեցած այն տեղեկութիւններու վրայ, զորոնք լսած էր եկուորներէն: Իրեն ծանօթ էին Գրիգոր Տուտէորդւոյ թուղթերն գրուած 1177ի ժողովին առթիւ Գրիգորիս Դ. կաթողիկոսին, եւ վերջինոյս պատասխանները: Տուտէորդին նշաւակուած էր հոն իբրեւ հերձուածող: Լամբրոնացին քաջ գիտէր այն չարժաութիւնները, որոնք գլխած էին իր թշնամիները, եւ այն նպատակները, որոնց հետամուտ էին անոնք: Եւ որովհետեւ այդ նպատակները որ եւ է աղերս չունէին Լամբրոնացւոյ Գործին հետ, բաւական կը համարիմ այն, որ յառաջ բերուեցաւ վերը: Գրիգոր վարդապետի մասին պիտի խօսիմ այլուր ընդարձակ: Լամբրոնացին կը յիշէ նաեւ Դաւիթ Քոբայրեցւոյ անունը. իր մասին գրած եմ իմ Մատենագրական Հետազօտութիւններ, Ա. (Վիեննա 1922), էջ 44—68:

## 14. ՆԵՐՍԷՍԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

*Ներսէս երբ վերադարձաւ Հռոմկլայէն 1175ին, Սկեւռայի բնակիչները ընդունեցան զինքը իբրեւ «տիեզերական վարդապետ»: Հաւաքուեցան անոր շուրջը ուսումնատենչ աշակերտներ, պատանի եւ չափահաս. զորոնք մարզեց իր քաղցրուսոյց վարդապետութեամբ: Վարդապետին «ձեռնասուն աշակերտաց» թիւն եւ անունները լիով ծանօթ չեն մեզի. բայց կը գովէ ինքնին անոնց յառաջադիմութիւնը. իր թուղթին մէջ առ Պարոն Լեւոն ակնարկելով Գրիգոր Տուտէորդի վարդապետը կը գրէ թէ անոր գրագիտութիւնը, ուրիշ բառով «իմաստն՝ ի գրոյն եւ ի բանէն իւրմէ ճանաչի, որ երբ զբուն յետնոյն յիմ ձեռնասուն աշակերտացս չէ» (էջ 238):*

*Ներսէս կազմակերպած էր այն տեղ կանոնաւոր դպրոց. ունէր իր տրամադրութեան տակ հրահանգուած ուսուցիչներ: Սամուէլ, Գէորգ, Գրիգոր եւ Բարսեղ վարդապետները: Հրաւիրեց Հռոմկլայէն համբաւաւոր գրիչն ու մանրանկարիչը՝ Գրիգոր Արեւելցին († 1216), ուսուցանելու իր աշակերտներուն գրչութեան եւ մանրանկարչութեան արուեստը: Լամբրոնացւոյ քեռորդին Ներսէս, որ Սկեւռայի աշակերտն էր, կը գրէր 1205ին. «Յիշատակեցին... բարեկամք նորա (Լամբրոնացւոյ) եւ երջանիկ վարդապետքս մեր եւ տածիչք ոգւոց մերոց Գրիգոր*

(Սկեւռացի) եւ Բասիլ, առ որովք այժմ դեգերիմք ի վարժս... ընդ նոսին եւ ուսուցիչ մեր եւ տախտակաւ վարժիչ զԲասիլ քահանայ եւ զայլ եւս ուսումնակից եւ զաշակերտակից անձինս, զՅովհաննէս եւ զԲարդողիմէոս»: Այդ սուրբ եկեղեցւոյն կղերիկոսներէն մէկն էր «Զօրավար», որ հմուտ գրիչ էր:

Իր ձեռնասուն աշակերտներէն ծանօթ են մեզի՝

1. Յովսէփ. 1175ին կ՚անուանէ զինքը Ներսէս «պաշտօնակից եղբայր մեր Յովսէփ». կը յանձնարարէ իրեն Ներսէս օրինակել Կիւրղի Պարապմանց գիրքը. բայց որ եւ է պատճառով կ՚ընդհատի օրինակութիւնը, «որ ձեռամբ իմով աւարտեցաւ» կը գրէ Ներսէս (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա. 459): Ներսէս երկրորդ անգամ կը յիշէ զինքը 1195ին, առ պարոն Լեւոն գրած թուղթին մէջ. «Իշխանքն Խաչենոյ եւ որ անդ վանորայք, որք զաշակերտն մեր զՅովսէփ եւ զկարգաց մեր վարժապետ որպէս զհրեշտակ պատուեն եւ կաթողիկոսութեանն Աղուանից ընծայեն» (էջ 225). այս ինքն Աղուանից կաթողիկոսութեան թեկնածու կ՚առաջարկեն: Թէ ե՞րբ մեկնեցաւ Յովսէփ Աղուանից աշխարհը, չէ յիշուած: 1179ին Աղուանից Ստեփաննոս կաթողիկոսը Հռոմկլայ էր: Հա-

[1] Սիւրմէեան, Ցուցակ հայ. ձեռագրաց մասնաւորաց Եւրոպայի, էջ 49:

*ւանօրէն իր հետ առած տարած էր կաթողիկոսը զՅովսէփ։ Բայց գիտենք որ ան 1184ին Գանձակի Դասնոյ վանքին մէջ կը գտնուէր․ ուր կը յօրինուէր Հայոց Դատաստանագիրքը «ձեռնտուութեամբ հօրն Յովսեփայ եւ եղբօր Պաւղոսի յորդորմամբ յառաջարկութիւնս» եւ Ստեփաննոս կաթողիկոսի հարկեցուցիչ հրամանով*[2]*։ Ստեփաննոս կաթողիկոս վախճանեցաւ* 1194/5*ին։ Աղուանից իշխանները այս առիթով առաջարկած պիտի ըլլան Յովսէփի թեկնածութիւնը։ Կաթողիկոս ընտրուեցաւ Բեժգէն, անոր գահընկէցութենէ ետքը՝ Յովհաննէս։ Այս միջոցին* (1195/96) *կ՚երեւայ թէ Յովսէփ վերադարձաւ Կիլիկիա։ Ի՞նքն է արդեօք «տէր Յովսէփ արքեպիսկոպոս Անտիոքու եւ առաջնորդ Յեսուանցն» որ կը յիշուի* 1198/9 *տարւոյն (Ալիշան,* 470*․ Կիր․ Գանձ․, էջ* 76*)․ որուն համար կ՚ըսուի թէ վախճանած է* 1231*ին կամ անկէ քիչ յառաջ (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա․, էջ* 876*)։*

2․ Յովհաննէս *գրիչ, որ Ս․ Եփրեմի մեկնութեան ստացուածքը օրինակած է Ներսէսի համար* 1190*ին, կը խնդրէ յիշել «զիս զմեղուցեալ գրիչ Յովհաննէս, աշակերտ նորին» (Յովսէփեան, անդ, էջ* 626*)։*

---

[2] *Հմմտ․ Հ․ Ն․ Ակինեան, Հ․ Յովսէփ կարգաց վարդապետ․ «Հայոց Դատաստանագրքի» իսկական հեղինակը․ Ակօս* 1944, *Բէյրութ, Ա․, էջ* 97—110․ *Բ․,* 105—113․ *Գ․,* 82—91*։*

3. Խաչատուր *աշակերտ եւ սպասաւոր Ներսէսի: Գէորգ Սկեւռացի օրհնակած է Ներսէսի խմբագրած Հարանց վարքը «հրամանաւ ճգնազգեաց եղբօր մերոյ Խաչատրոյ. քանզի այս աստուածային այրս սափրեաց զիմ տկարութիւնս՝ զհամակրօն եղբօրս իւր Գէորգեայ՝ լնուլ զփափաք տենչանաց իւրոց...»: Այս Խաչատուր կամակատար սպասաւոր եւ մաքուր անձինն (Ներսիսի) սրբութեամբ պաշտօնեայ, աշակերտեալ բանից եւ նմանութեամբ ընթացից եւ բաղձանաց ի նորին նկրտեալ. որոյ եւ սա ըստ չափու իւրոյ ստացաւ մատեանս գրոց հաւասար տեառն իւրոյ եւ վարժապետի. եւ զսոյն ի նորին յորդորմանէ եւ խրատու յօժարութեամբ ետ գրել. քանզի մինչ լսէր ի վարդապետախօս բանից նորին»: Խաչատուր պաշտօնեայն, սպասաւորն ու խնամատարն էր Ներսէսի:*

*Իրենն է սրտառուչ «Ողբն յարքեպիսկոպոսն Տարսոնի ի Մեծն Ներսէս, ասացեալ Խաչատուր պաշտօնէի, նորին աշակերտի» (տես էջ 7 եւ 89—93): Հաւանօրէն իրենն է նաեւ Ներսէսի համառօտ կենսագրութիւնը, որ պահուած է մեզի ուշ ժամանակի ձեռագիրներու մէջ անանուն (տես վերագոյն, էջ 5—6):*

4. Կոստանդին *գրիչ եւ մանրանկարիչ. գրած է Ներսէսի եւ անոր եղբօր Հեթում սեբաստոսի յանձնարարութեամբ 1193ին Աւետարան մը «ի պատիւ եւ ի փառս սուրբ*

եկեղեցւոյս» (Սկեւռայ). «Հրաման եառն ինձ Կոստանդեայ հոգեւոր երկամբք ծնեալ որդւոյ՝ սատարութեամբ գրչի աւարտել եւ երանգօք ծաղկոց զարդարել» (Յովսէփեան, անդ, էջ 564 եւ վերը էջ 47—48)։

5. Գրիգոր Սկեւռացի, յետ Ներսէսի Սկեւռայի պարծանքը. որ գրեց Լամբրոնացւոյ Վարքը եւ հանդիսացաւ բազմազան հեղինակութիւններով անուանի։

## 15. ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ ԻԲՐԵՒ ԳՐԻՉ

Ներսէս գրչի մարդ էր։ Ոչ միայն կը հեղինակէր, կը թարգմանէր, կը յանձնարարէր քաջագիր գրիչներու իր Մատենադարանին համար գրքեր օրինակել, այլ եւ ինքնին կ՚արտագրէր գիրքեր։ Իր անանուն կենսագիրը կը գրէ. «Ինքն ձեռամբ իւրով գրեաց կրկին զԱստուածաշունչ գիրս եւ զամենայն բանս սրբոց հարցն» (420)։ Ունինք իր գրչէն նաեւ յիշատակագրութիւններ այլ եւ այլ ձեռագիրներու մէջ։ Ասոնք կը վկայեն, թէ հմուտ էր գրչութեան արուեստին. իւրացուցած էր գեղեցիկ գիր. այն, ինչ որ գրած էր ինքը իմասին Ներսէս Շնորհալիի, կրնանք աներկեւան մերձեցնել իրեն.

Որպէս հօրանս ալլուց ցուցաւ
Գեղեցկագիր գիրըն կարգաւ։

Այս տեղ պիտի ներկայացնեմ իր ինքնագիր գրութիւնները, եւ անոնց յիշատակագրութիւնները։

ԿԻՒՐԵՂ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻ. ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԵՒ ԳԱՆՁՈՒՑ. ԵՒ ԴԻՈՆԵՍԻՈՍ ԱՐԻՈՊԱԳԱՑԻ:

*Գրիգորիս Դ. Տղայ կաթողիկոս կը խնդրէր առ Գրիգոր Տուտէորդի գրած թուղթին մէջ. «Եթէ գտանի առ ձեզ Դիոնէսիոս գիրք կամ Բնութեան կամ Կազմութեան կամ Վեցօրէից կամ Փիլոն Նախախնամութեան, առաքեսցես ի յիշատակ ծերոյ Հօրդ, վասն զի փափաքելի է ինձ*[1]» (*Արարատ*, 1893, *էջ* 253): *Թուղթին գրութեան տարին չէ նշանակուած: Այս գրքերը չէին գտնուեր Համբկոյի Մատենադարանին մէջ: Կ'երեւայ թէ Կաթողիկոսին նուիրակը առէր Գրիգորիս վերադարձին բերաւ այդ հատորներէն Նիւսացւոյ Յաղագս Բնութեան եւ Կազմութեան եւ Դիոնէսիոսի գրութիւնները: Առաջինէն օրինակուած է* 1244*ին Տրդատ Պալեան եպիսկոպոսի օրինակը, որուն մէջ գրիչը լուսանցքի վրայ արտագրած է գաղափար-օրինակին յիշատակագրութիւնը. «Գրեալ է սուրբ Հայրապետին Հայոց Գրիգորիսս, թէ* Յունվար ամիս, որ եղաւ թիւ ՈԻԲ. այնչափ ձի(ւ)ն երեկ եւ պաղեց, որ ընդ Եփրատ Կլայիս դիպան. եւ յամէն տեղի ի վերայ անգանէին եւ զարդ երկրի անցան. թռչուն եւ չորքոտանիք եւ ձուկն» (*Յովսէփեան*, *Յիշատակարանք*, *էջ* 452):

*ՈԻԲ տարին կը սկսէր* 1173 *փետր.* 6*ին.*

---

[1] *Համառօտէն Ն. Լամբրոնացւոյ փափագը գոհացնելու համար:*

ուստի ակնարկուած յունուարը կը պատկանէր 1174 տարւոյն։ Կաթողիկոսը «Նիւսացւոյն» Ընութեան հատորը պէտք է ստացած ըլլայ 1173 տարւոյն վերջերը։ Այս միջոցին ստացած է նաեւ Դիոնեսիոսի հատորը. վասն զի Ներսէս Լամբրոնացի ՈԻԴ տարւոյն ի վիճակի կ'ըլլայ օրինակելու ի Սկեւռայ Կիւրղի Պարապմանցն եւ Գանձուցն եւ Դիոնեսիոսի հատորը. զոր կը կազմէ Գրիգոր Արեւեցի նոյն ՈԻԴ (1175) տարւոյն, երբ կը գտնուէր Սկեւռայ. ուստի Էջմիածնի Թ. 3276 ձեռագրին ՈԿԴ պէտք է ուղղել ՈԻԴ (Յովսէփեան, անդ, էջ 781. տե՛ս վարը, էջ 78—79)։

Լամբրոնացւոյ այս ձեռագիրը 1412ին կը տարուի Մեծոփայ վանքը. «ԶՄկրտիչ վարդապետն Մեծոփեցի յիշեսջիք... որ զսուրբ Գիրս Կիւրղի (եւ Դիոնեսիոսի) գրեալ ձեռամբ սուրբ հօրն Ներսիսի երեր ի մեզ հասոյց՝ ի պիտականուն վարդապետս Թովմայ, որ եւ տեսի եւ ուրախացայ յոգի եւ երկրպագութեամբ համբուրեցի... Գրեցաւ ՊԿԱ» (1412). Կնիք Թովմայի ՊԿԱ (1412) թուականով (Վենետիկ, Թ. 448. Զարբհանալեան, Մատենադարան, 391)։

Ժամանակ մը վերջը ձեռագիրս սեպհականութիւնը կ'ըլլայ Բաղէշի Ամիրտոլու վանքին. որուն գրացանկին մէջ կ'արձանագրէ Վարդան Բաղիշեցի. «ՂԳ. մի օր(ինակ). Գիրք Կիւրղի Պարապմանց եւ Գանձուց բնաբանն եւ մի հատոր Դիոնեսիոսին. ձեռամբ Ներսիսի Լամբրոնացւոյն գրեալ եւ թարգ-

բանեալ (!)». Արարատ, 1903, էջ 183: Ձեռագիրը այժմ կը պահուի Վենետիկ, Մխիթարեանց Մատենադարանին մէջ, Թ. 448:

Յիշատակարանները տուած են Զարբանալեան, անդ, էջ 513—521 եւ Հ. Եսայի Տայեցի, Ս. Աթանասի ճառք, Վենետիկ 1899, էջ ԺԴ—ԺԵ:

ա. Փառք ամենասուրբ Երրորդութեանն. ամէն: Ի թու՛ ՈԻԴ աւարտեցաւ հիմն հաւատոյ գիրս Պարապմանց, զոր իմ Ներսէսի արուպ եւ անարժան բանասիրի ի վարժումն իմաստից գոլով ընթերցա ընդ բազում բանասիրաց եւ զսրբոյն Կիւրղի քննութիւնս ուղղափառ հաւատոյ. եւ ի դիպող ժամանակի եկեալ ի հայրենի աշխարհս սկիզբն եառ առնել սմին ի ձեռն պաշտանակցի եղբաւր մերոյ Յովսեփա՛ եւ ձեռամբ իմով աւարտեցաւ ի գծում եւ մրճոտեալ աւրինակէ: Ընդ որ յայժ |||| զտանես եւ զաւգտարան աւքէնս եկեղեցւոյ ||| (էջ 466): Նմանահանութեամբ՝ Ախաւեան, 87 եւ սստ, Պատկեր 1:

Զարուպս եւ անարժան չնորհաց իմոյ Ներսէս, որ բղձալի սիրով սկիզբն արարի սրբոյ մատենիս եւ ձեռաւք իմ աւարտեցի ի թու՛ ՈԻԴ (էջ 411): Զարբանալեան, 518, Յովսեփեան, 102:

Ես տրուպ վարդապետս Ներսէս սատանաւր զօղքս ի բերան առեալ լամ աղիողորմ, թէ ընդէ՞ր զայսպիսի առհաւատչեայ հաւատոյ հարցն ունելով՝ եկեղեցիք քրիստո-

*նէից պատառեալք դեռ եւս անդեղջ են ի նոյն»* (էջ 433)։

*«Ի ՍԻԳ թուականիս շարագրեցաւ բանս աստուածային ի ձեռն Ներսիսի. զԲասիլս յիշեցէք ի Տէր զկնի աշխատողի սորին* (էջ 421. *էջմ.* 3276 *ՍԻԳ վերածած է ՍԿԳ. Յովսէփեան*, էջ 781)։

*«Զգերամաքուր եւ զտիեզերական վարդապետ տէր Ներսէս եւ զհարազատ եղբայր նորին Հեթում սեւաստաւս որդիք Աւշնի սեւաստաւսի յիշեսջիք աղաւթիւք ի Տէր, առ ի յերկարել զկեանս իւրեանց* (էջ 168)։

*«Հրամանաւ տեառն Ներսեսի եւ տիեզերական վարդապետի կազմեցաւ գիրքս այս ձեռամբ ումեմն տառապելոյ Գրիգորիսի Արեւելցւոյ։ Արդ տէր Յիսուս վայելել տացէ երկար ժամանակաւ ի կամս իւր. ամէն»* (էջ 842. *Զարբ.* 390)։ *Ալիշան, Սիսուան,* 101, *ծան.* 2, *այս Գրիգորիս Արեւելցին շփոթած է Գրիգոր Սկեւռացւոյ հետ։ Յովսէփեան, Յիշատ.* 781 *զետեղած է զայս* 1215 *տարւոյ տակ։*

ԵՓՐԵՄ ԱՍՈՐԻՈՅ ԳՐՈՒԹԻՒՆՔ (1195)

*Եփրեմի ընդդէմ Մարկիոնի. եւ Մեկնութիւն յառակս աւետարանչացն. եւ ի վախճան դալստեանն Տեառն։*

**Յիշատակարանը տես էջ** 48—49։

**Ձեռագիր։** ***Վենետիկ. տպէ Հրա. Ս. Եփրեմի Մատենագրութիւնք, Վենետիկ*** 1836, ***էջ*** 8 (***Յառաջաբան***)։ ***Զարբ. Մատ.*** 448—449։

*Պատմ. Հայկ. Հին Դպր.* 91—92: *Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.,* 587—588: *Նմանահանութիւնը՝ Սիսուան, էջ* 88 *եւ Հայապատում, Բ.,* 423 *եւ տառ Պատկ.* 2:

ԵՓՐԵՄԻ ՎԵՇՏԱՍԱՆ ԱՍԱՑՈՒԱԾՔ ՎԱՍՆ ՆԻԿՈՄԵԴԵԱՑ ՔԱՂԱՔԻ (ՆԱԽ ՔԱՆ 1190)

*Ներսէս Լամբրոնացւոյ համար գրուած է Եփրեմի Վշտասան ասացուածք վասն Նիկոմեդեայ քաղաքի (Երուսաղէմ, Թ.* 326, *Թղ.* 278*ա*—369*ա*): *Յառաջ կը բերեմ տեղիքներս.*

*Զտէր Ներսէս սրբասէր անձն եւ տիեզերական վարդապետ ստացաւղ աստուածեան մատենիս յիշեսջիք ի Քրիստոս. եւ նոյն ինքն ձեզ ողորմեսցի. ամէն (Թղ.* 284*բ*):

*Զտէր Ներսէս սրբազան արքեպիսկոպոս Տարսոնի եւ առաջնորդ սուրբ ուխտիս Սկեւռայ, որդի Աւշնի Սեւաստաւսի, ստացաւղ սուրբ մատենիս, յիշեսջիք ի Քրիստոս համդերձ գեղեցիկ եւ ծաղկեալ չորեսին հարազատաւքն Հեթմիւ, Ապիրատիւ, Շահանշահիւ եւ Գրիգորիւ: Եւ զիս զմեղուցեալ գրիչ Յոհաննէս աշակերտ նորին... (Թղ.* 295):

*Տէր Յիսուս ողորմեա տեառն Ներսիսի առաջնորդի մերոյ եղբայրութեանս: Ընդ նմին եւ մաւր նորա մեծանուն Սեւաստուհւոյ. եւ այնոցիկ որք յիշեն զնոսա. ամէն (Թղ.* 356*ա*):

*Ես Յովհաննէս դեռաբոյս ի գրչաց, տեառն իմ հրամանաւ Ներսէսի իմոյ դաս-*

տիարակլի եւ զիս յաստուածայինն ձգուցի, ակամայ զՈղբքս զայս եւ զոգեշահ բանքս սուրբ հայրն մերոյ Եփրեմի, զոր ասացեալ է վասն Նիկոմիդիա քաղաքի, եւ կատարեցի: Արդ որք ընթեռնույք զսա, յիշեցէք ի Քրիստոս զտէր Ներսէս զսուրբ եւ ընտիր եւ զտիեզե-րական վարդապետ. ընդ նմին եւ զաստուա-ծասէր մայր իւր տիկնաց տիկին Շահան-դուխտ կոչեցեալ եւ զհարազատս իւր զՀե-թում սեւաստոս եւ զԱպիրատ եւ զՇահն-շահ եւ զԳրիգոր... (Թղ. 369):

«Այս ի ներքոյ, սեւագեղով եւ մանր կանոնաւոր գրով, յայլմէ գրչէ, թուի թէ ի նոյն ինքն Ներսիսէ յաւելեալ է այս ինչ».

Եւ զգրիչս յիշման արժանի արարէք. եւ զաշխատողս ի յուղղելս:

Յ. Մուրատ, Յայտնութիւն Յովհաննու, էջ Ժ—ԺԳ:

Այս յիշատակագրութիւնները, որոնք Ներսիսի կրտսեր եղբայրն Գրիգոր տակաւին կենդանի կ'ենթադրեն, պէտք է 1190էն յա-ռաջ գրուած ըլլան, որովհետեւ այս տարուոյն վախճանած էր Գրիգոր:

ՓԱՐԻԶԻ ԱԶԳ. ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ Թ. 27
(Bibliothàque Nationale, cod. arm. 27)

Թուղթք՝ 323: Մեծութիւն՝ 28 × 22,2: Գրութիւն՝ երկսիւն, մասամբ՝ եռասիւն: Տող՝ 22: Նիւթ՝ մագաղաթ: Գիր՝ յունա-րէնն հին երկաթագիր, հայերէնը՝ բոլորգիր՝ մէտ շղագրի:

Բովանդակութիւն՝ Թղ. 1ա—74բ. Գործք Առաքելոց Եւթաղեան Յառաջաբանով. ա. սիւն յունարէն եւ բ. սիւն հայերէն։ Սկիզբէն եւ վերջէն պակասաւոր (թուղթեր ինկած). այժմ կը սկսի (կը յիշեմ միայն հայերէնը). «Առաքելոցս. մխանգամայն եւ զկաթողիկէից թղթոցն առաքելոց զչարաթ մի ողջ ջանացեալ... (տե՛ս Վարդանեան, Մատենագրութիւնք Եւթաղի, Վիեննա 1930, էջ 126, ա. 4)։

Թղ. 75ա—297. Կաթողիկեայ եւ Պաւղոսի Թուղթք, եռասիւն, այսինքն յունարէն, հայերէն, լուսանցքի վրայ խոալերէն թարգմանութիւնք։

Թղ 298ա—323. Յայտնութիւն Յովհաննու, յունարէն եւ հայերէն. վերջէն պակասաւոր։

Թղ. 292բ. Ներսէսի Յիշատակարանը.

«Ներսէս Նւաստ եպ՝՝ Տարսոնի սիրով փափաքելաւոր ի սուրբ մատեանս, զոր ծերացեալ գտի ըստ հելլենացւոյդ եւ նորոգեցի ըստ հայւոյդ. շնորհի աղաւթից լիցիմ ի վայելողացդ արժանի»։

Ներսէս Լամբրոնացի ձեռք բերած է հնագիր ձեռագիր մը Նոր Կտակարանի, պակասաւոր. լրացուցած է զայն հայերէն հին թարգմանութեամբ. այսպէս կազմած է տեսակ մը երկլեզուեան բնագիր։

Յիշատակարանին տեղիքս «Ներսէս Նւաստ եպիսկոպոս Տարսոնի սիրով փափաքելաւոր» կը յիշեցնէ 1195ի Յիշատակարանի «ի Նւաստ

*վաստակաւորէ Ներսէսէ»։ Հաւանօրէն ժամանակակից են երկու Յիշատակարանները։*

*Կը պարծի* E. Dulaurier, *որ առաջին անգամ ինքը ուշադիր եղած է Լամբրոնացւոյ այս ձեռագրին, որուն յիշատակարանը նմանատպութեամբ տուած է* (Documents arméniens, I. *էջ* 568, *հմմտ. էջ* 562)։ *Նմանատպութիւնը տես նաեւ Սիսուան*, 112. *հմմտ.* 87, *ծ.* 1. *եւ Հայապատում, Բ.*, 425։ *Ձեռագրին մասին խօսած է* Macler Catalogue, p. 12—14։ ***Յիշատակարանը՝ Յովսէփեան, Յիշատակարանք****, էջ* 609։ ***Զարբ., Պատմ.*** *հայկ. հին Դպրութեան*, 92։

ՎԱՏԻԿԱՆԻ ՅՈՒՆԱՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ Թ. 859

*Կը բովանդակէ Բառնաբայ Թուղթին յունարէն բնագիրը. որուն վերջաւորութեան կայ յիշատակագրութիւնս.*

*Ես Ներսէս Թարգմանեցի զԹուղթս զայս ի հայ բարբառ ի Թագաւորական Քաղաքս ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն։*

*Նմանահանութիւնն՝ Սիսուան*, 92 (*հմմտ. էջ* 91, *ծան.* 6)։ *Նոյնը տես Պատկ.* 3։

16. ՄԱՀԸ

*Արդէն* 1197*էն յառաջ կը գանկատէր Ներսէս իր Առակաց Մեկնութեան յիշատակարանին մէջ, թէ «ի հիւանդոտ մար-*

ծնոյ եւ ի ծանրութենէ հոգոց գանդաղէր միտք նուաստութեան մեր ի քննել եւ ձեռն ի գրել»: Կ'երեւայ թէ Կ. Պոլսէն վերադարձին ժամանակ մը անցուցած է Սկեւռայի իր օթեւանին մէջ «ի հանգիստ». որքան թոյլ տուած են քաղաքական եւ եկեղեցական եւ հովուական գործերը: Ժողովողին Մեկնութիւնը աւարտած էր 1197 տարւոյն Տարսոնի առաջնորդարանին մէջ:

Կիրակոս Արեւելցի կը գրէ թէ Տարսոնի արքեպիսկոպոսը «ըմբռնեալ յուժգին ցաւոց, ապառամբ ի բժշկական արուեստից, վախճանեցաւ յերիտասարդական հասակին ամաց ԼԳ.[23] (այլ ձեռագիրք՝ ԼԸ. իմացիր ԽԴ/ԽԵ) յամսեանն հրոտից Ը. եւ յուլիս ԺԴ» (այլք՝ մարգաց ԻԸ եւ յուլիս Դ). տարին չէ նշանակած, բայց է Հայոց ՈԽԷ (1198): Ժամանակակիցն Գրիգոր Սկեւռացի մահուան պատճառը չի յիշեր, բայց կը պատմէ հանգամանքները. իրեն կը ձայնակցի Անանուն: Ներսէս կը զգայ իր մօտալուտ մահը. առաւօտ է. կը զգեստաւորուի եւ կը մատուցանէ իր վերջին սուրբ պատարագը Սկեւռայի եկեղեցւոյն մէջ: «Յետ այնորիկ ապա յախտ ինչ անկանէր հարկաւոր կրից ազգաւոր բնութեանս: Յառաջ կոչէր զեղբարսն». կը խրատէ զանոնք: Ներկաները «իբրեւ լուան զհրաժարականն բան՝ ողբս առեալ կոծէին զանձինս մորմոքելի սգով՝ զբաժանելն ի նմանէ: Եւ ինքն ի վեր գահն կարկառեալ

զուարճ դիմօք եւ արտասուալից խնդութեամբ ասէ. Ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ. եւ իսկոյն փչեաց զմաքրական հոգին ի ձեռս Աստուծոյ, որում անձկացեալն էր[24]»:

Յաղարկաւորութիւնը կատարուած է «մեծափառ պատուով», ինչպէս կը վայելէր: Անշուշտ ներկայ էին սգաւորներու անհամար բազմութիւն եւ խառնեցան դամբանականներ: Մեզի հասած է աշուղական նկարագրով ողբ մը միայն, աշխատասիրուած Հանգուցեալի անձնուէր սպասաւորէն, «ձեռասնունդ ծառայէն», Խաչատուր աշակերտէն. սիրող սրտի անկեղծ զգածումներու արտայայտութիւններ: Այս Ողբը պիտի ներկայացնեմ յաջորդ էջերու մէջ ամբողջութեամբ:

Դամբարանը Սկեւռայի Ս. Փրկիչ եկեղեցւոյն տակն էր: Կենսագիրը կը գրէ, թէ դագաղը «ի Տաճարին Տեառն ի դամբարանի դնէին. զՍուրբն ի Սրբարան սրբոց հանգուցանէին: Եւ զփչատակն ամ յամէ

---

[23] Յակոբ Նալեան, Գանձարան ծանուցմանց, Բ., Կ. Պոլիս 1758, էջ 259 շատ աղաւաղած աւանդութենէ յառաջ կը բերէ տեղիքը. «Լեւոն որդի Օշնի թագաւորեաց ամս Գ.: Ի սորա աւուրս եղեւ ժողովն Սսոյ: Որ յատենաբանեալն ի ժողովոյ Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ, ստորին թանձ խոստովանեալ բմբռնեալ՝ մեռաւ. ի տիս երիտասարդութեան ԼԳ ամաց. զի այնպէս խնդրեալ էր յԱստուծոյ, թէ յորում պահու զանձիցիմ ի փրկաւէտ եւ ի հաճելի գործ ինչ քեզ ծառայութեան, ընկալցիս զհոգի իմ. եւ եղեւ այնպէս»:

[24] Գր. Սկեւռացի, Ներբողեան, էջ 59—61: Անանուն, 424:

յեօթներորդումն ամսեանն բառ համեմատա-նին (ի յուլիսի) ի չորեքտասան օր ամն-դէին[25]»:

## ՄԱՀՈՒԱՆ ՏԱՐԻՆ

Մահուան տարին ՈԽԷ (1198) կը հաստատէ ժամանակակից գրիչ մը, որ կ'օրինակէր Հանգուցելոյն յանձնարարութեամբ Յովհաննէս Ոսկեբերանի Անդրիատական ճառերը. ԼԲ. ճառին վերջը կը յիշատակագրէ. «Զտէր Ներսէս յիշեսջիք ի Քրիստոս, որ ի սոյն ամի հանգեաւ ի Քրիստոս»: Արտագրութիւնը աւարտած է նոյն ՈԽԷ տարւոյն «ի թագաւորութեան Հայոց... Լեւոնի... եւ ի հայրապետութեան տեառն Գրիգորիսի (Զ. Ապիրատի)... եւ յարքեպիսկոպոսութեան մայրաքաղաքիս Տարսոնի տեառն Ներսիսի որդւոյ Աւշնին սեբաստոսի եւ յիշխանութեան անառիկ դղեկիս Լամբրոնի՝ աստուածասէր եւ բարեպաշտ իշխանաց իշխանի Հեթմոյ սեբաստոսի, ունելով իշխանակից իւր եղբարս հարազատս զԱպիրատ եւ զՇահնշահ յարտաքին գաւառս տիրողք...: Գրեցաւ յՃգնայ-րանոցս... ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս. եւ յառաջնորդութեան... Եղբարց Աւետեաց եւ Յովհաննիսի: Արդ որ վայելէք՝ յիշեցէք աղօթիւք զստացաւղ գրոյս այս-միկ զտէր Ներսէս աստուածային շնորհաւքն

25 Գր. Սկ. 66—67:

պարզարեալ եւ գիտութեամբ լցեալ, որ ի նոյն ամի հանգեաւ ի Քրիստոս» (էջմ. 989):

Արքունական Յայսմաւուրքի մէջ արձանագրուած է Յուլիս ԺԴ. «Յայսմ աւուր հանգեաւ ի Քրիստոս տէր Ներսէս Լամբրունեցին, սուրբ հայրն, արքեպիսկոպոսն[26]»: Սամուէլ Անեցւոյ շարունակողն գրած է. «Ի ՈԽԷ. թուին փոխի մահուամբ առ Քրիստոս տէր Ներսէս Լամբրոնացին ամաց քառասուն եւ վեցից[27]»: Սխալ է Գրիգոր Խլաթեցւոյ Յայսմաւուրքի տեղեկութիւնը. «վախճանեցաւ սուրբն Ներսէս յերիտասարդական հասակի ԼԲ. ամաց եւ դասեցաւ ընդ սրբոց հայրապետացն ՈԽԶ թուին յուլիս ԺԷ» (Վիեննա, Թ. 10, Ցուց. 91):

Ներսէս վախճանեցաւ ըստ Սամուէլի շարունակողին ԽԶ. տարիքին. ծնունդը կ'ենթադրէ 1152ին: Որովհետեւ ծննդեան ոչ տարին եւ ոչ ալ ամիսը գիտենք, չենք կրնար ճշդիւ հաստատել, թէ վախճանեալը՝ 1198, յուլիս 14ին այդ 46 տարիները լրի՞ւ բոլորած էր: Իսկ Յայսմաւուրքներու մատնանշած «ԼԲ.», «ԼԳ». եւ «ԼԸ.» տարիքները թէ ի՞նչ հաշուէ գոյացած են, ինձ անմեկնելի են:

Եթէ Սմբատ պատմիչ կը գրէ, թէ «Ի թուին ՈԽԷ յունվարի վեց յոր Յայտնութեան օծեցին զԼեւոն թագաւոր Հայոց...: Ի նոյն ամի մեռաւ տէր Ներսէս Լամբրոնացին»

---

26 Սիսուան, 94. Հայապատում, Բ., 544:
27 Սամ. Անեցի, 145. Հմմտ. նաեւ Սմբատ, 109:

(էջ 109). պէտք է իմանալ այսպէս. Ոխէ տարին Հայոց շարժական թուականութեան կը սկսի 1198, յունուար 31ին եւ կ'աւարտի 1199 յունուար 30ին։ Ուստի Ներսէս կը վախճանի 1198 յուլիս 14ին, եւ Լեւոն կ'օծուի թագաւոր 1199, յունուար 6ին։

Օծման հանդէսին ներկայ էին. «Տէր Վարդան արքեպիսկոպոս Լամբրոնին եւ առաջնորդ Սկեւռոյ. Տէր Ստեփաննոս արքեպիսկոպոս Տարսոնի եւ տէր Մլիճայն» (Սմբատ, 110—111)։ Անկէ կը տեսնուի, թէ Ներսէսի մահէն ետքը թեմական բաժանում տեղի ունեցած է։ Տարսոն քաղաքն եւ գաւառը կը պատկանէր Լեւոն թագաւորի. իսկ Լամբրոն եւ գաւառը Լամբրոնի տիրոջ։

## 17. ՈՂԲ

### ՅԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍՆ ՏԱՐՍՈՆԻ Ի ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

ասացեալ Խաչատուր պաշտօնէի նորին աշակերտի։

Ա՜մ, զաւ թողում, զամաւթ մոռանամ,
Զիմ լուսեղէն Տէրն մեծարեմ,
Զիւր անընդեան պարտքն վճարեմ,
Ածեմ զուշակս ու զանձամ ի միտ։
Երբ զիմ ճարակ Տէրն յիշեցի,

A Վիեննա Թ. 219։ B ԲԶՄ 1874։ C Սիոնեան։ D ԲԶՄ 1886։ E Հայապատում։ F Անտոնեան (հմմտ. էջ 7)։

Խորագիր՝ B Ողբք ի տէր Ն. արքեպ. Տարս.։ A չունի ասացեալ — աշակերտի։

3 B. Զիր։ — 4 A. զուժակս. B. զուշակս։ —

Լոյսըս գնաց, ուժս պակասեաց,
Խելքս ու հոգիս իմ գումարեցաւ:
Յիշեմ զիմ Տէրն ի Հիերոնին,
Յիշեմ զիմ Տէրն ի Նարեկացին,
Յիշեմ զիմ Տէրն յառջեւ կանթեղին,
Յիշեմ զիմ Տէրն ի յեկեղեցին,
Յիշեմ զիմ Տէրն ի տան ի զգեստին,
Յիշեմ զիմ Տէրն ի բազմախաչին,
Յիշեմ զիմ Տէրն յառջեւ խորանին
Յիշեմ զիմ Տէրն ի պատարագին:
Առ ձեզ խաւսիմ, հին կտակարանք,
Եկա՛յք որ լանք զի անտիրացաք,
Ե՛կ Սողոմոն, զի անպիտացար,
Ե՛կ Դանիէլ, որ խոպանացար,
Ե՛կ Արարածք, լա՛ց որ փակեցար,
Ար՝ ե՛կ Դաւիթ, որ անզարդեցար:
Անտուն լալով վայիս ձայնակից
ԶՅովհաննէս զՈրդին Որոտման.
Ե՛կ ժողովէ զՏեառին ու պահէ,
Զի այլ չկայ Տէրն որ մեկնէ.
Բայց լա՛ց ու վա՛յ տուր ինձ գերելոյս,
Զի քո նման Տէր եմ կորուսել.
Դասն տեսար դու զՏէրն ի խաչին.
Դասն տեսայ զիմ Տէրն ի տախտին.
Դասն լուար դու զծարաւին.

7. A. Խելք. B. Խելքս: — 10 B. առջեւ: — 12 B. ի տունն. C—F. ի տունն. A. ի սգեստին: — 14 B. առջեւ: — 15—16 A. աւելադրութեամբ ունի «յիշեմ զիմ Տէրն»: — 17 B. Եկէք... անտիրացաք: C—F անպիտացայ: — 18 B—E. Սողոմոնի: — 19 B. խոպանեցար: — 21 A. զանզարդեցար. B—F. անզարտեցար: — 29 B—F. Ես դասն: — 31 B. լուայց, — 32 B—F.

Դառն լուայ եւ զաւրն աղմկին։
Ասցողք թղթոյ կաթողիկէից,
Եկէ՛ք ու լե՛ք վայխ ձայնակից·
Չունինք այլ Տէր որ հասկացնէ,
Ոչ այլ գրող, որ նոր նորոգէ։
Ե՛կ առաքեալըդ Տարոնացի,
Ա՛ռ անփոփէ գրանդ որ լսեցի·
Ե՛կ Աթանաս լոյսդ ձայնակից,
Բանեբս քո են պատառագի։
Բայց իմ հոգոյ Տէրն չերեւի,
Ոչ մեկնումի՝ ոչ բացայայտի,
Ոչ այլ պայծառ քարոզն ասուի,
Ոչ այլ նման քեզ Տէր գտանի.
Ոչ այլ հոգոյ թեւքդ տարածի,
Ոչ այլ անքուն ակն բոլորի,
Ոչ այլ հեղեղ արտասուքն թափի,
Անտանելի հեծն այլ չլսի,
Անբառ հառաչն այլ չերեւի։
Ձայնեմ վանիցն որ հայրն չունի,
Կարաւ ու եղեւ արթուն հովուի·
Աստուա՛ծ, ու գոյս բանս գրեցի·
Որ ո՛վ լինի, վերդ դինքն չլինի։
Իմ Տէրն արթուն էր յամէն տեղի,
Կիրթ էր ու վարժ ամէն իմաստի.

Լացողք թղթոյ։ — 35 B. Եւ ոչ. C—F. Ու ոչ։ — — 36 B—F. Ու ա՛ռ անփոփէ գրանքս որ լսեցի։ — — 39 B. Բանքս։ — 45 B—F. Ոչ այն։ — 46 A. Ոչ այն. B—F. արցունքն իջանի։ — 47. A. պլոփի։ — 48 B—F. չունին Անբառ հառաչն այլ չերեւի։ — 51 B—F. Ու Աստուած։ — 52 A. գեղ. B—F. գերթ։ — 53 B—F. յամէն։ — 54 A. Կիրթ ու. B—F. Կիրթ էր... ամէն։ — 55 B. ունի կենօքն ասէր էր եւ ոչ քո

Կենաւքն սուրբ էր ոչ քուսպիտի·
Վարուքն անբիծ նման Մովսէսի·
Սրտիւն ողորմ նման Պաւղոսի·
Աղքատասէր նման Յիսուսի:
Ներսէս պսակ էր յեկեղեցի·
Զարթուցանէր զամէնն ի բարի·
Ներսէս անաշառ ծուլիցն ի տեղի·
Հեզ եւ հանդարտ արթնոցն ի բարի·
Ներսէս արթուն էր զէմ գիշերի·
Հանէր ի գլուխ զցայգն ի կարգի:
Հետ ուռձանէր զկարգն ի տեղի,
Հետ խոկալով գրէր գրուի·
Երբ առաւաւտ լինէր ցերեկի,
Սկիզբն դնէր նա պատարագի:
Ներսէս ցասումն էր ընդդէմ ախտից·
Զար խորհրդոց չտայր նա տեղի·
Բայց զուարթութն ի պատարագի·
Հեշտ եւ կամակ երգարցն ամէնի:
Ներսէս աղբիւր անցամաքելի
Ունէր ի գլուխն իւր զովելի·
Հետ տաշարէր յաղագս ամէնի,
Հետ արտասուէր ի պատարագի:
Ներսէս փառաց ի սէրն Յիսուսի,
Մեղաւորաց տայր զեկեղեցի·

պիտի· C—F. ունին կենօքն սուրբ էր եւ ոչ քուսպիտի: — 56 A. Վարիւքն սուրբ: — 57 A. ողորմն: — 60 A. ի բար· B—F. զամենն: — 62 B—F. ոչ առ ծուլիցն: — 66 A. գրելի: — 67 B—F. ցորեկի: — 70 B. չտա-նէր նա տեղի· C—F. չտանէր նա տեղի: — 71 B—F. զուարթուն էր: — 72 B—F. ամենի: — 73 B. C. E. աղբեր: — 74 B—F. ի յիւր: — 75 A—F. ամենի: — 77 A. խիսի· B—F. փառաց էր: — 81 B—F.

Յիշէր զբանըն մեծ տէրունի
Թէ ես եկի վասն մեղաւորի:
Ներսէս այրեաց լինէր խնամածու.
Որբոցն հէշտ տեղի խաւսելոյ.
Ունեւորացն աւրինակ բարւոյ.
Չունեւորացն էր տուն կենայոյ:
Աւա՜ղ մտացն, որ դադարեցաւ.
Աւա՜ղ գրչին, որ խափանեցաւ.
Աւա՜ղ բանին, որ պակասեցաւ.
Աւա՜ղ տեսոյն, որ թառամեցաւ.
Աւա՜ղ բարին, որ նուազեցաւ.
Աւա՜ղ գերեացս, որ որբ մնացաք:
Դո՛ւ, Տէ՛ր, զատր, որում ցանկացար.
Դո՛ւ, Տէ՛ր, հասար, ում կարօտացար.
Դո՛ւ, Տէ՛ր, առեր, զոր վաստակեցեր.
Դո՛ւ, Տէ՛ր, տեսար, որում ջանացար.
Դո՛ւ, Տէ՛ր, տուար, ում անուանեցար.
Դո՛ւ, Տէ՛ր, հանգի՛ր, զի աշխատեցար:
Ես աղաչեմ զիմ Տէրըդ բարի,
Զեռանունդ ծառայս քո գերի,
Որ զայս լալոյ բանըս գրեցի,
Գիտեմ որ մերձ կաս այժմ Յիսուսի,
Ծո՛ւնր կրկնեա վասն իմ ցանկալի.
Տո՛ւր աղաչանս ինձ աղերսալի.
Դառնալ ի հող, ինձ կեանք չպիտի:

այրեացն էր: — 82 B. Որբոցն... խօսելու. C—F. հեշտ տեղի խօսելու: — 83 A. բարոյ: — 84 F. Չունեւորացն տուն: — 86 A. Աւա՜խ... խափանեցաւ: — 88 A. Աւա՜խ: — 90 A. Աւա՜խ. B. գերեաց: — 94 A. չունի Դո՛ւ, Տէ՛ր, տեսար, որում ջանացար: — 95 B. որում անուանեցար: — 96 B—F. հանգիստ: — 98 A. Զեռաց անունդ: — 101 A. կրկնեայ. B. կրկնեա: — 102 A. աղերսելի:

## 18. ՆԿԱՐԱԳԻՐԸ

1. *«Էր սա, Ներսէս, ըստ զարմի տանց նախարարացն Հայոց Թագաւորազանց, զահու մեծի եւ պատուոյ ընդ առաջինսն հանդիպեալ ի հեռուստ անտի» կը գրէ Գրիգոր Սկեւռացի* (10—11). *Իսկ Հայրենի տունը Բիւզանդական հողի վրայ տիրացած անառիկ Լամբրոնի, կայսերական հովանւոյն տակ, պատուած որդւոց յորդիս սեբաստոս (աւգոստական) պատուով: Իբր* 150 *տարի Օշինեան տունը անառիկ Լամբրոնին մէջ ծլեցաւ եւ ծաղկեցաւ եւ բարգաւաճեցաւ անվրդով: Լամբրոնի տէրերը հաղորդակցութեան մէջ էին Կայսերական արքունիքի հետ. եւ Անտիոքի Կոմսին հետ: Այս յարաբերութիւնները կը պահանջէին ոչ միայն ծանօթութիւն յոյն եւ փռանկ լեզուներու, այլ եւ «անօսր եւ բարակ սովորութիւն», այս ինքն կենցաղավարութիւն:*

*Դղեակին մէջ ընտանեկան լեզուն էր հայերէնը, աստուածպաշտութիւնը ըստ ազգային աւանդութեան: Ընտանիքին մայրն էր բարեզարդ եւ քաջահաւատ Շահանդուխտ, դուստրը պահլաւունի Զօրավարին, որ էր եղբայրն Գրիգորիս եւ Ներսէս կաթողիկոսներու, որ հմուտ էր հայ եւ յոյն լեզուներու: Կը զովուի նաեւ հայրն Օշին իր աստուածապաշտութեան համար: Անոնք դաստիարակեցին իրենց ութը զաւակները,* 5 *մանչ եւ* 3 *աղջիկ, բարեպաշտութեան եւ ուսմանց մէջ:*

Մանչերը կը յաճախէին Սկեւռայի վանքը։ Մայրն եւ երկու դուստրները, երբ այրիացան, զգեցան կրօնաւորական սքեմը, ի ձեռաց իրենց որդւոյն եւ եղբօր Ներսէսի եպիսկոպոսի, իսկ երիցագոյն որդին, սպարապետ Հեթում, երբ զրկուեցաւ իշխանութենէն՝ նոյնպէս կրօնաւորեցաւ։

Այս յարկին տակ, այս շրջանակին մէջ ծնաւ Սմբատ–Ներսէս «վայելուչ գեղով»։ Ան ստնդեաց հասակէն նուիրուեցաւ իր բարեպաշտ ծնողքէն Աստուածամօր։ Մայրենի կաթին հետ ծծեց անոր բարեպաշտութիւնը։ Մանուկ հասակէն կրեց վանական կրկնոցն եւ սնաւ Սկեւռայի վանականներու հոգելից շունչով, իր հոգեւոր հօր Յովհաննէսի խնամքին տակ։ Իր սրտին մօտ դրաւ վանական հրահանգները. սիրեց աղօթքն եւ ուսումները. արհամարհեց անցաւոր վայելչութիւնները, անանց վայելքին ի խնդիր։ Տղայական տարիքի մէջ էր, երբ ընկերացաւ իր եղբօր, որ կ'այցելէր Բիւզանդական արքունիքը, իր հաւատարմութիւնը ուխտելու Մանուէլ Կայսեր, եւ ժառանգելու հայրենի իշխանութիւնը (1167/8)։ Այս առթիւ կ'առաջարկէ Կայսրը տղահասակ Սմբատի, որ մնայ իր քով արքունի շրջանակին մէջ, անհրապուրելին համարձակ կը պատասխանէ, ինչպէս կը գրեն իր կենսագիրները, թէ «Ես ա՛յնմ աշխարհի բաղձամ լինել ժառանգաւոր եւ նորին թագաւորի՝ գինուոր» (Գր. Սկ. 17)։ Այս բաղձանքի մէջ յարատեւեց ան։ Վերադարձին

տուաւ գիրքը մայրը եւ անձամբ տարաւ Համկլայ յանձնելու Ներսէս Շնորհալւոյ. իր հօրեղբօր, որ նոր էր բազմած Կաթողիկոսական աթոռը: Ան նկատեց պատանւոյն հոգեկան տրամադրութիւնները, վաղահաս միտքը եւ ուսմանց մէջ յառաջադիմութիւնը. եւ չվարանեցաւ բաշխել անոր քահանայական ձեռնադրութիւնը եւ յանձնարարել շրջագայիլ Սեւ լեռան վանքերը ծանօթանալու վանական կարգերու եւ կատարելագործելու իր ուսումները: «Ի խուն ժամանակի քան զլոյծս աստուածային վարժիցն ի չափ հասանէր» (Հայաս. 420. Սկեւռ. 15): Բայց նորընծայն կոչուած էր բարձրագոյն աստիճանի: Գր. Տղայ Կաթողիկոս կանչեց զինքը միասանգամ Համկլայ: Այն տեղ պէտք էր պատրաստուիլ եպիսկոպոսական աստիճանի: 1174 տարին անցուց ի վարժումն իմաստից. «Տայր զանձն յերկս մշակութեան աստուածային գրոց վարժից յար ընթեռնլով եւ ստէպ քննելով. եւ ուր անտեղեկանայր զիմաստն եւ հանճարեղ ուսուցչաց՝ ի մերձակայս եւ հեռաւորս՝ վազվազակի անդր հասանէր, զօրէն անօսրաթեւ եւ իմաստուն թռչնոյ ի վերայ թռչելով մարգաց Հին եւ Նոր Կտակարանաց. զանուշահոտութիւն աստուածային իմաստից եւ զքաղցրութիւն նորին ճաշակաց բանի յիւրն հաւաքելով խոհականի մտաց ըջիջս...: Եւ ի յոլովս յայսօրիկ դեգերման ժամանակս ի կատար ամենայն հասանէր իմաստից» (Սկ. 19): Կ՚ենթարկուի քննու-

թեան եւ կ'արժանանայ վարդապետական աստիճանի։ Իր գլխաւոր ուսուցիչն եղած է Ստեփանոս Տիրացու, որ ապա կոչուեցաւ եպիսկոպոսութեան։ Այս Ստեփանոսը, որ նաեւ Յակոբցի կ'անուանուի, յիշած է Ներսէս իբրեւ իր «Հոգեւոր հայրն» եւ «ուսուցիչն մեր» (Թուղթ առ Լեւոն, 224)։ Անգամ մը ստորագրած է (1174/5ին) «ես տրուպ վարդապետս Ներսէս» (Թուղթ Աթանասի),

Այս ընդհանուր արտայայտութիւնները, զորոնք հաղորդած են Կենսագիրները Ներսէսի կրթական ընթացքի մասին, պիտի մնան մթութեան մէջ, եթէ նկատի չառնենք իր անյագ ընթերցասիրութիւնը եւ գրասիրութիւնը, միեւնոյն ժամանակ իր հանճարեղ միտքը, որ վաղահաս արթնցած, խելամուտ կ'ըլլար կարդացածին, եւ կը շտեմարանէր զայն իր խորհրդանոցին մէջ։ Գրասիրութիւնն եւ ուսումնասիրութիւնը կը համարէր աստուածսիրութիւն. այն համոզումով, որ Ս. Հոգին ներգործած է Ս. Գրոց եւ Սուրբ Հայրերու հեղինակութիւններու վրայ։ Այդ գրուածքներու ընթերցմամբ վերահաս կ'ըլլայ ընթերցողը քրիստոնէական վարդապետութեանց, իմաստասիրական ուսմանց եւ եկեղեցական աւանդութիւններու։ Որչափ կ'ընդարձակուի ընթերցանութեան շրջանակը, այնքան աւելի կը ճոխանայ մտքի լուսաւորութիւնը։ Հայ գրականութիւնը ունէր իր ծոցը Ս. Գիրքն եւ Ս. Հարց գրութիւններէն շատ բան, բայց այդ գրուածք-

ներէն դոյզն մաս մը միայն մատչելի էին իրեն Կիլիկիոյ եւ Հռոմկլայի մէջ: Կային կարեւոր գրութիւններ ալ յոյն եւ լատին լեզուներով, որոնք անմատչելի էին թէ իրենց լեզուով եւ թէ իրենց պահեստով:

Ներսէս առաջին հոգն ըրաւ կազմել իրեն համար հաւաքածոյ մը բոլոր մատչելի գրքերու, որոնք գոյութիւն ունէին հայ լեզուով: Անմատչելի հատորներու համար դիմեց Գրիգորիս Գ. կաթողիկոսին միջնորդութեան, բերել տալու Վերին Հայաստանի վանքերէն:

Մեծ բարեբախտութիւն էր իրեն համար, որ ուսած էր յոյն եւ լատին լեզուները. որոնք կը նպաստէին իրեն օգտուելու Լատին եւ Յոյն Վանքերու Մատենադարաններէն: Քրքրեց այդ Մատենադարանները, գտաւ հոն կարեւոր գրքեր. ինչ ինչ թարգմանեց կամ թարգմանել տուաւ. ուրիշներէն օգտուեցաւ անշուշտ ընթերցմամբ:

Շնորհիւ այն գումարին, զոր թողուցած էր իր հայրը իրեն համար, յաջողեցաւ կազմել իրեն (կամ Սկեւռայի վանքին) համար Մատենադարան մը. ուր կային նաեւ յոյն (թերեւս նաեւ լատին) մատեաններ:

Այն վարկածները, թէ Ներսէս ուսած էր նաեւ եբրայեցերէն, ասորերէն, ղպտերէն (արաբերէն) կարելի չէ ապացուցանել:

Ներսէսի մասնաւոր զարգացումին նպաստեցին նաեւ այն հաղորդակցութիւնները, զորոնք մշակեց յոյն, լատին, ասորի եւ ղպտի եկեղեցիներու եւ եկեղեցականներու հետ:

Իբրեւ եպիսկոպոս Տարօնի կ՚այցելէին իր քով զանազան ազգեր:

Ներսէս իր մանկութիւնն եւ պատանութիւնն անցուց Սկեւռայի վանականներու շրջանակին մէջ: Իր ծնողքէն ընծայուած Աստուածամօր՝ սիրեց իր կոչումը, զինուորիլ երկնաւոր Թագաւորին դրօշի տակ: Կրթուեցաւ աստուածպաշտութեան մէջ: Լսեց Եգիպտոսի անապատականներու խստակեաց ճգնութիւնները. որոնք ոչ միայն հիացում արթնցուցին իր անմեղ սրտին մէջ, այլ եւ նախանձ հետեւելու անոնց օրինակին: Քանի ենթարկուած էր իր ծնողաց հսկողութեան, չէր համարձակեր առնել այս քայլը: Սեւ լերան շուրջը կատարած իր շրջագայութեան ժամանակ դիտող եղած էր այն տեղ ճգնող վանականներու կենցաղին: Երբ եպիսկոպոս օծուած վերադարձաւ Սկեւռայ, յանձն չառաւ տակաւին 22 տարեկան հովուական պաշտօնի գլուխը անցնիլ: Առած իր հետ իր հագեւոր հայրն եւ քանի մը վանականներ քաշուեցաւ Սաղրուի անապատը. ժամանակ մը ճիւաց անոնց մէջ. ապա առանձնացաւ Ս. Գէորգ: Կենսագիրները կը վկայեն, թէ «Սա յոյժ սիրեաց զմիայնական վարս» (Հայսմ. 420). «Սա յանապատ խոյս տուեալ՝ զամայութեանն ողջունէր զկեանս» (անդ, 420. Գր. Սկ. 22): «Ճգնէր անսուաղութեամբ պահոց առաւել յոյժ. զի զաւուրս եօթն անսուաղ կայր, ոչ ձէթ եւ ոչ գինի, ոչ ձուկն եւ ոչ թան, այլ միայն ընդօք շատանայր»

(անդ, 420)։ «Սկսաւ զպնդութիւն պահոց եւ զխոշորութիւն զգեստուց, զտքնութիւն ամենագիշեր հսկմանց եւ զհանապազորդ աշխատասիրութիւն»։ «Զարմէ պատմէն, եթէ ի մեկնելն (Սաղմոսաց եւ Պատարագին) սպասաւոր նորին տարեալ դնէր միանգամ յաւուրն ընդ երեկս զհացն եւ զսպասն ամանօք ի պատուհանն խցկանն. եւ ի միւսումն աւուրն երթայր զմիւսն դնել, մինչ զնախեդեալն անարատ ի տեղին գտանէր անթերի. քանզի ունդով շատանայր» (420)։

Ora et labora, աղօթէ եւ աշխատէ։ Անապատականներու այս հրահանգին ճշգրիտ հետեւող էր մեր ճգնաւորը։ Կ'աղօթէր, կը պատարագէր արտասուաթոր աչքերով։ Կիրակի եւ տէրունական տօներուն կ'երթար Եղբայրանոց, կ'անցնէր օրը եղբայրներու հետ, կը պատարագէր, կը խրատէր, կը լուծէր անոնց հարցումները, կը մեկնէր Սաղմոսները։ Կը վերադառնար իր խցիկը, կը լծուէր աշխատանքի։ Իր աշխատանքն էր կարդալ եւ գրել. այս առանձնութեան շրջանին հեղինակած էր Պատարագի Մեկնութիւնն իր մասերով եւ Սաղմոսաց Մեկնութեան մեծ մասը։ Կը սիրէր «անզբաղ առանձնութիւնը». այսինքն արտաքին զբաղումներէ հեռու՝ պարապիլ աղօթքի եւ գրականութեան։ Կարելի չէ հաստատել, թէ ան աւելի՞ աղօթից, թէ գրեց։ Բայց կրնանք ըսել թէ անոր «գրելն» համազօր էր «աղօթելու»։

Առանձնաշնորհուած էր Աստուծմէ ա-

աղօթելու արտասուաբուխ եւ աքնելու անհանգիստ: Իր կենսագիրը կը վկայէ, թէ «Ոչ երբեք մեկնեաց զոտս իւր յանկողինս ի տուէ (ի տուընջեան) կամ ի գիշերի». «զգիշերն նստեալ զոլով յաթոռ ինչ՝ անդ վճարէր զքնոյն պէտս սակաւ մի»: «Յամենայն երեկոյի մինչեւ այրէին մոմեղէնք՝ գրէր եւ ապա անդէն յաթոռն իւր նստեալ՝ սակաւ մի ննջէր» (Հայապ. 420): «Տքնութիւն ամենագիշեր հսկմանց», այսպէս ապրեցաւ Ներսէս 45ամեայ կեանքը:

Աղօթելու մասին կը վկայէ կենսագիրը. «Զցերէկ պարապէր յաղօթս... զարթուցեալ կանխէր յաղօթս, յաչիցն բղխելով աղբիւրս արտասուաց» (420): Մեծագոյն աղօթքն էր իրեն համար Ս. Պատարագը, զոր կը մատուցանէր ամենօրեայ, առանձնաշնորհեալ ջերմեռանդութեամբ: «Միշտ անյագ բաղձանօք, կը գրէ կենսագիրը, զաստուածային պատարագն մատուցանէր ի տօնս տէրունականս հանդիսաւորապէս ընդ քահանայից եւ սարկաւագաց. իսկ յայլ աւուրս մի կամ երկու պաշտօնէիւ առանձին անխափան կատարէր: Եւ ասի յոմանց, եթէ սովորութիւն էր կտաւ ինչ ի վերայ կրծիցն կապել ի ժամ աստուածային պատարագին, զի երկիցս եւ երիցս անգամ սարկաւագն քամէր» (423):

Իր կենդանի հաւատքը հանդէպ Ս. Պատարագին դաւանած է Ներսէս իր Պատարագի Մեկնութեան մէջ: «Այլ եւ ի ջերմութենէն սիրոյն որ առ Քրիստոս, յորում ազգի յեկե-

գեցուջ հանդիպէր՝ հաղորդէր եւ պատարագէր մեծաւ հաւատով, բայց ի հերետիկոսացն» (Հայաս. 423)։

Իր հոգւոյ նկարագիրը կը գծէ Կենսագիրը. «Էր զգաստ, ժիր, խոնարհամիտ, հեզ, զգուշացեալ բանիւ բերանոյ եւ առաքինի բոլոր շարժմամբ հոգւոյ եւ մարմնոյ»։ «Սա երբեք ոչ լքաւ յարիութենէ...։ Ոչ ծառայեաց նախանձու... ոչ ստրկացաւ յամբարտաւանութենէ, ոչ ողոքեաց զփառասիրութիւն... ոչ յողդողդեցաւ ի մարդահաճութենէ» (421)։

Ինքնին Ներսէս կը գրէ առ Լեւոն. «Ոչ պարծիմք մեր առհմակցութեամբն եւ ոչ մեր հայրենի պայազատութեամբն, ...ոչ ի վերայ ուրուք պատուոյ յարակցեցաք(՞), ոչ ձիոք եւ ոչ ջորեօք յօրացաք... ոչ զգործակալս մեր հարստահարեցաք. զրկեցա՛ք ի նոցանէ եւ տարաք. զզուեցաք՝ եւ համբերեցաք եւ ունկան մեր ձանձրութիւն ոչ արարաք» (207)։

Ներսէս ուսումնասէր, պրպտումներով վեր հանեց նախնեաց գրուածքներու մէջ եկեղեցական կարգերու անաղարտ կանոնները։ Քննադատեց դարերու ընթացքին մուտ գտած աղաւաղումները։ Չմեղադրեց նախնիքները իբրեւ եղծարարներ, այլ վերադրեց զանոնք քաղաքական եւ տնտեսական աղէտաբեր պայմաններու։ Չէր կրնար արդարացնել եղծումները, չէր կրնար նաեւ անտարբեր ըլլալ անոնց հանդէպ։ Առանց

նորաձեւող հանդիսանալու՝ ուզեց ըլլալ բարենորոգող։ Ինչ որ աղաւաղուած էր, կը առնէր քոյր եկեղեցիներու քով պահուած այնպէս, ինչպէս կը ճանչնային նախնիք։ Կը հարցաքննէր վերին Հայաստանի կարգերը, ինչ որ մոռացութեամբ կը պակսէին Կիլիկիա, կ՚իւրացնէր իր եկեղեցւոյն համար։ Իր միակ ձգտումն էր պայծառացնել եկեղեցին ներքուստ եւ արտաքուստ։

Զարաչար քննադատուեցան իր բարենորոգութիւններ մանաւորապէս Հիւսիսայիններէն, որոնք չէին գիտնար որ եւ է փոփոխութիւն։ Լսուեցան բողոքներ, ուղղուած Լեւոնին. ան սպառնաց Արքեպիսկոպոսին. բայց լսեց փոխարէն, որ աշխարհական իշխանութիւնը եկեղեցական ներքին հարցերու մէջ պէտք չէ միջամուխ ըլլալ։

Նկարագրական են մանաւորապէս տողերս. «Զլոյս իմաստիցն մեր յաշտանակ իշխանութեան ձերոյ բարձրացուցեալ՝ լոյս տամք կուրացելոցն եւ կոչեմք ի մեր ճանապարհն եւ ի Քրիստոսին։ Եւ ի պէտս նոցին (Զորոգետացւոցն) լուսաւորութեան, կամօք ձեր՝ յօժարութեամբ եւ աներկիւղ գնամք ի մէջ նոցին. եւ զոր յունկն ձեր խօսիմք՝ քարոզեմք առաջի նոցա ի վերայ տանեաց, ոչ երկուցեալ յայնցանէ, որ սպանանեն զմարմին եւ զոգի ոչ կարեն...։ Ապա թէ այժմ խափան լիցի ազգականացս գութ, եւ աշխարհին հեռաւորութիւն, իշխանութեան ձեր հրամանաւ եկեսցեն առաջի ձեր ընդ մեզ ի

մրցումն. զի ոչ է այս արիութիւն զինուորի յիւր ապարանսն թուր շողացուցանել եւ զօդս հարկանել, այլ որ ի հանդիսի տեղն իջանէ եւ ընդ ախոյանին կայ: Նոյնպէս իմա զի չէ ուղիղ մարտ հոգեւոր՝ որ ի Զորայգետ նստի եւ զիս ի Կիլիկիա յաչաղէ. թող զան ի հան-դիսի տեղիս, տան վէրք եւ առնուն. եւ որ յաղթող լինի Քրիստոսի ճշմարտութեամբն, զգովութիւնն ընկալցի...: Ապա թէ անդ չառաքէք եւ ի հանդիսի տեղս զնոսա չկոչէք, թոյլ տուք եւ մեզ՝ մեր բարեկարգութեամբս մնալ առաջի Աստուծոյ. եւ տանիմք զնոցա բամբասանսն եւ զչատխօսութիւնսն որպէս զմանկանց չարակրատութիւն. ի վերայ որոց եւ աղօթեմք՝ Աստուծոյ շնորհօքն տալ յուղ-ղութիւն» (էջ 239—241):

Աւելի չեմ ուզեր յամել այս տեղ: Ինչ որ ժամանակը մերժեց յետ, ապագան ընդգըր-կեց հաճութեամբ:

Ներսէս մղեց իր պայքարները խաւարի դէմ սեպհական ոյժին ապաստան, արդա-րակորով դատողութեամբ: Չունեցաւ ան իրեն թիկունք ոչ եկեղեցական եւ ոչ ալ աշ-խարհական իշխանութիւնները: Ան հրահան-գուած էր թափ տալ իր ռումբը կորովու-թեամբ: Խոստովանեցաւ Գրիգոր Դ. կա-թողիկոս իրեն, թէ «հարստահարեալ եմ զքո ճշմարտասիրութիւնդ մարդահաճոյ կամօք»: Մեծագործ Լեւոն, որ կը պահանջէր Ներսէ-սէն, որ հրաժարի իր բարենորոգչական ձեռ-նարկութիւններէն, նոյն իսկ կը սպառնար

զրկել աթոռէն, տեսաւ իր առջեւ հզօրագոյն մը, որ կը պահէր իր դիրքը անսասան։ Եղան իր հակառակամարտներու մէջ եւ անձինք, որոնք կը ժխտէին անոր հայկական ծագումը. բայց պարծեցաւ ան իր հայկական արիւնով եւ հանդիսացաւ պարծանք հայութեան։ Միայն մէկը, իմաստուն կաթողիկոսն Գրիգոր Զ. Ապիրատ, քաջալեր եղաւ իրեն, ի լաւութեան, կաթողիկոսութենէն յառաջ եւ ետքը։

«Թէ իբրեւ մատենագիր եւ թէ իբրեւ Տարօնի եպիսկոպոս ստացաւ Ներսէս աշխարհահամբաւ անուն։ Հազուադէպ տեսնուած է, թէ նման ուժեղագոյն անձնաւորութիւն մը եպիսկոպոսական գահի վրայ բարձրացած ըլլայ։ Ուղիղ դատած էր Գրիգոր Դ. կաթողիկոս, երբ իշխանական ծնունդը, հակառակ անոր կամքին, Տարօնի մայրաքաղաքի եպիսկոպոսական պատուի արժանացուցած էր։ Ներսէս գիտակից իր բարձր պաշտօնին՝ մէկ նպատակի միայն ձգտեցաւ, ծառայել Եկեղեցւոյ եւ պաշտպանել անոր շահերը հաստատուն՝ ամէն տեսակէտէ։ Ան ամէն բանէ վեր համարեցաւ Եկեղեցւոյ բարեկարգութիւնը. եւ յաչաղկոտները, որոնք կ՚ընդդիմանային իրեն, ոտնահարեց ամէն իրեն տրամադրելի պատուաւոր միջոցներով։ Այս կորովի մարդը չկասեցաւ նաեւ մեծամեծ դժուարութիւններու առջեւ։ Ան ապրեցաւ մաքառումներու

*մէջ, բայց չհետապնդեց երբեք իր անձնական նպատակները. իրեն անծանօթ մնացին նենգութեան օձապտոյտ կածանները: Ան նկրտեցաւ դէպ ի նպատակ ընթանալով ուղիղ. արքունի ճանապարհով. եւ չպարտասեցաւ երբեք իր անքոյթ կամքին ոյժը մինչեւ նպատակակէտին ժամանումը: Իր բոլոր ձեռնարկութիւններու մէջ նպաստամատոյց եղաւ իրեն գործնական սուր տեսութիւն մը: Իր նկարագրին սրբութիւնը, անձնուրացութիւնն եւ հաստատամտութիւնն էին, որ բարձրացուցին իր վարկը ժամանակակիցներու քով. նոյն իսկ թագաւորական արքունիքը պատկառանքով եւ հիացմունքով կը նայէր Տարսոնի եպիսկոպոսին: Ան ապրեցաւ հայ եւ օտար բարձրաստիճան անձնաւորութիւններու հետ սերտ յարաբերութեան մէջ: Բայց այս մտերիմ աղերսը չկաշկանդեց զինքը. երբ տեսաւ ան թէ եկեղեցւոյ շահերը վտանգուած են, ծառացաւ ան նաեւ թագաւորին դէմ» (Ե. Դիւլորիէ)*[1]:

Il réunissait toutes les distinctions de la naissance, du coeur et de l'esprit (Tournebize[2]).

*Կղեմէս Գալանոս կ'արձանագրէ իր Պատմութեան մէջ.* Nierses Lampronensis „cuius egregia virtus, digna plane est, ut

---

[1] E. Dularier, Recueil des historiens des Croisades. Documents arméniens, t. I, Paris 1869, p. 563—564.

[2] Fr. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, Paris, p. 260.

aeterna laude illustretur, nomenque ad ultimas Terrarum partes immortali fama perue-hatur“ [3].

## 19. ՍԿԵՒՌԱՅԻ ՎԱՆՔԸ (1150—1200)

*Յիշատակարան մը, որ գրուած է 1173 տարւոյն, Ներսէս Լամբրոնացւոյ հրամանով, կը պատմէ թէ Գագիկ Բ. Թագաւորի նախարարներէն մէկը, Ապլղարիպ, գնաց Յունաց Միքայէլ Կայսեր (հաւանօրէն Միքայէլ Է. 1076—1078) եւ առաջարկեց անոր իր ծառայութիւնը: Կայսրը կը պարգեւէ իրեն Կիլիկիայի իշխանութիւնը. մանաւանդ որպէսզի «ընձեռէ նմա զՏարսոն քաղաք հանդերձ ընդ ձեռամբ անկեալ գիւղօք»: Հասնելով Տարսոն, առաջին գործը կ'ընէ իր իշխանութեան տակ գտնուած Հայերու համար շինել եկեղեցիներ եւ վանքեր: Ապա ուշադրութիւն կը դարձնէ երկու անմատոյց բերդերու, Պապեռոնի եւ Լամբրոնի, Տաւրոս լեռան ստորոտը եւ ի գլուխ Տարսոնի, որոնք անմատոյց բարձունքներու վրայ կ'իշխէին շրջակայ գաւառներուն:*

*Ապլղարիպ Պապեռոնը պահեց իրեն. իսկ անառիկն Լամբրոն, ուր զետեղած էր Պետ-*

---

[3] Conciliatio ecclesiae armenae cum Romana, I (Romae 1650), p. 324—325. *Հայկական բաժնին մէջ թարգմանած է. Համահրեշտակ վարդապետն Ներսէս, «որոյ գերակատար առաքինութիւնն եւ առատաբուխ իմաստութիւնն՝ արժանի է արդեօք, զի մեծահռչակեսցի մշտնջենաւոր գովասանութեամբ մինչեւ ի ծագս աշխարհի»:*

րոս առաքեալին Մատն, «հանդերձ այլ եւս պատուական նշխարօք եւ մասամբք ի սրբոյ Խաչէն, եւ զայլ եւս գանձս իւր» կը պարգեւէ «միում ի հաւատարիմ իշխանաց իւրոց, որ կոչէր Աւշին զաւանս գաւառօք իւրովք»: Իսկ ինքը Ապլղարիպ իր նստոցն ունէր Տարսոն քաղաքի մէջ (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., 551—552. հմմտ. նաեւ Սամուէլ Անեցւոյ տեղեկութիւնները, անդ, էջ 542—543):

Օշին մտաւ իր ազգատոհմով Լամբրոն, զոր գտաւ անհպելի եւ անառիկ «վասն յոյժ դժուարարինակ սահմանացն եւ առաւել ամրութեան բերդին»: Բերդը երկար ժամանակէ ի վեր «ամայացեալ էր», զոր ձեռնարկեց նորոգել ըստ կարի: «Պատրաստեաց նախ ի ծայր բերդին հանգստարան սուրբ Գեւորգի նշխարացն» (անդ, 541—542):

Լամբրոնի մեծագործ տէրն եղաւ Օշին Բ., պատուած Կայսեր կողմէ Սեբաստոս տիտղոսով: «Սա շինեաց եկեղեցի մեծ եւ վայելուչ ի Լամբրոն բերդ եւ փոխեաց ի նմա զնշխարս Ս. Առաքելոյն Պետրոսի»: Ապա կառուց «զպատուածահրաշ հռչակաւոր սուրբ ուխտս եւ զսուրբ Կաթողիկէ եկեղեցիս սուրբ Փրկիչ իւրով անձամբ աշխատեալ եւ մեծաւ փափաքանօք կատարեալ: Բազմացոյց ի սմա եղբայրութիւնս եւ հանապազ խնամս տանէր առ սա հանդերձ բարեզարդ զուգակցաւն իւրով տիկնաց տիկին Շահանդխտի: Որ է տապանատուն ազգատոհմի իւրեանց»: Յի-

*շատակարանս, որ գրուած է Լամբրոնացի Ներսէս քահանայի հրամանով, հաւանօրէն 1173ին, չ'աւանդեր մեզի «հռչակաւոր սուրբ ուխտիս» անունը. բայց յետագայ Յիշատակագիրները կ'անուանեն զայն Սկեւռա։*

*Օշին Սեբաստոս, որ «մեծաւ փափաքանօք» շինած էր վանքս եւ եկեղեցիս, երկու դիտաւորութիւն ունէր իր սրտին մէջ. Եկեղեցին պիտի ըլլար գամբանարան իր ազգատոհմին. եւ վանքը խմէ ընծայ իր Սմբատ որդւոյն, որ եկեղեցական կոչումին հետամուտ էր։ Իր վերջին կամքն էր ի մասին «նուիրելոյ որդւոյն որ Աստուծոյ՝ կալ ի գլուխ առ յինքենէ շինեալ Եկեղեցւոյ սորայ եւ Վանիցս»* (*անդ*, 544)։

*Գրիգոր Արեւելցի գրիչ, որ* 1173/4*ին այստեղ կը գտնուէր, կ'անուանէ վանքս «իւր (Ներսէս քահանայի, նախկին Սմբատի) սեպհական անապատն* ՍԿԵՒՌԱՅ *անուն կոչեցեալ». ժամանակակից եկեղեցպանն էր Յակոբ* (*անդ*, 446)։

*Դամբանարանին կը հային Կոստանդին գրչին տողերս. Ներսէս եւ Հեթում եղբարք «պայծառացուցանեն զայս աստուածաշէն Միաբանութիւնս* հանգստարան նախնեաց իւրեանց» (*անդ*, 564)։ *Այս Հանգստարանը փոխադրուեցան անշուշտ Օշին Ա.ի եւ Հեթում Ա.ի ոսկրները. եւ հոն թաղուեցան Օշին Բ. եւ իր ընտանիքն ու որդիք։ Յետոյ պիտի տեսնենք «Գիրքն յիշատակի ննջեցելոց», որ* 1167—1195 *հոս թաղուածներու ա-*

*նունները կը յիշատակէ: Ներսէս քեռորդի Ն. Լամբրոնացւոյ 1205ին ակնարկելով Լամբրոնն ու Սկեւռայ կը գրէ. «յորում տեղւոջ ծնունդ եւ սնունդ Սրբոյս (Ներսէսի).* Եւ յորոց միջի եւ այժմ դամբարանն սորա» (*Սիւրմէեան, Ցուց. Եւրոպ. 43բ*):

Սկեւռայ *անունը առաջին անգամ* 1173*ին կը յիշուի: Այն անշուշտ հինաւուրց անունն էր այն տեղւոյն կամ ագարակին, որուն վրայ հիմնուած են Եկեղեցին եւ վանքը :*

*Սկեւռայ կը գտնուէր «մերձ» կամ «առընթեր» Լամբրոն բերդին: Տեղը չէ ճշդուած տակաւին: Հ. Ղ. Ալիշան, Սիսուան,* 97, *նկատի առնելով Յակոբ գրչի* 1233*ին գրած Աւետարանի յիշատակարանին տեղիքս. «գրեցաւ... յաշխարհիս Կիլիկեցւոց, ի նահանգիս Տարսոնի, առ ստորոտով լերին Տորոսի, յանմատոյց դղեակս Լամբրուն, ի փոքրիկ ագարակիս, որ Յոհանի կոչի» (Յովսէփեան, անդ,* 901), *կ'ենթադրէ, թէ Սկեւռան «առ ագարակի անդ» եղած ըլլայ, բերդին հիւսիս արեւելեան կողմը: Եթէ այդ ագարակը վանքին մօտերը գտնուած ըլլար, գրիչը անտարակոյս պիտի յիշէր նաեւ Սկեւռան: Տէր-Ղազարեան, Բազմավէպ,* 1948, *էջ* 87—88, *կը գրէ. «Սկեւռայ հիմնուած է... բերդին ստորոտը, բերդէն զատուած էր ձորով մը: Երկու եկեղեցիներ կը գտնուէին հոն, Ս. Նշան եւ Ս. Փրկիչ»: Թէ ի՞նչ աղբիւրէ առած է այս յատակ ջուրը, ինձ անծանօթ է: Գիտեմ*

միայն, թէ ի Սկեւռայ Ս. Նշանի միայն մասունքը կը գտնուէր, առանց սեպհական եկեղեցւոյ։

Միակ եկեղեցին, որ կար հոն, Ս. Փրկիչ (նաեւ Ամենափրկիչ) կը կոչուէր։ Այդ եկեղեցին շինած էր Օշին Բ. հաւանօրէն 1154/5էն առաջ։ Մինչ այն գոյութիւն ունէր հոն Ս. Աստուածածնի տաճար մը. կը պատմէ Սամուէլ Սկեւռացի 1190ին, թէ Սմբատ–Ներսէս երբ տակաւին տղեկաց էր, հիւանդացաւ. «եւ բերաւ ի հաւատարիմ ծնողացն եւ ընծայեցաւ ամենօրհնեալ եւ միշտ փառաւորեալ Աստուածածնին ի տաճար անուան իւրոյ, որ ի վանքս Սկեւռայ առընթեր բերդիս» (Յովսէփեան, անդ, 543—544)։ Այս կը պատահի 1154/5ին։ ԺԲ. դարու յիշատակագիրները Ս. Փրկիչի կառուցուելէն առաջ այս տաճարի յիշատակութիւնը չեն ըներ։ Բայց կ'երեւայ թէ Ս. Փրկիչի մէջ կար Աստուածածնի խորան մը։ Իսկ ԺԳ. դարուն գրչագիրները գրեթէ միշտ կը կրկնեն. «ընդ հովանեաւ սուրբ եկեղեցւոյ որոյ անուն սուրբ Փրկիչ կոչի, եւ Մօր նորին Աստուածածնի եւ գերահռչակ կենսունակ սուրբ Նշանի»։

Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, 97, կը գրէ. «Այլ կրկին էին մենաստանքն (ի Սկեւռայ). մին բուն վանքն եւ միւս՝ անապատն. յառաջնումն էր Ս. Աստուածածին եկեղեցի մեծ, զոր ասեն շինեալ Բ. Օշնի հօրն Ս. Ներսիսի»։ Սիսուանի հեղինակին անծանօթ էին տակաւին այն երկու 1173ին գրուած յի–

*շատակարանները, զորոնք յիշեցինք, եւ որոնք օչինաչէն եկեղեցին Ս. Փրկիչ կ'անուանէին: Նկատմամբ «անապատի» մը գոյութեան չունինք վկայ: Բառս «անապատ» կը կիրարկուի Սկեւռայի համար, բայց լոկ «վանք» իմաստով: Սկեւռայի համար ունինք արտայայտութիւններս ԺԲ. եւ ԺԳ. դարու գրչագիրներու բերանը. «Մեծանուն անապատն Սկեւռայ, Մեծ ժողովարանս Սկեւռայի, ի հռչակաւոր անապատս Սկեւռայ. յաստուածապահ Սրբարանս մեծի ուխտիս Սկեւռայի. ի սուրբ Մենաստանս Սկեւռայ. մեծ եւ հռչակաւոր սուրբ ուխտս Սկեւռայ» եւ այլն:*

*Սկեւռայի վանքէն զատ կար Գեմրուճգերի վանքը Լամբրոնի հովանաւորութեան տակ, որուն եկեղեցին Ս. Աստուածածին կը յորջորջուի եւ վանքը «Եղբայրանոց» կամ «Միաբանակեաց վանք՝ Անապատ կոչեցեալ»:* 1198*ին ոմն գրիչ Ոսկեբերանի ճառերը օրինակած է Ներսէս Լամբրոնացւոյ համար «յԵղբայրանոցս որ ի գաւառիս Լամբրունի, որ գեղջուկ բարբառով ի հին սովորութենէն եւ Գեմրուճգեր յորջորջի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ յաղաչողութեան սրբասէր եւ հարազատ եղբարց Աւետեաց եւ Յոհաննիսի»* (*Յովսէփեան, անդ.,* 631—632)*: Իսկ* 1205*ին կը գրէ Լամբրոնացի Ներսէս քահանայ, թէ իր մօրեղբօր Պատարագի Մեկնութիւնը երկու գրչէ եւ երկու տեղ օրինակուած է. «Գրեցաւ սկիզբն գրոցս, որպէս յայտնի է որքանութիւն* (*որպիսութի՞ւն*)

գրոյն սպրդութեամբ՝ ի ձեռն ուրումն Եգրոր Աւետեաց որրանէր քահանայի ի Մխարգնակեաց վանս Անապատ անուանեալ. իսկ այն ի Սկեւռայն վերատացեալ, ձեռամբ ուրումն ի կղերիկոսաց սորա եկեղեցւոյն՝ Զօրավար անուանեալ» (Ալիշան, Յուշիկ Եւրոպ., էջ 48—49): Անապատկայս Աւետիք գրիչ նոյն է Աւետեաց հետ, եւ Անապատ կոչուած Մխարգնակեաց (Մխարգնակեցա՞ց) վանքը նոյն Գեմրաձգեր կոչուած Եղբայրանոցի հետ, որ կը գտնուէր Լամբրոնի գաւառի, բայց ոչ Սկեւռայի մէջ: Այս Անապատը հաւանօրէն Աղլղարեայի չինած վանքերէն մէկն է: Անհաւանական չէ, որ այս Եղբայրանոցը նոյն ըլլայ Սարգսի Ա. Աստուածածին վանքի հետ, որ կ'առանձնանար Ներսէս, որուն անցն կը նկարագրէ Սամուէլ Սկեւռացի այսպէս. «Կոչէր անապատն բնակութեան Աստուածածին Սարգսի, ի հասանս գեղոյն Ժեռակրոյ եւ մերձ ի նմին տաճար սորոյն Գէորգեայ, յորում անձուկ սենեկի ի գիշերի եւ ի տուընջեան անհանգիստ էր յընթերցումն». «Եւ դարձեալ յառաջին իւր անապատն կոչեցեալ Սարգիս, յորում եւ զանձուկն ունէր սենեակ եւ զղատտխարան՝ հոգեւոր հայրն իւր Յոհաննէս բնակեալ ի անդուղջն: Եւ անդ հաւաքեալ զամենայն աստուածային գիրս՝ արգելու ի անդուղջն ամաց ժամանակ» (Յովսէփեան, Յիշատակ. 545): Այդ անապատին մէջ կային եղբայրներ, Յով-

հաննու առաջնորդութեան տակ, որոնց կը մեկնէր Սաղմոսները: Այս անապատը կ'անուանէ Ներսէս «անապատն Ս. Գէորգ, ի մէջ լերինս Տաւրոսի ի գաւ Կիլիկիոյ եւ ի սկիզբն Պամփիւղեայ» (անդ, էջ 467 եւ 476): Անապատն, ուր ստէպ կ'այցելէ Ներսէս, նոյն իսկ գրադարանը հետը կ'առնէր, Սկեւռայէն շատ հեռու պիտի չըլլար:

Այլղարիպի շինութիւնն է նաեւ Մլիճոյ վանքը Ս. Աստուածածին եկեղեցիով, Պապեռոնի հովանւոյն տակ եւ անոր իշխաններու դամբարանը: 1198/9ին հոս էր Գրիգոր Աբեւեցի, ուր ձեռնարկած էր գրել իր նշանաւոր Աւետարանը. զոր գրեցի կ'ըսէ. «յերկու հռչակաւոր ուխտս, որ առընթեր ամուր դղեկաց ի սարոտ լերինս Տաւրոսի եւ ի գլուխ մայրաքաղաքին Տարսոնի, սկզբնաւորեալ ի մեծանուն անապատ Մլիճի, ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնին, որ է դամբարան իշխանաց ամուր դղեկի Պապառոնի եւ կատարեալ առընթեր անառ ամրոցի Լամբրոնի յաւթեւան հռչակաւոր ուխտ Սկեւռա, առաջի սրբոյ եւ սքանչելագործ Նշանի եւ Փրկչին տաճարի» (Յովսէփեան, անդ, 618 եւ Ակինեան, Սկեւռայի Աւետարանը, էջ 8):

Օշին Բ.ի որդին եւ ժառանգը՝ Հեթում Բ. սեբաստոս նոր փայլ տուաւ Սկեւռայի եկեղեցւոյն, 1177—1180 տարիներուն հաւանօրէն, երբ Ներսէս Հռոմկլայ կը գտնուէր: Կը գրէ Սամուէլ թէ «ի սոյն ժամանակի եւ եղբայր իւր մեծապատիւ եւ սեբաստոս Հե-

թում ամենապատիկ վայելչութեամբ շինեալ էր զտաճար ազօթից ի սուրբ ուխտս (Սկեւռայ) եւ նկարագրութեամբ պատկերաց զարդարեալ, յորում ընկալեալ զեկեալ յանապատէ փեսայս», զարքեպիսկոպոսն Ներսէս, զեղբայրն իւր, եւ կացուցին յաջմէ սորա զդշխոյ սրբոյ տաճարիս զարդարեալ եւ պաճուճեալ» (Յովսէփեան, անդ, 546—547):

Ներսէս, որ խոյս կու տար առաջնորդական պաշտօնէն, այժմ յանձն առած էր զայն Գրիգորիս կաթողիկոսի ստիպմունքի վրայ: Ան նստաւ վանքին առաջնորդական աթոռին վրայ. բարեկարգեց վանքն ալ, եկեղեցին ալ. միաժամանակ կը հովուէր Տարսոնի թեմը:

Այսպէս պէտք է իմանալ Կիրակոս Գանձակեցիի տեղիքս. Ներսէս «շինեաց եկեղեցիս (!) հրաշազան ի վանքն որ կոչի Սկեւռայ, հուպ ի բերդն անուն Լամբրոն. եւ կարգեաց զպաշտօն վանիցն ըստ օրինակի այլոց ազգաց՝ սարկաւագաւ եւ դպրաւ եւ անծածկոյթ գլխաւ» (էջ 63):

Սկեւռայ ներքուստ եւ արտաքուստ իր պայծառութեան մէջ էր, քանի Լամբրոնին տէրը Հեթում իր իշխանութեան մէջ էր եւ Ներսէս իր առաջնորդական աթոռին վրայ: 1198ին ի մար մտաւ Սկեւռայի արեգակը: Երեք տարի ետքը Լամբրոնի արծիւը թակարդի մէջ ինկաւ: Անտուիկն Լամբրոն դրա-

*ուեցաւ Լեւոն թագաւորէն անարիւն* (1201)։ *Լամբրոնի առծիւը չբարձրացաւ իր բոյնը միւսանգամ։ Գտա՞ն արդեօք իր աճիւնները հայրենի դամբարանին մէջ հանգիստ։*

## 20. ՀԵԹՈՒՄ ՀԵՂԻ ԵՂԲԱՅՐ ՆԵՐՍԷՍԻ. ՏԷՐ ԼԱՄԲՐՈՆԻ ԵՒ ԱՌԱՋՆՈՐԴ ԴՐԱԶԱՐԿԻ (1151—1218՞)

*Ազնիւ իշխանական դէմք մը, «այր զգօն եւ մեծիմաստ եւ գրագէտ յոյժ[1]»։*

*Հեթում որդին էր Օշին Սեբաստոսի, Լամբրոնի տիրոջ եւ Շահանդուխտ տիկնոջ, ծնած* 1151*ին[2] Լամբրոն անառիկ դղեակին մէջ։ Ան անդրանիկ մանչ զաւակն էր, երէց եղբայրն Ներսէս Լամբրոնացիի։ Ծնած փառքի մէջ, ժառանգ Լամբրոնի, վախճանած խոնարհ վանական մը Դրազարկի վանքին։*

*Տակաւին գրկի զաւակ՝ խլուեցաւ իր մօրմէն, փրկանաւորելու իր հայրը, որ գերութեան մէջ էր։ Օշին սեբաստոս մարտակից Անդրոնիկոսի կայսերական բանակին՝ գերի ինկած էր Մսիսի առջեւ Թորոս Ռուբինեանի ձեռքը* (1152)։ *Ան իբրեւ փրկանք գին առաջարկած էր իր ազատութեան համար* 40.000 *ոսկի, վճարելի երկու նուագով.*

---

[1] *Պատմիչ Կիլիկիոյ, Սիսուան, էջ* 81։

[2] *Սամուէլ Սկեւռացի. Յիշատակարան Սաղմոսաց Մեկնութեան. Յովսէփեան, Յիշատակարանք ձեռագրաց, Ա., էջ* 543. *Շահանդուխտ «ծնաւ յետ անդրանիկ զաւակըն՝ որդի Հեթում անուանեալ ի Ռ. թուականին»։*

նախ առաջին կէսը. իսկ երկրորդին համար գրաւական տալ իր անդրանիկ որդին Հեթում: Մանուկն եւ զումարին առաջին բաժինը յանձնելով Պարոն Թորոսին վերադարձաւ Օշին իր ամրոցը:

Սիրեց Թորոս իրեն աւանդուած գրաւականը. «զի էր տեսքով գեղեցիկ եւ իմաստուն»: Խանդապատանքը թելադրեց իրեն փեսայացնել իր տան Հեթումը, հարսնացնելով անոր իր դուստրը: Կ'ընդունի առ այս Լամբրոնացիներու հաւանութիւնը: Մանուկը դեռ անկնունք էր. մկրտել տուաւ եւ ըրաւ ձիաւոր. ապա պսակեց եւ հարսն ու փեսան ուղարկեց Լամբրոն, փրկանքի երկրորդ կէսը հաշուելով օժիտ իր աղջկան[3]:

Թէպէտ եւ կնքուեցաւ երկու իշխանական տուներու մէջ խնամութիւն, բայց քաղաքական յարաբերութեանց կը մնար կնճիռ մը անլուծելի: Լամբրոնի տէրը կայսերական իշխանութեան հպատակ էր եւ երդմամբ խոստացած հաւատարմութիւն. այս հանգամանքով պարտաւոր զինուորական ծառայութեան երբ եւ ուր պահանջուի. ուստի նաեւ Ռուբինեանց դէմ: Նոյն երդումը երդուած էր նաեւ Թորոս[4]. բայց սա հետամուտ իր իշխանութեան սահմանները ընդարձակելու կ'ընդհարուէր նաեւ Կայսերական բանակնե-

[3] Սմբատ, էջ 96:

[4] Ն. Լամբրոնացի, Պատճառ խորհրդոյ միաբանութեան. Ընդհանրական Թուղթք Ս. Ներսէսի Շնորհալւոյ, Երուսաղէմ 1871, էջ 86:

բու հետ։ Այսպիսի դէպք մը պատահեցաւ 1165ին, երբ Օշին Կայսերական վարձկանազօրքի հետ ասպատակեց Տարսոնի գաւառը, զոր գրաւած էր Թորոս։ Այս պատճառաւ թշնամացան Թորոս եւ Օշին, զորոնք հաշտեցնելու համար ուղարկուեցաւ Ներսէս Շնորհալի իբրեւ հաշտարար[5]։ Թէպէտ հաշտութիւնը կնքուեցաւ, բայց Թորոսի եւ Օշինի մահէն (1168) ետքը յանթեղի ծածկուած կրակը միւսանգամ բորբոքեցաւ հետեւեալ պատահարը պատրուակ առնելով։

Հեթում, որուն անտիխական հասակին հարս տրուած էր Թորոսի դուստրը, չէր գտած զանի իր սրտին մօտ․ «կ՚ատէր»․ կ՚ուզէր արձակել, բայց կը վախնար աներոջ որամաութենէն․ եւ երբ վախճանեցաւ Թորոս, հարսը «եհան ի տանէ իւրմէ», այսինքն ուղարկեց պարոն Թումասին, որ Թորոսէն պայլ կարգուած էր անոր Ռուբէն որդւոյն[6] (1168/9)։ Մլեհ, Թորոսի եղբայրն ու յաջորդը, պատրուակ առած այս դէպքը գնաց պաշարեց Լամբրոնը «եւ չառ նեղութիւն հասուց» Լամբրոնեցիներու, «ըստ որում խիստ նեղէր զնոսա սրով եւ սովով» (1170)[7]։ Բայց դիմացաւ Լամբրոն։

Մլեհ սպանուեցաւ 1175ին․ իշխանութիւնն ձեռք առաւ Ռուբէն․ որ նոյնպէս «սկսաւ նեղել զԼամբրոն կռուով եւ աղա-

---

[5] Անդ։
[6] Սմբատ, էջ 100—101։
[7] Անդ, էջ 101—102։

րեաց ամս երեք եւ յոյժ տառապեցոյց զնոսա... բայց չկարաց առնուլ[8]»:

Սմբատի յիշած «ամս երեք» անճիշդ կ՚երեւայ. վասն զի ժամանակակից մը՝ Սամուէլ Անեցի[9] կը վկայէ, թէ Թուրքէն «բռնադատէր յափշտակել զայս աստուածատուր ամրոցս ի սոցանէ. յորում մնացեալ զամ մի ողջ յարգելանի եւ կրեալ զնորա թշնամութիւն՝ դարձեալ այցելութիւն առնէր Աստուած եւ ուղղէր սոցա զխաղաղութիւն: Եւ մանուկն Թորքէն ի գլուխ երկրորդ ամին վճարէր մահուամբ եւ խնդրէր ի նոցանէ ներումն թողութեան մանկան առ սուրբ սխալմունս»: Պաշարումը կ՚իյնայ 1186ին, վասն զի Թուրքէն վախճանեցաւ 1187ին սկիզբը:

Վահրամ Րաբունի[10] կը գրէ թէ Թուրքէն՝

զՀամբրոն զդեակըն պաշարեալ
եւ նեղութիւն նոցա ածեալ.
նոքա զԲրինձըն հրապուրեալ
զի յԹուրքենայ լիցին փրկեալ...
Նորին եղբայրըն քաջացեալ
Լէոն եւ զօրքն արիացեալ...
եւ զՀամբրոնն յոյժ ազարեալ»:

Սմբատ, որ մանրամասնօրէն պատմած է Թուրքէնի Անտիոք երթալն եւ բանտարկուիլը,

8 Անդ, էջ 108:
9 Յովսէփեան, անդ, էջ 547:
10 Պատմ. Թուրքենեանց, էջ 212:

*որ եւ է ակնարկութիւն չէ ըրած թէ այս բանտարկութեան պատճառ եղած ըլլան Լամբրոնացիք. անճիշդ է նաեւ, թէ Լեւոն պաշարած ըլլայ Լամբրոնը:*

## ՀԵԹՈՒՄ ՍԵԲԱՍՏՈՍ

*Օշին վախճանեցաւ 1168/9ին, անձամբ յանձնելով իր անդրանիկ որդւոյն «գահերէցութիւն հայրենի աթոռոյն»: Կը գրէ Սամ. Սկեւռացի. «եւ տուեալ Աստուծոյ՝ շնորհ անդրանկին խոհեմութեան եւ իմաստութեան՝ գնաց առ արքայն Յունաց Մանուէլ եւ փարթամ տրօք էառ զհայրենի պատիւ սեբաստոսութեան*[11]*»: Այս պատահած ըլլալու է 1169/70ին: Իրեն հետ էր եղբայրն Սմբատ (Ներսէս):*

*Կոստանդնուպոլսէ վերադարձին հանդիպեցաւ Անտիոք յաղթոյն Բրինձին*[12]*:*

## ԸՆՏԱՆԻՔԸ

*Հեթում իր դաստիարակութիւնը առած էր Լամբրոնի մէջ իր մօրը խնամքին տակ, աշակերտակից իր եղբօր՝ Սմբատ–Ներսէսի: Անտարակոյս ինքն ալ Սմբատի հետ կը յաճախէր Սկեւռայի վանքը հրահանգուելու գիտուն վարդապետներու առաջնորդութեամբ բարեպաշտութեան եւ ուսմանց մէջ: Յոյն լեզուի նախատարերքը սորվեցուց իր մայրը.*

---

[11] *Յովսէփեան, անդ, էջ 544:*

[12] *Գրիգոր Սկեւռացի, Ներբողեան, Սոփերք հայկականք, ԺԵ., էջ 18:*

լատին լեզուի համար ունէր բացառիկ ուսուցիչներ: Ջինուորական մարզանքներու համար հրահանգիչ եղած պիտի ըլլայ իր հայրը: Թէպէտ ժամանակակիցները լուռ են իր կրթական ընթացքի մասին, բայց վկայած են թէ էր կատարեալ հասակին «այր զգօն եւ մեծիմաստ եւ գրագէտ յոյժ»:

Իբրեւ տէր Լամբրոնի ունեցաւ քաջութիւնը ի վերեւ հանելու ամէն յարձակում եւ պաշարում իր հայրենի ամրոցին դէմ:

Հեթում իր հարսնացեալին արձակելէ ետքը պսակուեցաւ միւսանգամ (հաւանօրէն 1168/9ին): Մեզի անծանօթ է իր երկրորդ կնոջ անունն եւ տոհմը. ունեցաւ իրմէ երկու մանչ (Օշին եւ Կոստանդին) եւ մէկ աղջիկ (Ալիծ) զաւակներ[13]: Ժամանակակից յիշատակագիրները թէեւ լուռ են Ալիծի մասին, բայց այն պարագան որ Կոստանդին Մողոն (այսա՝ պայլ եւ Թագաւորահայր) իրեն աներ կը կոչէ Հեթումի Կոստանդին որդին[14] եւ Սմբատ Գունդստապլ (Կոստանդին Մողոնի որդին եւ եղբայրը Հեթում Ա. Թագաւորին) իր մայրը Տամ Ալիծ[15] (dame

---

[13] Հանդ. Ամս. 1954, էջ 55:

[14] Հմմտ. Սմբատ, էջ 118. Կոստանդին Մողոն, «որ էր իւր (Կոստանդին Լամբրոնեցւոյ) աներ»:

[15] Սմբատ Գունդստապլ 1269ին Ճաշոց գիրքի մէջ կը յիշատակէ.

Եւ զայս ձեռամբ իմով գրեցի,
զի յիշատակ ինձ եղիցի, եւ...
հօր իմոյ Կոստանդնի
եւ մօր իմոյ Տամ Ալիծի:

Alix, Alice) կ'անուանէ, կը հաւաստեն թէ Տամ Ալիծ Հեթում սեբաստոսի դուստրն էր: Կիրակոս Գանձակեցի[16] կը գրէ. «Կոստան-դին (Լամբրոնացի) ապստամբեաց ի հօրեղ-որդւոյ իւրոյ յարքայէն Հեթմոյ»:

Սկեւռայի եկեղեցին, որ Լամբրոնի տէրերու դամբանարանն էր, նորոգեց եւ բարեզարդեց Հեթում 1180ին. Սամուէլ Սկեւռացի կը գրէ. «Մեծապատիւ սեբաստոս Հեթում ամենապատիւ վայելչութեամբ շինեալ էր զտաճար աղօթից ի սուրբ ուխտն եւ նկարագրութեամբ պատկերաց զարդարեալ», ուր եւ ընդունեցաւ իր եղբայրն Ներսէս, Տարսոնի արքեպիսկոպոսն եւ Սկեւռայի առաջնորդը եւ բազմեցուց «ի քահանայական աթոռն[17]»:

1193ին Հեթում եւ Ներսէս սիրակցորդ եղբարք Սկեւռայի եկեղեցւոյն համար նկարազարդ Աւետարան մը օրինակել տուին Կոստանդին գրչի եւ ծաղկողի. յիշատակարանին մէջ կը կարդանք.

Գրեցի «զայս աստուածարան մատեանս ի վանքս Սկեւռայ առընթեր անմատոյց բերդին Լամբրոնի, որոյ տիրէ բարեպաշտ սեբաստոս Հեթում հարազատ եղբայր սրբո

Անուրդք Անարիոսայ, Վենետիկ 1876, էջ 93: Նոյն Յիշատակարանը Ալիշան հրատարակած է նաեւ Սիսուանի մէջ, էջ 72, ուր «Տամ Ալիծի» եղած է «Տամավիծի»: Ալիծ անէլի հարազատ գրչութիւն է. այս անունը գործածած են նաեւ Հեթումի թոռնիկները:

16 Պատմութիւն, էջ 157:

17 Սամ. Սկեւռացի, էջ 546:

(*Ներսէսի*). քանզի երկոքեան սոքա ի վրդովումն աշխարհաց եւ զաւառաց, որք յայս աւուրքս հոգեւոր եւ մարմնաւոր անդորրութեամբ անվրդով պահեն զսոսա, որոց իշխեն. եւ զարդարեալ պայծառացուցանեն զայս աստուածաշէն միաբանութիւն՝ Հանգստարան նախնեաց իւրեանց. *յորոց յուշն փառաւորութեան եւ զայս աստուածախօս սուրբ Աւետարանս հրաման ետուն ինձ... երանգօք ծաղկոց զարդարել... եւ ես... յանգ հանի զպատուէր տերանց իմոց եւ իշխողաց»: Իր կողմէ կը խնդրէ ընթերցողներէն. «պաղէրս եմ զիշխողս զԹագորն Հեթում անմոռաց պահեցէք ի կարգ յիշատակացն որ ի սուրբ պատարագին. զի որ սովաւ աւետարանիւ երկնային աւետեացն խոստումն շնորհեաց սոցա Քրիստոս. եւ ուր ինքն է, անդ եւ զսոսա, որք են հաւատարիմ պաշտօնեայք իւր՝ ընկալցի տեսանել զփառս իւր*[18]»:

*Այս շրջանին Կիլիկիոյ Թագորն եւ Թագաւորն էր Լեւոն* (1187—1219). *իսկ «Կիլիկեցւոց Նահանգին» Եպիսկոպոսն էր Ներսէս: Լեւոն կը յարգէր Լամբրոնի չեզոքութիւնը. եւ Հեթում կը մեծարէր Կիլիկիոյ տէրը: Կը յիշուի իր այցելութիւնը Լեւոնի արքունիքը* 1194/5*ին*[19]. 1199 *յունուար* 6*ին ներկայ էին*

---

18 *Յովսէփեան, Յիշատակարանք, էջ* 564—565:

19 *Ներսէս Լամբրոնացւոյ Թուղթ առ Լեւոն, էջ* 209. *«Եկին իշխողք մեր Հեթում եւ եղբայր առ իս ի ձէնջ պատուէր հրամանի»:*

*Հեթում եւ իր եղբայրները Լեւոնի օծման հանդէսին*[20]:

ԼԱՄԲՐՈՆԻ ԳՐԱՒՈՒՄԸ

*Տարսոն գաւառը նուաճուած էր Ռուբինեան իշխաններէն. Լեւոն նոր նուաճումներով ընդարձակած էր իր իշխանութեան սահմանները. բայց Տարսոնի վերեւ ցցուած կը մնար անառիկն Լամբրոն բիւզանդական դրօշին տակ Հեթմեանց ձեռքը: Քանիցս փորձած էին Ռուբինեանք նուաճել եւ զայն, բայց անառիկ դիրքին առջեւ ի դերեւ ելած էին ամէն բռնական փորձեր: Լամբրոնացիք չունէին նուաճողական ձգտումներ. ուստի չէին մրցակից Ռուբինեանց. գոհ էին իրենց անձուկ սահմանին մէջ, չէին զիջեր կորսնցնել իրենց անկախութիւնը: Լարուած չէին թշնամութեամբ Ռուբինեանց դէմ: Բայց վտանգաւոր էին անոնց, այնու որ հպատակ էին կայսերական հրամաններուն. խափանարար էին Ռուբինեանց տարածուելու յանկոյս Լամբրոնի:* Delenda Carthago (*Բարձցի Կարքեդոն). Այս էր Ռուբինեանց բնաբանը, զոր կը խորհէր Լեւոն «իմաստութեամբ» ի գլուխ հանել, «փետել զթեւս նոցա», Լամբրոնի արծիւին:*

*Քանի կենդանի էր «Կիլիկեցւոց նահանգին» արքեպիսկոպոսն Ներսէս, եղբայրն Լամբրոնի տիրոջ, չհամարձակեցաւ Լեւոն*

[20] *Սիսուան*, էջ 471:

որ եւ է քայլ առնել Լամբրոնացւոց դէմ։ Անոր մահէն (1198) ետքը Տարսոնի եւ Լամբրոնի միացեալ թեմերը բաժնեց։ Այս հրաւիրեց Հեթում սեբաստոսը իր քով խնամախօսութեան։

«Խօսէր ընդ Հեթում որդի Օշնին բանս ախորժս մտաց նորա. ասէ. Կամիմ առնել կապակցութիւն սիրոյ ընդ քեզ, տալ զեղբօր դուստրն իմ զՖիլիպ(պինէ) ի կնութիւն աւագ որդւոյն քո Օշնի։ Եւ պարոն Հեթում ընկալաւ զբանն եւ ուրախացաւ խիստ։ Եւ ի քաղաքին Տարսոնի սարքեցին զպէտս հարսանեացն։ Եւ եկին Հեթմեանք ամենայն տամբ եւ զաւակօք ի Տարսոն։ Յայնժամ թագաւորն Լեւոն կալաւ զնոսա եւ էառ զԼամբրոն առանց կռուոյ[21]»։

Հեթում մնաց ժամանակ մը բանտի մէջ. ապա հանուեցաւ. թագաւորը շնորհեց իրեն գիւղեր եւ կը սեղանակցէր հետը սիրով. «Եւ նա ծառայէր նմա հնազանդութեամբ». բայց եւ այնպէս դարձեալ բանտարկուեցաւ ի Վահկայ։ Թագաւորը միշտ կասկածի մէջ էր. թէեւ Լամբրոնի բանալիները իր ձեռքն էին։

Այնուհետ Հեթում, որ մերկացած էր սեբաստոսական պատմուճանը, այժմ ցանկացաւ կրօնաւորական սքեմով պճնուիլ. «Եւ նա հագաւ ի հոն (ի բանտի) միակեցնակ»։

Համբաւը տարածուեցաւ։ Հեթումի քե-

[21] Սմբատ, 113—114։

ուին Գրիգոր Ապիրատ կաթողիկոս Համկլայէն գնաց Թագաւորին հաշտութիւն խընդրելու. եւ Թագաւորը գնաց Վահկայի բանտը. «եւ խնդրեցին Թողութիւն յիրերաց. եւ ազատեաց զնա Թագաւորն, եւ ետ նմա յաւուրս ուխտն Թրազարկ. եւ անդ եկաց մինչեւ ցօր մահուան իւրոյ. եւ ի ժամ կրօնաւորութեանն փոխեցաւ անուն նորա եւ անուանեցաւ Հեթի[22]»: Թէեւ Հեթի քահանայական օծումը չի յիշուիր, բայց պէտք է ենթադրել, որ ոչ միայն քահանայութիւնն, այլ եւ Դրազարկի առաջնորդութիւնը տրուեցաւ իրեն, Իննովկենտիոս Գ.ի Թուղթին մէջ կը կոչուի Հեթի աբբայ Դրազարկի Ս. Աստուածածին վանքին (Abas S. Mariae Trium Arcium[23]):

1210ին Հեթի Լեւոնի կողմէ դեսպան ուղարկուեցաւ առ Իննովկենտիոս Գ. պապ եւ Օթոն կայսր խնդրելու Թագ Լեւոնի Թոռնիկին Ռուբէնի համար, զոր կ'ուզէր այն ժամանակ Թագաւորը իր արքայական գահին ժառանգ ընել: Հեթում վերադարձաւ 1211ին:

Մահը պատահած ըլլալու է ընդ մէջ 1212—1218 տարիներու, վասն զի 1219ի սկիզբը Լեւոն Թագաւոր Դրազարկը յանձնեց Յովհաննէս կաթողիկոսի փոխանակ Համկլայի, «զի Հեթի վախճանեալ էր յառաջ» (ըստ Կիլիկիոյ պատմիչի)[24]:

---

22 Պատմիչ Կիլիկիոյ, Սիսուան, էջ 83:

23 Սիսուան, էջ 505:

24 Սիսուան, էջ 83—84: Հ. Ղ. Ալիշան կը գրէ,

## ԳՐԱՍԷՐՆ ԵՒ ԳՐԱԳԷՏԸ

*Իր գրասիրութեան կը պարտինք Պատճառքը, այսինքն* 1165—1179 *տարիներուն Եկեղեցիներու Միութեան համար Հայոց եւ Յունաց մէջ փոխանակուած թղթակցութիւնները Հաւաքածոյքը, պատմական ծանօթութիւններով լուսաբանուած։ Այս Հաւաքածոյքը կազմեց Ներսէս Լամբրոնացի խընդրանքով իր եղբօր՝ սեբաստոս Հեթումի եւ բերաւ նուիրեց անոր* (1180)․ *Ընծայականին մէջ արձանագրած է տողերս․ «Քանզի* յայս փափագ միայն զքո Բարեպաշտութիւնդ ի մերումս ժամանակի տեսաք՝ վար արկեալ առ ի խնդրել յուսանել» (*տե՛ս վարը էջ* 218)։

*Ան կը գովուի իբրեւ «գրագէտ յոյժ»․ վասն զի հմուտ էր հայերէն, յունարէն եւ լատիներէն գրական լեզուներու եւ կը սիրէր կարդալ այդ լեզուներով իրեն մատչելի գրականութիւնը ոչ միայն ցամաքի, այլ եւ ծովու վրայ։ Ինքնին կը գրէ, թէ երբ կը կարէր նաւագնացութեամբ միջերկրական ծովը, նաւին վրայ ունէր իր հետ գրքեր եւ կը զբաղէր թարգմանութեամբ։ Իր նկարա—*

---

*թէ Հեթում փոխեց «եւ զանուն իւր պանծալի եւ զառաջնոյն* ի ծերացելոյն անուն Հեղի, *ոչ գիտեմ որպիսի խորհրդով ընտրեալ» (Սիսուան,* 505)։ *Ինձ կը թուի, թէ Հեղի Հեթում անուանի ծածկագրութիւնն է․ այս ինքն Հե + Ղ + Ի, Ղ,* 90 = 9, *Թ, եւ Ի,* 20 = 200, *Մ․ ուստի ՀեԹ(ու)Մ։*

*գիրը գծած է երփներանգ գոյներով Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, էջ* 504—505։

*Հատած են մեզի իր գրչէն լատիներէնէ թարգմանուած երկու աշխատութիւններ. ասոնք են.*

1. Տարադրութիւն ինքնակալացն Հռոմայեցւոց, որ թարգմանեցաւ ի մերս թուականութեանս Հայոց ՈԾԹ (1210)։

*Յառաջ քան զմարդանալն Տեառն մերոյ....։*

Վջ. *Ֆիլիպն եղբայր սորա եւ Աւդ ընտանի եւ հակառակ սորա ամս Դ։ Ի սոյն ամի սպանաւ Ֆիլիպն յիշխանէ ումեմնէ եւ միաց ինքնակալութիւն Աւդին (Ոթոն)։*

*Ար որ ճանապարհորդեմ ես նուաստ Հեղի՝ հրեշտակութեամբ ի թագաւորէն մերոյ Լեւոնէ առ վերոյգրեալ կայսր Աւդ. եւ ի մերոյ ծովուս ի նաւարկութեանս մերոյ թարգմանեցի զսա ի Հռովմէականէն ի մերս ի թու" Հայոց ՈԾԹ։ Իսկ արարեալ մեր առ ասս նորա ամ Ա. եւ ամիս Գ՝ դարձոյց զմեզ հարկաւք առ թագաւորն մեր՝ արձակելով ընդ մեզ եւ թագ արքայական բազմածախ եւ բազմագին յականց պատուականաց եւ ի մեծագին մարգարտից ընդելուզեալ. զոր բերեալ մեր մեծաւ ուրախութեամբ ընկալաւ թագաւորն մեր եւ պսակեաց ընտիր պատկան գեղեցիկ զԹորէն որդի դստերն եղբաւրն իւրոյ եւ որդի բրինձին Անտիոքայ Ռէմդին ի թուին Հայոց ՈԿ* (1211), *ի տաւն*

սուրբ Աստուածածնին յաւգոստոսի ԺԷ. եւ թագաւորէ ընդ իւր Հայոց ի կամս Աստուծոյ»:

= Հռոմ, Վատիկան, 3, 246ա—249ա (ԺԳ. Tiss. 208—209. Միաբ. Գալէմք. 15—16. ՀԱ. 1892, 245/7. Զարբ. Մատենագ. 647. Յովսէփեան, Յիշ. 742—743. Սիսուան, 510. Հմմտ. նաեւ 83—84. Հայապ. 114:

2. Ծանագրութիւն հայրապետացն Հռովմայ, որք ի սուրբ առաքելոյն Պետրոսէ մինչեւ ցայժմ հովուեն զաթոռն:

Յետ վերանալոյն յերկինս Տեառն մերոյ....:

Վջ. Ցելեստին Գ. ամ Զ. եւ ամիս Է. եւ աւր ԺԱ.: Ինոցենդ Գ. որ այժմ հովուէ:

Ես որ յառաջեալ երթամք հրեշտակութեամբ ի թագաւորէն Հայոց Լեւոնէ. եւ նուաստ Հեթի. որ եւ թարգմանեցի զսա եւ ի Հռովմայականէն ի մերս, յորժամ էաք նաւարկեալ մերձ յաշխարհն Բուլեայ[25], որ կոչին Լանկուպարտք, յաւուր պենդակոստէին, ի յունիսոյ ի հինգն եւ ի թուականիս Հայոց ՈԾԹ (1210) ի փառս Քրիստոսի Աստուծոյ որ է աւրհնեալ յաւիտ″....:

= Հռոմ, Վատիկան, 3, 249ա—258ա (Tiss. 209). Յովսէփեան, անդ, էջ 743:

Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա. 114, իր թարգմանութիւնը կը համարի նաեւ Նե-

---

[25] Բուլեայ աշխարհ, այն է Puglia, Apulia:

ղոս Դոքսապատրիկ վասն Հինգ պատրիար-
քացն աթոռոց» գրուածքը. յոր յարեր է
եւ Կայսերաց յիշատակ»։ Այս գրուածքին
թարգմանութիւնը ձեռագիրք Ներսէս Լամ-
բրոնացւոյ գիտեն. տես Հանդ. Ամս. 1954,
էջ 215—217։

Կը գրէ Հ. Ալիշան նաեւ «Ինձ անտարա-
կոյս երեւի որ իր գրեթէ տարի եւ կէս դես-
պանութեամբ ի Գերմանիա եւ ուրիշ Եւրո-
պիոյ կողմեր տեսածն եւ ըրածն գրած է»
(անդ)։ Իցի՛ւ։ Բայց նման գրութիւն մը
երեւան ելած չէ դեռ։

## ՄԱՍՆ Բ.

### Գրական վաստակները

### Ա. ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.

Մեկնութիւն Սաղմոսաց:

Նախատեսութիւն Մեկնութեան աստուածային երգոց Սաղմոսաց մարգարէութեան Դաւթի արքայի. Ներսիսի արքեպիսկոպոսի Տարսոնի Կիլիկեցւոց:

*Ապաւինեալ յայն, որ տայ ամենայնի առատապէս եւ ոչ նախատէ, սկսինքն յԱստուած...:*

*Թէ վասն է՞ր Դաւիթ միայն տուաւ շնորհ յԱստուծոյ յամենայն մարգարէիցն երգել զսաղմոսն. եւ զառաջիկայ բանիս քննել հոգեւորապէս: Նախ քան զսկիզբն բուն մեկնութեան ի դէպ վարկանիմ քննութեանց տեղի տալ...:*

*(Սկ.) Երանեալ է այր...: Որպէս լուաք ի գրոց՝ Աստուած զմարդ ուղիղ ստեղծ...:*

*Մեկնիչը Մեկնութեանս վերջը յիշատակարան չէ գրած. սրա փոխարէն օրինակութիւնը կատարուած է իր բացակայութեան: Սկզբնագրին առաջին պատճենը հանած է ծերունին Սամուէլ Սկեւռացի կցելով վերջը Մեկնիչին համառօտ կենսագրութիւնը: Այս օրինակէն ծագած են բոլոր ծանօթ ձեռագիրները:*

Ձեռագիրք. *Էջմիածին՝ Թ.* 990 (1675)։ 1017 (1628)։ 1018 (*ԺԸ.*)։ 1054, 120*ա* (*ԺԵ. քաղուածք*)։ 1117 (1693)։ 1118 (*ԺԴ. սկ. եւ մէջ. պակաս*)։ 1175 (*ԺՁ. սկ. պակաս*)։ 1526 (1294)։ 1527 (1301)։ 1528 (1651)։ 2613 (1682)։ *Երեւան, Թանգ.* 545 (1359)։ *Երուսաղէմ՝* 33 (1691, *Սիւրմէեան, Ցուցակ,* 145, 264 (1809)։ 472 (*ԺԴ.*)։ 624 (1698)։ 776 (1767)։ 1011 (1695)։ *Կեսարիա, Ս. Կարապետ,* 33 (*ԺԷ. Պոլեան, Ցուց.*)։ *Կալկաթա, Հմմտ. Արշալոյս Արարատեան,* 1868, *Թ.* 845 (*Ա.—ՀԱ. Սաղմոս*)։

*Կը պատմէ Սամուէլ Սկեւռացի, թէ Ներսէս երբ կը գտնուէր Սաղրուի վանքը. «Հոգեւոր հայրն իւր եւ դաստիարակն Յովհաննէս ի նստելն երբեմն երբեմն առ նմա՝ քննէր զմիտս Սաղմոսացն. եւ ի լուծանելն աղաչէր գրել զնոյն եւ թողուլ ի պէտս օգտի զկնի եկելոցն։ Յայնժամ ըստ կամացն Աստուծոյ եւ ըստ հնազանդութեան խորհրդին՝ սկիզբն արար գրել զքննութիւն Երգոց Սաղմոսին՝ ի շրջանս աւուրց ամաց իւրոց քսան եւ վեց թուոյ եւ թուականի Ո եւ Ի եւ ութանց* (1178) *եւ կատարեաւ ի քսան եւ ինն ամին»* (1181)։ 1189*ին, երբ Թուրքմաններու ձեռքն ինկաւ Ներսէսի Պատարագի միակ ինքնագիր օրինակը. «ի դառնալն առ մեզ վերստին՝ զգուշացեալ, զի մի եւ այս Մեկնութիւն Սաղմոսին յիրիք չփոթմանէ, որ իւրն է գիր, պակասեսցէ եւ հաւասարն ոչ մնասցէ, յօրինեաց զկրօնակից եղբայրն մեր զԳէորգ*

սկսանել եւ գրել: Եւ նա յօժարութեամբ յանձն առ, պատրաստեաց զնիւթն եւ սկիզբն արար: Իսկ ապա փութացուցեալ իշխանական հրամանն զճանապարհն որ առ ինքնակալն Հոռմայ թագաւորն Ալամանաց, ճանապարհակից էառ իւր զԳէորգ, եւ ինձ Սամուէլի նուաստի հրաման ետ զսկսեալն ի նմանէ աւարտել, զոր յօժարութեամբ յանձն առի եւ պինդ հաւատով ի փառս Աստուծոյ կատարեցի ի թուիս ՈԼԹ (1190):

«Այս ամք Գ. են կործանման սուրբ տեղեաց Երուսաղէմի: Եւ յիջանել հօրս մեր(ոյ) ի Տարսոն առ ի նաւարկել ի ճանապարհն, որ առաջի կայր, եհաս ինքնակալն յԻկոնիոն, եւ յետ փոքր ինչ աւուրց զօրք նորին՝ ի Տարսոն, եւ մնաց սոցին յառաջելն: Իսկ իմ ի գրելոյ զմատեանս ո՛չ թուլացեալ. քանզի առնուի ի սմանէ զլուսաւորութիւն Հոգւոյ՝ առընթեր նմանելոյ միայնութեամբ սուրբ ուխտիս, այլ հրաժարեցի. եւ խնամօքն Քրիստոսի ի վերջին կէսս ժամանեցի. եւ սպասաւորեցի զկնի եկելոցդ մատուսակութեամբ զխառնեալ բաժակս աստուածային իմաստից ի հագեւոր մեր հօրէս՝ զմայլեցուցիչ հոգւոց եւ մխիթարութիւն բժշկութեան ախտացեալ մարմնոց: Եւ յաւարտումն նորին փոքր ինչ թողի ձեզ զպատմութիւն կենաց սորին ընթացից... մինչեւ ցայս, որ է կենաց իւրոց ժամանակ ԼԸ. ամ» (Յովսէփեան, Յիշատ., Ա., 548—549):

*Սամուէլ Սկեւռացի այս պատմական Յիշատակարանին մէջ կը յիշատակէ Ներսէսի կեանքէն չորս թուականներ, որոնք տեղ տեղ կը հակասեն այն ժամանակագրութեան, որուն հետեւեցանք մենք Վարքին մէջ:*

*Անոնք են.*

ա. *ԺԶ. ամ կենաց. երբ քահանայ կը ձեռնադրուի Ներսէս:*

բ. *ԻԳ. հասակին եպիսկոպոս կ'օծուի:*

գ. *ԻԶ. ամ հասակի եւ ՈԻԷ թուական Հայոց, երբ սկսած է մեկնել Սաղմոսները:*

դ. *ԻԸ. ամ, երբ շրջած է Ներսէս Անտիոքի կողմերը եւ թարգմանած է Յայտնութեան Մեկնութիւնը:*

ե. *ԻԹ (ՈԼ). ԼԸ = ՈԼԹ:*

զ. *Լամբրոնացիք կը հետեւէին յուլեան տոմարին, իսկ եկեղեցական տարւոյն ամսակիզբն էր հաւանօրէն սեպտեմբեր. այսպէս պատուիրուած էր հին Յայսմաւուրքը, որ կը կիրարկուէր Սկեւռայ եւ Տարսոն: Եւ եթէ Ներսէս կը հաւատայ, թէ իր ԻԴ. տարիքը կը համապատասխանէ ՈԻԶ տարւոյն, պէտք է իմանալ* 1176/7: *Ուստի*

ա. *Ներսէսի քահանայական ձեռնադրութիւնը ստացաւ ԺԵ. հասակին, այն է* 1167/8:

բ. *Եպիսկոպոս օծուած ԻԲ. տարիքին, այն է* 1174/5:

գ. *Սաղմոսաց Մեկնութիւնը սկսած է ԻԴ. տարիքին* 1176:

ե. *Պատարագի Մեկնութիւնը գրած է իր ԻԴ. հասակին, այն է* 1176/7 *տարւոյն:*

զ. *Անտիոք եւ Սեաւ Լեռ շրջագայեց* 1177 *տարւոյ սկիզբները. Յայտնութեան Մեկնութիւնը թարգմանուեցաւ* 1179*ին Հռոմկլայ. սրբագրեց* 1181/2*ին:*

է. *«ԻԹ. ամ» կ'ակնարկէ* 1181/2: *Մեկնութիւնը գրուած է* 1175—1182 *տարիներուն:*

*Ներսէս ձեռնարկեց Սաղմոսաց Մեկնութեանս առաջարկութեամբ իր հոգեւոր հօրն եւ դաստիարակի Յովհաննէսի, որ կը նստէր Սաղրուի անապատը, եւ խնդրանքով անապատին միաբան եղբայրներու։ Ներսէս սովոր էր կիրակի եւ տէրունական օրերուն այցելել Սաղրուի անապատը, ուր կը պատարագէր եւ կ՚անցնէր ժամեր եղբայրներու շրջանակին մէջ։ Կ՚ընդունէր անոնցմէ հարցումներ Սաղմոսներու դժուարիմաց տեղիքներու շուրջը, եւ կը լուսաբանէր։ Այս Մեկնութիւնները գոհունակութեամբ կ՚ունկնդրուէին։ Նկատի առնելով զայս Հ. Յովհաննէս, կ՚առաջարկէ Ներսէսի գրի առնել այս մեկնութիւնները. ինչ որ չի մերժեր Մեկնիչը. մանաւանդ թէ կը յորդորուի գրել բոլոր Սաղմոսներու յօրինուածական Մեկնութիւն մը։*

Սաղմոսաց Մեկնութեան եղանակը։ *Դժբախտաբար չունիմ ձեռքիս տակ Մեկնութեանս օրինակ մը։ Պիտի ներկայացնեմ այստեղ համառօտիւ պատկեր մը անոր յօրինուածութեան, օգտուելով այն տեղիքներէն, զորոնք յառաջ բերած են Հ. Մ. Չամչեան (Մեկնութիւն Սաղմոսաց) եւ Հ. Յ. Թորոսեան։*

*Մեկնիչս ինքնակաց է. կը հետեւի այլաբանական կամ խորհրդական դրութեան. առանց նկատի առնելու բառական կամ նիւթական Մեկնութեան սկզբունքը։ Ինքնին կը*

*խոստովանի իր հետեւած ուղղութիւնը, երբ կը գրէ Յառաջաբանին մէջ. «Ի բազմաց եւ ի սրբոց երանելեաց մեր հարց քննեալ եղեւ բառ իւրեանցն յորդառատ իմաստից պէսպէս եւ շահաւէտ օգտութեամբ առլցեալ. (իսկ) մերս իմացութիւն շնորհին Աստուծոյ այլով օրինակաւ հանդերձեալ է ծաղկեցուցանել, եթէ լիցի ինչ արժանաւոր սերմանողին եւ պտուղն. այսինքն զի նոցա փոյթ եղեւ զսա ըստ ժամանակին Դաւթի (մեկնել) եւ որոց ի դէմ ասաց նա զսաղմոսս... իսկ զի մեզ ահա այսու զինու կայ առաջի մարտնչել ոչ ընդ մարմնոյն եւ ընդ արեան, այլ ընդ պետութիւնս եւ ընդ իշխանութիւնս աշխարհակալի խաւարիս՝ ի դէպ եւ պատշաճ վարկանիմ ի պատենից մարմնաւորաց բանիցն զաստուածային զէնս մերկացուցանել» (հոգեւոր մեկնութեամբ):*

*Այլուր կը գրէ. «Ի հարցն մերոց աշխատասիրութենէ ցուցեալ է... իսկ մեք առաջի եդաք քննել զայն միայն ըստ հոգեկան ընթացիցս շարժման» (Բ. Սաղմ.): Դարձեալ. «Զկանխաւ ասացեալն դարձեալ երկրորդեմք աստանօր, եթէ ոչ է փոյթ խնդրոյս մերոյ առաջի քննել զՍաղմոսս, ըստ որում ազգեն վերնագիրքն...» (Գ. Սաղմ.):*

*Իր մեկնելու եղանակը աւելի դիւրին ընելու համար կը ներկայացնեմ այս տեղ ՀԴ. Դ Սաղմոսին Մեկնութիւնը իբրեւ նմոյշ. «Մա-*շեցաւ երկիր եւ ամենայն բնակիչք նորա. ես հաստատեցի զսիւնս նորա: *Երկիր կարծեմ*

զմարմինս կոչել որ յերկրէ, բառ որում մերոյ. զու. հաստատեցեր զսահմանս երկրի: Իսկ բնակիչք նորին զգայարանքս. և սինք զհոգեկան մասունսն՝ զբանականն, զցասմնականն, զցանկականն. յորժամ նոքա հաստատեցան ի բարանչիր առաքինութեամբքն, բանն խոհականութեամբ, ցասմնն արիութեամբ, ցանկականն ողջախոհութեամբ, երկիր մարմնոյս և զգայարանաց մաչեալ նուաղեցան յերեւանց կամացն և ի հեշտութենէն՝ բառ տառքերոյն. Հանեալ եմ ընդ նեղութիւնս, ընդ զանս, ընդ աշխատութիւնս. զի յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ: Տես զհամաձայնութիւնս. զի նա ի տկարանալն մարմնոյ՝ զօրանայր հոգւով. նոյնպէս և աս ի մաչելն մարմնոյ և զգայարանացն կամօք, հաստատէր հոգեկանքն սինք՝ որ բարձեալ ունին զաս. զի այսպէս թուեցաւ և առաքելոցն՝ թէ հոգին վարի այսպիսեաւ մարմնով, և բարձեալ ունի զնոյն, որպէս սինքն գլարկն» (հմմտ. Հ. Մ. Զամչեան, Մեկնութիւն Սաղմոսաց, հատոր Ա., Վենետիկ 1823, էջ 4—6. և Զարբանալեան, Պատմ. հայկ. հին Դպրութեան, 657):

Մեկնիչը ամեն բառին խորհրդական իմաստը մեր հանել նկրուած է, քան բառական և նկարագրական մեկնութիւնը տալ: Նկատի առած է նկատողական կեանքի հետեւողները, և զանոնք զէպի նպատակ խրախուսել ջանացած է: «Մերթ առ Աստուծ

կը դառնայ, մերթ առ Հոգին. Դաւթի հետ կը բարձրանայ երկինք, ուր Աստուծոյ փառքը կը տեսնէ. կը դիտէ ծովին անհուն տարածութիւնը, որուն մէջ Աստուծոյ անսահմանութեան պատկերը կը գտնէ. եւ անոր ծփումներուն եւ անդորրութեան մէջ կը նկատէ հոգւոյն յուզումներն եւ խաղաղութիւնը. «Զոր օրինակ ծով որչափ ի ծփման է, ոչ կարէ ոք յայնմ զդէմս իւր ի նմա նկատել. իսկ յորժամ դադարի ի ծփելոյն, վարվառակի նայեցողին պատկեր ի նմին ճշգրիտ երեւի: Այսպէս եւ միտք որչափ ընդ զբաղումն աշխարհի պարապեալ է, մարմնին ի ծփման է... եւ ոչ կարէ զանձնակ վարուց իւրոց ճշգրիտ նկատել» (Սաղմ. Զ. 2): Կը նկարագրէ եղանակներու կարգը, արեւի շարժումը, թէ ինչպէս դէպի Հարաւ խոնարհելով, երբ պտուղները հասունցնելու այլ եւս պէտք չկայ, կը թողու որ գայ ցուրտը տիրէ. «Եւ ապա վաստակելոյն ի պտղաբերութենէ անոյ երկրի՝ ծածկեալ սփռէ զձիւնն եւ զսառն, եւ հանգուցանէ զնա» (Սաղմ. ԾԱ. 7): Իսկ յորժամ սերմանիքն սկսանին ընձիւղել ի սկիզբն գարնայնոյն՝ ի վեր դիմելոյ (արեգական) առ խոյին, ջերմութեամբ պաշտպան լինի սերմանեացն... եւ դարձեալ ի խոնարհ փութացեալ՝ հասուցանէ զպտուղսն» (Սաղմ. ԾԴ. 7)[1]:

---

1 Հ. Յ. Թօրոսեան, Բազմավէպ, 1898. էջ 469:

*Գրիգոր Սկեւռացի սակաւիկ մը շեղելով Սամուէլէն Մեկնութեանս պատճառ կը ներկայացնէ Սկեւռայի միաբանները, որոնք «հայցմամբ առաջի արկեալ խնդրէին զբացատրութիւն զաստուածիմաստ հոգեբղխին նուագ՝ որ միշտ յեկեղեցւոջ սրբում աննուաղ ձայնիւ պաշտի... այսպէս եւ երջանիկս հայր՝ զաստուածային կաթն իմաստից ի մասուրն ստնդիեցաց ծծելով ատյր յարբունն վարդապետութեամբ հոգւոյն ծնելոց: Սկիզբն այնուհետեւ առնէր՝ ըստ բազմագեղն որ ի նմա Հոգւոյն շնորհի՝ գրել... զՄեկնութիւն Դաւթայն սաղմոսերգութեանն» (էջ 33—34):*

Գնահատումներ հիներու եւ նորերու:
*Գրիգոր Սկեւռացի իր Ներբողին մէջ. «Որպէս աստուածային շտեմարանացն գոյովպետ, այնպէս աննախապարար առեալ բաշխէր կարօտելոց... գրել առնէր զեղուն հոգւոյն իմաստից՝ զնոյն շարժողի, կցորդ եւ զմատունս երկօք վաստակոց ի նիւթս քարտի: Ի խորսն մտանէր արքունական գանձարանին, զոսկին մաքուր եւ զարծաթն ընտրեալ ընդպատուական քարանցն արտաբերեալ՝ որք այնոցիկ կարօտք են՝ բաշխէր...: Եւ թէ ումեք ըղձալի իցէ անհետազօտելի աստուածային խորոցն լինել հասու, զնա ընթերցցի. եթէ աստուածաբանական ոք կարօտ ճառից լիցի՝ ի նմանէ զդրունն ընկալցի. եւ թէ անօրինականի գիտութեան գայ խորհրդոց՝*
*ի անօրինականի գիտութեան գայ խորհրդոց՝*
*նմա հետեւեսցի...» (էջ 34—35):*

Կիրակոս Գանձակեցի կը յիշէ դրուածքս ինքնուրոյն շեշտով մը. «արար եւ Մեկնութիւն յինքենէ՝ Սաղմոսացն Դաւթի» (էջ 63)։

Վերին Հայաստան շատ ուշ մատչելի եղաւ Մեկնութիւնս. անկէ օրինակ մը ընծայ ուղարկեց Լեւոն Բ. Թագաւոր, 1285ին Հաղբատայ վանքին։ Այս առթիւ կը դրոշմէ օրինակիս գրիչը տողերս. «Ի վերջինս դարու յանբարի եւ ի նուազեալ ժամանակաց իբր ի դրունս ձմերայնոյ ի լնացեալ ճուռ կամ ողկոյզ ինչ զարմանալի փայլեաց եւ երեւեցաւ... գերամաքուրն Ներսէս... ի Կլայն Հռոմկլան... յորում ի նորին արեան մերձաւորութեան, մանաւանդ յաշակերտութեան լուսափայլն բանի եւ մաքուրն վարուց՝ յետ նորա ծագեաց եւ փայլեաց նորին ձեռնասուն եղբօր ծննդոյ որդի սուրբ եւ երջանիկ Հայր մեր այն Ներսէս, որ ըստ եռանդոտ բորբոքման ի սրբագործ հրեշտակակերպն ըստ Զեբեթեայ որդւոյ զՍիրելին ունի յատկութեան մակակոչութիւն, զի որպէս կործաւէր մեղու ի բազում ծաղկանց զբեւրաստատիկ եւ զանազան ժողովեաց զբարեաց նախանձ յամենայն նախնեացն սրբոց գերազարդից զհարցն եւ զհայրապետաց, զճգնաւորաց եւ զմիանձանց, մանաւանդ թէ առաւել լրացեալ մարգարէական եւ առաքելական աստուածաբանութեամբ։

«Եւ ի նոցին հոգւոյ շնչմանէ զբազմաճաշակս այս խորհուրդս, որ քաղցր է քան զմեղր

բերանոց եւ քան զոսկի եւ քան զականս ըն-
տիրս պատուականս երկասիրութեամբ գոր-
ծեաց. եւ եթող մեծամեծացն հոգւով եւ
անկեալ ի ճշմարիտ բժշկութիւն հոգւոյ եւ
միանգամայն եւ ի նախանձ առաքինի գոր-
ծոց եւ յորդորումն եւ ի սէր ուսումնասիրու-
թեան, իբրու երկրորդ սարի յետին ժամա-
նակս ի յազգիս մերոյ սկիզբն եւ յորդորիչ
լինելով մեկնեաց եւ սպական իմաստից եւ
հոգեւոր այլաբանութեանց, որով բարգաւա-
ճեալ եկեղեցի: Զի վաստակով քրտնաջան
յազգս փարթամացեալ՝ ոչինչ այսքան գտա-
նեմք քան զամենայն եկեղեցիս որ փայլեցին
նախնի մեկնողացն եւ հարցն սրբոց դասք»:
Թագաւորն Լեւոն «զգիրքս զայս Մեկնութեան
Սաղմոսաց Դաւթի, որ ի նախասացեալ
սուրբ Հօրէն Ներսիսէ, յազգայնոյն արքայիս
մերոյ, յարմարեալ, տեսանելով զի չգոյր եւ
չէր դեռ ընդ ուրեք տարածեալ յաշխարհն
Արեւելից. սա սկիզբն եւ պատճառ լինելով
բարեաց՝ նորոգ ընծայ առաքեալ պարգեւեաց
սուրբ ուխտին Հաղբատայ» (Վիեննա, Թ. 617,
83ա—84բ):

Գրիչ մը, որ 1201ին օրինակած է Ներ-
սէսի Առակաց Մեկնութիւնը, կը գնահատէ.
«Այս Սուրբ քննեաց զներգարանս Դաւթի
պարզ եւ մեկին բանիւ, խորին եւ ախորժ
գիմօք, հաւանական եւ ատիելի անձին՝ ու-
նողի երկեղ եւ իմաստս» (Յովսէփեան, անդ,
690):

Մեկնութիւն մըն է «առաւել բառ հա-

*գեւոր տեսութեան պարզ ածով վայելչակա-նաւ, վառիչ որտից ի սէր Աստուծոյ եւ յա-րութիւն առաքինի ընդդէմ ամենայն փոր-ձանաց բանսարկուին, որում անհաշտ թշնամի եւ ջախիչ գլխոյ նորա ցուցանէ զանձն իւր Երանելին յամենայն գրուածս իւր»* (ՆՀԲ):

*Թէպէտ իր 26—28 տարիքին արտադրու-թիւնն է Մեկնութիւնս, բայց կը ներկայանայ ան «զարդ կատարելագոյն հասակի եւ մեծի փորձոյ եւ հոգեկրութեան. զոր ոչ այլապէս կարէր ըմբռնել ծերունի վանական նորին Սամուէլ, բայց եթէ վստահութեամբ նորին յետ Աստուծոյ 'յանհաս գիտութիւնն եւ յի-մաստութիւնն իւր,» (Ալիշան, Սիսուան, էջ 87):*

*Ղազար Ջահկեցի, Դրախտ ցանկալի, էջ 634, կը գրէ. «Զընթերցողս ի յերկիւղ եւ յանապատ վարելոյ խրատածարակս տանէ»:*

Չ.

Մեկնութիւն Առակաց, Ժողովողի, Իմաստութեան եւ Երգոց Երգոյն:

ա. Տեսութիւն Առակացն Սողոմոնի, Ներսիսի եպիսկոպոսի Տարսոնի, ի թուա-կանի Հայոց (1197) աւարտեալ:

*Հանդերձեալք Աստուծով մխիլ ի քննու-թիւն գրոց Առակաց Սողոմոնի նախ զայս իմանամք, զի երրորդ էր սա մարգարէ յետ Մովսիսի որ գիրս գրեաց...:*

Յիշատակարան հեղինակին. «*Սկսեալ ի քննութիւն աստուածախօս իմաստիցս երեք ամաւք յառաջ քան զայս, որ է ՈԽԶ* (1197) *թուական, ի հիւանդոտ մարմնոյ եւ ի ծանրութենէ հոգւոց զանգաղէր միտք նուաստութեան մեր ի քննել եւ ձեռն ի գրել: Յայս ամ գնացեալ իմ ի Կոստանդնուպոլիս եւ խնդրեալ ի նորին պատրիարքէն զոր առ նովին տեսութիւն Առակացս եւ Յոբայ*[1]. *եւ ընթերցեալ տեղեկացայ, զի զոր ի մէնջ պաղաբերէր չնորհ սուրբ Հոգւոյն, ոչինչ նուազ էր յայնմանէ. եւ նախաքննեալն համաձայնէր եւ ոչ աստարանայր: Եկեալ ի յարկս իմ՝ երկրպագութեամբ գոհացայ զԱստուծոյ եւ քաջալերեցայ ի քննութիւնս աստապեալ հոգւ Ներսէս որ ի Տարսոն անուամբ այցելու եւ ի Սկեւռայ աւթեւանքս բնակեալ ի հանգիստ*»:

բ. Բանք ժողովողի որդւոյ Դաւթի թագաւորի Իսրայէլի յԵրուսաղէմ. Եկլեսիաստէս:

*Առակացս գիրք խրատէ մարդկան յանհարթ եւ յանհաւասար կենցաղոյս ընթացքն . . . :*

Յիշատակարան հեղինակին:

«*Սկզբնաւորեցաւ քննութիւն գրոյս ի ՈԽԲ* (1193) *թուականին. եւ աւարտեցաւ ի ՈԽԶ* (1197). *յորում ամի ժամանեալ իմ ի Կոս-*

---

[1] *Տես վարք Երկրպագականք, թ.* 2:

*տանդիմուտոյիս եւ առեալ զոր ի նոյն տեսութիւն ի հայրապետէն որ ի մեծ եկեղեցին ի Գէորգայ, տեսի զի այս որ յինէն՝ ոչինչ նուազ էր ի նորին հաւատարութենէն. ուր եւ զհաւութիւն առեալ շնորհի սուրբ Հոգւոյն՝ զաւրացայ ի քննելս. եւ երագութեամբ աւարտեցաւ: Սակայն յՈւնոյնութեան գրոցս զոր ումն Ոյոմպիոդորոս սարկաւագ քննեալ էր, ի վերջս մերձաւոր՝ թերի գտաւ այն գիրք, ոչ ունելով ի կատարումն: Եւ մեր բաս կարի եւ յոյս խոկացեալ աւարտեցաւ ի փառս Քրիստոսի ի Տարսոն քաղաք, արդթեր մեծի եկեղեցւոյս ի տառապեալ Ներսիսէ տաճարիս սրբոյ առաջնորդէ եւ քաղաքիս անուանեալ այցելուէ. որ եւ աւանդեցի զկնի եկեղոցդ թէ ինչ զաւրէ տալ ձեզ շնորհ մխիթարութեան»:*

*Էջմ.* 2602, *թղ.* 266*ա—բ. ունի նաեւ Աստակաց յիշատակարանը:*

գ. Խմաստութիւն Սողոմոնի: — *Ի վերնագրէ տառի ստանիմ՛ք եւ զոյս խմաստ Սողոմոնի . . . :*

ա—գ. Ձեռագիրք. *Էջմ.* 404, *Էջ* 732 (*ԺԸ. պակասաւոր*): 1060 (1615?): 1141 (1335): 1142 (1349): 1143 (*ԺԳ.*): 1145 (1695): 1146 (1739): 1147 (1723): 1166, 110*ա* (1303): 1449, 79*բ* (*ԺԷ. միայն յառաջաբանականը*), 1232 > *ՈԾ* = 1201*ին գրուած ձեռագրէ*): 2603 (1280 ?): 2602 (*ԺԳ.*): *Երուսաղէմ*, *Թ.* 49 (1762): 391 (1329): 480 (*ԺԸ.*): 484 (1793): 559 (1809): 646 (1671):

709 (ԺԷ.)։ 755 (ԺԷ.)։ 1168 (ԺԷ.)։ Վիեննա, Թ. 707 (ԺԷ.)։ Պարիս, Թ. 32։ Վենետիկ, 396։ 1565։ 1637։ Թալաս, 14 (ԺԴ. Գալեան, Ցուցակ, Լոյս, 1905, էջ 1251)։

Հրտ. ա և բ հանդերձ գերմ. թարգմանութեամբ. Տեսութիւն Առակաց Սողոմոնի, Ներսեսի եպիսկոպոսի Տարսոնի. Nerses von Lampron, Erzbischof von Tarsus, Erklärung der Sprichwörter Salomo's. Herausgegeben und übersetzt von Prinz Max, Herzog zu Sachsen. Leipzig 1919—1926, 4° 516 S.

Մեկնութիւն Ժողովողի Ներսեսի եպիսկոպոսի Տարսոնի. N. von L., Erklärung des „Versammlers“ (Predigers), herausgegeben und übersetzt von Dr. Max, Herzog zu Sachsen. Leipzig 1929.

Ներսէս Կ. Պոլսոյ Մ. Գէորգ մեծ եկեղեցւոյ Մատենադարանին մէջ գտած է Ունայնութեան գրոց (Ժողովողի) Մեկնութիւնը «զոր ամն Ոլոմպիոդորոս սարկաւագ քննեալ էր». ձեռագիրս թերակատար եղած է, կը պակսէր վերջին մասը. «ի վերջ մերձաւոր՝ թերի գտաւ այն գիրք ոչ ունելով ի կատարումն». բայց Մեկնութիւնս համաձայն եղած է Ներսիսի Մեկնութեան։ Այս Ὀλυμπιόδωρος Սարկաւագն յԱղեքսանդրիա ձեռնադրուած է Աղեքսանդրիայի Նիկիոտէս պատրիարքէն (505—516)։ Ժողովողի իր ընդարձակ պատմական-այլաբանական Մեկնութիւնը հասած է մեզի, հրատարակուած Migne, Patrologia graeca, t. 93,

col. 477—628 (*Հմմտ.* K. Krumbacher, Geschichte der byzantinischen Literatur. München 1897, S. 127—128. Bardenhewer, Geschichte der altchristlichen Literatur, V. 93—94.

*Գրիչ մը, որ* 1201*ին օրինակած է Մեկնութիւնքս, կը գրէ տողերս իբրեւ յիշատակարան, կարեւոր՝ գրուածքիս եւ անոր հեղինակին համար. «Գրեցաւ իմաստատիպ, հանճարունակ, աստուածախօս մատեանս (Զ. մատենիս) այս, որոյ անուն Աստուծոյ՝ Սողոմոնին թարգմանութիւնս, արարեալ քրիստոսակիր եւ հոգիընկալ անձին Ներսէսի որոյ եւ մաքրամիտ եպիսկոպոսի Նշանաւորին Տարսոնի. ընդ բազմաշխատ բանից երկնային զանձուց կանխաւ՝ ի վերջոյ եւ զայս աննախանձ իմացող մտաց արդարեւ սփռացուցիչ. ի թուին Հայոց ի ՈԾ* (1201)[2]*: Եւ զիա՞րդ ոչ. որ ի մեղաց սատուցեալ զարուս յուսատու ոգւոց բանի տատ ի Հոգւոյն որոյ ըղձմամբ յեկեղեցիս Քրիստոսի պայծառ եւ արթուն սրտին յայտնեցաւ: Որ ի տխուր եւ յանլոյս ոգւոց աւուրս ի մարմնի արութեան վաստակաւք անաղտ ջահ հոգւոյն ճարպով յաստուածուստ փայլեալ ծագեցաւ: Սա եւ սորին անսխալ առաքինութիւն բանիւ ընդ գրով (Զ. գրոյ) տիրապէս ահա ոչ պարագրի. բայց թէ յինքնածագ անընթաց արեւուն յայտնութեան աշխարհի սպառողացն ստուգիւ սփռեալ ցուցանի ընդ այլ բազմա-*

---

2 *Թուականս կը պատկանի ձեռագրի առաջին արտագրողին: Գրութեան տարին է ՈԽԶ:*

*դան զաղանի բարեաց մարդկան, որ ունի ա-նեղծ զծով Աստուած առ ինքեան»* (*Էջմ.* 1232, 256*բ*: *Յովսէփեան, անդ,* 689. *Երուսաղէմի, Թ.* 646*էն*): *Նոյնը Էջմիածնի, Թ.* 1166*ի* (1303) *մէջ* (*Խաչիկեան, ԺԴ. դարու Յիշատակարաններ, էջ* 20—21): *Յիշատակարանս առանց տարակուսի Ներսէս քահանայի գրչէն է* (1201*ին*):

*Մեկնութիւններուս գնահատանքը կ'ընէ Գրիգոր Սկեւռացի. «Իսկ զմեւսն ո՞ւր եդից, որ ամենայնի գերարնութեամբն յաղթէ. զիմաստնոյն ասեմ իմաստնոց եւ որ հանճարն է հանճարեղաց. որ յիմաստիցն տուեալ զովեցաւ անբաղդատելի զօրով համայնից. որ եւ ի նախնեաց հզօր Մեկնչաց տիրապէս անթարգմանելի, բայց թէ զան ուրեք լաւ մասին ի խոր խորհրդոցն եդեւ ճառելի: Որ ապացուցիւ անթուելի բաղդատութիւն եկն եղականաց, եւ որ զունայնութիւն նմանի կենցաղոյս որպէս էն մեզ բացայայտեաց. եւ զհեռաւեալցն զանմտութիւն լաւ որում օրէնն էր՝ բանիւ ճառեաց: Եթէ զխա՞րդ զհիւսս բանից անյայտութեամբն պարփակելոց ի լոյս տեսութեանն ածեալ զիւրաքանչիւր բանիւ քարոզեաց. եւ զոր ի նմա զօրեղն խորհուրդ լաւ նոյն աւանդիցն հրաշարանեաց: Զոր թէ զայլովքն զամենեքումբք զանց արարից, ի մերուստ առ ի նմա պարգեւ շնորհի, այս միայն բաւական ի հիացումն ածել զլսողս: Եթէ զօտարացեալն եւ զայլազանեալ կարծեալ կարգ բանից, զխա՞րդ լաւ յարմարութեան*

*անստերիւր բերեալ մտաց տեսութեան, որ թէ ի բացատրութեանն պատկանութիւն ոք նոյնեացի, քան զամենայն որ ինչ հայելի գիտման մտաց կարգն ծանիցի»* (*էջ* 37—38)։

Դ. Խաւսք Եւրոգինէսի (*այլ գրչէ՝* եւ Ներսիսի յերգս Երգոցին Մեկնութիւն)։

*Հարսն ասէ. Համբուրեսցէ զիս...: Արդ հրեայքն յօրինաց անտի փութացան մերձենալ ի համբոյր բերանոյն...:*

Վջ. *Զի ամենայն նմա դիւրին է որպէս եւ կամի...:*

*Էջմիածին, Թ.* 2602, *թղ.* 216*բ*—236*բ* (*ԺԳ.*)։ (*Որոգինի անունով՝ Էջմ.* 1156 (*ԺԷ.*)։ 1158 (1768)։ *Վիեննա*, 92 (1826)։

*Ձեռագրին մէջ զետեղուած է Ժողովողի եւ Իմաստութեան գիրքերու միջեւ, ինչպէս կը պահանջէ կարգը։*

*Բեռլինի Թ.* 89, *թղ.* 155*ա*—183*բ* (1698) *կը պարունակէ Հիպպողիտոսի Մեկնութիւնն Երգոց Երգին, սկիզբէն պակասաւոր. այժմ կը սկսի. «Սեաւ եմ եւ գեղեցիկ դստերք Երուսաղէմի...* [*Ա.* 4]։ *Այս է մարդկութիւնս որ ի փառաց մերկացաք...: Այս տեղ, թղ.* 168*ա. «Հարսն աղաչէ զի իջցէ փեսայն Քրիստոս. իջցէ եղբօրորդին իմ ի պարտէզ իւր եւ կերիցէ զպտուղ ծառոց իւրոց»* [*Ե.* 1] *համառօտէն ետքը՝ կարմրագրով կ'ըսուի. «Յայսմ հետէ ձեռն բանիս առանց մեկնութեան ի Հիպպողիտեայ. թէ ի Մեկնչէն ան-*

փոյթ արարած եւ թէ ի գրողէն, ոչ գիտեմ. բայց Ս. Ներսէսի Տարսոնացւոյ գթերին լցեալ ի յօգուտ ի վարժ մանկանց Սիսին»: Կը սկսի.

«Մտի ի պարտէզ քոյր իմ հարսն: Առատուած ընդ մարդկան երեւեալ...» (վերջն 183ա): Տաշեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Բերլինի, անտիպ):

Ն. Գ. Զարբհանալեան, Պատմ. Հ. Հին Դպր. 656 յիշեալ Սողոմոնի գրոց այս մեկնութիւնը, Կ՚իմանայ Առակաց, Ժողովողի, Իմաստութեան եւ Երգոց Երգոյն գիրքերը:

Բերլինի Թ. 89 նկատի ունի Հիպպողիտոսի Մեկնութիւնը. ուստի եթէ անոր պակասը լրացուցած է Ներսէս, պէտք է քննութեան առնել թէ այս լրացումը Լամբրոնացւոյ Մեկնութի՞ւնն է թէ ուրիշի Մեկնութենէն (նկատի կրնայ առնուիլ Գրիգոր Նիւսացի եւ Գրիգոր Նարեկացի) առնուած է: Յամենայն դէպս Որոգինէսի Մեկնութենէն չէ: Իսկ Էջմիածնի Թ. 2602ի վերնագրին մէջ այլ դրչէ մուծուած յաւելուածը «եւ Ներսիսի» կարելի է մեկնել այն պարագայէն որ Որոգինէսի խօսքը զետեղուած է Ներսէսի Մեկնութեանց շարքին մէջ. որ կարծել տուած է, նաեւ Երգերգոյի Մեկնութիւնը զոնէ մասամբ Ներսէսի եղած ըլլայ: Որոգինէսի այս Մեկնութիւնը, որ միայն հայերէն հասած է, O. Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, II. 116, «յամենայն դէպս անհարազատ» որակած է: Ուստի կը կարօտի

*տակաւին քննութեան։ Այսպէս պէտք է խմանալ Հանդ. Ամս. 1954, էջ 133։*

3.

Տեառն Ներսէսի արքեպիսկոպոսի Տարսոնի Մեկնութիւն երկոտասան մարգարէից, զոր ի թելադրութենէ սրբոյ Եփրեմի եւ Կիւրղի եւ յիւրոց յաւելուածոց մտաց գեղեցկայարմար յեռեալ իբրեւ ոսկի ընդ սարդիոն։

ա. *Մարգարէութիւն Ովսէի. յաւուրս Ոզիայ եւ Յովաթամու եւ Աքազու եւ Եզեկիայ թագաւորաց Յուդայ, եւ յաւուրս Յովրամայ որդւոյ Յովասայ թագաւորի Իսրայէլի։ — Յար եւ մերձաւոր վկայքն գրոց բնաւորական բնութիւն մարդկան... (էջ. 5—60)։*

բ. *Մարգարէութիւն Ամովսայ։ Ամոս ի Թեկուին մարգարէացաւ յաւուրս Ոզիայ արքային Հրէաստանի։ — Պատգամք Ամովսայ...: Եւ ո՞ր է այս գետնաշարժս... (էջ. 60—85)։*

գ. *Մարգարէութիւն Միքիայ մարգարէի։ Միքիա եւ Ովսէ եւ Ամովս յաւուրս Յովաթամայ եւ Աքազու եւ Եզեկիայ թագաւորացն Հրէաստանի մարգարէացան։ — Եւ եղեւ բան տեառն...։ Սոքա երեքեան մարգարէքս... (էջ. 85—104)։*

դ. *Մարգարէութիւն Յովելայ։ Յովէլ յաւուրս Եզեկիայ մարգարէացաւ։ Պատգամ*

*տեառն որ եղեւ....: Համաձայն այլոց մար-գարէիցն եւ սա...* (տպ. 104—115):

Ե. *Մարգարէութիւն Աբդիու: Աբդիու մարգարէացաւ յառաջ քան զելս Աստուածա-նայն: Այսպէս ասէ Տէր....: Տեսիլս Աբդիու ամենայնս հակառակ է Եդովմայ...* (տպ. 116—119):

Զ. *Մարգարէութիւն Յովնանու: Յովնան յաւուրս Աքազու մարգարէացաւ:*

*Քանզի մարգարէքն վասն Աստուածա-նեացն ասէին...* (տպ. 119—129):

*Այս գլուխը նաեւ անջատ կը տեսնուի ու ժամանակի ձեռագիրներու մէջ. «Գիրք մեկնութեան Յովնանու մարգարէին, զոր ա-րարեալ է զերիմաստ եւ զերահրաշ տեառն Ներսէսի Լամբրոնացւոյ»* (*Սեբաստիա, Թ*. 249):

Է. *Մարգարէութիւն Նաւումայ: Նաւում վասն սատակման Նինուէացւոցն մարգարէա-ցաւ: Առած Նինուէի. Գիրք տեսլեան Նաւու-մայ Եղկեսացւոյ: — Հեբրայեցի փոխանակ այսորիկ ասէ մարգարէութիւն...* (տպ. 129—137):

Ը. *Մարգարէութիւն Ամբակումայ. Ամ-բակում վասն Բաբելացւոցն որ գերեաց զՆի-նուէ մարգարէացաւ: — Սովորութիւն էր ի ժողովրդեանն Հրէից...* (տպ. 137—157):

*Աղօթք Ամբակումայ մարգարէին: Տէր զլուր քո լուայ եւ երկեայ: — Այս աղօթք է զոր մատոյց նա...:*

թ. *Մարգարէութիւն Սոփոնիայ յաւուրս Յովսեայ: Բանն որ եղեւ առ Սոփոնիա...* (*տպ.* 157—166):

ժ. *Մարգարէութիւն Անգեայ. Զաքարիա հանդերձ յետ եկին յամին երկրորդի Դարեհի արքայի մարգարէացան: Յետ դարձին ի գերութենէ անտի Բաբելացւոցն...* (*տպ.* 166—175):

ժա. *Մարգարէութիւն Զաքարիայ: Յետ եկին մարգարէացաւ, յամին երկրորդի Դարեհի արքայի: — Յամսեանն ութերորդի* (*տպ.* 175—228):

ժբ. *Մարգարէութիւն Մաղաքիայ: Դարձեալ յետ դարձին մարգարէացաւ: Առած բանի Տեառն: Ի սկզբան բանի մարգարէութեանս...* (*տպ.* 229—224):

Յիշատակարան Հեղինակին.

*Ի թուին ՈԻԹ* (1180) *ըստ շրջաբերութեան Հայոց տումարիս կատարեցաւ յարմարումն Մեկնութեան ԲԺ. մարգարէիցս տաժանմամբ վաստակոց նուաստի Ներսիսի, որ յընթեռնուլն զճգնազգեաց հայրն Եփրեմի հոգիաշնորհ Մեկնութիւնն ոչ կարէի աղուեցուցանել զմիտս իմ տկար վասն ոչ ունելոյ յարմար ընդ տեսութեանն եւ գրաբանն: Ապա ձեռն ի գործ արկի զբաւսումն անձին ինձ յանապատական լռութեանս զյարմարումն սորա եւ Կիւրղին ընդ միմեանս: Եւ թէ ի մէնջ ինչ յաւելաւ առ թերութեանն*

լրումն ի դիւրութիւն իմն, յընթերցումն եւ այլոց, որք կամիցին աւգտել: Աղաչեմ, հարք սուրբք եւ եղբարք, անմեղադիր լինել ժըպրհութեանս իմոյ, որ պատճառ ոգտութեանս եղեւ: Իսկ այլս թէ բարւոյ յիշման արժանի համարիք զաշխատութիւնս, եւ զձեզ յիշեսցէ Քրիստոս ի խոստացեալ բարիսն իւր մաղթանաւք սուրբ մարգարէիցն եւ սուրբ հաւրն մերոյ Եփրեմի: Եւ նմա փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Երուսաղէմ, Թ. 313 (Սաւալեանեանցի Ցուցակէն): Այլ ձեռագիրք եւ տպագիրն չունին Յիշատակարանս:

Ձեռագիրք: Էջմիածին Թ. 1216 (1283): 1021 (ԺԸ.): 1133 (ԺԷ.): 1147 (1723): 1149, 117ա (1687): 1426, 37ա (ԺԴ: Քաղուածք): 1449, 92ա (ԺԷ. Յառաջաբան): Երուսաղէմ, Թ. 1280 (1284): 49 (1762): 313 (ԺԴ.): 510 (ԺԷ.): 1086 (1788): Երեւան, Թանգ. 550 (ԺԸ.): Հալէպ, Բ., 33 (ԺԴ.՞ Յ. 95—96): Զմմառ, 402 (ԺԷ): Բոլոնիա, Համալսարան, cod. arm. 3291 (1599. Գալէմք., Ցուցակ. Macler էջ 26): Աճառեան, Ցուց. Թաւրիզի, Ա., 16 (1775):

Հրտ. Անդրէաս Վ. Նարինեան. Մեկնութիւն սրբոց ԺԲ. մարգարէից. արարեալ երանելոյն Ներսիսի Լամբրոնացւոյ արքեպիսկոպոսի Տարսօնի Կիլիկեցւոյ, ուղղափառ վարդապետութեամբ եւ լուսաւոր բանիւք՝ յօգուտ մանկանց կաթուղիկէ սուրբ Եկեղեց-

ւոյ: Կ. Պոլիս 1825/26, մեծ 4°, էջ 1—241 (համեմատութեամբ 3 ձեռագրաց):

Հրատարակչին են տողերս.

«Մեկնութիւն ԺԲ. մարգարէից, զոր մի՛ երկարաւոր բանիւք գովեցից սակաւս, այլ առաւել՝ այսո՛ւ սակաւուք, թէ Լամբրոնացւո՛յն է արարեալ: Որ այն ինքն է սուրբն Ներսէս արքեպիսկոպոսն Տարսոնի Կիլիկեցւոյ, առաքելաշաւիղ հայրապետ, բերան քաղցրութեան սրբոյ Եկեղեցւոյ, եւ գրիչ վարդապետութեան Հոգւոյն Աստուծոյ. սկսեալ ի ժամանակէ անտի Շնորհալւոյն՝ ո՛րչափ գերապանծ հանդիսացաւ ի վերջին դարս Հայոց սրբազանից, մինչ զի ընդ նորին իսկ միաբան գովաբանիլ յեկեղեցի Հայաստանեայց գրեցաւ արժանի. եւ արդարե՛ւ արժանի, զի ծանուցեալն ի սրբոց՝ մինչեւ ի կատարած յաւիտենից ընդ սուրբս անխափան գովեսցի» (էջ 5):

Ներսէս Լամբրոնացի թելադրուած է մեկնելու ԺԲ. մարգարէները ունենալով իր ձեռքի տակ Ս. Եփրեմի եւ Կիւրեղ Աղեքսանդրացւոյ Մեկնութիւնները: Եփրեմի Մեկնութիւնը կը յիշուի պահուած ըլլալ Էջմիածնի Թ. 1239 (Կար. 1226) ձեռագրին մէջ, ԺԳ.—ԺԴ. դարէն (Կ. Տէր-Մկրտչեան, Կնիք հաւատոյ, էջ ԽԱ): Կիւրեղ Աղեքսանդրացւոյ Մեկնութենէն հասած են մեզի միայն հատակոտորներ (Յովելէն 1 եւ Զաքարիայէն 4): Յունարէնը Migne, P. gr. հատոր 71 եւ 72, էջ 9—364):

4.

Տեսութիւն քննութեամբ Աղաւթից սուրբ աւետարանչին Յովհաննու ի խնդրոյ Ստեփանոսի վարդապետի Յակովբցւոյ, ի Ներսիսէ աշակերտէ իւր եւ հոգեւոր որդեկէ:

*Գիր քոյդ պատուականութեանդ միանգամ եւ երկիցս, Հայր սուրբ, եհաս առ իս փութացուցանող առ ի խնդիր քննութեան աստուածարան առաքելոյն Յովհաննու Աղաւթիցն. եւ ես նախապատիւ վարկայ զհնազանդութեամբ աշխատութիւն քան զհեղգութեամբ յուլութիւնն...:*

*Էր ընդ եղբարս երանելին Յովհաննէս...: էր, ասէ, եւ թէ յորում տեղւոջ կամ ի քաղաքի ոչ նշանակէ զլինելն...:*

Վջ. *Ո՛ Հայր պատուական Ստեփաննոս, զոր ի գլուխ էած շնորհն Աստուծոյ զխնդրելիս ի ձեռն տառապելայս գործարանի ի փառս իւր եւ ի վայելս քումդ հաւատոյ եւ ճշմարիտ որ առ Աստուածարանն սիրոյ: Ոչ եթէ ըստ որում պարտն էր կամ զբովանդակն ածել ի լոյս զսորա զօրութիւն, որ անհաս էր յինէն, այլ փութացեալ միայն հնազանդութեամբ որդիական հպատակութեամբ պատճառս նիւթել իմաստնոյդ առ ի յեւս սորին իմաստութիւն բարձրանալ...:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, *Թ*. 1409, *թղ*. 262*ա* (1299): 1418, 126*ա* (1280): 1422, 142*ա* (1284): 2611, 133*ա* (1363): 2516 (1387): *Երուսաղէմ*, *Թ*. 458 (*իրր* 1270):

425 (1679)։ 929։ 998 (1623)։ 15»7 (*ԺԷ.*)։ 1072, 227*բ* (1611)։ *Վիեննա*, *Թ*. 78, 79*ա* (*Յ*. 336)։ 382, 53*բ*—177*ա* (1284. *Յ*. 834)։ 371, 157*ա* (1283. *Յ*. 1037)։ *Փարիզ*, 32 (*ԺԴ.*)։ *Զմմառ*, *Անտոնեանց*, 8, 370*ա*—381*ա* (1695)։ 19, 78*ա* (1693)։

Հրատարակութիւն. *Տեսութիւն Աղօթից պատմութեան բանից ննջման աստուածաբան աւետարանչին Յովհաննու. արարեալ Ներսէսի Լամբրոնացւոյ արքեպիսկոպոսին։ Կ. Պոլիս* 1736, 8°, *էջ* 160։

Թարգմանութիւն. Н. О. Эминъ, Извлеченіе изъ толкованія архіепископа Нерсесса Ламбронскаго на „Успеніе св. Евангелиста Иванна Богослова“: Православное Обозрѣніе, 1876, ст. 19—28. *Միւսանգամ ի գիրս*՝ Переводы и статьи Н. О. Эмина, Москва 1897, ст. 32—41. *Քաղուածական թարգմանութիւն*։

*Աղօթքս, կոչուած «Հանգիստ երանելւոյն Յովհաննու» թարգմանուած է յոյն բնագրէ մը Ե. դարու առաջին կէսին։ Կը նկատուի անվաւերական գրուածք։ Հմմտ. Հ. Յ. Գաթըրճեան, Հանգիստ երանելւոյն Յովհաննու, Վիեննա* 1877։

*Հ. Ղ. Ալիշան, Սիսուան*, 89. *Գրուածքս, կ՚ըսէ, «Հարկ է մի յառաջին երկանց վաղահաս մտացն լինել, զի յոյժ Ներսէս կոչէ զինքն, եւ զորովանօք բարբառի առ դաստիարակն, եւ բազում պատուով, որ եւ Թուի*

գուլ մի ի նշանաւոր վարդապետաց ժամանակին եւ ի վանահայրց»։

Խնդրողն Ստեփանոս Յակովբցի վարդապետ, որուն աշակերտն եւ հոգեւոր որդեակն է Ներսէս, ծանօթ է մեզի 1173 տարիէն։ Այս կամ նախորդ տարւոյն Գրիգոր Ապիրատ եպիսկոպոս (որ յետոյ կաթողիկոս եղաւ իբրեւ Գրիգոր Զ.) վերստին նորոգել կու տայ 1066ին գրուած եւ Ներսէս Շնորհալիէն իրեն նուիրուած Աւետարանը «գեղեցիկ մետաքսէիւք եւ ակամբք պատուականօք ընդելուզեալ ի մարգարտոյ մեծագնոյ՝ ի ձեռն աստուածաբանական վարդապետի Ստեփանոսի դրան սարկաւագի տեառն իմում (Ներսիսի Կլայեցւոյ), որ եւ վասն անմոլար ճանաչելոյ կոչի սա Յակոբցի» (Յովսէփեան, Յիշատ., Ա., 575—576)։ Գրիգոր Արեւելցի գրիչ 1173ին Սկեւռայ Աւետարան մը կ՚օրինակէ Կոստանդին Կոչիկ անուն քահանայի (ի Հռոմկլայ) համար. ուր կը խնդրէ յիշել «մանաւանդ զարդխնական վարդապետն զՍտեփաննոս, որ դրան սարկաւագն էր Ներսիսի հայրապետի» (անդ, էջ 446)։ «Ամենայն հաւանականութեամբ նա նոյն է Ներսէս Շնորհալու կողմից իր կեանքի վերջին օրերին՝ Միութեան խնդրի առթիւ դէպի արեւելք ուղարկուած Ստեփանոս վարդապետի հետ» (Յովսէփեան, անդ, 577)։

Ինչպէս վերադոյն յիշեցի, սա նոյն է Ստեփանոս Տիրացու, Վասպուրականի Ս.

*թաչ վանքի եպիսկոպոսին եւ առաջնորդին հետ, զոր Ներսէս «ուսուցիչն մեր» կը կոչէր: Սա Գրիգոր Զ. Ապիրատի հրաւէրով Հռոմկլայ եկած է 1198ին եւ ներկայ գտնուած 1199, յունուար 6ին Լեւոն Ա. Թագաւորի թագաւոր օծութեան հանդէսին, վախճանած իբր 1200ին. Հմմտ. Յովսէփեան, անդ, էջ* 109—214:

*Յովհաննէս եպիսկոպոս արքայեղբայր կը գրէ.*

*«Եւ իմ յընթեռնուլն պատուածարան սուրբ աւետարանչին եւ սիրելի աշակերտին Տեառն զիմաստասիրած Հանգստեան նորին բանս ազօթից՝ ոչ լինէր հասու խակախամ միտք բծկանիս ըստ արժանւոյն: Որոյ վասն ի խոյզ իսկ ելեալ զտի զքրիստոսազգեաց երջանկին տեառն Ներսէսի Լամբրոնեցւոյ պճնազնեայ իսկ մեր եւ արեանառուի Տեսութիւն արարեալ սոցին բանից ի խնդրոյ հարց աստուածազանից: Ընդ որոյ գիւտ յոյժ բերկրալից եղէ որպէս զայր որ զտանէ զանձ յագարակի եւ կամ որ առնու աւար բազում. ցնծալից եղեալ երեւօք մտաց, ոչ եւեթ անձին իմոյ, այլ եւ յոքունցս ապագայ իմաստասիրաց եղբարց զայն ցնծութիւն վայելել՝ գրել ետու: Զոր իմ իսկ մեղսամակարթ ձեռամբ եւ հողացեալ մատամբք սկսայ (աւելէ անդէն այլ գրչէ) եւ վասն անպարապութեան իմոյ ետու գրել Փիլիպպոսի քահանայի, որ թէպէտ եւ կիրթ էր գրոց, այլ վառեալ էր ի լուսոյ. որոյ Տէր ողորմեսցի» (Երուսաղէմ,*

Թ. 458 (Յուց. Սուքիասեանցի): Նոյնը կը գտնուի նաեւ Երուսաղէմ, Թ. 425, Թղ. 136ա (յամէ 1679. Յուց. Խապայեանի): Սկզբնագրին թուականը կը պակսի. գրուած համանօրէն 1270էն յառաջ կամ յետոյ:

5.

Մեկնութիւն Ս. Պատարագի:

*Մեկնութիւնս պահուած է մեզի Համաքածոյքի մը մէջ, զոր կազմած է ինքնին Ներսէս Լամբրոնացի հետեւեալ մասերով.*

1. *Ատենաբանութիւն.*
2. *Գլխակարգութիւնք.*
3. *Խորհրդածութիւն.*
4. *Քննութիւն կարգաց եկեղեցւոյ.*
5. *Մեկնութիւն Պատարագի.*
6. *Հարցաքննութիւն Ա.—Գ.:*

*Առաջին երկուքը ինքնակաց գրութիւններ են, գրուած 1177ին Համկլայի ժողովին առթիւ: 1178ին, երբ վերստին շարադրած է «յուսթեան պտուղը», այսինքն 3—6 բաժինները, կարեւոր տեսած է անոնց սկիզբը դնելու այս երկու գրութիւնները: Առ այս ակնարկութիւն կը համարիմ Դ. բաժնին տեղիքս. «քանզի որ հաստոյն էր բան՝ յայ-տում վայրի հաստուցաք եւ զսիրոյն որ առ ազգս քրիստոնէից» (էջ 41):*

*Իսկ 3—6 բաժինները կը ներկայացնեն մէկ գիրք, որ ունի նախապատրաստական եւ յաւելուածական մասեր:*

*Այս Գիրքը կ'ակնարկէ անշուշտ հեղինակը, որ կը գրէր առ Լեւոն Թագաւոր. «Ես գիրք մի բովանդակ եմ գրեալ զՀայոց ազգիս անկարգութիւնս, որ յետոյ մտեալ են» (Թուղթ, էջ 240)։*

*Հաւաքածոյքս այս բովանդակութեամբ գտած է Ներսէս քահանայ, որ կը հաւատէ, թէ գրուած էր հեղինակին գրչով. անկէ օրինակել տուած է 1205ին իր օրինակը։ Իր կողմէ աւելցուցած է ապա Գրիգոր Սկեւռացւոյ Ներբողն եւ իր Յիշատակարանը։*

*Այս օրինակէն յառաջացած են ուղղակի կամ միջնորդաբար բազմաթիւ օրինակութիւններ, որոնցմէ մաս մը պիտի յիշեմ յետոյ։*

*Հաւաքածոյքիս 3—6 բաժինները նկատի պիտի առնեմ հոս վերնագրիս տակ.*

Ներսիսի եպիսկոպոսի Կիլիկեցւոց Տարսոնի (Մեկնութիւն Ս. Պատարագի)։

ա. Խորհրդածութիւն վասն ուղղափառ հաւատոյ եկեղեցւոյ որ ի սուրբ Երրորդութիւնն եւ ի տնօրէնութիւնն Քրիստոսի։ — *Հաւատամք իմացականին գիտութեամբ զԱստուած նախ քան զամենայն եղականս...* (*տպ.* *էջ* 1—20)։

*Այս տեղ զետեղուած է Թ. 1 Յիշատակարանը։*

բ. Ի խնդրոյ հարցմանց երից եղբարց Քննութիւն կարգաց Եկեղեցւոյ եւ բացատրապէս որոշումն արտաքուստ մտեալ ի սա նորաձեւութեանց (21—41)։

գ. Դարձեալ վերստին խորութիւն նորաձեւութեանց, որ մտին յեկեղեցի. եւ քննութիւն պատուոյ եւ աստիճանաց, զօրութեան ի սմա վիճակելոցն պարզաբար. ընդ որս եւ դիմադրութիւն (41—54):

դ. Քննութեամբ օրինակաց հաստատութիւն հարցն աւանդութեանց, որք սահմանեցին յամենայն տեղիս քրիստոնէից նստել եպիսկոպոսաց ի քաղաքս եւ ոչ եթէ ի վանս: Ընդ որս եւ պատարագի ընդդիմադրութեանց պատասխանի (54—80):

ե. Որոշումն ինն դասուց աստիճանաց եկեղեցւոյ եւ յատկութեանց գործառնութեանց նոցա եւ զգեստուց. ընդ որս եւ ընդդիմադրութիւն այսոցիկ խորհրդոց ունայնացուցանողաց (80—93):

զ. Իմաստասիրաբար Բացայայտութիւն աստուածային խորհրդոյ Պատարագին. եւ առ ունայնացուցիչսն զնոյն ընդդիմադրութիւն (93—109):

է. Բնախօսութեամբ քննութիւն յաղագս զօրութեան աղօթից եւ հաստատութիւն, թէ պարտ է ներգործութեամբ մտաց ի նոյն կանխել (109—180):

ը. Բաղդատութիւն առ միմեանս սահմանադրութեանց եկեղեցւոյ քրիստոնէից Հոռոմոց, Փռանկաց եւ Հայոց եւ առ մի դիտաւորութիւն ցուցակ նոցին աւարտման (180—192):

թ. Օրէնք արկանելոյ սպաս եկեղեցւոյ (Պատարագամատոյց, 193—226):

Ժ. Խրատք եւ սահմանք վերոգրեալ գործոյս քարեձեւ ապաշաւորութեան (Մեկնութիւն Պատարագի, 227—516)։

ԺԱ. Հարցափննութիւն առ օրէնսն Քրիստոսի եւ հաստատութիւն, թէ ոչ է պարտ զվիճակ եկեղեցական աստիճանաց ձգել ընդ մարմնական տոհմաքութեամբ (էջ 517—535)։

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՀԵՂԻՆԱԿԻՆ

Նորին սրբոյ։

*1. Զկանխաւ լրութեան պտուղն ի թուին ՈԻԷ (1178) աստ վերստին շարագրեալ թողի զկնի եկելոցդ նուաստ Ներսէս ի թուականիս ՈԽ եւ Բ (1193)։ յորում ամի տարաբերի եկեղեցի Քրիստոսի ի Պաղեստին շուրջ զաստուածակոխ քաղաքաւն Երուսաղէմի եւ տակաւին եւս վրիպեալ են ի զնոյն ժառանգելոյ։*

*2. Գրեցաւ ի թուականիս ՈԻԶ (1177)։ յանապատս Սուրբ Գէորգ, ի մէջ լերինս Տաւրոսի, ի գահ Կիլիկիոյ եւ ի սկիզբն Պանփիւլեայ, ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի եւ յիշխանութեան Հեթմոյ Սեւաստոսի։*

*Այս յիշատակարանը, որ պահած են հին օրինակները, կը գտնենք նաեւ Յովհաննէս Արճիշեցւոյ համառօտ Պատարագի Մեկնութեան մէջ ըստ Պարիզի Ազգ. Մատենադարանի Թ. 104 ձեռագրին (գրուած ԺԷ.—ԺԸ. դարուն), թղ. 196ա «Սրբոյն Ներսէսի յիշատակարան» խորագրի տակ. ուր ՈԻԶ*

վերածուած է «ՁՃԻՁ» (կարդա՛ «ՁՃԻՁ») եւ կ՚աւարտի «վերջ գրքոյս եղեւ փետրվարի ԺՁ» յաւելուածով, որ անշուշտ ուշ ժամանակի գրչի մը կը պատկանի (Հ. Յ. Տաշեան, Արքազան պատարագամատոյց, էջ 511—512):

Բան Ներսէսի սրբոյ:

3. Այս բանք եւ աստուածային աւրհնագրութիւնք սպասաւորութեամբ մոաց եւ ձեռին իմոյ Թշուառ Ներսէսի ասացաւ ի Հոգւոյն Աստուծոյ, ի նախադրեալ Թուականդ ի Ո եւ Ի եւ Ձն, եւ ի ժամանակ կենաց իմոց մինչ էի Ի եւ Դ ամաց եւ կայի ի լռութեան եւ ի միայնութեան ի մէջ լերանցս Տաւրոսի: Իսկ յետ ամաց ինչ դարձեալ ածայ յեկեղեցական պաշտաւն եւ ի մարմնական գործոյ զբաղանք: Եւ զհուր տոչորման սրտի իմոյ որ ի բանքս ցուցաւ, հնարէի եւ յա՛յլս բորբոքել եւ ըստ բանիս գործ գլխաւորել. եւ անկարանայր այս: Քանզի միանգամ եւ երկիցս հանի զայն յատեան եւ ի ժողով եպիսկոպոսաց եւ իշխանաց, եւ ոչ եղեւ պարապումն գոնէ ընթերցման կամ ունկնդրութեան:

Եւ ի սոյն ժամանակս ի Թուականութեանս ի ՈԼՁ (1187) յափշտակեցաւ սուրբ քաղաքն Երուսաղէմ ի Թուրքաց ազգէ: Եւ եկեղեցականքն եւ իշխանքն որք սպասաւորէին սուրբ Տեղեացն՝ գերեցան: Եւ համբաւս այս հասեալ յԱրեւմուտս՝ դրնաւ ազգն

*թագաւորաւք եւ իշխանաւք ըստ հրամանի Հռովմայ հայրապետի շարժեաց գալ յայս աշխարհ:*

*Եւ մինչ նորա հեղուին անթիւ բազմութիւնք նաւուք ի ծովէ անտի ի Պտղոմիդայ, ի թուականութեան ի ՈԼ եւ Ըն* (1189), *յղեաց իշխաւղս մեր Մեծ Լեւոն զմեզ առ կաթողիկոսն սուրբ տէր Գրիգոր՝ յաթոռն հայրապետական, որ կոչի Հռոմկլայ, ի վերայ Եփրատայ: Եւ ի գնալն մեր յաւուրս Պենտեկոստէին յայնկոյս Մարաշոյ, յարձակեցան ի վերայ մեր Թուրքմանք եւ սրով ճարակեցին զորս ընդ մեզ կրաւնաւորք եւ աշխարհականք, ոգիք իբրեւ քառն: Եւ յափշտակեցաւ ընդ այլ ինչսն եւ գրեանքն եւ այս սուրբ պատուիրանքս, ի վերայ որոյ ոգայի անմխիթար, չունելով զհաւասարն:*

*Իսկ այս ի տեսչութենէ գթութեանն Աստուծոյ ի թուականութեան ՈԽԱ* (1192) *քննեալ ուր վաճառեալ էին՝ դարձուցաք զսոյն ի գերութենէն: Քանզի գտաւ ի գաւառ(ի)ն Ջահնայ. եւ սատարութեամբ եպիսկոպոսի գաւառին Ներսէսի եւ Վարդանայ կրաւնաւորի ածա՛ւ սոյն առ իս վերստին եւ եղեւ վշտագնեալ ոգւոյ իմոյ մեծ սփոփանք եւ մխիթարութիւն եւ առ Աստուած երկրպագութեամբ գոհութիւն: Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

Յիշատակարան մատենիս օրինակողի (*Ներսէս քահանայի քեռորդւոյ Ն. Լամբրոնացւոյ*) ։

1. *Որոց զունկն աստուածոյին իմաստից ընդունեա՛լ անպատրուակ յաջողմամբ պատրաստեալ իցեն, թեթեւացեալք յայնց կրից, որք խնայն զնոյն, նոքա ամենայն իրաւք անստուերաբար ունին յառնել, առանց ամենայն ինչ ընդմիջաւղ կարծեաց՝ առ կերակրաւղս րատ Աստուծոյ զինքեանս։ Յորոց մաղթեմք զհամանուն կերողին եւ կերակրողին, արբեցելոյն եւ արբուցանողին մի՛ վարկպարազի ընդունայնութեամբ առանց յիշատակի թողուլ, որով եւ դուք կեցջիք։*

2. *Յամի մեծահարիւրորդի յիսներորդի չորրորդի* (1205) *թուականութեանս Հայոց ես նուաստս եւ անարժան ծառայ Աստուծոյ Ներսէս փափաքեալ աստուծոյնոյ տափս, նորագոյն մեզ պարգեւեցելոյ ի Հոգւոյն սրբոյ, ի յետին եւ անբարի ժամանակիս... եւ ետու գծագրել զաս առ ի մխիթարութիւն մշտադնեալ եւ թշուառական ազգոյ իմոյ...։ Արդ ի սկզբանն ի դոյն մեզ պարգեւողի սրբոյն գրեցաւ սա յերիտասարդականն հասակի ի քսան եւ չորս ամացն լինել... ի Հայոց թուականութեան ՈԽԴ։ Իսկ առ ի մէնջ ի նախ գրեալդ*[1], *յամի եւթներորդի փոխման*

1 *Կ՚ակնարկէ Գրիգոր Սկեւռացւոյ Ներբողեանին մէջ նշանակուած ՈԽԷ* (1198) *Ներսէսի մահուան տարին։*

Սրբոյս եւ խաւար ածելոյ բազմաց եւ յանդեղանելոյ բանի մարգարէին որ ասէ. Ցերեւաց անիրաւութեան բանի արդար. եւ մեր առ ի նմանէ որբ մնալոյ. ի չորրորդում ամի գրկելոյ եղբաւր սորա Հեթմոյ աստուածասէր եւ բարեպաշտ իշխանի եւ մեր եւ բովանդակ զարմից մերոց, ի սեպհական բնակութենէ մերմէ՝ ի դղեկէն Լամբրաւն կոչեցելոյ եւ ի միաբանակեաց եւ հրեշտակաբնակ ուխտէ Սկեւռա վերաձայնելոյ. յորում տեղւոյ ծնունդ եւ սնունդ Սրբոյս. եւ յորոց միջի եւ այժմ զամբարան սորա:

Եւ գրեցաւ սկիզբն գրոցս, որպէս յայտնի է որքանութիւն գրոյն այլայլութեամբ, ի ձեռն ուրումն եղբաւր Աւետեաց սրբասէր քահանայի, ի միաբանակեաց վանս Անապատ անուանելոյ: Իսկ այլն ի Սկեւռայն վերաստացեալ՝ ձեռամբ ուրումն ի կլերիկոսաց սուրբ եկեղեցւոյն Զաւր(ա)վար անուանելոյ, ի յիշատակ Ներսէսի մեղապարտ ծառայի Աստուծոյ՝ ի դատապարտութիւն եւ միայն պիտակարար քահանայ կոչեցելոյ, որդւոյ քուեր սոյն տեառն աստուածայնոյ. որոց յիշատակ իւրաքանչիւրոցն արժանութեամբ եղիցի եւ աղաւթք նոցա ի վերայ մեր:

Ցիշատակեսցին, ապաշեմ առաջի Աստուծոյ, ով բարեկամք նորա եւ երջանիկ վարդապետաքս մեր եւ տածիչք ոգւոց մերոց՝ Գրիգոր եւ Բասիլ, առ որովք այժմ գեղեբիմք ի վարժս. որովք լցեալ առ մեզ լինին թերութիւն Սրբոյն, յորմէ գրեցաք: Որք

*յաղագս եւ ի նախնացեալ ժամանակս մեր որպէս զատեալս լուսապայծառս փայլէն ի գիշերի, բայց միայն զի խաւարաւ մեղաց կուրացեալ մեք, ոչ կամիմք բանալով զաչս նայել: Ընդ սոսին եւ զսնուցիչ մեր եւ տախտակաւ վարժիչ զԲասիլ քահանայ, եւ զայլ եւս ուսումնակից եւ զաշակերտակից անձինս՝ զՅովհաննէս եւ զԲարդողէմէոս: Նաեւ զամենայն զարմս մեր, զմեռեալս եւ զկենդանիս....:*

*Ընդ աւրինակեցան գիրքս այս, ընդ ստացին գրեայն ձեռամբ սորա անձն Աստուծոյ եւ հաւատարիմ պաշտաւնէի Քրիստոսի Ներսէսի. վասն որոյ զգուշացի իւրաքանչիւր ոք, թէ ո՛ գիտէ եւ տացի ի զաղափար, բանի եւ գրոյ, հրամանի եւ ստորատի եւ տան* (*Վատիկան*, *Բորգեան* 84, 374*բ*. *տակէ Պարիս*, J. Pozzi:

Ձեռագիրք:

*Էջմիածին*, *Թ*. 45, 23*ա* (1642): 1331 (*ԺԴ*.): 1332 (1696): 2588 (1294): *Երեւան*, 612, 82*ա*: *Երուսաղէմ*, 146 (1551. *Պողարեան*, *Ցուց*. *Բ*., 9—11): 650 (1691): 850 (1600): 1141 (1317): *Վատիկան*, *Բորգեան*, 84 (1325. *Տիսերան*, *Ցուց*. 177—185): *Պարիս* J. Pozzi (1618: *Սիւրմէեան*, *Ցուց*., *Թ*. 25, *էջ* 45): *Տիւբինգէն*, 54 (1688. *Ցուցակ*, *էջ* 77. *Արձագանք*, 1888, *էջ* 156):

*Այլ մատենիկի ձեռագիրք*. *Էջմիածին*, 387 (*ԺԹ*.)։ 441 (*ԺԸ*.)։ 471 (*ԺԴ. պակասաւոր*)։ 500, 349*ա* (1305)։ 1427, 58*ա* (*ԺԴ*.)։ 1143, 289*ա* (*ԺԴ. Թերի*)։ *Երեւան*, 613 (1779)։ 614 (*ԺԹ*.)։ 615 (*ԺԹ*.)։ 616 = *Սանասարեան*, 41 (1821, *Աճառեան*, *Ցուց*. 31—32)։ *Մոսկուա*, *Լազ*. *ճեմ*. 24, 25*բ*։ 31, 132*ա*։ *Տիւբինգէն*, 55 (*ԺԷ*)։ *Երուսաղէմ*, 447 (1789)։ 647 (*ԺԷ*.)։ 722 (1707)։ 781 (1812)։ 847 (1634)։ 930 (*ԺԵ*.)։ 1254 (*ԺԴ*.)։ *Վիեննա*, 24 (*Ցուց*. 139—143)։ 237 (1823. *Ցուց*. 619)։ 321 (*ԺԷ*. *Ցուց*. 765)։ 365, 76*ա* (*ԺԹ*.)։ 473 (*ԺԷ*. *Ցուց*. 949)։ 831 (*ԺԸ*.)։ *Պարիս*, 165 (*ԺԷ*.)։ *Թաւրիզ*, *Ա*., 25 (1619. *Ցուց*. 80)։ *Զմմառ*, 155 (*ԺԸ*.)։ *Անտոնեանց*, 49 (1772)։

Հրատարակութիւնք.

1. *Խորհրդածութիւն սրբազան Պատարագի բացատրութեամբ տեառն Ներսիսի Լամբրոնացւոյ*. *Երուսաղէմ* 1842, 4° *փոքր*. *էջ Զ* + 191 + 27։

*Հրատարակուած է «Բացայայտութիւն Խորհրդոց սրբոց Պատարագի» (սկսեալ Բ. տպագրութեան* 237 *էջէն մինչեւ* 516)։ *Յաւելուածին մէջ գրուած՝ Հարցաքննութիւնք* 1—20 (*Բ. տպ*. 517—555)։

*Հրատարակիչը տպագրութեան առկ ունեցած է* *ՋԽԲ* (1293). *ՉԿԶ* (1317) *եւ* *ՌԾ* (1551) *գրուած ձեռագիրները*։

2. *Ս. Ներսիսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի Խորհրդածութիւնք ի կարգս*

եկեղեցւոյ եւ Մեկնութիւն Խորհրդոյ Պատարագին, Վենետիկ 1847, 8° մեծ, էջք ԺԳ + 557:

Մատենագրութիւն:

1. Ed. Dulaurier, Fxtraits de l'ouvrage intitulé Réflections sur les institutions: Recueil des historiens des Croisades. Documents arméniens. t. I. Paris 1859, p. 569—578.

2. Alcuni squarci del commentario di S. Nersete Lambronense sulla Liturgia armena accusati e difusi. Venezia 1851, 8° p. 134.

3. Հ. Գ. Աւետիքեան, Բացատրութիւն Շարականաց, Վենետիկ 1814, էջ 747—750 (Ճառ Եղիման):

4. Գաթըրճեան—Տաշեան, Սրբազան պատարագամատոյցք Հայոց, Վիեննա 1897, էջ 508—556:

5. S. Salaville, Consecration et èpiclèse dans l'Eglise arménienne au XIIe siècle: Témoignage de St. Nerses de Lampron: Echo d'Orient 66 (1913) 28—31.

6. Բ. Վ. Կիւլէսէրեան, Ներսէս Լամբրոնացի, Բիւրակն, 1904, էջ 107—110, 122—124, 142—144:

7. Մ. Ազարբեգեան, Բաբգէն վարդապետի հայեացքները Ն. Լամբրոնացիի մասին: Անդ, 1904, էջ 145—146, 163—165:

Գեղեցիկ կը գրուատէ գրուածքս Գր. Սկեւռացի. ուսկից յառաջ կը բերեմ տողերս. «Մեծաւ թախանձանօք հայցեալ (մերձակայ անապատաւորացն)· ի նմանէ զբացատրութիւն

եկեղեցական զարդու եւ սքանչելատիպ կարգաց որ ի նմին եւ զխորհուրդ փրկական բաշխմանն մարմնոյ եւ արեան Կենարարին, եթէ առ ի՞նչ դիտաւորութիւն յեկեղեցւոջ կատարին: Իսկ ծառայն հաւատարիմ ... ձեռն ի գործ արկանէ բացատրութեան քահանայապետական զարդուն եւ որ ի նմանէ խոնարհ ստորինանք յերիս երրեակս տարորոշեալ ի տիպ վեհիցն եւ գերագարդ քահանայապետութեանցն, եւ զԵկեղեցի սուրբ՝ երկնի եւ միանգամայն որ ի նմա իմանի· ի սորայս գաղափար եւ մեզ լինել տաճար կենդանի եւ բնակարան Երրորդութեանն: Զի՞նչ ապա եւ յաղագս մեծն եւ հրաշալի մերոյ փրկութեանն խորհրդոյ, եթէ զի՛արդ ընդարձակ բանիւ եւ մանրամասն քննութեամբ զկարծրն զայն եւ անճաշակ անկիրթն լնդաց՝ ծաքողական մանրեալ ատամամբք խուզման, տայ ի ճաշակ սղայացելոցն ի Քրիստոս... այս ինքն թէ զի՞նչ խորհուրդ մարմին եւ արիւն լինելոյ Բանին եւ նովաւ գալ ի չարչարանս խաչի եւ մահու, եւ ամենեցուն վասն փրկութեանն զմահ ճաշակեալ· եւ կամ զխա՞րդ զնոյն խորհուրդ անճառելի ի հաց եւ գինի աւանդեաց աշակերտացն, եւ ո՞րքան ի նմանէ չահ հաւատով եւ յուսով ճաշակողացն, եւ ո՞յց զշնորհարաշխութեանն անխափր սփռէ զճառագայթս...» (28—29):

Տակաւին նորընծայ եպիսկոպոս էր Ներսէս, 24 տարեկան հասակին մէջ, երբ առանձնացած Սաղրուի վանքը, կը գարրնէր

իր ծրագիրները իր ապագայ գործունէութեան համար։ Այդ լռութեան մէջ անձնատուր աղօթքի, ընթերցանութեան եւ գրականութեան՝ կերտեց այս հոյակապ ստեղծագործութիւնը, զոր կ'անուանէ «լռութեան պտուղ»։ Ան «մանուկ» կը դաւանի ինք զինքը իր քսանեւչորրորդ տարիքին. բայց մենք կը տեսնենք իր մէջ վաղահաս միտք մը, որ հասուն տրամաբանութեամբ ընդունակ է ճառել իմաստասիրական եւ աստուածաբանական խորախորհուրդ հարցերու շուրջը։ Ան համբարած է հարուստ պաշար, ոչ միայն սուրբ–գրենական եւ աստուածախօսական մարզերէն. այլ եւ ազգային եւ այլազգային գրականութենէն եւ պատմութենէն. ծանօթ է ինչպէս հայ, նոյնպէս յոյն եւ լատին ծէսերու, աւանդութիւններու, վանական կենցաղավարութիւններու։ Արդիւնք անշուշտ իր ընթերցանութեան, շրջագայութիւններու եւ շրջահայեցութեանց։ Ան երեւան կը բերէ իր «մանկական» հասակին ծերունական խոհեմութիւն եւ դատողութիւն։ Օժտուած է անհուն համեստութեամբ, աստուածավախ բարեպաշտութեամբ եւ զգոյշ կենցաղավարութեամբ։ Ունի իր տրամադրութեան տակ հմտութիւն հայերէն գրական լեզուի, ճաշակ գրականութեան, կարողութիւն արտայայտելու իր մտաց յղացումները ճկուն ոճով, հաճելի եւ դիւրիմաց եւ պատկերաւոր։

«Ընտրելագոյն ի վաստակս երանելւոյս, յետ ճառիցն հռետորականաց կամ թէ զոյգ

իսկ նոցին եւ հաւասար, դրուատից եւ զարմանալւոյ արժանի մատեանս այս է բացատրութիւն խորհրդոյ սրբոյ պատարագի: Քանզի ի սմա աստուածային հոգի նորա եւ եռանդն ամենայն ուրեք փայլէ. ի սմա բազում ուրեք եւ բնիկ ճարտասանութիւն ինքնազարդ գեղովն պերճանայ. ի սմա եւ դիւրիմաց պարզութիւն ընդ նախնի հայկաբանս վեհ բարբառոյ գեղեցկապէս զօդեալ[3]»:

Այն բարեմասնութիւններն, որոնցմով ծաղկած եւ բարգաւաճած տեսած էր Ներսէս քոյր եկեղեցիները, եւ այն զեղծումները, զորոնք նկատած էր Հայոց եկեղեցւոյ մէջ եւ այն անշքութիւնը, որո՛վ նսեմացած էին սուրբ տաճարները, բարի նախանձ եւ սրտցաւ արծարծած էին իր աստուածապաշտ սրտին մէջ: Այժմ իբրեւ եպիսկոպոս Տարսոնի մտադրած էր որպէս նորոգող հրապարակ գալ իր թեմին մէջ:

Հարկ էր ձայն բարձրացնել տիրող զեղծումներու դէմ. սթափեցնել եկեղեցականները իրենց բազմաժամանակեայ թմբիրէն, հրաւէր կարդալ մեծին եւ փոքրին ձեռք ձեռքի տալ վերականգնելու հին կարգերը, բարենորոգելու եկեղեցին ըստ արդիական պահանջներու, օրինակ առնելով դրացի եկեղեցիներէն: Ան կը ձգտէր եկեղեցւոյ բարենորոգումի, ոչ նորաձեւումի:

Զգեցած էր ան սուրբ եկեղեցականի հո-

---

[3] Խորհրդածութիւնք ի կարգս եկեղեցւոյ, 1847, Յառաջաբան:

գին, ամբարած էր անրաւ գիտութիւն, օժտուած էր հզօր ձայնով եւ հռետորական կարողութեամբ, բայց «մանուկ» հասակն եւ իր համեստութիւնը համարձակութիւն չէր տար իրեն բեմ բարձրանալ եւ երիցագոյններուն եւ աւագագոյններուն լսելի ընել իր բողոքի ձայնը տիրող գեղծումներու դէմ, որոնց շատերը պատասխանատու էին:

Իր դժուարին կացութիւնը կը նկարագրէ ինքնին. «Արդ նախ առաջին ի սկզբանս աղաչեմ զամենեսեան... զիջանել ձեզ առ իմ տկարութիւն եւ մանկական իմաստ, որ ի սիրոյ ամենեցուն շարժեալ եկի յայսպիսի յանդգնութիւն, որ իմս նուաստութեան անմարթ էր՝ ծերունեաց եւ կատարելոց հասակաւ ուսուցիչ լինել, եւ մի՛ յարժամ լսէք զղխմումն բանիցդ պէսպէս անկարգութեան յայտնիչ, ի ներքոյ նոցին կացեալ զընդդէմ յանելն ախորժէք՝ իբր թէ անձանց լինիք վրէժխնդիր. քանզի վրէժխնդիր ամենեցուն մեզ այս է, որ զօրէնսն Աստուծոյ փափաքէ նորոգել. եւ ոչ այն որ արտաքին արկածիցն լինի ջատագով. զի այն յայտ է, թէ ինքն ընդ անձին իւրոյ ողորի, Քրիստոսի գոլով անդամ, եւ օրինաց նորա թշնամի: Մի՛, [եւ] վասն զի մանուկ հասակաւ եւ մեղաւոր անձամբ սպասաւորեմ շնորհաց Հոգւոյն, եւ հարց մերոց կանոնական սահմանաց, [որք] առ իս բերիք՝ բառ արժանի իմում՝ տատիս, (եւ) իմ ազգաւ աստուածամարտ զանեցիք...: Խնդրեմ յամենեցունց մի՛ կշտամբեցայց յու-

*մեքէ վասն որոնելոյ զսատանայական սերմանեալ անկարգութիւնս...» (էջ 23—24):*

*Հեղինակին փափագն էր, որ գրութիւնս բարձրագոյն տեղէն քննութեան առնուէր, ուղղուէր եւ հաստատուէր, բայց ամէն փորձ թէ եկեղեցականներէ եւ թէ իշխաններէ ի դերեւ ելած է. ինչ որ սակաւ սրտացաւութիւն չէ պատճառած իրեն: «Հուր տոչորման սրտի իմոյ որ ի բանքս ցուցաւ, հնարէի եւ յա՛յլս բորբոքել եւ ըստ բանիս գործ գլխաւորել. եւ անկարանայր այս» (Յիշատակարան, 1193). «Միանգամ եւ երկիցս հանի զայն յատեան եւ ի ժողով եպիսկոպոսաց եւ իշխանաց. եւ ոչ եղեւ պարապումն գոնէ ընթերցման կամ ունկնդրութեան»: «Խնդրեցէք ի մէնջ բան որ առ մեզ ուղղութեանս վկայ. տուաք գրով սրբոց վկայութեամբ, որ զամենայն հակառակողս ի հաւանութիւն նուաճէր ի սիրելն զուգութիւն. եւ ծանր եղեւ ձեզ ընթեռնուլն, եւ կամ այլոց զնոյն ցուցանել... երբ տեսաք զձեզ առ այն քննութիւնն եւ վրէժխնդրութիւնն տարատամ, ունիմք զլուծ խոնարհութեան եւ նստիմք լռութեամբ ի տան» (Թուղթ առ Լեւոն, էջ 206): Ի վերջոյ հարկադրուած է, 1193ին, գրութենէն 16 տարի ետքը անձամբ հրապարակ հանել զայն:*

*Եթէ ժամանակակիցները չըհագրգռուեցան գրութեամբս, բայց յաջորդ սերունդը ԺԴ.—ԺԹ. դարերուն, ողջունեց զայն հիաց-*

մամբ, ինչպէս կարելի է հետեւցնել բազմաթիւ ընդօրինակութիւններէն եւ հետեւեալ արտայայտութիւններէն.

1551ին Մատթէոս դպիր կը գնահատէ գրուածքս.

«Աւարտեցաւ եռահրաշ եւ հոգեխաղաղ Մատեանս, զոր էր շաղկապեալ երիցս երանեալ առնն Աստուծոյ սրբոյն Ներսէսի բազմերանգ գունոց ի մի ստայն անկեղծ համճար, զոր արուեստակեալ անուշահոտ ծաղկանց եղեփեցական կազմութեամբ, որ ըստ հոգւոյն յատկութեամբ իմանի, զանազան որակութեամբք գաղափարելով, ըստ յոգունց արփիացելոյն դասակցութեանց, առ ի յեկեղեցւոյ յարմարումն յուղիւ խաղաղութեան գլխոյն պատշաճեալ զ՚ի յայժմանէ կատարելութիւնն: Արդ այսմ անմահական ըմպելւոյ եւ անգին մարգարտիս եւ ամենազով արինակիս ցանկացող... եղեալ... առաջնորդ սուրբ առաքելական աթոռոյս Անդրէաս...» (Երուսաղէմ, Թ. 146, Ցուցակ, Բ., էջ 11):

Ուրիշ մը՝ Գրիգորէս դպիր (ԺԴ.° դար) կը հիւսէ տողերս Երուսաղէմի Թ. 1254ի մէջ. «Այս գիրք աստուածային եւ խորհուրդ բարձրագոյն եւ երկնային ազդեալ Հոգւոյն յանեղ լուսոյն՝ տեառն Ներսէսի Կլայեցւոյ եւ Տարսոնոյ հաւատացեալին, հանեալ ի խորս սուրբ Հոգւոյն եւ քննութեամբ վերաբերեալ գիտասս հանճարոյն, զմարգարիտս անգին եւ պակունս մեծապէս, զոսկիս սոփերային եւ

*զարծաթս Աստուծոյ ընտրեալ եւթնապատիկ քան Սաղմոսին։ Բայց մեք խոզ եմք ի աղմին եւ իբր գկայր յարքունական պողոտային...»։*

*Գործին ընդարձակութիւնն եւ արտայայտութեան «նորութիւնը» սակայն շատերուն անմատչելի եւ անմարսելի երեւցան։ Որուն պատճառաւ Մովսէս Երզնկացի ձեռնարկեց Խոսրով Անձեւացւոյ եւ Ներսէս Լամբրոնացւոյ Պատարագի Մեկնութիւններէն «համառօտ հաւաքում» մը, կամ Խմբագիր Մեկնութիւն մը կազմել (1293ին). որ խորագիրս կը կրէ. «Հաւաքումն համառօտ Մեկնութեան սրբոյ Պատարագին, զոր յառաջագոյն արարեալ է սրբոյ հարց». Էջմիածին, Թ. 2607, Թղ. 175բ—242ա (1300) եւ Վիեննա, Թ. 591, Թղ. 154ա—211ա (1716)։*

*Յաջորդ դարուն Յովհաննէս Արճիշեցի տուաւ աւելի համառօտ «Տեսութիւն խորհրդոյ սուրբ Պատարագի, հետեւելով Խ. Անձեւացւոյ եւ Ներսէս Լամբրոնացւոյ» (Արտաւազդ Եպ. Սիւրմէեան, Ցուցակ ձձ. Հալէպի, Ա., էջ 215—216)։ Այս համառօտութիւնը արժանացաւ նաեւ տպագրութեան։*

*Աւելի համառօտ է «Մեկնութիւնն խորհրդական բանից սրբոյ Պատարագի, զոր ասացեալ սրբոյ Ներսէսի Տարսոնոյ եպիսկոպոսի. զոր Յովհաննէս Պլուզ վարդապետ համառօտեաց». Էջմիածին, Թ. 1430, Թղ. 25ա—65բ (1658)։*

6.

Ներսիսի Տարսոնի եպիսկոպոսի Բացայայտութիւն արարեալ Դաւանութեան սուրբ հաւատոյն:

*Հաւատամք ի մի Աստուած Հայր ամենակալ...: Այլ զպաշտելի եւ զհամաշխարհական Հաւատամքս կարգեցին...:*

վջ. *եւ ընդ նմա բերանաբացիկ ի դաւանութիւնս եղիցուք...:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, *Թ*. 771, 1*ա*—14*բ* (1651): *Տիւբինգէն*, 53 (*ԺԹ*. *Ցուց*. 76): *Վենետիկ*, *Թ*. 40, 136*ա*—148*բ* (*ԺԷ*: *Գալեան*, *Ցուցակ*):

*ՆՀԲ*. *Ա*. 13*ա*. «*Առանձին բացատրութիւն Հանգանակի կամ Հաւատամքի, գեղեցիկ աստուածաբանութեամբ. որ չէ ի կարգի Մեկնութեան Պատարագի*»:

*Թէ ինչո՞ւ չէ առնուած Բացայայտութիւնս Պատարագի Մեկնութեան մէջ, յայտնի չէ: Յամենայն դէպս գրուած է նոյն* 1177 *տարւոյն*:

6ա. Մեկնութիւն տեառնունայց աղօթիցն, արարեալ Ներսիսի Լամբրունեցւոյ եպիսկոպոսի Տարսոնի Կիլիկեցւոց, ի բանն որ ասէ. Հայր մեր որ յերկինս...:

*[Նախերգանք] Զաստուածային աղօթս ի Փրկչէն մերմէ աւանդեալ իւրոց ժառանգակցացն...:*

*(Սկիզբն Մեկնութեան) Որ Հայր դա—*

*ւանէ զինքն՝ ի ներքոյ որդիութեան սահմանին գրաւէ...:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, *թ*. 45, 53*բ* (1642 [4]): 771, *էջ* 141 (*ԺԷ*.): 851, 297*ա* (*ԺԴ*. *վջ*. *պակաս*): 1712, 236*ա* (*ԺԵ*. [5]): 1812, *էջ* 587 (1780 [4]): 1880, 535*ա* (1786 [4]): 2448, 103*բ* (1689): 2611, 170*ա* (1363 [4]): *Զմմառ*, 151, 59*ա* (*ԺԸ*.): 155, 2*ա*, 76*ա* (*ԺԸ*.): 267, 105*բ* (*ԺԸ*.): 269, 274*ա* (*ԺԸ*.): *Վենետիկ*, *թ*. 240, 252*ա* (*ԺԵ*. *Յ*. 602): 302, 88*ա* (1840. *Յ*. 1125): *Անտ*.[6] 19, 113*բ* [4]: *Երուսաղէմ*, *թ*. 929 (*ԺԷ*. [4]: 711 (1619): *Վիեննա*, *թ*. 109, 87*ա*—89*ա* (*ԺԷ*. *Յ*. 385) [6]:

*Հանուած է Պատարագի Մեկնութենէն*, *էջ* 451—465: *Նաեւ առանձին հրատարակուած*. *Խօսակցութիւնք Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ*... *Կ. Պոլիս* 1861, *էջ* 27—70:

6բ. Տեառն Ներսէսի Լամբրունացւոյ խրատք եւ սահմանն:

*Քանզի բազում ինչ եցոյց բանս հրահանգութեան գործս սարկաւագացն աստիճանի եւ առ մեօք այս կարգ բնաջինջ է յեկեղեցւոյ...:*

Ձեռագիրք: *Պարիս*, 46, 73*ա*: *Զմմառ*, *թ*. 112, 219*ա* (*ԺԴ*.? [7]): 155, 60*ա*: 127, 108*ա* (1627):

---

[4] *Անանուն:*

[5] *Կ'ընծայէ «Ներսէսի Հայոց կաթողիկոսի»:*

[7] *Լուսանցքի վրայ ծանօթագրութիւն. «Աս ճահուկ Փանդի է եւ ոչ Ներսէսի խրատք. ապա չխաբիս»:*

*Այս մասը առնուած է Պատարագի Մեկնութենէն, տպ. էջ* 227—229։

6գ. Խրատ քահանայի Ներսէսի Տարսոնացի եպիսկոպոսի ասացեալ։

*Ժամ է եւ ժամանակ ամենայն իրաց. զի հարքն մեր յորժամ բանս ինչ խօսէին...։*

*Երեւան*, 694 (1611)։

*Այս սկզբնաւորութեամբ է Յովհաննէս Արճիշեցւոյ Տեսութիւնը, զոր յիշեցի վերագոյն։ Ուստի մասը կը կազմէ Պատարագի Մեկնութեան համառօտութեան։*

7.

Լուծմունք Նարեկի Գր. Նարեկացւոյ։

ա. Լուծմունք տեառն Ներսէսի Լամբրոնացւոյ արարեալ։

*ԲՆ. Ձայն հառաչանաց։ ԼԾ. Ձայնն յերկուս բաժանի, ի յօդեալն եւ յանյօդն...։*

վջ. *ԲՆ. Ի քառից աչաց։ ԼԾ. Աչք մարմնոյս իմս եւ իմ եղբօրն չորս էին. բայց տեսութիւն խորհրդոյն եւ չաւիղն մի...։*

Ձեռագիրք։ *Երուսաղէմ, Թ.* 2351, 304*բ*—424*բ* (1674. *Ցուցակ Խարայեան Սահակ կաթողիկոսի*)։ *Անանուն են հետեւեալները. Երուսաղէմ* 1210 (1437)։ 1211 (1653)։ *Վիեննա*, 167, 156*բ* (*ԺԶ. վերջէն պակասաւոր, Ցուցակ, էջ* 480)։ *Զմմառ*, 275 (*ԺԷ.*)։ *Լազ. Ճեմ.*, 43, 101*ա* (*վերջէն պակասաւոր*)։ *Երուսաղէմ, Թ.* 1324, *Թղ.* 312—359*ա* (1412). *Յիշատակարանին գրիչը Սիմէոն*

(ի Սուրխաթ) կը գրէ․ «զԼուծումն սորին զոր արար յետոյ վսեմամբին եւ ճարտարաբանն Սարգիս վարդապետն ի յառաջին ծայրանէն մինչեւ յաւարտ չնչոյն՝ լիակատար Լուծումն արել է» (Սիոն, 1939, էջ 98—99)։

Այստեղ ունինք ձեռագիրներ, որոնք անանուն կը ներկայացնեն Լուծմանցս հեղինակը․ մին կը ճանչնայ հեղինակ զՆ․ Լամբրոնացի, երկրորդ մը՝ Սարգիս վարդապետն։ Սիմէոն գրչի Յիշատակարանին ծանօթ եղած կ'երեւայ Հ․ Մ․ Ջամչեան (Գ․ 57), որ կը գրէ խօսելով ի մասին Սարգիս Շնորհալւոյ․ «Արար սա ընդարձակ բանիւք եւ յատակ ոճիւ նաեւ զՄեկնութիւն Աղօթից Նարեկացւոյն, որպէս աւանդի ի յիշատակարանս ինչ, զոր այժմ չունիմ ի ձեռին»։ Ինչպէս գրած եմ յիշեալ տեղը, ես կը վարանիմ ընծայելու Լուծմունքս թէ՛ Սարգիս Շնորհալւոյ եւ թէ՛ Սարգիս Կունդի»։

Ի նպաստ Ներսէս Լամբրոնացւոյ կը վկայեն «վասն Մեկնողաց Աստուածաշունչ գրոց» գրութեան հեղինակը․ «ԶՍաղմոսն կրկին եւ զԱռակացն եւ զԵրկոտասան մարգարէսն եւ զՊատարագի խորհուրդն եւ զՏէր ընդ եղբարսն եւ զՆարեկացու Լուծմունքն Ներսէս Լամբրոնացին է արարեալ (Նիկոսիա, Թ․ 52, Թղ․ 41բ)։ Նոյնը կը կրկնէ Դաւիթ Բաղիշեցի (Յ․ Թօփճեան, Ցուցակ ձեռագրաց Դաղեան Թաչիկ վարդապետի, Ա․, էջ 97)։

Այս Լուծմունքը անանուն կը գտնուի

նաեւ Ժաք Մաթոսեանի Թ. 9 ձեռագրին մէջ, գրուած 1319ին։ Վիեննայի, Թ. 592, թղ. 260—362բ (1635)։

բ. Բացայայտութիւն բանից սուրբ հաւր մերոյ Գրիգորի Նարեկացւոյ։

ԲՆ. Դրունք յոքնաթախանձ բանից աւգտակարաց...։ ԼԾ. Տարածմունք ծածկեցելոց, յանդիմանութիւնք թաղուցելոց, սպեղանիք զաւրաւորք ցաւոց բժշկականաց... (թղ. 360ա—408բ)։ Վերջաւորութիւն՝ (ԲՆ.) Ի քառից աչաց։ (ԼԾ.) Աչք մարմնոյս չորք էին. էին եւ իմ եւ եղբաւրն. բայց տեսութիւն խորհրդոյն մի էր։

Կցուած են այս Լուծմանց՝ Նարեկացւոյ՝ 1. «Գանձ լուսոյ փառաց». 2. «Գանձ բաղձալի բարութեան». 3. «Գանձ անքնին» գանձերու Լուծմունք։

Թղ. 408բ—412ա։ Վիեննա, 592, 359բ—358ա (պակասաւոր)։

Այս Լուծմունք նպատակ ունին դիւրացնել ընթերցողներուն Նարեկացւոյ խրթնաբան եւ դժուարիմաց տեղիքներու եւ բառերու իմաստը. Լուծողը տեղ տեղ ռամկօրէն բառերով կ'արտայայտուի։

Հեղինակը կարող է Ներսէս եղած ըլլալ. նկատի առնելով, որ ան գրած է նաեւ Գրիգոր Նարեկացւոյ Վարքը, եւ ունէր ձեռքի տակ Նարեկացւոյ գրութիւնքը, մասամբ իր ձեռքով գրուած մասամբ իր յանձնարարութեամբ օրինակուած։

Տեղս ի դէպ կը համարիմ ներկայացնել իր Յիշատակարանները եւ խօսիլ անոր յերիւրած Վարքին վրայ:

Գրիգոր Ակներցի ԺԴ. դարու առաջին կէսին կը գրէ թէ Նարեկացւոյ Ապարանից Խաչի Պատմութիւնը օրինակած է Լամբրոնացւոյ ինքնագիր ձեռագրէն. «Խուզեալ գտի գրեալ աստուածընկալ ձեռաց տեառն Ներսէսի Տարսոնի եպիսկոպոսի ամենգերալոյս վարդապետի եւ մեծաւ ջանիւ ըստ կարի յարմարեցի շարժեալ ի սիրոյ» (Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի, Ա., 141 (Ցուց., էջ 246):

1173ին Գրիգոր գրիչ, որ Հռոմկլայէն Սկեւռայ եկած էր, կ'օրինակէ Գրիգոր Նարեկացւոյ Աղօթամատոյցը Ներսէսի համար. ձեռագիրս կը գտնուի Էջմիածին, Թ. 1568, ուր ի մէջ այլոց կը կարդանք թղ. 174բ, կարմրագիր՝ «Զաստուածամերձ քահանայ Ներսէս՝ զորդի մեծազաւր սեւաստաւսի Աւշնի յիշեսջիք ի Քրիստոս, որդիք լուսոյ». եւ թղ. 155բ. «Ստացաւղ սորա զՆերսէս աստուածամերձ քահանայ յիշեսջիք, եւ զգրիչս աղաչեմ» (Յովսէփեան, Յիշատ., Ա., էջ 447—448): Այլ նմանահանութիւններ՝ Յովսէփեան, Քարտէզ հայ հնագրութեան, էջ 30 եւ Տխ. ԼԹ: Նոյն՝ Հայ արուեստի մշակոյթի պատմութիւն, Բ., էջ 16—17: Գարեգին եպիսկոպոս Տրապիզոնի, Նարեկ, Պուէնոս Այրէս, 1948, էջ 323—324 (Յաւելուած):

8.

Վարք սրբոյ տանն Աստուծոյ Գրիգորի Նարեկացւոյ. զոր արարեալ է սուրբ արքեպիսկոպոսին տեառն Ներսեսի առաջնորդի սուրբ ուխտիս Սկեւռայի:

*Սուրբ հայրս մեր աստուածաշնորհ քահանայս եւ կրաւնաւոր Գրիգոր էր ի Նարեկայ վանից ի Հայս, ի գաւառն Վասպուրականի. . . :*

Վջ. *. . . հուպ եկեղեցւոյն սրբուհոյն Սանդխտոյ: — Զմաղթանս սորա, զոր արծարծեալ ի հուր սրտիս խնդրեմք, Քրիստոս ընդալ բարեխաւսութեամբ սուրբ հաւրս հաշտութեամբ. եւ քեզ փառք յաւիտեանս. ամէն:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, 1568 (1173. *անանուն*): *Նոր ձեռագիրք*, 1047: *Երուսաղէմ*, 1200, 325*բ* (*ԺԵ.*): 1237, 274*ա* (*ԺԳ./ԺԴ. անանուն*): 1430 (*ԺԷ. անանուն*): 2351, 304*բ* (1674): 2010, 224*ա* (1692):

*Հրտ. Գրիգորի Նարեկայ վանից վանականի մատեան ողբերգութեան, Երուսաղէմ* 1868, *էջ* 411—413 (*Թ.* 1430*էն անանուն*): *Հ. Հ. Ոսկեան, Ներսէս Լամբրոնացւոյ, Վարք Գրիգորի Նարեկացւոյ. Հանդ. Ամս.* 1940, *էջ* 214—220:

*Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ* 143—146 (*Էջմ.* 1568*էն անանուն*). *Հմմտ. նաեւ* 448:

*Այս համառօտ Վարքը առաջին անգամ կը ստանուի Էջմիածնի Թ.* 1568*ի մէջ, որ*

Ներսէս Լամբրոնացւոյ համար գրուած Գր. Նարեկացւոյ Աղօթամատոյցն է, ուր վերնագիր կը կրէ լոկ «Վարք սրբոյ առն Աստուծոյ Գրիգորի Նարեկացւոյ»։ Վարքիս խմբագիրը ունեցած է իր առջեւ հնագոյն մը, որ ըլլալու է Յովսէփեանի էջմ. 1566էն հրատարակած «Նարեկացու Կենսագրականը» (Ցիշատակարանք, էջ 141/44)։ Խմբագրին սեպհականն է սկզբնաւորութիւնն եւ մաղթողական վերջաւորութիւնը։ Այս վերջաւորութիւնը առանց տարակուսի ստացողէն է, որ է Ներսէս քահանայ։

Այն համգամանքը, որ Վարքս կը գտնուի Ներսէսի սեպհական ձեռագրին մէջ, եկող սերունդը հաստատութիւնն ունեցած է ճանչնալու խմբագիրն եւ խորագրին տակ արձանագրած է «զոր արարեալ է սուրբ արքեպիսկոպոսին տեառն Ներսեսի առաջնորդին սուրբ ուխտիս Սկեւռայի». այսպէս գրած է Սկեւռացի մը 1237ին օրինակուած Նարեկգրոց մէջ։ Այսպէս ունին Ժ. Մաթեւոսեանի Թ. 9, Երուսաղէմի Թ. 2010 եւ Վիեննայի Թ. 592։ Ուրիշներ խորագրած են՝ «Պատմութիւն սուրբ առն Աստուծոյ Գրիգորի Նարեկացւոյ, զոր արարեալ է սուրբ արքեպիսկոպոսի Տարսոնի տեառն Ներսէսի Լամբրոնացւոյ»։

Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, 100 կ՚ըսէ, թէ Նարեկացւոյ «զվարս գրեաց (Գրիգոր) Սկեւռացին»։ Այլուստ ինձ անծանօթ։

Գ.

Սահմանք աղաւթից եւ ժամատեղեաց. այլ եւ սակս Երեխայից Մկրտութեան եւ վասն վերջին օծման. այլ եւ վասն ծրագալուցի սուրբ զատկին եւ զգուշութեան կիւրակէից. արարեալ մեծին եւ երանաշնորհ վարդապետին Ներսիսի Լամբրոնացւոյ ի խնդրոյ ումեմն Գրիգորի քահանայի:

*Տեղի աղօթից գիրք սուրբք զեկեղեցի մեզ ուսուցանեն, ու՞ր առաւել լսելի լինիցին աղօթք...:*

վջ. *Այլ դու զգոյշ լեր, Գրիգորէ, որ յայս աշխատանս զմեզ հարկեցեր, զուցէ գթեսցիս... դարձեալ ասեմ. Զգոյշ. լեր: Բազում կամէի գրել, այլ վասն պարապութեան ոչ զօրեցի: Սակայն եւակի գրեմ. Զգոյշ լեր, զի մի գայթակղեսցիս: Ա.—Դ. «պրակներու» բաժնուած:*

*Ձեռագիր. Երեւան, Թանգ.* 618, 44*բ*—49*ա* (*ԺԸ. դարէ*): *Կ'րսուի թէ գաղափար-օրինակը* «*ՈԺԶ*» (1167) *տարիէն էր: Բայց այս տարւոյն Ներսէս տակաւին* 13—14 *տարեկան էր. հաւանօրէն ըլլալու էր ՈԾԶ տարիէն, գրչութեամբ Ներսէս քահանայի:*

Ձեռագիրք: *Երուսաղէմ, Թ.* 632, 30*բ*—37 (*ԺԸ.*): *Երեւան,* 618, 44*բ*—49*ա* (*ԺԸ. օրինակն յամէ ՈԺԶ,* 1167): *Աղանեանցի օրինակը* (*ԺԶ.—ԺԷ. Արձագանք,* 1888, *էջ* 50): *Նոր-Ջուղայի Թ.* 135, 188*ա ունի.* «*Նորին սրբոյն Ներսէսի Լամբրոնացւոյ առ*

*Գրիգոր»։ Էջմիածին, Գէորգ. 19 կը խորագրէ. «Նորին Թուղթ առ Հոգեւոր որդին իւր Գրիգորիս»։*

10.

Կանոն զՋրհօր եւ զոր ի նմա ջուր օրհնելոյ եւ Ջրաշեղջի եւ յորժամ ինչ հեղձնուցու։ Տեառն Ներսէսի արքեպիսկոպոսի կարգած։

*Լոյս ի լուսոյ ի Հօրէ...։ Աղաւթք. Տէր Աստուած ամենակալ...։ Եւ մինչ զխաչն ի ջուրն եւ ապա հեղու զեւղն սուրբ եւ ասէ. Աւրհնեսցի եւ սրբեսցի...։*

*Տեառն Ներսէսի արքեպիսկոպոսին Տարսոնի Լամբրոնեցւոյ է չինեալ զՋրհորաւրհնէքս ի լրումն եկեղեցական կարգաց, նմանեալ առաջնոցն ըստ սրբութեան եւ գիտութեան։ Եւ հաւատացաք, թէ յԱստուծոյ է պարգեւքս այս, զոր Հոգւովն սրբով տպաւորեաց ի միտսն նորա. զի աս պակասէր ի գրոց։ Եւ զանուն տեառն իմոյ մի պակասեցուցանէք ի գրելեացս։ Եւ Տէր Յիսուս Քրիստոս գրողիս եւ զմեզ յիշողացն ողորմեսցի. եւ նմա փառք յաւիտեանս. ամէն։*

*Ղ. Վ. Համամճեան, Ցուցակ ձեռագրաց Իկոնիոնի Ս. Աստուածածին եկեղեցւոյ. թ. 52 (յամէ 1623) եւ 60 (յամէ 1662). երկուքն ալ Մաշտոց։ Ա. արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Հալէպի, Բ., էջ 80, թ. 21 Մաշտոց, գրուած 1671ին։*

*Հմմտ. Գիրք Մեծ Մաշտոց կոչեցեալ, Կ. Պոլիս* 1807, *էջ* 94—95 (*անանուն*)։

10բ. Կանոն Ջրհոր օրհնելոյ. <Ներսիսի> արարեալ Տարոնեցւոյ։

*Գնան ի* նմա *սուրբ Խաչիւն եւ սուրբ Իւղովն, Շարականաւ...։ Եւ ասէ զԱղօթս. Տէր Աստուած մեր, որ արարիչ ես ամենայն արարածոց...։*

*Վիեննա, Թ.* 68, 105*ա*—107*բ* (*Ցուց.* 308)։

*Հմմտ. Մաշտոց, Վենետիկ* 1840, *էջ* 712—716. *ուր նոյն է Աղօթքն՝ Տէր Աստուած արարիչ...* (715)։ *Մեծ Մաշտոց, էջ* 92—94։ *Երկուքն ալ անանուն։*

*Հ. Ղ. Ալիշան, Սիսուան,* 90. *կը յիշէ Լամբրոնացւոյ գրուածքներու մէջ. «գրեաց ...եւ զկանոնս Օրհնութեանց պակասեալս ի Մաշտոցի, որպիսի են. Կանոն ինչ ջուր օրհնելոյ։ Պղծեալ ջրհոր օրհնելոյ»։*

11.

Ներսիսի եպիսկոպոսի Տարսոնի Կիլիկեցւոց Աստուծով Լուծմունք զանազան խորհրդոց, յորս տարակուսին հանճարեղք։

*Ա. Հարցումն. Ծանե՞ան հրեշտակք կամ սատանայ...։*

Պտ. *Այսքան առ ի մէնջ ծայրաքաղ հարցմանցս Լուծմունք, ոչ ըստ ինքնայօժար կամաց, այլ ըստ քոյդ բռնադատելոյ, որդի*

*սիրեցեալ Սիմէոն, յորս որքան զօրեաց մտաց մերոց տեսութիւն ի ճշմարտութիւն յեցաւ եւ ոչ ի պաճուճանս բանից: Արդ ընկալ թէպէտ եւ անարգան, սակայն անթերի ըստ կարի, եւ դաստիարակեալ այսու զմիտս եւ զմարմին՝ փութա գրգչախոհս ցամաքե-ցուցանել ճառագայթիւք աստուածայնոցս բանից...:*

*Տ. Սաւալանեանց կը գրէ Յուցակին մէջ. «Մեկնութիւնք ըստ մասնեայ ինչ ինչ իմաստից սուրբ Գրոց հարցուպատասխա-նեաւ»:*

*Խորագիրն Ն. Ջ.* 135 *ունի. «Նորին Ս. Ներսիսի Լամբրոնացւոյ Լուծմունք բա-նիցն Սիմէոնի: Հարցումն...:*

Ձեռագիրք. *Նոր-Ջուղայ, Ամենափրկիչ, Թ.* 135, 188*ա*—190*բ* (*ԺԳ.*): *Երուսաղէմ,* 686 (*ԺԸ*):

## 12.

### Աւետարանութիւն:

Սուրբ եւ տիեզերական ժողովոյն, որ եղեւ ի շրջան ընթացից ժամանակի ՈԻԶ (1177) թուականի՝ հրամանաւ Գրիգորիսի յաջորդի առաքելական Աթոռոյ սրբոյ Գրի-գորի, համաձայնութիւն Ներսէսի նուաստ նոցին պաշտաւնակցի:

*Ո՛վ հարք սուրբք եւ վարդապետք ճըշ-մարտութեան, ո՛վ Քրիստոսի ժողովրդեանն գլուխք եւ հովիւք...:*

*վջ. Զի եւ ընդ նմա՝ նորին շնորհիւն լիցուք խաղաղարարքս որդիք Աստուծոյ Հաւր անվախճան խաղաղութեան, արժանապէս փառաւորել զՀայր...:*

*Այս խորագիրը կրած է ճառս Ներսէս Լամբրոնացւոյ գրութեանց Հաւաքածոյքին մէջ, զոր Ներսէս ինքնին կազմած էր 1193ին: Այս օրինակէն արտագրուած է 1205ին Ներսէս քահանայի օրինակը, ուսկից ծագած են 1325ին Բոդլեան Թ. 84. եւ ասկէ Յովհաննէս Այնթափեցւոյ, Սիսի կաթողիկոսին օրինակը, որ այժմ ը գտնուի* J. Pozzi *ի քով ի Պարիս: Այս խումբին կը պատկանին ուրիշ ձեռագիրներ ալ, որոնք պիտի յիշուին ապա: Ճառիս նախնական խորագիրս նոր խմբագրութեամբ վերածուած է հետեւեալ կերպարանքի.*

Յաստուածախումբ եւ ի տիեզերական ժողովն Տարսոնի, որ եղեւ ի շրջան ընթացից ժամանակի՝ ՈԻԶ թուականի Հայոց, հրամանաւ համահրեշտակ կաթողիկոսին Հայոց Գրիգորիսի եղբօրորդւոյ սրբոյն Ներսիսի յաջորդի առաքելական աթոռոյ Սրբոյն Գրիգորի եւ քրիստոսապսակ արքային Հայոց Լեւոնի, սակս միութեան եկեղեցւոյ (Հայոց եւ Հոռոմոց) ատենական խօսք մեծի սրբոյն Ներսէսի այնմ քաղաքի աթոռակալի եւ աստուածախօս վարդապետի:

*Այս խորագիրը յատուկ է առաւելապէս ԺԵ—ԺԹ. դարու ձեռագիրներու. այսպէս*

Պարիս, Թ. 165: Սեւան, Թ. 95: Վիեննա, 365: 473 եւ այլն: Թեւլացի խմբագիրը, նկատելով թէ հին բնագրին մէջ ժողովի տեղը չէ անուանուած, իսկ Ներսէս Տարսոնի եպիսկոպոսն է, համարած է թէ գումարման տեղն եղած ըլլայ Տարսոն, եւ ժամանակի իշխեցողն «քրիստոսապսակ արքայն Հայոց Լեւոն»:

Ձեռագիրք: Էջմիածին, 72, 1ա (ԺԷ.): 500, 370ա (1305): 502, 191ա (1619): 1331 (ԺԴ.): 1332 (1696): 1427 (ԺԴ.): 2588 (1294): Երուսաղէմ, 146, 1ա (1551, Պողարեան, Ցուցակ, Բ., 9): 850 (1600): 911 (1622): 1562: Պարիս, 165, 126ա): J. Pozzi (1618. Սիւրմէեան, Ցուց. Եւրոպ., Թ. 25): Վատիկան, Բորգեան, 84, 1ա—30 (1325. Tisserant, Catalogus, 177): Թաւրիզ Թ. 5, 3ա (1619. Աճառեան, Ցուց., էջ 80): Վիեննա, 365 (ԺԹ.): 473, 136ա (ԺԷ.): 623: Երեւան, 612, 1ա (1677): Լազ. Ճեմ. 24, 1ա: Սեւան, Թ. 95 (ԺՁ., Մառ, Ցուց. 44):

Հրատարակութիւնք: 1. Գիրք սիրոյ եւ խաղաղութեան, շարադրեցեալ ի սրբոյն Ներսիսէ Լամբրոնացւոյ, ճոխմատ եւ աստուածարան մեծի շնորհածաւալ վարդապետին մերոյ, ի խնդրոյ հրեշտակակրօն կաթուղիկոսին մերոյ Տեառն Գրիգորիսի՝ եղբօրորդւոյ սրբոյն Ներսիսի. հրամանաւ Տեառն Յարութեան արհիեպիսկոպոսի եւ փոխանորդի. ի թուին Հայոց ՌՃՀԸ (1729. հա-

ւանօրէն Կ. Պոլիս)։ $8^0$, էջ 160։ Էջ 2—3 «Յաստուածախումբ...»։

2. Նոյն ճակատով (Կ. Պոլիս) 1749, $8^0$, էջ 161։

3. Սրբոյ հօրն մերոյ Ներսէսի Լամբրոնացւոյ արհիեպիսկոպոսի Տարսոնի Կիլիկեցւոյ Ատենաբանութիւն եւ ճառք ընտիրք ի Համբարձումն Քրիստոսի եւ ի Գալուստ Հոգւոյն սրբոյ։ Տպագրեալ բաղդատութեամբ ուղղագոյն օրինակաց։ Վենետիկ 1787, էջ 3—60։

4. Ատենաբանութիւն սրբոյն Ներսիսի Լամբրոնացւոյ թարգմանեալ ըստ ընտիր օրինակաց յիտալական բարբառ ի Հ. Յ. Վ.է Աւգերեան Անկիւրացւոյ՝ ի Մխիթարեան Միաբանութենէ. եւ տպագրեալ ի կրկին բարբառ՝ հանդերձ իտալական ծանօթութեամբք, Վենետիկ 1812։ Տես վարը՝ իտալ. թարգմանութեան ճակատը։

5—6. Տեառն Ներսիսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի Ատենաբանութիւն եւ Թուղթք եւ Ճառք։ Վենետիկ 1838, էջ 91—202։ Նոյնը երկրորդ տպագրութեամբ 1865։ «Յաստուածախումբ...»։

7. Ներսէս Լամբրոնացւոյ Ատենաբանութիւն վասն Միութեան եկեղեցւոյ եւ Ճառք ի Համբարձումն Քրիստոսի եւ ի Գալուստ Հոգւոյն սրբոյ (հրտ. Մ. Դ. Թ[աղիադեանց], Կալկաթա, 1851։

8. *Թարգմանութիւնք*: Oratione Sinodale di S. Nierses Lampronenze arcivescovo di Tarso in Cilicia recata in lingua italiana dall' armena, ed illustrata con annotazioni dal P. Pasquale Aucher dottore del Collegio di S. Lazzaro. Venezia 1812, 8° pp. 190.

9. Synodalrede des Nerses von Lambron. Aus dem Armenischen übersetzt, mit Anmerkungen und einer Einleitung versehen von D. C. F. Neumann. Leipzig 1834, 8° S. 78 S. A. aus Zeitschrift für die historische Theologie. 4 (Leipzig 1834) 133—198.

10. Max Herzog zu Sachsen, Die Unionsrede des Erzbischofs Nerses von Lampron auf der Synode von Rom-Cla, 1179: Die Kultur, Jahrbuch für Wissenschaft, Literatur und Kunst 18 (1917 Wien) 71–83 (*մասնական թարգմանութիւն*):

11. *Ս. Նազարեանց, Ներսէս Լամբրոնացի եւ նրա Ատենաբանութիւնը Տարսոնի տիեզերական ժողովի մէջ, որ եղած է* 1179 *թուականին: Հիւսիսափայլ* 1859, *էջ* 81—134 (*Յառաջաբան մը եւ բնագրին աշխարհաբար թարգմանութիւնը*):

12. Синодальное слово Нерсесса Ламбронскаго, архіепископа Тарсійскаго. *Թարգմանութիւն Մ. Էմինի ի Թերթին*՝ Провославніе Обозрѣніе, 1865, стр. 131—197: *Ակնէ ի Հաւաքման*՝ Переводы и Статьи Н. О. Эмина. Москва 1897, стр. 171—240 (*էջ* 171—185 *ներածութիւն*):

13. Oratio ad Armenos Tarsensis Concilii Patres habita a Sancto Padre Niersese Lampronensi: Clemens Galanus, Conciliatio ecclesiae Armeniae cum Romana... Pars I. Romae 1650, pp. 326—331 (*Ատենական խօսք Ս. Հօրն Ներսէսի Լամբրոնացւոյն առաջի Տարսոնի ժողովոյն: Ի գիրս Միաբանութիւն Հայոց Ս. Եկեղեցւոյն ընդ մեծի Ս. Եկեղեցւոյն Հռովմայ, Հատոր Ա., էջ* 326—331. *Հայ բնագիրն հանդերձ լատիներէն թարգմանութեամբ. մաս մը միայն: Հմմտ. նաեւ Բ.* 1, 19. 22, 26, 104/5:

Discours synodal de Saint Nersès de Lampron, trad. A. Mercier. Venise 1948, 8°, p. 80.

13. *Օրմանեան, Ազգապատում, Ա., էջ* 1536—1537:

14. *Յարութիւն Վ. Թէքէեան*, 1197*ի Տարսոնի ժողովը, Ազգարար*, 1943, *թ.* 19:

Ժողովին գումարման տեղն (Հռոմկլայ) եւ տարին (1177): *Վերագոյն առիթ ունեցայ խօսելու ժողովիս մասին. որ գումարուած էր ՌԻԶ* (1177) *թուականին, այն տարւոյն երբ վախճանած էր Կ. Պոլսոյ Միքայէլ պատրիարքը* (1169—1177): *Ժողովը տեղի ունեցած է Հռոմկլայ նախագահութեամբ Գրիգոր Դ. Տղայ կաթողիկոսին: Ներկայ էր ժողովին նաեւ «Ներսէս արքեպիսկոպոս մայրաքաղաքին Կիլիկեցւոց Տարսոնի»:*

*Այս ժողովին մէջ, ներկայ* 32 *հայ եպիսկոպոսներու առջեւ խօսեցաւ Ներսէս իր ա-*

*ատենական խօսքը, այս ինքն Ատենաբանութիւնը, զոր ինքը կը ներկայացնէ իբրեւ «Սուրբ եւ տիեզերական ժողովոյն... Համաձայնութիւն Ներսիսի նուաստ նոցին (ժողովոյն ներկայ եպիսկոպոսներու) պաշտօնակցի»: Ուստի ժողովը գումարուած է* 1177*ին, զատկին, եւ ոչ* 1179*ին, ինչպէս կը համարի «Սիսուանի» հեղինակը* (*էջ* 87)*. գումարուած է Հռոմկլայ, հետեւաբար ո՛չ ի Տարսոն*[8]*, եւ ո՛չ ալ քրիստոսապսակ արքային Հայոց Լեւոնի» օրով, ինչպէս կը հաւաստէ Ատենաբանութեանս խորագրին նոր խմբագիրը, որուն ականջ կախած է Յարութիւն Վ. Թէքէեան, Ազդարար,* 1943, *Թ.* 19, *եւ ժողովի տեղը Տարսոն եւ գումարման տարին* 1197*ին համարած է:*

Գնահատութիւններ. 1829*ին կը գրէր.*
P. S. Somal, Quadro della storia letteraria di Armenia, p. 97.

„Orazione piena di somma eloquenza e di profonda erudizione, che meritò all' autore di essere pareggiato ai più eloquenti Santi Padri ed ai più illustri oratori della Grecia: anzi così di lui lasciò scritto un valente scrittore italiano, il quale ebbe occasione di leggerne una ver-

---

[8] *Առաջին անգամ Ներսէս Պալեան ցոյց տուաւ ժողովին տեղը Տարսոն. «Սա (Գրիգոր Դ.) արար ժողով բազում եպիսկոպոսաց ի Տարսոնի Կիլիկեցոց, առաջնորդութեամբ Ներսէսի, նոյն քաղաքին եպիսկոպոսի եւ մեծ վարդապետի, վասն սիրոյ եւ միաբանութեան առ Թագաւորն Յունաց Մանուէլ* (*Պալեան, Միաբանութիւն, Ա., էջ* 324)*:*

sione latina: Se Demostene avesse dovuto parlare in quella occasione, si sarebbe espresso colle parole del Lampronense, postochè avesse avuto la stessa fede, e virtù di questo esimio Oratore". Vi si ammira in essa l'ingegno, il buon gusto, la forza nel ragionare, e tutte le più nobili qualità, che possa avere un grande oratore, un eccellente teologo, un zelantissimo ministro di Dio. Lo stile poi è oltremodo maestoso e patetico.

*Աւելէ՝ ՆՀԲ., Ա., 13. «Հզօր եւ ազդող ոճով, գեղեցիկ շարադրութեամբ, մինչ զի այլ ոմն Դեմոսթենէս կամ Կիկերոն անուանեցին զնա հայերէնագէտ Եւրոպացիք». Համմ. նաեւ Զարբանալեան, Պատմ. Հին Դպր.,* էջ 652—653:

E. Dulaurier, Documents, p. 561: Un monument d'éloquence persuasive et pathétique, de haute et saine raison, et de science théologique.

*Հ. Ղ. Ալիշան, Սիսուան,* 87, *կը գրէ.*

*«Ատենաբանութիւնն հռչակաւորած միւս եւս հրաշակերտ գրաւոր գործոց, եւ անուստ փաստ ոչ միայն քաջարուեստ հռետորութեանն, այլ եւ անարուեստ՝ մանաւանդ թէ գերարուեստ շնորհացն աստուածայնոց, որովք առլցեալ՝ մանկագոյն հնչեն երով ի Հարս այնր ժողովոյ՝ ծերունեացն եւ հնագունից լեզու կայր եւ առաջնորդ» (անդ):*

*«Նշանաւորէ Ներսէս Լամբրոնացւոյ, Տարսոնի եպիսկոպոսին Ատենաբանութիւնը,*

*այս հաւատոյ բանակցութեանց բոլորովին ամայի Սահարային մէջ ճշմարիտ Ովասիս մը: Ներսէս պարզ խօսքերով կ՚ըսէ Հայոց եւ Յունաց հաւատարապէս, որ ըստ ինքեան երկուքն ալ միեւնոյն հաւատքն ունին, եւ ամբողջ վիճաբանութիւնը անարգ կռիւ մըն է բառերու: Կը զարմանայ որ քրիստոնեայք միասին կը ճաշեն, սակայն չեն հաղորդուիր միասին Քրիստոսի մարմնին: «Այլ ասես (դու Հոռոմ) թէ հրաժարեմ՝ զի մի պղծիցիմ ի նմանէ որ Հայն է. կամ ես, որ Հայս եմ, (հրաժարիմ) ի Հոռոմէն, (զի մի պղծիցիմ ի նմանէ որ Հոռոմն է)...: Եւ զի՞նչ է նորա պղծութիւն, կամի՞ս քննեցուք. ոչ վարք, ոչ գործք, այլ զի զՔրիստոս Աստուած եւ մարդ խոստովանիմք: Ի մի հաւատ կալով երկուց կողմանցս, վասն բայից եւ բառից զմիմեանս պիղծս համարիմք»: Այսպիսի ազատ եւ բարձրաթռիչ ըմբռնում մը երկու կողման հաւատոյ սահմանափակ պաշտանումներուն անհաս եւ անըմբռնելի»: Հ. Գելցեր, Համառօտ պատմութիւն Հայոց, թարգմ. Հ. Գ. Գալէմքեարեան, Վիեննա 1897, էջ 61:*

*«Ան որ ուշադրութեամբ կարդացած է Ատենաբանութիւնս, յատկապէս բնագիրը, չի կրնար անտեսել անոր նրբութիւնն եւ կորովութիւնը: Ինչ ինչ տեսութիւններ ճշմարիտ են անկախած ամէն ժամանակի համար. մասնաւորապէս Ա. մասին մէջ ըն-*

ծայրուած Հոգեւոր տաճարի շինութեան նկարագիրը։ Տաճարի այս շէնքը Ներսէս ինքը չէ ստեղծագործած ամէն մասամբ։ Եւսեբիոս (Եկեղ. Պատմ. Ժ. 4) յառաջ բերած է ճառ մը, որ խօսուած է Կոստանդիանոսի օրով Փիւնիկիայի Տիւրոս քաղաքի մէջ Մայր Եկեղեցւոյ օծման առիթով. այս ճառը գրեթէ նոյն խորհրդածութիւնները կը պատկերէ։ Բայց Ներսէս գիտցած է առնել ոգելից եւ մանրամասնութեանց մէջ խորացած հիւսել իր համեմատութիւնները։ Աստուծոյ արքայութեան Հոգեւոր տաճարի շինութեան ամէնքնիս պէտք է գործակից ըլլանք, եւ կը պարտինք միշտ ցանկալ, որ այդ շինուածքը կարելւոյն չափ բարձր, ծաւալուն եւ փառաւոր ի գլուխ հանուի։ Նաեւ այն սէրն ու լայնասրտութիւնը, որոնք կ՚ոգեւորէին Ներսէսը, կարող են մասամբ ինչ օրինակելի ըլլալ։ Ամէն բանէ առաջ ուշադրութիւն իր ազդարարութեան. չանարգել զիրար, չըլլալ վիճախնդիր, վէրքը, որ կայ, աւելի չխորացնել։ Մարդ մը ուղիղ, բաց սիրտ, տոգորուն ամենամաքուր դիտումներով, ճշմարտախօս ամէնուն, նաեւ իր ժողովուրդին հանդէպ. այս էր Ներսէս։ Այս պատճառով ալ թէեւ ի դերեւ ելան իր դիտաւորութիւնները, որոնց ծառայել կ՚ուզէր, սակայն ինչ ինչ իր խօսքերէն կը մնան յաւէտ իրաւացի» (Max, Herzog zu Sachsen, die Unionsrede էջ 83)»։

13.

Գլխակարգութիւնք Հռոմոց, զորս պահանջեն առ ի մէնջ ի պէտս խաղաղութեան, ընդ որս եւ Լուծմունք տարբեր եղեալ:

ա. *Նզովեցէք զասողն մի բնութիւն զՔրիստոս՝ զԵւտիքէս եւ զԴիոսկորոս...* (*Ա.—Թ. պահանջք եւ պատասխանիք*):

Խնդիրք Հայոց ի Հռոմոց:

ա. *Ամենայն մեղուցեալք ըստ իւրաքանչիւր յանցանաց՝ կանոնական հրամանաւ զատեսցին...* (*Ա.—Ե.*):

*Այս* Գլխակարգութիւնք *եւ* Խնդիրք *զետեղուած են Ներսէս Լամբրոնացւոյ Հաւաքածոյքին մէջ անմիջապէս Ատենաբանութեան վերջը. ուստի ապացոյց ընծայուած է մեզի, թէ Լամբրոնացւոյն են Հռոմոց Ա.—Թ. Պահանջքներու Լուծմունք: Զայս կը հաստատէ նաեւ Վիեննայի Թ. 78, 67ա, որ պահելով Ատենաբանութեան խմբագրուած խորագիրը՝ «Յաստուածախումբ... ժողովոյն Տարսոնի որ եղեւ ի ՈԻԶ թուականի Հայոց..» կը ներկայացնէ «Գլխակարգութիւնք Յունաց... ընդ որս եւ Լուծմունք տարբեր եղեալ. ասացեալ տեառն Ներսէսի Լամբրոնացւոյ առաջի Տարսոնի ժողովոյն: Ա. Խնդրին...»:*

*«Գլխակարգութիւնք» կը բովանդակեն Յունաց առաջարկութիւնները եւ անոնց կից Հայոց խորհրդածութիւնները կամ Լուծմունքը»: Այս «Գլխակարգեալ խնդիրք առ ի*

*Հռոմոց» պատրաստուած էր Յոյն եպիսկոպոսներու կողմէ եւ ներկայացուած Մանուէլ կայսեր, որպէս զի հաղորդէ Հայոց: Ստացաւ զանոնք Ներսէս Շնորհալի 1173ին: Լամբրոնացի կը գրէ. «Գլխակարգեալ խնդիրք առ ի Հռոմոց առաքեալ ի Թագաւորէն, զի ի գումարել ժողովոյն Հայոց՝ ընտրեսցեն զոր արժանն է ընդունել սակս Միաբանութեան» (Պատճառ, 156—157):*

*Ակնարկուած ժողովը գումարուեցաւ Հռոմկլայ 1177ին: Ինչպէս կ՚երեւայ, ժողովականները Ներսէս Լամբրոնացւոյ յանձնարարած են գրել այդ գլխակարգեալ խնդրոց Լուծմունքը: Սակայն Գրիգորիս կաթողիկոս իր «ձայնակցութեամբ ընդհանուր ժողովոյ Հայոց» առ Կայսր եւ առ Պատրիարք գրած Թուղթերուն մէջ այս Լուծմանց մասին որ եւ է խօսք չէ ըրած: Նաեւ Ներսէս իր Պատճառին մէջ զգուշացած է յիշել ինչպէս Ատենաբանութիւնն, նոյնպէս ալ Լուծմունքը. թէեւ կը սպասուէր, որ Հռոմկլայի ժողովին մէջ ընթերցուած ըլլար այն եւ Գրիգորիս Կաթողիկոսի Թուղթին հետ ուղարկուած Կայսեր: Ներսէս, որ յառաջ բերած էր Պատճառին մէջ այս Գլխակարգութիւնները, պէտք էր տալ նաեւ անոնց Լուծմունքը ինչպէս նաեւ Հայոց Խնդիրները:*

*Այս Գլխակարգութեանց եւ Խնդրոց անդրադարձութիւն եղած է 1197ին Կ. Պոլիս: Այս մասին պիտի խօսիմ յաջորդ գլխոյն մէջ:*

14.

Դեսպանագնացութիւն Ներսէսի առ Կայսրն Ալեքս (1197):

*Մանուէլ Կայսեր մահուամբ* (1180 *սեպտեմբեր* 24) *ընդհատեցան Հայոց եւ Յունաց մէջ եկեղեցիներու Միութեան շուրջը սկսուած թղթակցութիւններն եւ բանակցութիւնները: Համկլայի* 1177*ի ժողովոյն որոշումներն եւ առաջարկութիւնները, որոնք հաղորդուեցան թղթով Բիւզանդիոնի արքունիքին եւ պատրիարքարանին, արձագանգ չգտան* 1180—1185 *տարիներուն, երբ պետութիւնը ներքին քաղաքական խնդիրներով զբաղած էր: Հարցը միւսանգամ ձեռք առաւ Իսահակ Բ. Անգեղոս* (1185—1195), *որ գրեց Հայոց թուղթ մը: Այս թուղթը հրատարակեց* A. Papadopulos Kerameus, *Μαυρογορδάτειος βιβλ., Ἀνέκδοτα ἑλλην.*, *Կ. Պոլիս* 1881, *էջ* 59—63: *Այս թուղթին մասին յիշատակութիւն չկայ հայ գրականութեան մէջ: Իր յաջորդը Ալեքս Գ. Անգեղոս* (1195—1203) *պատգամաւորութիւն մ'ուղարկեց Հայոց, որ կը բերէր պարոն Լեւոնին թագ մը եւ կաթողիկոսին թուղթ մը* (1197): *Նոյն տարւոյն իր կողմէ ալ պատգամաւորութիւն մ'առաքեց Լեւոն Ա. թագաւոր. այդ պատգամաւորութեան մէջ էր նաեւ Ներսէս Լամբրոնացի, որ կը տանէր իր հետ Կաթողիկոսի պատասխանը. եւ որ լիազօրուած էր կաթողիկոսի*

կողմէ բանակցիլ Միութեան հայոց հարցե-
րու շուրջը:

Նախահոգ եղած էր Ներսէս առնել իրեն հետ նախորդ թղթակցութիւններու հաւաքածոյքը, զոր ինքը կազմած էր, նաեւ հնագոյն Կ. Պոլսոյ պատրիարքներու Հայոց գրած թուղթերու պատճէնները:

Քաղաքական-դիւանագիտական առաքելութիւնը արքունիքի հետ կատարելէ ետքը, Ներսէս արքեպիսկոպոս ներկայացաւ Պատրիարքին, որ էր Գէորգիոս Բ. Քսիփիլինոս (1192—1199), եւ մատուց Գրիգոր Զ. Կաթողիկոսին թուղթը, որ կը յայտարարէր. թէ Ներսէս արքեպիսկոպոս լիազօրուած էր բանակցելու Միութեան խնդրի շուրջ:

Բանակցութիւնները տեղի կ՚ունենան Ս. Գէորգ պատրիարքական եկեղեցւոյ մէջ: Ներկայ էին Կայսրը, Պատրիարքը, եպիսկոպոսներ, իշխաններ եւ եկեղեցականներ: Կը տեւեն օրեր. վերջին անգամ Պենտեկոստէն ետքը:

Վիճաբանութիւնները յատկապէս ինը Գլխակարգութեանց եւ Հայոց չորս խնդիրներու շուրջն էր: Խօսեցան պատրիարքն եւ աստուածաբանք: Ամէն առարկութեանց պատասխանեց Ներսէս համարձակ եւ իմաստութեամբ:

Այս բանակցութիւններու մասին հակիրճ յիշատակարան մը գրած է Ներսէս վերջացեալ Նամակներու Հաւաքածոյքին վերջը, որ է հետեւեալը.

Բանք Ներսէսի արքեպիսկոպոսի Տարսոնի մայրաքաղաքի:

*Ներսէս նուաստ ստացող մատենիս՝ գրչութեամբ որդւոյ իմոյ Գրիգորիսի, ածի զսուրբ սոսա ընդ իս ի Կոստանդնուպոլիս ի թուին Հայոց* ՈԽԶ (1197): *Եւ սոսա նամակաւքս արարեալ խօսակցութիւն՝ գտաք զսոսա անծանօթ ի սոցանէ. թանձրաբարբառք եւ հրէական կամօք ընդ նիւթս կապեալ. որք ոչ ախորժեն ծառայել Աստուծոյ նորոգութեամբ Հոգւոյն. այլ հնութեամբ գրոյն: Եւ սորջացեալ ի հոգեւոր կամս մեր՝ դարձաք յիմաստախոհ յուսոյ սոցա ամօթով:*

*[Նամակքն այս են Գիրքն Երեմիայ եւ Գերմանոսի եւ Փաւստոյ թուղթքն որ ի Հայք վասն Հաւատոյ, եւ Աթանասի եւ Մանեայ:]*

Ձեռագիրք: *Էջմիածին, Թ.* 583, 180*ա* (*ԺԴ. սկ. պակաս*): 732, 314*բ* (1322): 1666, 272*ա* (*ԺԴ.*): *Տիւբինգէն*, 52, 210*ա* (1313. *Յուց.* 75. *հմմտ. Արձագանք*, 1888, *էջ* 158): *Զմմառ*, 195, 198*բ* (*Քէչիշեան, Ցուցակ*):

*Այս Յիշատակարանը պահուած է Մովսէս Երզնկացւոյ կազմած Ոսկեփորիկի մէջ, Ներսէսի առ Յուսիկ թուղթին վերջն եւ «Յորժամ չոգաւ դեսպանութեամբ» գրուածքէն (տես վարը, Թ.* 14*ա*) *յառաջ: Ուստի սերտի կապակցութեան մէջ վերջնոյս հետ:*

Հրտ. *Արձագանք*, 1888, *էջ* 158 (*Գիւտ քհ. Աղանեանց*). *Սրուան*, 465. *Հայապատում*, 425. *Յովսէփեան, Յիշատ.* 601:

*Յիշատակարանիս վերջին, քառակուսի փակագծի մէջ առնուած տողերը կը համարիմ Մովսէս Երզնկացւոյ յաւելուածը։ Այս անդ յիշուած «Նամակներն» են.*

1. *«Գիրք Երեմիայ», իմացիր՝ Եւտիքեայ Կ. Պոլսոյ պատրիարքի գրութիւնն վասն Հակի։*

2. *Թուղթ Գերմանոս պատրիարքի առ Հայս. Գիրք Թղթոց, էջ* 358—372։

3. *«Թուղթք Փոտայ» պատրիարքի առ Զաքարիա կաթողիկոս եւ առ Աշոտ իշխանաց իշխան գրած։*

4. *«Աթանասի եւ Մանեայ»։ Փոտի վասն հաւատոյ Նամակէն թուղթ մը ինկած, զետեղուած է Նամակին վերջը «Նորին Մանեայ» վերնագրին տակ։ Իսկ «Աթանասի» կը պատկանի նոյն Նամակին վերջը յառաջ բերուած վերջին կոչումը։ Այս անկումը կատրուած է ԺԳ. դարուն ձեռագրի մը մէջ։*

14ա. Տեառն Ներսէսի արքեպիսկոպոսի Տարսոնի Կլիկեցւոյ. յորժամ չոգաւ դեսպանութեամբ ի թագաւորէն Հայոց ի Լեւոնէ ի Կոստանդինուպոլիս. Հարցումն Պատրիարքին եւ Պատասխանի սորայն Ներսէսի։

*Իբրեւ յառաջեալ սուրբն Ներսէս առաջի թագաւորին Յունաց եւ ետ ողջոյն, մատուցին զպատուէրս եւ զհրամանս եւ զթուղթս տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսին եւ զթագաւորին Հայոց Լեւոնի....։*

*Այլ Պատրիարքն թէ վասն Քրիստոսի աստուածութեանն եւ մարդկութեանն խոսիմք ինչ...։*

Վջ. *եւ գտեալ սուրբն յաղթող ամենայն Յունաց...։*

Ձեռագիրք: *Էջմ.* 228, 186*ա*—194 (1457)։ 501, 135*բ* (*ԺԷ.*)։ 503, 67*բ* (1601)։ 504, 69*բ* (1780)։ 581, 453*բ* (*ԺԴ.*)։ 583, 180*ա* (*ԺԵ.*)։ 732, 315*ա* (1322)։ 774, 91*ա* (1651)։ 1666, 272*ա* (*ԺԴ*։ *ա*)։ 2496, 211*ա*—217*բ* (1293)։ *Էջմ. Գէորգ.* 57, 213*ա*—219*բ* (1294, Marr, Sbornik, *Յաւել.* 11)։ *Տիւբինգէն*, 52, 210*բ*—215*ա* (1313)։ *Զմմառ*, 195, 198*բ*։ *Հալէպ*, 144, 217*բ* (1604. *Ց.* 250)։ *Վիեննա*, 912, 61*ա* (*ԺԷ.*)։ 78, 54*ա* (*Ց.* 335)։ 257, 41*ա*։ 473, 200 (*ԺԷ*, բ)։ 324, 163*բ*—164*բ* (1305. *Ց.* 770)։ *Երուսաղէմ*, 645։ 652, 212*ա* (*ԺԸ.*)։

Հրատարակութիւն.

1. *Տեառն Ներսէսի Լամբրոնացւոյ։ Յօրժամ չոգաւ դեսպանութեամբ ի Թագաւորէն Հայոց Լեւոնէ ի Կ. Պօլիս յետ Ժողովոյն Տարսոնի։ Հարցումն Պատրիարգին եւ Պատասխանի Ս. Ներսէսի։ Կ. Պօլիս* 1757, 8°, *էջ* 1—16։

2. *Խօսակցութիւնք Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ ընդ Պատրիարքին Յունաց։ Կ. Պօլիս* 1861, 12°, *էջ* 3—24։

*Գրուածքս ծանօթ եղած է Գրիգոր Սկեւռացւոյ իր Ներբողին մէջ, որ գրուած է*

1204ին. ուսկից յառաջ կը բերեմ ասելիս. «Մի ի բացընկեցիկ ատամոր եւ որ յիշատակին է արժանաւոր՝ լիցի: Քանզի բաս թագաւորական հզօր հրամանի նշաս ժամանել որոյս յարքայանիստ քաղաքն Կոստանդինուպօլիս: Եւ զի նախ իմաստութեան եւ առաքինութեանն հասեալ համբաւ ի յոլով ինքնակալին եւ պատրիարքին, յոլով պատուոյ եւ մեծարանաց ի նոցանէ լինէր ընդունակ. նաեւ բաս ընդ որ նոցին իմաստասիրութեան եւ յարգանաց հանճարոյ ի քննութիւն բանս արկանէին զաստուածային ի մէջ առեալ Կտակարանս զ՚ի նոսա զանխուլ եւ զժուարաձևս բանս առաջի արկանէին: Եւ զի յոջողեց իմաստասիրաց էին ժողովք, ամենեքեան ի մի վայր գումարէին եւ բաս սեփհականն իշխանութեան զհարցականն ինքեանց առնէին, ի նմանէ զլուծմունսն պահանջեալ: Եւ էր տեսանել իբր զաղաւնի ի մէջ բազմաց բազէից խուճապեալ զոյով. երկիւղ ինն զառաջինն բաս առեանին ահարկութեան բերեալ. սակայն ի Հոգւոյն շնորհ խրախուսեալ՝ յառաջ մատուցեալ իմաստալեզ հանճարով եւ հեզութեամբ առ պատասխանին՝ այնքան համանական տուեալ, որ եւ անակնկալն էր ի նոցանէ. մինչեւ հիացմամբ պակնուլ ի զարմացմանցն, եւս ընդ միայնակն այլաբարբառ եւ տարաշխարհիկ զոյով ի մէջ այնքան ազնուական իմաստասիրաց. եւ զովական բանս ի բարբառ իւրեանց առ ինքեանս հանբաւէս նմա շնորհեցին. Ոչ որպէս յուսք

միայն, ասեն, այլ գերագոյն եւս տեսաք։ Իշխանութիւն ապա Հարցման առեալ՝ գրով զՀարցականսն աւանդէր. եւ ի բազում աւուրս հաւատորացն ի մի վայր գումարեալ խոկմամբ եւ առանձինն, էր ինչ զոր պատասխանեցին եւ յոլովք այն՝ յորս պարտեցան։ Եւ այսպէս զարմանալի ի միջի նոցա երեւեալ՝ բազում պատուով եւ ձրիւք ի Թագաւորէն եւ ի պատրիարգէն անդրէն դարձայր» (Սոփերք, ԺԵ. 53—54)։

Սկեւռացւոյ հաւաստումը, թէ Ներսէս «իշխանութիւն ապա Հարցման առեալ՝ գրով զՀարցականսն աւանդէր», առանց տարակուսի Գլխակարգութեանց Լուծմունքը կ'ակնարկէ, որոնք ինչպէս տեսանք, հասած են մեզի 1177էն։ Այս Գլխակարգութիւնքն իրենց Լուծմունքով ունէր իր հետը Ներսէս։ Թէ Հարցաքննութիւնքն ալ գրի առաւ Ներսէս, այն ծանօթ չէ ինձի։ Ինչ որ ունինք այսօր այդ Հարցաքննութեանց մասին, որոնք կատարուած են յունարէն լեզուով, գրի առնուած են երրորդէ մը, որ ներկայ եղած է վիճմանց։ Այդ անանունը աշխարհիկ մ'եղած կ'երեւայ, անհմուտ մը դաւանաբանական-ծիսական հարցերու, նաեւ անվարժ գրագէտ մը, որ արտայայտուած է ռամկօրէն հայերէնով։

Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, 426, ծան. «Հարազատ չերեւիր» կը գրէ։ Հ. Յ. Տաշեան կ'անուանէ. «աղաւաղ գրութիւն մը կրօնական խնդրոց, ի մասնաւորի բաժակի

*խնդրի մասին»* (*Ցուցակ*, *էջ* 336)․ *«գործ մը, որ* (*Ն. Լամբրոնացին*) *ոչ շատ ժամանակ ետքը գրուած ըլլալու է»* (*Սրբազան պատարագամատոյցք Հայոց*, *էջ* 176)։

15.

Ներբողեան ի Վերափոխումն ամենաւրհնեալ Աստուածածնին․ ասացեալ ի Ներսէսէ ծնողաց խոստմամբ նմին ընծայեալ ծառայէ։

*Պարտական դատիմ կուսական աւուրս տաւնի ընծայել զպտուղս բանի իբր անկեալ ի նմանէ որթ ի մէջ բերբաւոր ստեղանց աստուածատունկ սուրբ այս տաճարի...։*

Վջ. *միաձայն երգովք ի մի հանդէս պարս տաւնեացուք քեզ սաստ և յանդրանկացն խորան...։*

Ձեռագիրք։ *Հալէպ*, *Թ.* 141, *Թղ.* 216*ա* (1325. *Սիւրմէեան*, *Ցուց.*, *Ա.*, 245)։ *Էջմիածին*, *Թ.* 131, 11*ա* (1781)։ 779, 206*ա* (1643)։ *Երեւան*, *Պետ. Թանգ.*, *Թ.* 601, *էջ* 870 (1729)։ *Երուսաղէմ*, *Թ.* 675 (*ԺԷ.*)։ *Զմմառ*, *Քէչիշեան*, *Թ.* 151, 16*բ* (*ԺԸ.*)։ 269, 135 (*ԺԸ.*)։ *Վիեննա*, *Թ.* 610, 72*ա* (1787)։

Հրատարակութիւն։ *Հ. Հ. Ոսկեան*, *Ներսէս Լամբրոնացւոյ Ներբողեան ի Վերափոխումն Աստուածածնի*։ *Հանդ. Ամս.* 39 (1925), 355—366, 442—462 = *Մատենա–*

*գրական քննութիւններ, Վիեննա* 1926, *էջ* 66—119 (*Ազգ. Մատ.* 112):

1ա. Համառօտ խմբագրութիւն. *Յայսմաւուրք, Բ., Կ.Պոլիս* 1834, *էջ* 81—83: *Ասկէ արտագրուած հաւանօրէն՝ Վիեննա, Թ.* 923 (*հին՝* 966), *Թղ.* 111*բ* (1860) *եւ Էջմիածին, Թ.* 2682, 1*ա* (*ԺԹ.*):

*Կը սկսի «Ուր անպատում գեղեցկութիւն է», որ կը համապատասխանէ ընդարձակ բնագրին (Ոսկեան, էջ* 114, *տ.* 18). *«Անդ ուր յաւէժ ցնծութիւն է»:*

*Ներբողեանիս հնագոյն ծանօթ օրինակն է Հալէպի Քառասուն Մանկունք եկեղեցւոյ Մատենադարանին Թ.* 141, *որուն գրիչն է Գրիգոր Ակներցի, ծաղկած ԺԴ. դարու առաջին կէսին: Ձեռագրին գաղափար–օրինակը, որ կը պարունակէր Գրիգոր Նարեկացւոյ Ապարանից Խաչի պատմութիւնը, արտագրուած է (ի Սկեւռա՞յ) Ներսէս Լամբրոնացւոյ ձեռագիր օրինակէն. Հմմտ. Արտաւազդ արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Հալէպի Ս. Քառասուն Մանկունք եկեղեցւոյ, Երուսաղէմ* 1935, *էջ* 245—246:

Գնահատութիւն. *«Յօրինեալ ի պատանեկութեան իւրում ստորին ոճով, այլ ջերմեռանդն ոգւով»* (*ՆՀԲ., Ա.,* 13): *«Անուշակ ներբողեան... հաւանօրէն ի քահանայութեան ասացեալ է նորա զայն ներբող»* (*Սիսուան,* 97):

*«Գեղեցիկ ոճով, բարձր գաղափարներով, ուժեղ չեչտով ու բուռն զգածումներով գրուած» (Ոսկեան, 75)։*

*Հետեւած է Մանկութեան Աւետարանին եւ Վերափոխման անվաւերական պատմութեանց։*

16.

Ներսէսի արքեպիսկոպոսի Տարսոնի Կիլիկեցւոց Բարեբանութիւն ներբողական զովութեամբ ի փառաւոր աւր Համբարձման Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի։

*Ցնծայ այսաւր, հարսնդ ողջախոհ, եկեղեցի հեթանոսաց...։*

Վջ. *եւ յաւիտենական կենացն ի հանդերձեալ դարուստն մարմնով...։*

Ձեռագիրք։ *Երուսաղէմ*, Թ. 351 (ԺԳ)։ 1, 49բ։ 71, 465ա (1321)։ *Վենետիկ*, 202, 420բ (1637. *Ցուց.*, Բ., 99)։ *Վիեննա*, 657, 117ա (1766)։ 850, 100ա (ԺԷ.)։

Հրատարակութիւնք։ *Վենետիկ* 1787 (*Ատենաբանութիւն...*), էջ 61—82։ 1838 եւ 1865 (*Ատենաբանութիւն...*), էջ 243—281։

*Վերլուծում մը՝ Մ. Աբեղեան, Հայոց հին գրականութեան պատմութիւն*, Բ., *Երեւան* 1946, էջ 132—139։

17.

Գովեստ Ներբողական բացատրութեամբ ասացեալ Ներսէսի սրբազան եպիսկոպոսի Տարսոնի ի ճշմարիտն Աստուած Հոգին սուրբ եւ յիջանելն նորա ի դաս Առաքելոցն եւ յաւր Պենտէկոստէին:

*Սոխակեմ ի սիրոյ սրտիս բաղձանաց նուիրել զբանս աղքատ մտաց իմոց աւուրս մեծի...:*

*Վջ. եւ քեզ աւրհնութիւն ի մէնջ ի մի բերան ընդ Հօր եւ Որդւոյ ի միանձնեաւոր կեանս եւ անմախճան. ամէն:*

*Վերնագիրն պէսպէս.* 1. *«Ներսէսի Լամբրոնացւոյ ասացեալ Ներբողեան ի Հոգին սուրբ եւ ի Ս. Առաքեալսն»:* 2. *«Երանելւոյն Ներսէսի Տարսոնի եպիսկոպոսի Ներբողեան աս՚՚ ի Հրաշափառ Գալուստ Հոգւոյն սրբոյ»:* 3. *Երանելւոյն Ներսէսի Հայոց կաթողիկոսի Ներբողեան աս «ի Հոգին սուրբ. չքնաղ եւ զարմանալի»:* 4. *Եր. Ներսէսի աս՚՚ ի Գալուստ Հոգւոյն սրբոյ չքնաղ եւ զարմանալի»:*

Ձեռագիրք: *Վենետիկ*, *Թ.* 207, 37*բ* (1341: *Ցուց. Բ.* 167): *Կեսարիա*, *Թ.* 1, 534*բ*[3] (1342): *Մոսկուա*, *Լազ. ճեմ.* 9, 350*ա*[3] (1459): *Էջմիածին*, *Թ.* 449, 165*ա* (1757): *Երեւան*, 601, *էջ* 428 (1729): *Վիեննա*, *Թ.* 5, 232*ա*[1] (*ԺԳ. Ց.* 19): 9, 203*ա*[4] (1506. *Ց.* 54): 87[2] (*ԺԸ. Ցուց.* 347): 269,

228ա (1720)։ *Երուսաղէմ*, 1, 59ա։ 71, 479բ։

Հրատարակութիւն։ *Վենետիկ* 1787 (*Առենաբանութիւն*), *էջ* 82—100։ 1838 *եւ* 1865 (*Առենաբ.*), *էջ* 282—317։ *Վիեննա* 18..), 1—16։ *Նաեւ ճաշոցներու եւ ժամագիրքերու մէջ*։

Թարգմանութիւն։ 1. *Ներսէս Լամբրոնացւոյ Ներբողը Հոգւոյն սրբոյ Գալստեան վերայ. փոխեց գրաբարից աշխարհաբարի Թ. քահանայ Միրզաբէգեանց*, *Բագու* 1874, 8⁰, *էջ* 63։

2։ *Ներբողեան ճառ երանելւոյն Ներսէսի Լամբրոնացւոյ ի հրաշափառ Գալուստ Ս. Հոգւոյն (արդի հայերէնի վերածուած). Թարգմ. Եղիվարդ*։ *Սիոն*, 1936, *էջ* 202—207։

18.

Ներսիսի Տարսոնի եպիսկոպոսի ճառ Անառակ որդւոյն։

*Եւ ասէ. Առն միոջ էին երկու որդիք...։ Զանազան առակք ի Տեառնէ խօսեցեալք զանազան ունին եւ զհայցուածս խորհրդոց, յորոց որք ի նմին Տեառնէ լուծան...։*

Վջ. *զի եւ ի նորին փառսն հայեացուք յերկինս եւ փառս տացուք անուան նորա...։*

Ձեռագիրք։ *Սեբաստիա*, 155, *էջ* 325—349 (*անա.*)։ *Զմմառ*, 151, 34ա (*ԺԸ.*)։ 269, 106բ (*ԺԸ.*)։ *Վենետիկ* 202, 213բ—219բ

(1637. *Յուց. Բ.* 84)։ *Երուսաղէմ*, 154, *էջ* 700 (*Յուց. Բ.* 42)։

Հրտ.: *Հ. Հ. Ոսկեան, Ներսէսի Լամբրոնացւոյ ճառ յԱնառակ որդին*։ *Հանդ. Ամս.* 42 (1928), 120—135, 311—319։

19.

Ներսէսի Տարսոնի եպիսկոպոսի ի բանն Տնտեսին։ *Եւ ասէր առ աշակերտսն. Այր մի էր մեծատուն, որոյ էր տնտես...։ Ըստ կարգի առակքս այսոքիկ եւ զօրութիւն խորհրդոյ ունին առ միմեանս զյարմարումն երեքեանս. եւ նախ Առակ որդւոյդ...։*

Վջ. *Մայրին որք ընդ նորին յծումն զանձինս արկանեն...։*

Ձեռագիրք։ *Սեբաստիա*, 155, *էջ* 403—422 (*անանուն*)։ *Զմմառ*, 151, 43*բ*։ 269, 122*ա*։ V. 202, 233*ա*—238*ա* (1637. *Յուց. Բ.* 85)։ *Երուսաղէմ*, 154, *էջ* 741 (*Յուց. Բ.* 43)։

19ա. (Ներսէսի Տարսոնի եպիսկոպոսի ի մեծատունն)։

*Այր ոմն էր մեծատուն եւ ագանէր բեհեզ...։ Դարձեալ այս առակ ի կարգի առաջնոցն յարմարի...։*

*Սեբաստիա*, 155, 422*ա*—438 (*անանուն*)։

*Անանուն կենսագիրը կը գրէ, թէ Ներսէս «մեկնեաց... զՏէրունական Առակսն»*

(*Հայապատում*, *էջ* 419)։ *Թէպէտ այս վեր– ջինս անանուն կը ներկայանայ միակ ձեռա– գրի մէջ, ուր նաեւ Թ.* 18 *անանուն էր, բայց հաւանական կը համարիմ թէ նաեւ ճառիս հեղինակը Լամբրոնացին է*։

20.

**Թուղթ առ Քրիստոսազօր իշխողն մեր ինքնակալութեամբ Լեւոն ի նուաստ Ներ– սիսէ որ ի Տարսոն սրբոյ եկեղեցւոյն պաշ– տօնեայ։**

*«Պատրաստ լերուք տալ պատասխանի հեղութեամբ ամենայնի, որ հարցանէ վասն յուսոյն որ ի ձեզ». խրատ տայ մեզ գլխաւոր առաքելոցն Պետրոս* (*Ա. Պետ. Գ.* 15)...։

*Անտպէս ունին վերնագիրն եւ սկիզբը Էջմ.* 500 (1305) *եւ* 524։ *Անթիլ.* 25 (*ԺԷ*)։

*Այլ*՝ Ներսիսի Լամբրոնացւոյ արքեպ.ի Տարսոնի Կիլիկեցւոց Պատասխանի թղթոյն վարդապետին Տուտէորդւոյ եւ նորին նմա– նեաց Ձորագետացւոց եւ Հաղբատացւոց, առ թագաւորն Հայոց Լեւոն։ — *Հեղութեամբ ամենայնի*...։

Ձեռագիրք։ *Էջմ.* 500, 209*բ* (1305)։ 524, 56*բ* (*ԺԷ.*)։ 912 (1785)։ *Երեւան, Թանգ.* 568 (*ԺԷ.*)։ 616, *էջ* 401 (1822) (= *Սանաս.* 41. *Աճառեան, Ցուց.* 31—32)։ *Վիեննա*, 78, 16*ա* (*ԺԸ. Ց.* 333)։ 237, 231*ա* (1823. *Ց.* 621)։ 299, 29*բ* (*ԺԹ. Ց.* 727)։ 376, 34*ա* (*ԺԹ. Ց.* 829)։ 617, 72*ա* (1783)։

623, 225բ (1732)։ *Զմմառ*, 155, 89ա (*ԺԷ.*)։ 269, 15ա (*ԺԸ.*)։ *Անթիլիաս*, 25 (*ԺԸ.*)։ *Բէյրութ*, *Կաթողիկոսարան*, 1, *էջ* 339ա (1812)։

Հրատարակություն: 1—2. *Տեառն Ներսիսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի Ատենաբանութիւն եւ Թուղթ եւ ճառք*, *Վենետիկ* 1838, 1865, *էջ* 203—242։

Թարգմանությունք.

1. *Ս. Նազարեանց*, *Ներսէս Լամբրոնացու Թուղթը դէպի Հայոց թագաւոր Լեւոնը*։ *Հիւսիսափայլ* 1859, *էջ* 630—646։

2. Ed. Dulaurier, Lettre adressé au roi Léon II.: Recueil des historiens des Croisades. Documents arméniens, t. I. (Paris 1869) p. 579—603 (*Հայ բնագիրն եւ թարգմանութիւնն*, *մասամբ*)։

3. V. Langlois, Lettre à Monsieur l'academicien Brosset, sur quelques points d'histoire politique, religieuse et civile des Arméniens et des Franks, à l'epoque des croisades: Melanges Asiatique 3 (1860) 280—291 *Քաղուածքներ Թուղթէն*։

4. *Հ. Աճառեան*, *Հայերէն նոր բառեր Ն. Լամբրոնացւոյ թղթին մէջ* (*էջ* 227. «*ընդ կարծօտելն մազկատելն*»)։ *Բազմավէպ*, 1914, *էջ* 180—161. *Հմմտ. նաեւ Բազմավէպ*, 1923, *էջ* 269—271։

*Թուղթիս գրութեան տարին Հ. Ալիշան կը նշանակէ* 1195 (*Սիսուան*, 552. *Հմմտ.*

*նաեւ* 461—462)։ *Այսպէս նաեւ Օրմանեան, Ա․*, 1515։ Fr. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, Paris, p. 274, *«հաւանօրէն* 1198 *տարւոյ գարնան մօտերը» գրուած կը համարի։ Ներսէս ունի տողերս. «Գունդ Հեռի, որ Պաղեստինացւոցն ընծայեալ է արքայութեանն, զոր* յայս ամ բերեալ ձեր ի Տարսոն, *սկիզբն զայս արար առ մեզ խօսելոյ, թէ Ոչ զոք գտայ այսօր բարի անուամբ հռչակեալ առ բազումս, որպէս զքո երկիւղածութիւնդ» (էջ* 226)։

*Գնահատութիւն. Հ. Ղ. Ալիշան, Սիսուան,* 91 *կը գրէ Թղթիս մասին. «զոր եւ մարթ է կիկերոնեան իմն ջատագովութիւն անձին գրել»*։

*Վերլուծում մը՝* Tournebize, *անդ, էջ* 274—277։ *Օրմանեան, Ազգապատում, Ա․*, 1514—1524։

21․

Թուղթ Ներսիսի արքեպիսկոպոսի Տարսոնի Կիլիկեցւոց. պատասխանի Յուսկանն արգելական ճգնաւորի ի մեծն Անտիոք, յորում լուծանէ զհարցումն կղերիկոսացն Անտիոքու վասն որ ի Հայք աստուածային շնորհի ճշմարտութեան ի վերայ քահանայական կարգի եւ ժողովրդականաց ուղիղ հաւատովն որ ի Քրիստոս։

*Գիր քո պատուականութեանդ, երանելի այրդ Աստուծոյ, եհաս առ իմս չափաւորութիւն*...։ վջ. *ի մէջ սուրբ եկեղեցւոյ տեսա—*

*կանաւզ պայծառացեալ եւ լուսաւորեալ, զի փառաւորեսցի ի քեզ Հայրն երկնաւոր*...։

Ձեռագիրք։ *Էջմ.* 501, 118*բ* (*ԺԷ.*)։ 503, 61*բ* (1601)։ 504, 56*բ* (*ԺԸ.*)։ 524, 103*ա* (*ԺԷ.*)։ 581, 443*բ* (*ԺԴ.*)։ 1351, 278*բ*
103*ա* (*ԺԷ.*)։ 581, 443*բ* (*ԺԴ.*)։ 1351, 278*բ*
(*ԺԷ.*)։ 1784, 133*ա* (*ԺԷ.*)։ 2607, 343*ա* (1300)։ *Երեւան*, *Թանգ.* 616, *էջ* 414 (1822 > 1302 = *Սանասս.* 41)։ *Վիեննա*, 78, 33*ա* (*ԺԸ.* *Ցուց.* 334—335)։ 237, 239*ա* (1823 < 1302)։ 473, 202*ա* (*ԺԷ.* *Յ.* 950)։ 617, 77*ա* (1783)։ 780 (*ԺԸ.*)։ *Տիւբինգէն*, 52, 184*ա*—192*բ* (1313)։ *Հալէպ*, *Քառասն.* 144, 209*ա* (1604. *Յ.* 250)։ *Զմմառ*, 195, 193*ա* (*ԺԷ.*)։ *Անտ.* 91 (*ԺԷ.*)։ *Երուսաղէմ*, 645 (*ԺԷ.*)։ 652, 204*բ*։ 653 (*ԺԸ.*)։ 672 (*ԺԹ.*)։ 877 (*ԺԷ.*)։ *Էջմիածին*, *Գեւ.* 279*ա*—292*ա* (1294. Marr, Sbornik, *Յաւել.*, *էջ* 12)։ *Թորոս Աղբար*, *Ա.*, 38։

Հրատարակութիւնք։

1. *Խորհրդածութիւն սրբազան պատարագի*...։ *Երուսաղէմ*, 1842. *Յաւելուած*, *էջ* 21—27։

2. *Մանր Մասնեանց*, *Ճառաքաղ*, 1859, *էջ* 37—45։

*Յուսիկ մէկն էր այն երեք քահանաներէն, որոնք իրենց անուղղայ ընթացքին եւ չարախօսութիւններուն համար յանդիմանութիւն կրած էին Ներսէս Շնորհալիէն. ապա*

անցան անոնք Ուռհա. Թագուցին հոն ծէսը եւ ընդունեցան Յունացը կամ Լատինացը[9]: Յուսիկ ժամանակ մը վերջը քաշուեցաւ Անտիոք, միաանգամ մկրտուեցաւ եւ յարեցաւ Յունաց, եւ եղաւ արգելական ճգնաւոր: Ինչպէս յառաջ, նոյնպէս ասկէ ետքը շարունակեց չարախօսել Հայոց եկեղեցւոյ մասին, յատկապէս թէ Ս. Սահակի Տեսիլքին համաձայն դադրած է Հայոց քահանայապետութիւնը, ուստի նաեւ ձեռնադրութիւն տալու իրաւունքը: Այս մասին գրած է նաեւ թուղթ մը Ներսէս Լամբրոնացւոյ, որ ամենայն խաղաղութեամբ կը պատասխանէ ջրելով անոր առարկութիւնները պատմական աղբիւրներու վրայ յեցած:

Կը յիշէ Յայտնութեան Մեկնութիւնը, զոր թարգմանած է ինքը 1179ին: Ուստի գրուած է Պատասխանս այս թուականէն ետքը:

22.

Պատճէն խնդրոյ Միաբանութեան թագաւորին Հոռոմոց Էմմանուէլի եւ սրբոց կաթողիկոսացն Հայոց թուղթք զոր գրեցին առ միմեանս:

*Մարգարէն Դաւիթ յաստուածայինն երգն սաղմոսացն օրհնաբանէ, եթէ Յիշատակ յաւիտենից եղիցի արդարն...:*

---

9 Տես. Միքայէլ Ասորի, Երուսաղէմ, 1871, էջ 470—471 եւ Michel le Syrien, ed. Chabot, III, 351: Հ. Ղ. Ալիշան, Շնորհալի, էջ 473—474:

*Վջ. Իսկ երանելին հանգուցեալ արժանապատիւ Թագաւոր Մանուէլ... եւ յեկեղեցիս Հայոց յիշատակ նորա հաշակի ընդ սրբոց թագաւորացն ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ...:*

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

*Այսմ ակնատես եւ ականջալուր եղեալ նուաստս Ներսէս համանուն նորին տեառն Ներսէսի հայրապետի, ըստ փափագման քո, իշխան բարեպաշտ եւ հարազատ եղբայր իմ Հեթում, շարագրեցի համառօտաբար զՊատճառ նամակացն հանդերձ Թղթովքն:*

*Իսկ զբովանդակ վարս երանեալ հօրն մերոյ եւ սուրբ կաթողիկոսին տեառն Ներսէսի եթէ կամիցիս կարգաւորաբար ուսանել, նախ քան զայս է մեր աշխատասիրաբար գրեալ տաղաչափական բանիւ, զոր առեալ ի ձեռս ընթերցիս եւ մխիթարեսցիս հոգւով ըստ առակախօս իմաստնոյն, եթէ Յիշատակ արդարոյ խնդութիւն ժողովրդոց:*

*Քանզի յայս փափագ միայն զքո բարեպաշտութիւնդ ի մերումս ժամանակի տեսաք՝ վար արկեալ առ ի խնդրել եւ յուսանել. զոր եւ իմ կամելով՝ ըստ կարի գրեցի ի փառս Քրիստոսի Աստուծոյ, որ է օրհնեալ յաւիտեանս:*

Ձեռագիր՝ *Փարիզ*, 179, 93*ա* (1231): *Էջմիածին*, *Գեւ.* 57, 210*բ* *եւ* 301*ա*:

Հրատարակուած՝ *Հայապատում*, *Բ.*

426—427: *Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.*, 621—622:

*Պարիսի Թ.* 179 *գրուած է Թորոս գրչէ ի Հռոմկլայ* 1231*ին, որ կը պարունակէ «Պատճառք խնդրոյ միաբանութեան Թագաւորին Հոռոմոց Էմմանուէլի եւ սրբոց կաթողիկոսաց Հայոց». կից յիշատակարանս. որ թէեւ թուական չի կրեր. բայց կը վերջանայ Մանուէլ Կայսեր մահուան յիշատակութեամբ, որ տեղի ունեցաւ* 1180 *սեպտ.* 24*ին: Ուստի գրութեան տարին ալ նկատելու է այս տարին:*

*Ինչպէս յիշեցինք վերը՝ Ներսէս* 1177*ին հրաւիրուեցաւ Գրիգորիս Դ. Կաթողիկոսէն Հռոմկլայի ժողովին: Չմեկնած Լամբրոնէն՝ եղբայրն Հեթում խնդրած է իրմէ Միաբանութեան խնդրոյ առթիւ Հայոց եւ Յունաց մէջ փոխանակուած թուղթերուն պատճէնները բերել, հանդերձ* պատճառներով, *այսինքն պատմական ծանօթութիւններով մէն մի թուղթին գրութեան շուրջը:*

*Ի Հռոմկլայ կային անձինք, որոնք տարած էին Ներսէս Շնորհալւոյ օրով, եւ տեղեակ էին անցուդարձերուն, ի մէջ այլոց Գրիգորիս Դ. Կաթողիկոս: Նոյն ինքն Ներսէս Լամբրոնացի, որ* 1169—1173 *տարիներուն Հռոմկլայ գտնուած էր, ականատես եղած էր այդ շրջանի անցուդարձերուն. իսկ* 1177—1180 *շրջանի դէպքերուն ի մօտոյ ծանօթ էր: Ան մի առ մի հաւաքեց Հռոմկլայի Դիւանին մէջ պահուած թուղթերը, դասա-*

ւորեց զանոնք ժամանակագրօրէն, հարցա-քննեց անոնց մասին ժամանակակիցները․ եւ այսպէս իբրեւ ականատես եւ ականջալուր կազմեց Թուղթերու Հաւաքածոյքն եւ անոնց Պատճառները գրեց։ Որմէ օրինակ մը բերաւ Լամբրոն ընծայելու իր եղբօր Հեթում Սեւաստոսի։

Ներսէս դիտմամբ չառաւ այս Հաւաքածոյքին մէջ Ներսէս Շնորհալւոյ առ Միքայէլ Ասորւոց Պատրիարք եւ նոյնին Վերին Հայաստան գրած Թուղթերու պատճէնները, որովհետեւ իր ծրագրին մէջ էին միայն Հայոց եւ Յունաց մէջ փոխանակուած Թուղթերը։

Այս Հաւաքածոյքէն, որ Պատճառք խնդրոյ Միաբանութեան կը կոչուի, մեծ թուով օրինակներ հանուած են յընթացս դարերու, 1300էն ետքը կցուեցան անոր Ներսէս Շնորհալւոյ Ընդհանրական եւ մասնական Թուղթերու Հաւաքածոյքը, զոր կազմեց Թոմաս Հռոմկլայեցի։

Չեմ յիշեր այստեղ Հաւաքման ձեռագիրները։ Հրատարակուած է Ընդհանրական եւ Մասնական Թուղթերու հետ՝ Պետերբուրգ 1788․ Կ․ Պոլիս 1825․ Էջմիածին 1865․ Երուսաղէմ 1871։

23.

Գովեստ Ներբողական պատմագրական բանին յաղագս վարուց մեծի հայրապետին տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի եւ տիեզերական վարդապետի. ասացեալ տեառն Ներսէսի սրբոյ վարդապետի եւ սորա հարազատի, որդւոյ դստեր եղբաւր:

*Շարժեալ ստիպէ Հարկ ակըրունք*
*Ըզդադարումն իմըս բանի*
*Նիւթ գովեստի տալ յասպանի*
*Հօրն որ արժան վարուք պատուի...:*

վջ. *Այժմ ընդ Գէորգեանն ես ի պարի,*
*Թագաւորեալ ի յասպանի.*
*Հայցեա լինել մեզ լըսելի.*
*Ձեկայք աւրհնեալքըն Հայրենի:*

*Խորագիրը Մաղխասայի Թ. 3 ունի «Գովեստ... եւ գիտութեան մեծին Հայրապետին Ներսէսի Հայոց կաթողիկոսի, ստ. Ներսէսի եպիսկոպոսի Տարսոնի եւ Լամբրոնի. եւ սորա եղբաւր դստեր որդւոյ. եւ այսպէս կոչին սոքա. Կաթողիկոսն՝ Շնորհաց եւ Կլայեցի եւ եպիսկոպոսն՝ Շատաշնորհք եւ Լամբրոնեցի»:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, 2496, 302*ա*—341*ա* (1293): 912, *էջ* 325 (1785): 1538, 286*ա* (1625): 1541, 276*ա* (161(): 1558, 340*ա* (1643): 2390, 196*ա* (*ԺԷ.*): 2377, 219*բ* (*ԺԴ.*): 2391 (*ԺԷ.*): *Էջմ. Գէ.* 57, 326*բ* (1294: Марръ, Сборники притчъ Вар-

дана. *Յաւելուած*, էջ 12)։ *Երեւան*, 1031, էջ 443 (*ԺԷ.*)։ *Պարիս*, 165, 145ա (*ԺԷ.*)։ 281, 231ա (1374)։ 282 99բ (*ԺԸ.*)։ *Երուսաղէմ*, 830, 205ա (1677)։ 1240, 328բ (1686)։ *Թաւրիզ*, *Ա.*, 14, 264ա (1284. *Ցուց.* 14)։ *Զմմառ*, *Անտ.* 111, 19ա (*ԺԸ.*)։ *Վիեննա*, 543, 209ա (1432. *Ցուց.* 1016)։ *Զմմառ*, *Բէշիքթաշ*, 94, 152ա (*ԺԵ. պակաս՝ տունք* 494—510)։ 227, 333ա (1662)։

Հրատարակութիւնք։ 1. *Թուղթ ընդհանրական...*, *Պետերբուրգ* 1788, էջ 299—316։ 2. *Նոյն*, *Կ. Պոլիս* 1825, էջ 215—228։ 3. *Նոյն*, *Էջմիածին*, 1865, էջ 461—497։ 4. *Ողբ Եդեսիոյ քաղաքի...*, *Կալկաթա*, 1832, էջ 167—216։

23ա Ոտանաւոր ասացեալ Ն. Լամբրոնացւոյ ի վերայ տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի Կլայեցւոյ։

*Ներսէս պսակ ազգի մարդկան...*

Ձեռագիրք։ *Երեւան*, *Թ.* 10 (*Ցուցմ.* 1610)։ *Երուսաղէմ*, 650 (1691)։ 1208 (*ԺԴ.*)։ 1240 (1686)։

*Գովեստ Ներբողականի Բ. մասն է, սկսեալ* 76 *տունէն*։

Վկայութիւն. *Ն. Լամբրոնացի «Պատճառ»ին կցած Յիշատակարանին մէջ կը գրէ խօսքը ուղղելով իր եղբօր Հեթումին. «Իսկ զբովանդակ փառս երանեալ հօր մերոյ և տէրը Կաթողիկոսին տեառն Ներսէսի, եթէ կամիցիս կարգաւորաբար ուսանել, նախ քան*

գոյս է մեր աշխատասիրաբար տաղաչափական բանիւ գրեալ»:

Ներսէս հիւսեց Գովեստ հաւանօրէն 1174 օգոստոսին Ներսէս Շնորհալւոյ մահուան տարելիցին, երբ կը գտնուէր Հռոմկլայ «ի վարժումն իմաստից»: Տաղաչափական իր առաջին փորձերէն մէկն է ան: Կարեւոր պատմական բովանդակութեամբ:

Ինքնին կը խոստովանի իր անվարժութիւնը տաղաչափութեան մէջ.

Զոր ծանուցեալ հաւատացի,
Ստուգեալ ի գրոց տեղեկացի,
Զմինն յնտրելոց աչօք տեսի.
Գովել բանիւս բաղձացի:
Այլ զի անվարժ ի չափ տաղի,
Ոտանաւոր տաղից կարգի,
Քերթողական մեծ արհեստի,
Զեղեալ ներհուն բառ արժանի:
Երկիւղալից անձն իմ լինի,
Թէ ճոխաբար բանքս չպատմի
Եւ զերագոյնն յամենայնի
Հիծեալ խօսիւք փոքըր ցուցի:

Հ. Գ. Զարբանալեան կը գրէ. «Ունի Լամբրոնացի քանի մը կտոր մանր քերթողական գրուածներ ալ, բայց անոնց ոճը այնչափ հեռու է իր արձակ գրուածոց ոճէն, որ յայտնապէս կը տեսնուի թէ հռովմայեցի ճարտասանին պէս միայն խօսելու ուժով եւ գեղեցիկ ու համոզիչ լեզուով ծնած էր Լամ-

*մրոնացին, քան թէ քերթողաբանելու»* (էջ 660)։ *Հ. Ալիշան Գովեստն նկատի առնելով կը գնահատէ. «Այս գրուածն հետեւակ է, իբր մանկական եռանդեան պտուղ, անհամեմատ իր յետագայ թէ արձակ գրուածոց, թէ Տաղականաց եւ թէ քանի մի ոտանաւորաց»* (*Հայապատում, Ա.*, 96)։

*Մ. Աբեղեան, որ վերլուծած է գրուածքս, կը գրէ. «Դա մի պոեմա, մի քերթուած է բառիս սկզբնական նշանակութեամբ իբրեւ արուեստով յօրինուած մի գործ...։ Դա մի քնարական* (*լիրիկական*) *քերթուած է, քանի որ դրա մէջ արտայայտուած են հեղինակի զգացումները առ Շնորհալին, նա ոչ միայն պատմում է, այլ եւ գովում, ներբողում է։ Այսպէս լինելով հանդերձ... չունի առանձին գրական արժէք, որովհետեւ չի արտայայտուած բանաստեղծական ներշնչումով, կենդանի պատկերաւորութեամբ։ Որքան նա ջերմ, բուռն մի հռետոր է հանդիսանում իր ճառերի մէջ, այնքան պաղ ու թոյլ է իբրեւ քերթող»* (*Հայոց հին գրականութեան պատմութիւն, Բ., Երեւան* 1946, *էջ* 139—140)։

*Գովեստս ճշդիւ գնահատելու համար պէտք է նկատողութեան առնել, որ հեղինակը բաժնած է զայն* 10 *ուրոյն հատուածներու, որոնցմէ մէկն մին ունի իր սեպհական բովանդակութիւնը, պատմական դէմքեր, հին եւ նոր, եւ ողբախառն դրուատը Ն. Շնորհալւոյ, որոնք կը կազմեն շնորհալից պատկերներ, ինքնայատուկ երանգներով, եւ հա-*

*րազատ զգածումներով: Այս հատուածներն են.*

*Տունք՝ ա.* 1—6 *մուտքն է: բ.* 17—19 *նկարագիր ժամանակի* 1105*էն յառաջ: գ.* 20—37 *գովքն կ՚ընէ Գրիգոր Փոքր Վկայասէրի, այն է եղբօր Ներսէսի: դ.* 37—74. *Գովքն Ներսէսի. «Ներսէս պսակ ազգի մարդկան...»: ե.* 75—92 *պատմագրական Ներսէսի նախնեաց, յատկապէս Գրիգոր Վկայասէրի եւ զ.* 93—144 *Գրիգորիս Փոքր Վկայասէրի եղբօր Ներսիսի: է.* 109—144 *Ներսէս օգնական իր եղբօր. անոր գրական վաստակները: ը.* 145—201 *Ներսէս կաթողիկոս: Որուն մահէն ետքը՝ թ.* 202—222 *կը յաջորդէ Գրիգոր Տղայ: ժ.* 223—255 *Ողբախառն ներբողեան Ներսէսի դագաղին առջեւ:*

*Տունքն* 256—258 (4—4—4 *չափով) ուրիշ ձեռքէ յաւելուած է. չունի Վիեննայի թ.* 543:

*Յաջող կարելի է նկատել տունքն* 37—74, *ուր ունի ինքնաստեղծ ընտիր տուներ, սիրազեղ արտայայտութիւններ:*

*Եթէ այս* 10 *բաժանմունքները, զոր կ՚ենթադրէ Ներբողս, նկատի առնուին, աւելի իմաստալից եւ կարկառուն պիտի ցոլան տուները:*

*Հ. Ալիշան, Շնորհալի, էջ* 58—60, 64—65, 65—67, 109—111, 456—486 *եւ այլն գրեթէ ամբողջութեամբ յառաջ բերած է Գովեստս, տուն առ տուն հիւսելով Ն. Շնորհալւոյ Վարքին հետ:*

## 24.

Ներբողեան կենսատու սուրբ խաչին, զոր մեծ քահանայապետն Աստուծոյ, հովիւն քաջ Ներսէս Տարսոնեան շարայարեալ ուսանաւոր չափ առ ի հօրէն մերմէ Դաւթայ անյաղթ փիլիսոփայէ:

*Բարձրացուցէք զՏէր Աստուած մեր միաբան,*
*Մարգարէն կանխաձայնեալ տայ մեզ հրաման:*

*Երկիր պագէք պատուանդանին արքունական,*
*Աստուածաբարձ սրբոյ Խաչին մեր փրկութեան...:*

*Ա. մասը կ՚աւարտի՝*

*Եկեղեցի, եկ եւ ուսիր զայս ձայն արժան,*
*Եւ լեր կցորդ մաքուր հոգւոցն օրհներգութեան.*
*Փոխ հատուցուք պէսպէս ըղձանըս զովասան.*
*Աստուածազօր սրբոյ Խաչին փառաւորութեան:*

*Բ. մասը.*

*Տեառն Ներսէսի ասացեալ յաղագս Կենարեր Փայտին:*

*Օրհնեալ ես փայտ քրիստոսական,*
*Աստուածազարդ սուրբըդ նըշան,*
*Որ դու միայն երանութեան*
*Ցէիցս հանէր զեր քան զրան...:*

*Բ. մասը կ՚աւարտի.*

*Եկեղեցի այսօր պարէ*
*Զպայծառ Ներշանս ճայնիւ պատուէ.*
*ԶՅիսուս ի սմա փառաւորէ.*
*Այժմ եւ յաւայն որ գալոց է:*

*Ընդ ամէնը* 604 *տող, այն է* 151 *տուն:*

Ձեռագիրք: *Վիեննա*, 185, 134*ա*—146 (*ԺԵ: Յիսուս որդի. Յուց.* 501): 194, 78*բ* (*ԺԷ. Յիսուս որդի. Յուց.* 514): *Զմմառ, Քէչիշեան, Թ.* 227, 87*ա*—93*բ* (1662. *Յիսուս որդի*): *Վենետիկ, Յիսուս որդի, Ը., էջ* 406. *անանու՞ն*):

*Գանձարաններ՝ Զմմառ*, 22, 305*բ* (*ԺԵ.*): *Երեւան, Թանգ.* 359: *Էջմիածին*, 424:

Հրատարակութիւն: *Ներսէսի Շնորհալւոյ չափաբերականք. Վենետիկ* 1830, *էջ* 231—263:

*Բոլոր ձեռագիրները Ներբողեանին հեղինակ կը ճանչնան «տէր Ներսէս Տարօնեան». Գանձարաններու մէջ՝ Տաղ Խաչվերացին ի Ներսէս Լամբրոնացւոյ ասացեալ»:*

*Վենետիկի հրատարակութիւնը կատարուած ըլլալու է Ը. Յիսուս որդի հաւաքածոյքէն, որ միակ ձեռագիրն է, որ ունի Ներբողեանս: Կա՞ր ձեռագրին մէջ Ներսէս Շնորհալւոյ անունը. խորագիրը, զոր տուած են ձեռագրէն, հետեւեալն է. «Ներբողեան կենդանատու սուրբ Խաչին առ ի սրբոյ հօրէն մերմէ Դաւիթ անյաղթ փիլիսոփայէ ասացա*

*տաղնաւոր չափով սատանոր եղաւ»։ Այս խորագիրը գրեթէ նոյն է վերը յիշուած խորագրին հետ եւ կ'երեւայ թէ յիշեալ ձեռագիրներու խումբին կը պատկանի եւ պէտք է ունենար «Ներսէս Տարսոնեան»։*

*Հ. Գ. Ալիշան, Շնորհալի, էջ* 260—263 *խօսած է Ներբողեանին վրայ. բայց չէ արտայայտած որ եւ է կերպ կասկած անոր Շնորհալւոյ անունին անհարազատ ըլլալու մասին։*

*Թէ իրօք Ներսէս Լամբրոնացւոյ գրչին կը պատկանի ներբողնանս, կը վկայէ Կիրակոս Արեւելցի իր Յայսմաւուրքի մէջ, ուր տալով Ն. Լամբրոնացւոյ Վարքը կը գրէ. «գրեաց ներբողականս... եւ ի սուրբ Խաչն տաղնաւոր չափով»* (*Վիեննա, Թ.* 7, *Թղ.* 548*բ. Ցուցակ, էջ* 44)։

*Հմմտ. եւ Զարբանալեան, Պատմ. Հայ Դպր.,* 660 *«Բերթուած մ'այ ի սուրբ Խաչն»։*

*Ն. Լամբրոնացի տաղնաւորի վերածած է Դաւիթ փիլիսոփայի (Է. դար) ի Ս. Խաչն գրած ճառը, որ կը սկսի «Բարձրացուցէք զՏէր Աստուած» բնաբանով։ Ա. մասին մէջ նկատի առած է ճառին քննականն եւ պատճառականը. Բ. մասին մէջ գովասանականը։ Ա. մասը երգուած է* 4—4—4 *չափով եւ* –ան *յանգով. Բ. մասը* 4—4 *չափով եւ զանազան յանգերով։*

*Ներսէս իր անձի մասին որ եւ է հետք չէ ձգած ամբողջ գրուածքիս մէջ, ոչ տնակապ*

*կամ տողակապ գրերով եւ ոչ այ յիշատակարանով մը. ինչ որ սիրելի էր Ներսէս Շնորհալւոյ իր տաղաչափական գրուածքներուն մէջ:*

## 25—32. Տաղեր:

25. Տաղ մեծի աւուր Շաբաթին թաղման. ի Ներսիսէ Լամբրոնացւոյ:
Կցուրդ.

*Այսաւր է շաբաթ եւ լռութիւն, հանգիստ*
*յերկրի.*
*Զի ի գուբ սուսերին նընջէ արքայն թա-*
*հաւորն...*
փ. *Աշակերտ Տեառն Յովսէփ հաւատարիմ*
*Անստգիւտ պահեաց ընէր վարդապետին.*

վջ. *Ի կենդանեաց եւ մեռելոց ի մի բերան,*
*Քեզ գոհութիւն միշտ աւրհնութեամբ ի*
*յաւիտեան:*

Ձեռագիրք: *Երեւան*, 372, 233*բ* (*անանուն*): *Պարիս*, 80, 158*բ*: *Վենետիկ*, *Ա. Տաղարան*, *էջ* 443: *Բ. Տաղ.*, *էջ* 564: *Զ. Տաղ.* 428: *ԺԲ. Տաղ.* 177: *Թիֆլիս*, *Ներս.* 2, *էջ* 481—483 (1505. *Յուց.* 14. *անանուն*): *Վիեննա*, 545, 45*ա* (1617. *անանուն*): *Ը.* 6, 799*բ* (*ԺԵ՞. անանուն*):

Հրատ. *Բազմավէպ*, 1853, *էջ* 132—134 (*ի թաղումն Տեառն ի Մեծի Շաբաթու ի Ն. Լամբրոնացւոյ. Կցուրդ*): *Ա. Զօպանեան*, *Հայ էջեր*, 51:

*Պարիսի ձեռագիրը ունի «Ի Ներսիսէ Լամբրոնացւոյ». այսպէս նաեւ Վենետիկի (բոլո՞ր) ձեռագիրք: «Փոխէն»՝ Վենետիկ, 304, 244բ (Ցուց. Բ. 1159. անանուն):*

26. Տաղ ԺԲ. առաքելոց Տեառն Ներսիսի Լամբրոնացւոյ ասացեալ:

*Անճառ խնդրութեամբ լցեալ*
*Եկեղեցի սուրբ գընծայ.*

փ. *Անմահութեանց եւ թագաւոր,*
*Որ ես ընդ Հաւր միշտ եւ Հոգւոյն...:*

Ձեռագիր: *Երեւան*, 372, 357*բ*—359*ա* (*ԺԴ.*):

27. Տաղ Սրբոց Հրեշտակապետացն:

*Զարթիր եկեղեցի ի նորահրաշ հանդէս,*
*Արիք մեք եւ լցուք ի յերկնայնոցըն մէջ...*

փ. *Զեզ ձայնակից գըւարթունք,*
*Պեաք երկնայինք եւ իշխանք...:*

Ձեռագիրք: *Երեւան*, 372, 494*ա* (*ԺԴ. անանուն*): *Վենետիկ, Տաղարան ԺԲ.*, էջ 119 (*յանուն Ներսիսի*): *Հմմտ. Միսուան*, 91, *ծն.* 3:

28. Տաղ Սրբոյն Գէորգայ զաւրավարին եւ նմանեաց իւրոց. ի Ներսիսէ Տարսոնի եպիսկոպոսէ:

*Թագաւորն անմահ յաշխարհըս երեւեալ,*
*Ազատել զազգըս մարդկան*
*ի բանսարկութենէն.*

վջ. *Որ զաւրացոյց զվըկայն,*
*աւրհնեմք միշտ յաւիտեան։*

Ձեռագիրք։ *Երեւան*, 372, 456*բ*—488*բ* (*ԺԴ.*)։ *Պարիս*, 79, 388*ա*։ *Վենետիկ*, *Տաղարան ԺԲ*,. *էջ* 340։

Հրատարակութիւն. *Վարք Ս. Գէորգայ*, *Վենետիկ* 1849, *էջ* 60—62։

*Երեւանի ձեռագիրն ունի. «Ի Ներսիսէ կաթողիկոսէ»։*

29. Տաղ ի սուրբ Յովհաննէս աւետարանիչ։

*Յովհաննէս կոյս աստուածաբան...։*

Ձեռագիր։ *Վենետիկ*, *Տաղարան ԺԲ.*, *էջ* 79։

*Համտ. Սիսուան*, 91, *ծն.* 3. *«Ի Սիրելին իւր Յովհ. Աւետարանիչ փափուկ իմաստիւք»։*

30. Տաղ Աւետեաց Աստուածածնին։

*Ողջոյն սիրալիր, բերկրեալ,*
*Աւրհնեալ աստուածընկալ տաճար,*
*Քեզ նուերեմք այսաւր...*

վջ. *Փառք քեզ, երանեալ ուրախացեալ,*
*Քեզ զովութեամբ պատիւ ի յաւիտեանս. ամէն։*

Ձեռագիրք։ *Երուսաղէմ*, 2015։ *Երեւան*, 372, 363*բ* (*ԺԴ.*)[1]։ *Վիեննա*, 545, 49*ա*։ *Ը.* 6։ *Պարիս*, 79, 334*բ* (*անանուն*)։

---

1 *Իբրեւ* «փոխէ», *«Որ է աւետեաց» կցուրդին։*

Հրատարակութիւն: *Ն. Վ. Ծովական*, *Սիոն*, 1947, *էջ* 243։

31. Տաղ Ծննդեան (ի Ս. Աստուածածին)։

*Քերովբէից գերագոյն, Սրբոց մաքրենից մաքրագոյն.*

փ. *Նոր Թագաւորին...*։

Ձեռագիրք: *Երեւան*, 372, 29*ա*—30*ա* (*ԺԴ. անանուն*)։ *Պարիս*, 79, 322*բ* (*անանուն*)։ *Տիւբինգէն*, 61, 146*ա* (*անանուն*)։

*Երեւանի օրինակն. Տաղ Ծննդեան Գ. աւուր, երեկոյին ժամուն։ Երեք ձեռագիրներն ալ անանուն։*

*Հ. Ղ. Ալիշան, Սիսուան*, 91, *ծն.* 3. *Ներսէս Լամբրոնացւոյ գիրն է «Մեղեդի հակիրճ ի սուրբ Աստուածածին. Քերովբէից գերագոյն»*։

32. Տաղ Աւետեաց Աստուածածնին ի Ներսիսէ եպիսկոպոսէ Լամբրոնացւոյ ասացեալ։

*Այր է Աւետեաց. ուրախութեան հնչումն.*
*Պար բոլորեցէք եկեղեցւոյ մանկունք.*
*Աւրհնել քաղցր երգով գձիան աւրհնութեան*
*զսուրբ Կոյսն։*
*Աւետիս քեզ Մարիամ,*
*զոր Գաբրիէլ ակզբնաւորեաց.*
*աւետիս (երիցս), կոյս Մարիամ աւետիս։*
*Բանաւոր տաճար եղեր, ուրախ լեր (երիցս),*
*կոյս Մարիամ ուրախ լեր։*

*Տունք Ա—Ք։*

Ձեռագիրք։ *Էջմիածին, Թ.* 1637, 236*ա* (*ԺԷ.*)։ *Բրիտ. Թանգ.* 110. 12*բ*։ 108, 266*բ* (*Ցուց.* 280)։ *Բեռլին, Թ.* 67, 183*ա*։ *Վիեննա, Թ.* 69, 146*ա*։ 133, 268*ա*։ 514, 5*ա*։ 545, 49*ա*։ 745, 14*բ*։ 1002, 22*ա* (1654. *անանուն*)։ *Ը.* 6, *էջ* 808 (*ԺԵ՞.*)։

*Ձեռագիրներէս ոմանք ունին տաղիս սկիզբը կցուրդ մը (Օր է աւետեաց...)։ Վիեննայի Ը. 6 ունի վերնագիր մը, զոր առած ենք։ Թ. 545 լոկ «Տաղ Աւետեաց Աստուածածնին ի Ներսիսէ»։ Այլք չունին կցուրդն եւ անանուն են։*

*Երեւանի Թ.* 372, 263*բ ունի կցուրդ եւ փոխէ՝*

*Ողջոյն սիրային բերկրեալ,*
*Օրհնեալ աստուածընկալ տաճար...*
*Եւ խորագիր կը կրէ. «Տաղ Աւետեաց Աստուածածնին ի Ներսիսէ եպիսկոպոսէ Լամբրոնեցւոյ ասացեալ»։*

*Տաղս «Ողջոյն սիրային...» ունի Փարիզի Թ.* 79, 334*բ* (*ԺԴ.*) *անվերնագիր*։

33.

Շարական։

*Գրիգոր Տաթեւացի, Գիրք Հարցմանց, էջ* 637։ *Կը գրէ. «Ներսէս Լամբրոնացին* զԱյսօր յարեաւն, զՆորոգեալ կզզիքն *եւ* զԹռռանցն» *արար*։

1. ՕՐՀՆՈՒԹԻՒՆ *Զատկի Յարութեան ԱՁ*:

*Այսօր յարեաւ ի մեռելոց փեսայն անմահ եւ երկնաւոր*:

2. Կանոն Նոր Կիւրակէին.

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԴԿ. *Նորոգեալ կըղզիք առ Աստուած եկեղեցիք հեթանոսաց*:

ՀԱՐՑ. ԱԿ.: *Որ խոնարհեցար յանձառ փառաց փեսայդ անմահ*:

ՄԵԾԱՑ. ԱԿ.: *Նոր խորանիդ արեգականն արդարութեան*:

ՈՂՈՐՄ. ԱԿ.: *Որ վերստին նորոգեցեր ըզմեզ...*:

ՏԷՐՑԵՐԿ. ԱԿ.: *Այսօր նոր ժողովուրդք...*:

ՀԱՄԲ. ԴԿ.: *Յորժամ եկին ի գերեզմանն իւղաբեր կանայք*:

*Զմմառ, Թ.* 116. «*Տեառն Ներսէսի Լամբրոնեցւոյ եպիսկոպոսի եւ քաջ վարդապետի ասացեալ*»: *Օրհնութեան անակապ գիրերը կը հիւսեն՝* ՆԵՐՍԷՍ:

*Հ. Զամչեան, Գ.* 95 *կը գրէ.* «*Ի նմին ժամանակի եղբայր սորա Հեթում շինեաց զեկեղեցին ի սուրբ ուխտն Սկեւռայ... եւ յաւուր Նոր Կիւրակէի ի նաւակատիս այնր տաճարի մատոյց անդ պատարագ Լամբրոնացին. եւ որպէս երեւի՝ ի նմին աւուր երգեաց զշարականն* Նորոգեալ կղզիք»:

*Եկեղեցւոյն շինողն է Օշին Բ. հայրն Հեթումի եւ Ներսէսի իբր* 1154/5*ին. իսկ Հեթում նորոգեց եւ նկարազարդեց իբր* 1180*ին*:

Զամչեանի անձնական ենթադրութիւնն է գրի առնուածը:

3. Որդւոցն եւ Թոռանց Ս. Գրիգորի:

ՀԱՐՑ ԱԿ.: Որ գլուխ աստուածային քո գիտութեան հիւսիսական ազանց ծագեցեր...:

ՈՂՈՐՄ. ԱԿ.: Որ հրաւիրեցեր զորդիս մարդկան յորդեգրութիւն...:

ՏԷՐՑԵՐԿ. ԱԿ.: Այսօր ընդ երկնային զուարթունսն...:

ՄԱՆԿ. ՀԱՄԲ. ԴԿ.: Աստուածային հաւատոյ հարցն որոց դաւանութիւ...:

Զմմառ, 116. «Ներսիսի Լամբրոնացւոյ է ասացեալ: Հմմտ. Ամատունի, Պարականոն, 113:

4. Համբարձման:

«Զշարական Համբարձման Տեառն ասեն արարեալ սրբոյն Ներսեսի Լամբրոնացւոյ» (Աւետիքեան, Բացատրութիւն Շարականաց, 342: Հմմտ. Ամատունի, էջ 103):

(ՀԱՐՑ. ԴԿ. Որ յառաջ քան զարեւ անուն քո...:)

5. Հոգեգալստեան:

«Հոգւոյ Գալստեան Զ. սուր. Զայս կանոն եւ յաջորդն ոչ համարին Շնորհալւոյն Ներսեսի... օրինակ ինչ դնէ՝ Ներսեսի Լամբրոնացւոյ» (Աւետիքեան, Բացատրութիւն, էջ 399): Հմմտ. Ամատունի, էջ 106—107:

## 34. Երկբայական

1. Մեկնութիւն Դանիէլի եւ Արարածոց:

*Կը յիշէ Զարբհանալեան, Պատմ. Հայ Հին Դպր.* 657: *Առանց տարակուսի իր աղբիւրն է Խաչատուր Սկեւռացւոյ ողբը, ուր կը գրէ.*

*Առ քեզ խօսիմ, Հին Կտակարանք...*
*Ե՛կ Դանիէլ, որ խոպանեցար.*
*Եկ Արարածք, լա՛ց, որ փակեցար:*

*Այս տողերու մէջ Ողբասացը կ՚ակնարկէ Լամբրոնացւոյ դասախօսութիւններն ի մասին Դանիէլի եւ Ծննդոց գիրքերու: Եթէ անոնք գրաւոր մեկնուած ըլլային, ոչ կը խոպանանային եւ ոչ ալ կը փակուէին:*

*Ներսէս չէ գրած այս գիրքերու Մեկնութիւնը:*

2. Մեկնութիւն Յոբայ:

*Ստ. Օրբէլեան, Ժամանակագրութիւն, յամի* 1198 *կը գրէ. «Յայս թվիս փայլէր մեծ ջահն եկեղեցւոյ Ներսէս Լամբրոնեցին ի ճգունս եւ յիմաստս. եւ մեկնեաց զգրեանս զԲԺանքն, զԱռակս,* զՅոբն, *զՊատարագն եւ զՍաղմոսս եւ այլ բազում»:*

*Ներսէս Լամբրոնացւոյ անունով Յոբայ Մեկնութիւն չէ հասած մեզի. չեն յիշատակուած նաեւ ուրիշներ: Բայց ունինք Լամբրոնացւոյ Առակաց Մեկնութեան Յիշատակարանին մէջ տեղիքս. «Յայսմ ամի* (1197) *գնացեալ իմ ի Կոստանդնուպոլիս եւ խընդրեալ ի նորին պատրիարքէն (Գէորգ Բ.)*

*զոր առ նոսին տեսութիւն Առակացս* եւ Յո-բայ. *եւ ընթերցեալ տեղեկացայ, զի զոր ի մէնջ պատարերէր շնորհ սուրբ Հոգւոյն, ոչինչ նուազ էր յայնմանէ. եւ նախաքննեալն համաձայնէր եւ ոչ ստարանայր»:*

*Այս տեղ Լամբրոնացի մէկ «տեսութեան» այն է Առակաց մասին կը խօսի. նոյն միտքն ունի նաեւ «նախադրեալն»: Թէ ի՞նչպէս սպրդած է հոն «եւ Յոբայ» անմեկնելի է ինձ: Օրբելեան կ'երեւայ թէ այս տեղիքը նկատի առած է:*

2ա. Մատթէի Աւետարանին Մեկնու-թիւնը:

*Կը յիշէ Զարբ. անդ,* 657: *Այլուստ անծանօթ: Մատթէի Մեկնութեան ձեռնարկած էր Ներսէս Շնորհալի եւ իր թերի թողածը լրացուցիչ է Յովհաննէս Ծործորեցի:*

3. Լուծմունք Կաթողիկէից:

*Այս Լուծմունքը կը յիշէ այն անանուն (հաւանօրէն Գէորգ) Դպիրը, որ կազմած է Ն. Լամբրոնացւոյ համառօտ վարքը, տաղ-մածառն եւ գրութեանց ցանկը (Տաշեան, Ցուցակ,* 639): *Նման գրութեան մը ակնարկութիւն կ'ընէ նաեւ Խաչատուր Սկեւռացի իր Ողբին մէջ.*

*Լացուք Թղթոց Կաթողիկէից*
*Եկէք ու լիք վայիս ձայնակից:*

*Նոյնպէս կ'ողբայ.*

*Եկ Առաքելոյդ Տարսոնեցի*
*Ու ա՛ռ ամփոփէ գրանքս որ լսեցի:*

*Այս տողերը կ՚ենթադրեն Կաթողիկէ եւ Պաւղոսեան Թղթոց բերանացի Լուծմունքը։*

*Ներսէս քերթողօրէն սրբագրած էր Կաթողիկէ Թղթոց խմբագիր Մեկնութիւնը, որուն վրայ պիտի խօսինք յետոյ։ Վասն Մեկնչաց աստուածային գրոց գրուածքիս մէջ կ՚ըսուի «Զկաթողիկէքն՝ Սարգիս վարդապետն, յետոյ այլքն համառօտաբար, նոյն եւ Ներսէս»։ Հոս նոյնպէս Ներսէսի սրբագրած թարգմանութիւնը կ՚ակնարկուի։*

4. Լուծմունք Կազմութեան գրոց Գր. Նիւսացւոյ։

*Այսպիսի աշխատութիւն մը Ն. Լամբրոնացւոյ գրչէն կը յիշուի Վենետիկի «Լուծմանց գրքի» մէջ, էջ 620, ուր կայ այս խորագրով գրուածքի մը սկզբնաւորութիւնը «Թուղթ մի բան ի սկզբանէ» (Համառօտ Ցուցակ Վենետիկի Մխիթ. Մատենադարանի ձեռագիրներու, անտիպ, զոր ունիմ տրամադրութեանս տակ. Հմմտ. նաեւ Սիսուան, 91)։*

*Ինձ ծանօթ են Կազմութեան գրոց այլեւայլ Լուծմունք, բայց անոնցմէ ոչ մէկը Ներսէս Լամբրոնացւոյ անունով։*

4ա. Գիրք Մարդակազմութեան. *կը յիշէ վերոյիշեալ անանուն Դպիրը (Տաշեան, Ցուցակ, էջ 639)։ Հ. Ալիշան, Սիսուան, 91, կը համարի թէ «Թերեւս» նոյն ըլլայ գրութիւնս Նիւսացւոյ Կազմութեան Լուծմանց հետ (Սիսուան, 91)։*

*Այլուստ անծանօթ՝ Ն. Լամբրոնացւոյ անունով։ Բայց ունի գոյութիւն Նիւսացւոյ աշխատութենէն հանուած ամէնուն դիւրահասկանալի լեզուով շարադրուած Մարդակազմութիւն մը որ կարող է Լամբրոնացւոյ գրչէն ելած ըլլալ։*

5. Մեկնութիւն ութ խորհրդոց ի խնդրոյ Ատոմայ ճգնաւորի։

*Կը յիշէ Զարբհանալեան, անդ,* 660։ *Թերեւս ասոր հետ նոյն ըլլայ, ինչ որ կը գրէ Ղազար Ջահկեցի, Դրախտ ցանկալի, էջ* 634. *Ն. Լամբրոնացի «արար եւ զՄեկնութիւն Եկեղեցական խորհրդոյ», որ նոյնպէս անծանօթ է ինձ, եթէ չէ Պատարագի Մեկնութիւնը։*

6. Թուղթ առ Յակոբ Ասորի։

*Կը յիշեն՝ Հ. Ղ. Ալիշան, Սիսուան,* 91. *եւ Զարբհանալեան, անդ,* 659։ *Անշուշտ աչքի առաջ ունեցած են Վենետիկի Ի. Ոսկեփորիկը, ուր յառաջ կը բերուի* «Սրբոյն Ներսէսի ի թղթոյն Յակոբայ վարդապետի Ասորւոց Մելիտենոյ մայրաքաղաքի Հայոց։ — *Հարցումն զոյլ քո առ իս*...։ վջ. *մի բնութիւն են մի կամք սակմք Փրկչին մերոյ, որ է օրհնեալ*...» (*այժմ Թ.* 259, *թղ.* 48*բ*—49*ա*, *Ցուցակ, Բ., էջ* 803)։ *Բայց դժուարին պիտի ըլլար Հ. Ալիշանին կռահել, որ հատուածս առնուած է Ներսէս Շնորհալւոյ առ Յակոբ Ասորի վարդապետ գրած պատասխանի-թուղթէն* (*հրատարակուած՝ Ընդհանրական Թուղթք Ս. Ներսիսի Շնորհալ-*

ւոյ, Երուսաղէմ 1871, էջ 230—240), որուն մասին գրած էր Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 405—406:

Յ. Քիւրտեան 16 նոյեմբեր 1947 թղթով կը հաղորդէր ինձ, թէ ձեռք բերած է ձեռագիր մը, որ «կը պարունակէ գրութիւն մը Ներսէս Տարսոնեցի եպիսկոպոսէն Յակոբ սարկի Մելիտենեցիի դաւանաբանական պարունակութեամբ նամակի ձեւով»: Նկատի առնելով որ այսպիսի թուղթ մը նաեւ Ալիշան եւ Զարբանալեան կ՚ընծայեն «Ներսէս Լամբրոնացւոյ», թէպէտ եւ նշանակած էի ծանօթագրութիւններուս մէջ «Թուի թէ Ն. Կլայեցւոյ թուղթն է առ Յակոբ սարկի», բայց եւ այնպէս գրեցի Պր. Քիւրտեանին, որ ուղարկէ ինձ այդ թուղթը հրատարակութեան համար. հետաքրքրական էր այն ինձի «Ներսէս Տարսոնացի եպիսկոպոսի» վերագրութեան համար: Յակոբ, կոչուած Դիոնեսիոս Բար-Սալիբի, վախճանած էր 1171ին, իսկ Ներսէս եպիսկոպոս օծուած 1175ին:

Յ. Քիւրտեան բարի եղաւ առաքել ինձ զայն իբրեւ յօդուած «Սրբոյն Ներսէսի Լամբրոնացւոյ Պատասխանի Թղթոյն Յակոբայ Բար-Սալիբի» խորագրով: Զարմացայ երբ կարդացի բնագրին վերնագիրը. «Սրբոյն Ներսէսի պատասխանի թղթոյն Յակոբայ վարդապետի...»: Չկայ հոն ոչ «Ներսէս Տարսոնեցի եպիսկոպոս» եւ ոչ ալ «Լամբրոնեցի»: Եւ որովհետեւ բնագիրը ամբողջութեամբ հանուած էր Ներսէս Շնորհալիի

Թուղթէն, պատշաճ չտեսայ հրատարակել զայն «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ։ Այս միջոցին կ՚անդրադառնայ Գր. Քիւրտեան, թէ «Սուրբն Ներսէս» Շնորհալին է, եւ կը փութայ հրատարակել նոյնը այս անգամ «Ներսէս Շնորհալիի մէկ անտիպ Թուղթը» վերնագրով, Հայաստանեայց Եկեղեցի պարբերագրին մէջ, 1950, էջ 103—113։

Լամբրոնացին տեղի տուած է Շնորհալւոյ։ Քիւրտեան լուսաւորուած է Հ. Ալիշանէն։ Բայց կը գրէ. «Չեմ գիտեր թէ Հ. Ալիշան ի՞նչ օրինակ ունեցած է իրեն համար այս Թուղթէն»։ Գտնուեցաւ բարի մարդ մը ցոյց տալու համար իրեն Ալիշանի գործածած օրինակը։

7. Պատասխանի Թղթոյն Տուտէորդւոյն եւ Զօրագետացւոց։

Հ. Աճառեան, Անձնանունների Բառարան, Դ., էջ 48 կը յիշէ այս Թուղթը իբրեւ ինքնակաց գրութիւն։ Վերնագիրս զետեղուած է ինչ ինչ ձեռագիրներու մէջ Լամբրոնացւոյ առ Լեւոն Թագաւոր Թուղթին սկիզբը։ Տես վերը Թ. 20։

8. Կանոն կաթողիկոսօրհնէից եւ եպիսկոպոսօրհնէից։

Զարբանալեան, անդ, 660։

Տես վարը՝ Լատին Ծիսարանի թարգմանութիւնը։

9. Ձեռնադրութեան կարգաց լրմունք:

*Սիսուան, 90: Ալիշան աչքի առաջ ունեցած է Անանուն կենսագրին տողերս. «Զարգարեաց զաստուածային Պատարագին եւ զՁեռնադրութեանցն եւ զամենայն խորհրդական գործառնութեանցն եկեղեցւոյ կատարմունս. եւ զթերին լիոյ թարգմանութեամբ» (Հայապատում, 422):*

10. Ժամագիրք, Մաշտոց:

*Հ. Ալիշան, Սիսուան, 91. «Գրեաց զԺամագրոց եւ զայլ ինչ Եկեղեցական աղօթից»: «Յայսմաւուրք ասեն՝ մեկնեաց եւ զՔարոզս եկեղեցւոյ եւ զԱղօթիցն», անդ, 90. Զարբհանալեան, անդ, 658:*

*Տեղիքս Կ. Արեւելցւոյ Յայսմաւուրքն ունի. «Մեկնեաց եւ զՔարոզս եկեղեցւոյ եւ զՊատարագամատոյցն գեղեցիկ եւ իմաստուն բանիւք»: Այս անգ Պատարագի Մեկնութեան մասին է խօսքը: Ժամագրքի մէջ չենք նշմարեր կէտ մը, որ Լամբրոնացւոյ ըլլայ: Բայց գիտենք որ ան «ուղղեաց զեօթն ժամս աղօթիցն, զտուրնջեանն եւ զգիշերոյ անխափան եւ անթերի կատարել ի մէջ եկեղեցւոյ» (Անանուն, 422):*

Մաշտոցի *կարգաւորութիւնը հին է. անոր յաւելուածներ կցուած են յընթացս դարերու: Յիշեցինք Ներսէսի Ջրհօրօրհնէքը. իր անուամբ ուրիշ մասեր ծանօթ չեն. բայց մօտ դատն, իր օրով իսկ, Հայ Ծիսարանին*

*մէջ փոխառութիւններ Լատին Ծիսարանէն, զոր թարգմանած էր։*

11. Տօնացոյց։

*Զարբանալեան*, 660. *«Տօնացոյց գրոց վերջին կարգաւորութիւնը»։ Կ՚ակնարկուի Կիրակոս Արեւելցւոյ տեղիքս. «Կարգեաց եւ յամենայն աւուր անուն զտօնն, յորում եւ պատահի, ըստ աւանդից սուրբ հարցն, որ ի ծուլութենէ եւ յանգիտութենէ խափանեալ էր»։ Այս տեղ խօսքը Յայսմաւուրքի մասին է, ուր տարւոյն մէն մի օր ունի յիշատակելի սուրբ մը։ Նոյնը կը հաստատէ Անանուն, էջ* 422*բ։ Ուշադրութեան արժանի է, որ ԺԳ. դարու վերջը եւ ԺԴ. դարու սկիզբը պատրաստուած Տօնացոյցները ճշդիւ կը նշանակեն Յայսմաւուրքի սուրբերու անունները, ամիսներու կարգով։ Կարելի է մտածել, որ այս սովորութիւնը սկսած ըլլայ Լամբրոնացւոյ օրով։*

12. Վարք Սրբոց։

*«Գրեաց... զՎարս եւ զՎկայաբանութիւնս Սրբոց». Ալիշան, Սիսուան*, 91*։ Ինծի ծանօթ չէ որ եւ է սուրբի վարք եւ վկայի վկայաբանութիւն, որ Լամբրոնացւոյ թարգմանութիւնն կամ հեղինակութիւնն ըլլայ, բայց Գրիգոր պապի գործէն, որուն վրայ պիտի խօսիմ։ Տես նաեւ Վարք Հարանցը։*

## Բ. ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

### Ա.

### 1. ԱՍՈՐԱՀՌՈՄԷԱԿԱՆ ՕՐԻՆԱԳԻՐՔ

ԱՒՐԷՆՔ ՅԱՂԹՈՂ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ԿՈՍՏԱՆԴԻՆԱ-ՆՈՍԻ, ԹԷՈԴՈՍԻ ԵՒ ԼԵՒՈՆԻ ԹԱԳԱՒՈՐԱՑ ՀՌՈՎ-ՄԱՅԵՑԻՈՑ։

ա. *Թիւք կանոնաց որքանութեան գրոյս Նոմոսի (Ա.—ՃԾ.)։*

*ա. Վասն ժառանգութեան։ բ. Վասն որ յանկարծակի մեռանին եւ ոչ գրեն կտակ..։* վջ. *ՃԽԹ. վասն որք օթին ի պանդոկի եւ կորուսանեն ինչ, թէ ո՞վ վճարէ։ ՃԾ. վասն դարձեալ ի նոյն խորհուրդ։*

բ. Աւրէնք յաղթող թագաւորացն Կոս-տանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի թագա-ւորաց Հռովմայեցւոց։

*Զաւրէնս բարի եւ գճշմարիտ տէր Աս-տուած ի սկզբանէ ետ մարդոյն, որպէս յա-ռաջին գիրս Արարածոցն եցոյց մեզ աւրէնս եւ գրեաց Մովսէս...։* վջ. *որում հաւատա-ցին երանեալ եւ փառաւորեալ թագաւորքն՝ սկսեալ ի մեծէն Կոստանդիանոսէ, որ եդ զայս աւրէնսս։*

*Ա. Վասն ճառանգութեան։ Այր որ եթէ մեռանի եւ ոչ գրէ կտակ...*

վջ. *ՃԾ. Իսկ եթէ թողու մարդ զգրաստ իւր ի պանդոկն...։ Բայց միայն երդուին տանեն զի չեն դիտող եւ ոչ պահող իրացն։*

Ձեռագիրք։ *Էջմիածին, Թ.* 488, 87*ա*—105*ա* (1295)։ 485, 170*բ*—214*բ* (*ԺԴ.*)։ 556,

73ա—139ա (ԺԳ.)։ 2593, 180ա (1303)։ 209, 20ա—42ա (ԺԷ.)։ 487, 4ա (1618)։ 795, 308բ (1618)։ 778, 292ա (1635)։ *Զմմառ*, *Քէչիչեան*, 226, 255ա—299բ (1240էն յառաջ)։ 202, 2ա (1639, *սկ. պակաս*)։ *Երուսաղէմ*, 366, 90ա—120 (ԺԳ.)։ 1183 (ԺԲ.)։ 182, 320ա (1890. *Ցուց*. Բ. 141)։ 57 (1768. *Ցուց*. Բ. 80)։ 849 (ԺԶ.)։ *Վիեննա*, 579, 410ա (1783)։ 581, 293ա (1663)։ 582, 71ա (ԺԹ. 1230*ին գրուած օրինակէ*)։ 887, 111ա—129բ (1625)։ *Լազ. ճեմ*. 128, 18ա։ *Երեւան*, 699, 36ա (ԺԹ.)։ *Օքսֆորդ*, 96, (ԺԷ. *Ցուց*. 212)։ *Բեռլին*, 56 (1739. *Ցուց*. 45)։ *Վենետիկ*, 1223, էջ 377 (ԺԴ.?)։ *Հալէպ*, Բ., 36, էջ 1—49 (1629. *Ցուց*. 102)։ *Փարիզ*, 177, էջ 140—168 (ԺԹ.)։ *Զնքուշ*, 37 (*Սրուանձտեանց*, *Թորոս Աղբար*, Բ., 473)։

Հրատարակութիւն. 1. Syrisch-römisches Rechtsbuch aus dem 5. Jahrhundert: Aus den ortentalischen Quellen herausgegeben, übersetzt und erläutert von Dr. Karl Georg Bruns und Dr. Eduard Sachau. Leipzig 1880. *Մասն Ա*. 95—141 *Հայ բնագիրը*. *Մասն Բ*. 115—150 *գերմ. թարգմանութիւնն Սախաուի*։ *Ի մասին հայերէն թարգմանութեան*, Բ., էջ 161—164 եւ 170—172։

2. *Քաղաքային օրէնք Ներսէսի Լամբրոնացւոյ ըստ Կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի թագաւորաց Հռոմայեցւոց*։ *Հրատարակեց Կ. Յ. Բասմաջեան*, *Փարիզ* 1907, էջ 9—41։

3. *Ասորական դատաստանագիրք. Ձեռագրերի համեմատութեամբ լոյս ընծայեց Արսէն Վարդ. Ղլտճեան, Էջմիածին* 1917. 8°, *էջք ժե* + 56:

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ

*Յամս քահանայապետութեան Հայոց Գրիգորի, որ երրորդ էր նախնեացն իւրոց ի Հռոմկլայն, յաջորդ աթոռոյն, ի թուին ՈԽԲ* (ա՛յսպէս), *ի ԺԸ.* (ա՛յսպէս) *ամի նորին հայրապետութեան, խնդիր եղեւ առ նոյն սրբազանն՝ ի քաղաքաց եւ ի գաւառաց բնակչաց՝ Քաղաքական աւրինացն. զի որք Հռոմայեցւոցն էին իշխանք ի քաղաքս եւ գաւառս՝ զգատ Հայաստանեայցս ոչ գտանէին, այլ զխնդրողն իրաւանց առ իւրեանց աւրէնս առաքէին. զի այս էր ի նախագլուխ Մելիքացն հրաման առ գաւառս քաղաքաց, յիւրեանց աւրինացն դատ թողուլ գնոսին: Եւ եկեալ ասիք յեկեղեցին՝ հարցանէին աւրէնս ի քահանայից եւ ի քահանայապետից. (եւ նոքա) ոչ ունէին գիրս՝ որով ընտրեսցեն զիրաւունս. զոր եւ այլոց ազգաց տեսանէին՝ քրիստոնէից եւ մըսլիմանաց. այսինքն՝ Հռոմայեցւոց, Հելլենացւոց, Ասորւոց, Եգիպտացւոց, Արաբացւոց, Պարսից, եւ այժմու իշխողացս Թուրքից:*

*Ի խնդիր եկին ապա առ Հայրապետն ի Հայաստանեայց՝ արթունք կղերիկոսք եւ աշխարհականք, խեթկեալք յայլոց ազգաց եւ նախանձեալք գրարւոքն: Եւ խուզեալ ընդ*

նա (նմա՞) մեր յարկեղս գրոց կաթուղիկոսարանին՝ ոչ զատ Աւրէնս, բայց միայն զկանոնականս որ ի սուրբ Հարցն ժողովոց էր գրեալ, եւ որ ի նոյն յարեցաւ ի նոցանէ կանոնս զգուշաւորս Եկեղեցւոյ: Իսկ Քաղաքի Աւրէնս ոչ գտաւ ի մէջ Հայոց, ո՛չ յեկեղեցիս եւ ոչ առ իշխանս: Եւ կարի փչացեալ հայրապետն՝ խնդիր առնէր առ այլ ազգս. եւ պատահեալ անդ յԱսորւոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց Տեառնս զի գոյր առ ինքն այս Համառատ քաղաքական Աւրինագրութիւնս: Եւ հրաման ետեալ ինձ տառապեալ իր ձեռնասուն որդւոյ Ներսէսի, յեղաշրջեցաւ ի Հայս, նմին յիշատակ բարի եւ զկնի եկելոցդ ուղղութիւն ընթացից:

Ձեռագրին մէջ Յիշատակարանին կից կայ երկրորդ Յիշատակարան մ'ալ նոյն Ներսէսէն. «Յետ որոյ տայս...», որ գրուած է ուշ ժամանակ, 1197ին. տես վարը, Թ. 2, 6, 2:

Այս կարեւոր Յիշատակարանը առաջին անգամ հրատարակուեցաւ Կ. Պոլսոյ Հայաստան շաբաթաթերթին մէջ, 1847 Թ. 63 «Քանի մը ձեռագրաց վրայ տեղեկութիւն» վերնագրի տակ: Խմբագրութեան ուղարկուած է ան Մարաշէն, հանուած Մխիթար Գոշի Դատաստանագրքէն, որ պահուած է տեղւոյն վանքին մէջ. առանց որ եւ է տեղեկութեան ձեռագրին մասին: Խմբագիրը, հաւանօրէն Յովհ. Զամուռճեան–Տէրոյենց, իր կողմէ առած է քանի մը շփոթ խորհրդա-

ծութիւններ. որոնք առիթ ընծայեցին Հ. Ղ. Ալիշանի անդրադառնալու խնդրոյս յօդուածովս. Մարաշու վանքին Դատաստանագիրքը, Բազմավէպ 1848, էջ 40—44:

Հ. Ալիշան ուշադիր ըրաւ որ ձեռագիրը երեք ուրոյն գրութիւններ կը պարունակէ. Լամբրոնացւոյ թարգմանած Օրինագիրքը եւ Քաղաքական Օրէնքները: Յիշատակարանին մէկ մասը կը պատկանի Մ. Գոշի, Բ. եւ Գ. մասերը Ն. Լամբրոնացւոյ: Եւ որովհետեւ Դատաստանագրքի յիշատակարանի օրինակութեան մէջ կան վրիպակներ, «անոր համար մենք ալ պէտք է քիչ մըն ալ Լամբրոնացւոյն երկու յիշատակարաններուն վրայ տարակուսինք, որովհետեւ այս առջի անգամն է, որ կը կարդանք զանոնք եւ անանկ օրինակի մէջ» (էջ 43): Յատկապէս ուշադրութիւն կը հրաւիրէր «ի թուին ՈԽԲ ի յութեւտասաներորդի ամի Նորին Հայրապետութեան» տեղիքին վրայ: Լամբրոնացւոյ յիշատակարաններն են. «Զայս ծաղկաքաղ Օրինագրութիւնքն» եւ «Յամս քահանայապետութեան Հայոց Գրիգորի» եւ «Յետ որոյ ապա»: Առաջինն եւ երրորդը նկատի պիտի առնենք յետոյ. երկրորդն է, որ հոս մեր քննութեան առարկան պիտի ըլլայ:

Երեք Յիշատակարաններն ալ ծանօթ են մեզի այս միակ, այժմ անհետացած ձեռագրէն: Անկէ արտագրութիւն կ'երեւայ Վենետիկի Թ. 890, էջ 210—211. «գրչագիրս գաղափարուած է յետնագոյն դարուն բայց

ընտիր օրինակէ մը» (Բազմավէպ, 1935, էջ 186): Ճշգիւ նոյն դասաւորութեամբ ինչպէս էր Մարաշի ձեռագիրը (Հայաստան), մի եւ նոյն թուականներով եւ այլն: Նոյնը հրատարակուած է Զարբհանալեան, Մատենադարան, էջ 754—755. Հայապատում, Բ., էջ 432. Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., 599—601:

Թարգմանիչը կը շեշտէ, թէ Օրինագիրքին թարգմանութիւնը կատարուած է երկու անգամէն. նախ Օրէնք թագաւորաց ասորի եւ յետ որոյ ապա Մովսիսական, Լեւոնի եւ Կոստանդեայ եւ Զինուորական օրէնքները յոյն բնագիրներէ: Յունարէնէ թարգմանութիւնք ի գլուխ ելած են «ՈԽԵ» տարւոյն «Լեւոն թագաւորի» օրով: Որովհետեւ Լեւոն թագը ընդունեցաւ «ՈԽԷ» տարւոյն, հարկ է «ՈԽԵ» (1196) կարդալ ՈԽԷ (1198):

Սրբագրութեան կարօտ է երկրորդ Յիշատակարանն ալ. «Յամս քահանայապետութեան Հայոց Գրիգորի, որ երրորդ էր նախնեացն իւրոց ի Հռոմկլայն յաջորդ աթոռոյն, ի թուին ՈԽԲ. (1193). ի ԺԲ. ամի նորին հայրապետութեան»: Այս տեղիքը տարակուսական գտած էր Հ. Ալիշան: Գրիգոր Դ. Տղայ կաթողիկոս գահ բարձրացած էր 1173, սեպտ. 9ին իբրեւ երրորդ յաջորդ Հռոմկլայի աթոռին վրայ. եւ վախճանած 1193, յուլիսին ի Տարսոն, իր հայրապետութեան Ի. տարւոյն: Ուստի ԺԲ. տարին էր ՈԽ (1191):

*Ես կ՚առաջարկեմ «ՈԽԲ» կարդալ «ՈԻԲ». «Ի ԺԸ. ամի» կամ «յԱ. ամի» եւ կամ «յԺԸ. աւուր». այն է 27 սեպտ. 1173:*

*Այս միջոցին պէտք է պատահած ըլլայ ինչ որ կը պատմուի Յիշատակարանիս յաջորդ տողերու մէջ. «Եկին առ Հայրապետն ի Հայաստանեայց արթունք կղերիկոսք եւ աշխարհականք» ի խնդիր Հայոց «Քաղաքական օրինաց» մատեանի: Ներսէս, որ Կաթողիկոսէն Հռոմկլայ կանչուած էր, անոր հետ մի առ մի աչքէ կ՚անցնէ Կաթողիկոսարանի Գրադարանին մէջ պահուած գիրքերը. բայց «ոչ գտաք, կ՚ըսէ, Օրէնս». վասն զի «Քաղաքի Օրէնս ոչ գտաւ ի մէջ Հայոց, ո՛չ յեկեղեցիս եւ ո՛չ առ իշխանս»: Կաթողիկոսը «խնդիր առնէր առ այլ ազգս. եւ պատահեալ անդ յԱսորւոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց Տեառնս, զի գոյր առ ինքն այս (Ասորա-Հռոմէական) Համառօտ Քաղաքական Օրինագրութիւնս: Եւ հրաման տուեալ ինձ տառապեալ իւր ձեռնասուն որդւոյ Ներսէսի (քահանայի)՝ յեղաշրջեցաւ ի հայս»:*

*Ո՞վ է այդ «Թէոդոս» ասորի քահանան «կիրթն յիմաստութեան»: Մեզի ծանօթ է այս շրջանէն Թէոդորոս Բար Վահրուն Մելիտենեցի (Մալաթիացի) քահանան, աշակերտն եւ պաշտօնեայն (սինկելոս) Միքայէլ յակոբիկ Ասորւոց պատրիարքի:*

*Կը պատմէ Միքայէլ Յակոբիկ Ասորիներու պատրիարքը իր Ժամանակագրութեան*

մէջ (Գ. 335), թէ Թէորիանոս երբ երկրորդ անգամ Հռոմկլայ ուղարկուած էր Մանուէլ կայսեր կողմէ Միութեան խնդրոց համար, խնդրած էր իրմէ թուղթով մը ժամադրութիւն. բայց ինքը խոյս տալով անոր հետ տեսակցութենէ, ղրկած էր Հռոմկլայ իր աշակերտն ու պաշտօնեան (սինկելոսն) Թէոդորոս Բար Վահբուն, որ հմուտ մըն էր իմաստասիրական ուսմանց: Սա ներկայ գտնուեցաւ Թէորիանոսի եւ Ներսէս Շնորհալւոյ մէջ տեղի ունեցած վիճաբանութեանց իբրեւ դիտող մը (1172): Ոչ Թէորիանոս եւ ոչ Ներսէս Լամբրոնացի յիշած են իր անունը: Բայց Թէորիանոսի Հարցաքննութեանց վերջը կը յիշուի այն օրինակին մէջ, թէ Թէոդորոսի եւ Թէորիանոսի միջեւ բանակցութիւն եղած է Քեսուն (Migne, Patr. gr. 133, էջ 271—298. հմմտ. Ալիշան, Շնորհալի, 432):

Ներսէս Շնորհալի վախճանեցաւ 1173, օգոստոս 13 (15)ին: Աթոռին վրայ յաջորդ. ընտրուեցաւ Գրիգոր Դ. Տղայ կաթողիկոս (1173, սեպտ. 3ին): Օծութեան ներկայ էին Քեսունի Գրիգոր եւ Ուռհայի Բարսեղ ասորի եպիսկոպոսները: Երբ յանձնեց կաթողիկոսը իր ընտրութիւնը գրով՝ Միքայէլ Պատրիարքին, ան ալ պատասխանեց մաղթանքներով եւ ընծաներով: Պատրիարքին պատգամաւորներու անունները չեն յիշատակուած. կրնանք սակայն ենթադրել, թէ անոնցմէ մէկը եղած ըլլայ Թէոդորոս:

Պարագայ մ'եւս:

*Միաբանութեան խնդրոյ համար նոր ժողով մը գումարուեցաւ Հռոմկլայ* 1177*ին: Ներկայ էին* 32 *Հայ եպիսկոպոսներ. «էր* (!) *ընդ նոսին եւ յԵպիսկոպոսապետէն Ասորւոց* (*Միքայէլէն*) *վարդապետք եւ իմաստուն այրք»* (*Ն. Լամբրոնացի, Պատճառ, էջ* 180)*: Այս տեղիքը Թերեւս նախնաբար գրուած ըլլայ «էր ընդ նոսին եւ ... <Թէոդորոս> վարդապետ եւ իմաստուն այր»: Յամենայն դէպս եթէ ներկայ էին ժողովին Ասորիներ, անոնցմէ մէկը ըլլալու էր Թէոդորոս իբրեւ հայերէնագէտ:*

*Յիշատակարանին «ՈԽԲ եւ ի ԺԸ. ամի» ուղղելով ՈԻԲ. յԱ. ամի կը ստանանք* 1173/4 *տարին. այս շրջանին Ներսէս Լամբրոնացի իբրեւ աբեղայ կը գտնուէր Հռոմկլայ «ի վարժումն իմաստից»: Իսկ եթէ «ՈԻԶ* (1177) *կարդանք, հարկ պիտի ըլլայ «ԺԸ» ենթադրել նախնաբար՝ «ի Ե. ամի», որ դժուար է:*

*Աւելի ուշ շրջան փոխադրել Թոյլ չի տար Թէոդորոս Բար Վահբունի կենսագրութիւնը. վասն զի անիկա* 1179/80*էն մինչեւ* 1193 *տարիներուն, երբ իր կուսակիցներէն ընդդէմ Միքայէլ պատրիարքի հակաթոռ պատրիարք հռչակուեցաւ, կրեց* Յովհաննէս *անունը: Եւ որովհետեւ չկրցաւ օրինաւոր պատրիարքին* (*Միքայէլի*) *աթոռը գրաւել, հարկադրուեցաւ հեռանալ երկրէն. փորձեց նախ Երուսաղէմ հաստատուիլ. բայց ապա գնաց Հռոմկլայ, ուր գտաւ Գրիգորիս Դ. կաթողիկոսին ասպնջականութիւնը: Կաթողիկոսը*

ներկայացուց գիրքը ապա Լեւոն իշխանին, որ ճանչցաւ գիրքը պատրիարք Կիլիկեան Հայաստանի յակոբիկ Ասորիներու: Վախճանեցաւ 1193ին: Կը յիշէ գիրքը Ներսէս Լամբրոնացի իր առ Լեւոն թղթին մէջ. «Պատրիարքն Ասորւոց, որոյ գրերն առ մեզ են եւ բարի վկայութիւնն մեր ազգասէութեանս մեծահռչակ» (էջ 226): Այդ գիրերէն մին, գրուած «առ եպիսկոպոսն Տարսոնի» ասորերէն լեզուով, հրատարակեց J. Gerber, Zwei Briefe Barwahbuns, Halle, 1911, էջ 11—67: Bar Vahbunի մասին հմմտ. Chronique de Michel le Syrien, t. III, Paris 1905, 382—388. A. Baumstark, Geschichte der syrischen Literatur, Bonn 1922, S. 300—301:

Այս Թէոդորոսի համար կ՚րսուի թէ հմուտ էր յոյն, հայ եւ արաբ լեզուներու ինչպէս իր մայրենի ասորի բարբառին:

Լամբրոնացի ասորի քահանան «Թէոդոս» կ՚անուանէ. ուրիշ տեղ Կ. Պոլսոյ «Թէոդոսիոս» պատրիարքը յորջորջած է «Թէոդոր». անուններու նմանահնչիւնը պատճառած է կա՛մ հեղինակին եւ կա՛մ իր գրիչներուն չփոթել անունները:

Արդ ընդունելով, թէ Յիշատակարանի Թէոդորոսն նոյն է Թէոդորոս Բար Վահբուն քահանայի հետ, եւ ան է որ տրամադրեց Կաթողիկոսին ասորերէն Օրինագիրքը, դիւրին պիտի ըլլայ ըմբռնել իրաց առած ընթացքը. այսինքն Կաթողիկոսը յանձնարարեց Ներսէսի, որ հոգայ անոր թարգմանութիւնը:

Ներսէս եւ Թէոդորոս լծուեցան գործի. Թէոդորոս սուրբ բնագիրը ձեռքին թելադրեց օրէնքները հայերէն լեզուով եւ Ներսէս գրի առաւ անսայթաք հայերէնով: Այսպէս «յեղաշրջեցաւ այն ի հայս»: Չ՚ըսեր Ներսէս «յեղաշրջեցի», այլ «յեղաշրջեցաւ» աշխատակցութեամբ երկուքի: Նման եղանակով թարգմանութեան ապա նաեւ ուրիշ երկեր յունարէնէ: Ինչպէս վերջիններս ենթարկեց Ներսէս քերթողօրէն սրբագրութեան, նոյնպէս ընթացած պէտք է ըլլայ նաեւ այս դէպքին: Կան Օրինագիրքէս օրինակներ, որոնք ռամկախառն հայերէնով են, եւ կան օրինակներ ալ որոնք գրաբար բարբառով են:

Այս այսպէս կոչուած ասորահռոմէական Օրինագիրքը կը ներկայացնէ ժողովածու մը օրինական որոշումներու, որ կազմուած է Ասորիքի եկեղեցականներու դատաստանական խորհուրդին համար: Ճիշդ չէ թէ ան միայն երեք քրիստոնեայ Կայսրներու քաղաքական օրէնքները կը բովանդակէ, այսինքն Օրէնք յաղթող Թագաւորաց Կոստանդիանոսի, Թէոդոսի (Ա.) եւ Լեւոնի: Յամենայն դէպս Լեւոնի (457—474) թագաւորութեան շրջանէն ոչ յառաջ, բայց մօտաւորապէս 468էն ետքն է որ թարգմանուած է ասորերէնի: Այս սուրբ օրինակէն թարգմանուած է հայերէնը եւ անկէ ալ վրացերէնը: Ասորերէնէն յառաջացած են նաեւ արաբերէն պէսպէս խմբագրութիւնները: Ունի ասորերէնն ալ իր կարգին 4 զանազան խմբագրու-

թիւններ· լաւագոյն օրինակը կը համարուի այն ասորի ձեռագիրը, որմէ թարգմանուած է հայերէնը, այժմ կորսուած:

Հայերէնը թարգմանուած է ոչ 1193ին, այլ, ինչպէս տեսանք, 1173, սեպտեմբերի վերջերը: Թարգմանուած է Թէոդորոս ասորի քահանայի օրինակէն եւ անոր թելադրութեամբ Ներսէս քահանայէն, հրամանով Գրիգորիս Դ. կաթողիկոսի:

Թարգմանութիւնը կատարուած է ասորերէնէ, ինչպէս հաստատած է Սախաու, ուստի ոչ յունարէնէ, ինչպէս կը համարի Բասմաջեան, եւ ոչ ալ արաբերէնէ, ինչպէս կ՚ենթադրէ Ղլտճեան:

Կանոններու թիւն է ըստ ոմանց ՃԾԶ, ըստ այլոց ՃԾԱ եւ ՃԾ. բայց սկսուածքն եւ վերջաւորութիւնը ամէնուն քով նոյն:

Թարգմանութիւնս կատարուած ըլլալով 1173ին, ան կարող էր ծանօթ եղած ըլլալ Հայոց Դատաստանագրոց հեղինակին 1184ին:

Դատաստանագիրքի քննիչները հաստատած են, որ Օրինագիրքէս փոխառութիւններ կան Դատաստանագիրքին մէջ:

Գրականութիւն: 1. H. Petermann, Über die armenische Übersetzung der Gesetze Constantins: Monatsberichte der K. Akad. der Wissenschaften zu Berlin 1867, S. 419—424.

2. J. Kohler, Altsyrisches und armenisches Recht: Zeitschrift für vergl. Rechtswissenschaft 19 (1906) 103—130.

## 2. ՀԱՄԱՌՕՏ ԺՈՂՈՎՈՒՄՆ ՕՐԻՆԱՑ ՎԵՐՍՏԻՆ

*Հետեւեալ Օրինագիրքը անծանօթ է իր ծագումով։ Ց. Կարստ կը համարի յունահռոմէական օրինագիրք մը, որ հաւանօրէն ասորական միջնորդութեամբ հասած է Հայոց։ «Անոր նոյնացումը չէ յաջողած մինչեւ այսօր» (էջ 29)։*

*Պէտք է քննել, թէ արդեօք Ասորահռոմէական Օրինագրքին հետ միաժամանա՞կ թարգմանուեցաւ։*

### ՀԱՄԱՌՕՏ ԺՈՂՈՎՈՒՄՆ ՕՐԻՆԱՑ ՎԵՐՍՏԻՆ

Ա. *Իւրոյ դատաւորին եւ իշխողի քաղաքին չէ պարտ գնալ արտաքոյ յայլ աշխարհ իրաւունս առնել...։*

Վջ. *Ձե. Աղջիկ, զոր ձեռնտու են եւ մեռանի խօսնայրն... ամէնն մնայ կնոջն։*

Ձեռագիրք։ *Էջմիածին* 488, 105*ա*։ 778, 324*բ*։ 795, 332*ա*։ 209, 42*բ*։ 485, 215*ա*։ 487, 4*ա*։ 2593, 219*բ*։ *Զմմառ*, 202, 26*բ*։ 226, 299*բ*։ *Երուսաղէմ*, 182, 161*բ* (*Ցուց. Բ.* 142)։ 805, 205*ա*։ 366 (*պկս.*)։ 1183։ *Վիեննա*, 579, 437*բ*։ 581, 314*ա*։ 582, 97*ա*։ *Լազ. ճեմ.* 128, 32*ա*։ *Պարիս*, 177, *էջ* 169)։ *Վենետիկ*, *Թ.* 1229, *էջ* 571։

Հրատ.։ *Բասմաջեան*, *Բանասէր*, 1907, *էջ* 14—18։

2.

## ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՕՐԻՆԱԴՐՈՒԹԻՒՆՔ

*Հայկական Կիլիկիա մինչեւ 1180 Բիւզանդական Կայսրութեան սահմանին մէջ էր։ Կ՚արժէին հոն բիւզանդական օրէնքները։*

*Այդ օրէնքները ի զօրու մնացին հոն նաեւ այնուհետով, որովհետեւ նոր տէրերը չունէին իրենց սեփական օրէնքներ։*

*Շատ ուշ խորհեցաւ Լեւոն Ա. Թագաւոր Անտիոքի Ասիզքը արժեցնել իր իշխանութեան սահմաններու մէջ։ Միաժամանակ կարեւոր տեսաւ Սմբատ Գունդստաբլ Կիլիկեցւոց համար պատրաստել ուրոյն Դատաստանագիրք մը հետեւելով Մխիթար Գոշի սեպհականուած Դատաստանագիրքին։*

*Անոնցմէ յառաջ զգացած էր Տարսոնի արքեպիսկոպոսը քաղաքական Օրինագիրքի մը պէտքը։ Ինչպէս տեսանք վերագոյն, թարգմանած էր ան 1173ին ասորի բնագրէ Ասորահռոմէական Օրինագիրքը վերին Հայաստանի համար։ Անկէ քան տարի յետոյ կը ձեռնարկէ թարգմանել Բիւզանդական Օրինադրութիւնը, ձեռագրէ մը, զոր «Ծերացեալ» կ՚անուանէ, այս ինքն հնագիր օրինակ. յամենայն դէպս 800էն ետքը գրուած, բայց նախորդ շրջանի օրինադրութիւնքը պարունակող, որոնք Զ—Թ. դարերուն կը պատկանին, խմբագրուած յոյն լեզուով, ռամկախառն տարազի տակ։ Այս անկման շրջանի բիւզանդական օրէնսդրութիւնը տա–*

*կաւին չէ ուսումնասիրուած. այս պատճառով ալ չենք կրնար ցոյց տալ հայ թարգմանութեան հին ծառայած բնագիրներու մերձաւոր օրինակներ։ Այս կէտի մէջ նկատի առնելու է եւ այն պարագան, որ թարգմանիչը նպատակ չէ ունեցած ամբողջական բնագիրներ ներկայացնել, այլ բաւականացած է «ծայրաքաղ» համառօտութեամբ։*

*Այս Օրինագրութիւնք այլ եւ այլ դասաւորութեամբ ներկայացուած են հայ ձեռագիրներու մէջ, որոնք մեծաւ մասամբ ուշ ժամանակէ են, գտնեցուած Հայոց Դատաստանագիրքին վերջը. հաղուագիւտ են ինքնակաց օրինակներ, հին թուականներով։ Այսպիսիներէն մէկն է Վենետիկի Թ. 1223, գրուած պարոն Օշինի համար, հաւանօրէն ԺԳ. դարու վերջերը։*

1. ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՌՕՏ ՅԱՒՐԻՆԱՑՆ ՔԱՂԱՔԱԿԱՆԱՑ ՂԵՒՈՆԻ ԵՒ ԿՈՍՏԱՆԴԵԱՑ ԻՄԱՍՏՈՒՆ ԵՒ ԲԱՐԵՊԱՇՏ ԹԱԳԱՒՈՐԱՑ. ԶՈՐՈՑ ԵՒ ՄԵԾՆ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ՆՈՐՈԳԵԱՑ ԶԿԱՐԳՆ ՈՒՂՂԵԱԼ Ի ԲԱՐԵՊԱՇՏՈՒԹԻՒՆ։

ա. Համառաւտ ընտրութիւն ի Քաղաքական աւրինաց Թէոդոսի, Յուստինիանոսի, Ղեւոնի, Կոստանդիանոսի բարեպաշտ թագաւորաց։

Յառաջաբան Քաղաքական Աւրինադրութեանն։

*Տէր եւ արարիչ Աստուածն մեր, որ ստեղծ զմարդն ի պատիւ անձնիշխանութեան,*

*օրէնս եա նմա...: Վջ. բարեխօս Սակլի-տոսի հրամայեցաք նշանագրել եւ ընդաւրի-նակել յամենայն դատաստանացն գլխոց. զի բարի վարձս ընկալցի...:*

*Այս Յառաջաբանս իր խորագրով հան-դերձ զետեղուած է Յաղթող Թագաւորաց Օրէնքէն յառաջ եւ կը գտնուի ինչ ինչ ձե-ռագիրներու մէջ միայն՝ էջմ.* 488 : 778 : 795 : *Եղմ.* 157 : 849 : *Զնքուշ*, 37 : *Զմմառ*, 202 (*ակ. պկս.*): *Կը պատկանի, ըստ յայնին, այստեղ, ինչպէս ունի Վենետիկի Թ.* 1223, *էջ* 30 :

բ. Ամենիմաստ թագաւորացն Հռով-մայեցւոց աւրինադրութիւն: *Տիտղոս Ա. գլուխս ունի Դ.:*

*Ցանկ Ա.—ժԹ. տիտղոսներու. «ա. վասն հաստատութեան ամուսնացելոցն եւ արձակ-ման...»:* Վջ. *ժԹ. ժբ. վասն որք պղծեն զկրօնաւոր կանայս:*

գ. Ընտրութիւն համառօտ յԱւրինացն քաղաքականաց Լեւոնի եւ Կոստանդեայ իմաստուն եւ բարեպաշտ թագաւորաց. զո-րոյ եւ մեծն Յուստիանոս նորոգեաց զկարգն ուղղեալ ի բարեպաշտութիւն:

*Տիտղոսն Ա. գլուխ ա. բ. գ. դ.: Ա. Կա-նոնն վասն հաստատութեան եւ արձակման: ա. Հաստատեսցի ամուսնութիւն քրիստո-նէից այսպէս. Եթէ ի տղայական հասակէն..:*

կզ. (ԺԹ. տիտղոս) Ժր. Եթէ ոք յափշտակէ... եւ ինքն իւրով մասամբն կացցէ ի վանսն յապաշխարութիւն:

Ձեռագիրք: *Էջմիածին*, 488, 107ա: 778, 330բ: 795, 335ա: 556, 1ա (ԺԳ.): 209, 45ա (ԺԷ.): *Զմմառ*, 202, 52բ: *Վիեննա*, 579, 446ա: 581, 319բ: *Օքսֆորդ*, 96: *Վենետիկ*, 223, էջ 30—144: *Երուսաղէմ*, 182, 332ա:

գ. Յաւելուած:

*ԺԹ. Ժր. ըստ ցանկին կ՚աւարտի այս տեղ: Ձեռագիրներէն ոմանք ունին իբրեւ շարունակութիւն.*

*ԺԳ. Վասն արդարութեան Օրինացն յԱ. եւ յԲ. Տիպոսէն եւ յառաջին Գրոցն:*

*Արդարութիւն է հաստատուն եւ սեփհական խոկումն...:*

*ԺԴ. Վասն արդարութեան աստուածայնոյն եւ մարդկայնոյն:*

*Ինչ որ աստուածային արդարութիւն է, ոչ է մարդկային...*

*ԺԵ. Վասն բնութեան օրինաց հեթանոսաց. Քաղաքականաց յԱ. Տիպոսէն եւ յԲ. Գրոց հրամանացն:*

*Օրէնքն բաժանին ի քաղաքս եւ յաւանս քաղաքաց...*

կզ. *զոր պատրաստեաց Աստուած պահողացն զօրէնսն:*

*Վենետիկի Թ.* 1223, *անի Ա—Զ:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, 556, 73*ա*: *Վիեննա*, 589, 474*բ*—476*ա*: *Մարաշի օրինակը*: *Վենետիկ* 1223:

Հրատ.: *Հայաստան* 1847, *Թ.* 63: *Համմ. Բազմավէպ*, 1848, *էջ* 42:

*Լեւոն Գ. եւ Կոստանդին Զ. Իսաւրացի կայսրների* 740*ին հրատարակած* Ἐκλογὴ τῶν νόμων ἐν συντόμῳ γενομένη ἀπὸ τῶν Ἰνστιτούτων ... τοῦ μεγάλου Ἰουστινιανοῦ διατάξεων καὶ ἐπιδιόρθωσις εἰς τὸ φιλανθρωπότερον ***տպագրութեամբ տուած են*** K. E. Zachariae von Lingenthal, Collectio librorum iuris Graeco-Romani ineditorum, Leipzig, 1852. *Նոր հրատ.* A. G. Monferratus, Athen 1889: *Համմ.* Karst, 28: *Ամատունի*, 182—183.

2. ԱՒՐԻՆԱԳՐՈՒԹԻՒՆ ՅՈՒՆԱՑ ԹԱԳԱՒՈՐԱՑ, ՄԵԾԻ ԿՈՍՏԱՆԴԵԱՅ:

*Վասն զգուշանալոյ երդմանց ըստ պատուական Տեառն հրամանին: — Բարութեանց [Տեառն] պարգեւող եւ պատճառ եւ տէր զամենեցուն Աստուածն հաւատամք...:*

*Այս եւ յաջորդ հատուածները ձեռագիրներու մեծ մասը զետեղած է Թ.* 1, *ԺԹ. տիտղոսի կանոններու մէջ իբրեւ ը. եւ Թ. գլուխներ. բայց Վենետիկի Թ.* 1223 *ունի անջատ: Իրենէ Կայսրուհին* 797—802:

*Յոյն բնագիրն՝* J. Zepos, Jus graeco-romanum, I. 45—49. Nov. 27.

Ձեռագիրք. *Վենետիկ* 1223, *էջ* 347—360: *Տես վերը Թ.* 1:

### 3. ՑԱՐԻՆԱՑ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ

*Գրուի ԺԲ. վասն պատուերց Թագաւորաց եւ իշխանաց զԿանոնս եկեղեցւոյ եւ որ ի նոսա զՍահմանադրութիւնն: — Զկանոնս որ ի տիեզերական ժողովս աստուածասէր եպիսկոպոսաց գրեալ...:*

***Առնուած են Յուստինիանու Օրինագրքէն:***

Ձեռագիրք. *Վենետիկ*, 1223, *էջ* 361—376: ***Տես Թ.*** 1:

### 4. ՎԱՍՆ ԱՍՏԻՃԱՆԱՑ ԱԶԳԱԿԱՆՈՒԹԵԱՆ. ՅԳ. ԳՐՈՑՆ. ՏԻՏՂՈՍ Գ.

*Ազգականութիւնն ծննդականութեան անուն է. եւ բաժանի յերիս կարգս. յարամ հարքն, այսինքն որ զմեզ ծնան. եւ որք ի մէնջ եղեն... (ծննդագրութեամբ):*

Ձեռագիրք. *Էջմիածին*, 488, 128*բ*—130*ա* (1295): 795, 366*ա*: 1495, 7*ա* (1684): 2635, 208*ա* (1635): *Վենետիկ*, 265, 482բ—484*բ* (1317. *Ցուց. Բ.* 857—858): *Երուսաղէմ*, 182, 161*բ*: *Վատիկան*, 3, 315*բ*:

Prochiron auctum*ի է. սիրացանէն քաղուածք մը, որ ըստ բովանդակութեան կը մօտենայ* Monferratus*ի հրատարակած* Ecloga*ի է. յաւելուածին. հմմտ.* Karst, 79—80:

### 5. ՎԱՍՆ ԶԻՆՈՒՈՐԱՑ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

ա. ***Յանկ է վասն զինուորաց սահմանադրութեան. անի գլուխ ԾԶ:***

բ. Սահմանադրութիւն զինուորութեան

հաստատութեան եւ տիրակութեան. ի Քաղաքական օրինացն կարգէ:

*Ա. Որ ոք համարձակի վասն իւրոյ իշխանին զինչ եւ իցէ պատճառաւ առաջի այլ մեծապատիւ իշխանի ի դատաստան ըմբռնել...:*

*ԾԶ. Զինուորն ինչ զոր գողանայ... եւ ոչ կացցէ ի կարգ իւր:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, 488, 125*բ*: 778, 361*ա*: 795, 361*ա*: 209, 45*ա*: *Երուսաղէմ*, 182, 168*ա*: *Զմմառ*, 202, 55*բ*: *Վիեննա*, 579, 477*բ*:

Հրատ.: *Կ. Յ. Բասմաջեան, Զինուորական օրէնք Ներսէսի Լամբրոնացւոյ, Բանասէր*, 1902, *էջ* 321—328:

*Յոյն բնագիրը* περὶ στρατιωτικῶν ἐπιτιμίων *հրատարակեց* Z. von Lingenthal: Byzantinische Zeitschrift 3 (1894) 450—453, *Ինչպէս նկատած է* H. Goussen: Theologische Revue, 3, 1904), *Թ*. 9, *էջ* 259/60, *հայ բնագիրը ի սկզբան համընթաց կ'երթայ յոյնին հետ, բայց ապա կը շեղի. զարմանալի չէ այս, որովհետեւ հայ 57 կանոններու դիմաց յոյնը* 41 *միայն ունի: Միւս կողմէ* von Lingenthal*ի հրատարակութիւնը ձեռագիրներու բաղդատութեամբ չէ եղած: Լամբրոնացին իր ձեռքին տակ ունեցած էր շատ հին յունարէն ձեռագիր մը: Կ'երեւայ թէ իրմէ այս օրէնքները ներմուծուած են. որով եղած է «թարգմանիչ եւ օրինագրիչ»:*

## 6. ԳԼՈՒԽՔ ԸՆՏՐՈՒԹԵԱՄԲ ԺՈՂՈՎԵԱԼ Ի ՄՈՎՍԻՍԱԿԱՆ ՕՐԻՆԱՑ

ա. *Յանկ Ա.—Կէ. գլխոց։*

բ. *Գլուխք ընտրութեամբ ի Մովսիսական օրինացն։*

*Ա. Վասն մեղաց (այլք՝ խրատանց) եւ արդարութեան։ — Զհամբաւ սուտ մի ընդունիցիս...։ Ես եմ տէր Աստուած քո...*

Կէ. *եւ դիցես առաջի Տեառն Աստուծոյ քում։ — Կատարեցաւ օրէնքս Տեառն Աստուծոյ որ առ Մովսէս։*

*Քաղուածք յԵլից, յԲ. Օրինաց եւ ի Ղեւտականէ։*

Ձեռագիրք: *Էջմիածին*, 448, 77*ա*—86*բ* (1295)։ 778, 368*ա*։ 795, 296*բ*։ 209, 74*բ*։ *Զմմառ*, 202, 62*ա*։

*Կան ձեռագիրներ, որոնք կը շեղին վերագոյնէն.*

Օրէնք աստուածադիրք ի ձեռն Մովսէսի։

*Յելից գրոց. Ես եմ Տէր Աստուած քո... (Ա.—ԻԵ.* կէ. *«Եթէ գողասցի ոք արջառ կամ ոչխար... ոչխար ընդ ոչխարի)։*

*Զմմառ*, 226, 305*ա*—308 (*ԺԳ. դար*)։ *Վիեննա*՝, 582, 101*ա*։

Նոյն խորագրի տակ՝

*Յելից գրոց. Ես եմ Տէր Աստուած քո...*

*Այս են Ժ. պատգամքն զոր պատուիրեաց տէր Աստուած Մովսէսի։ — Եթէ հարցէ ոք զոք...։*

*Կանոն Ղեւտական գրոց: — Մարդ որ յամենայն ընտանութիւն...:* Վջ. *յարիւն ընկերի քո մի յօժարեսցիս:*

Ձեռագիրք. *Էջմիածին*, 2593, 224*բ*: 2655, 513*ա*: *Երուսաղէմ* 1183 (*ԺԳ.*): 366, 120*ա*: *Վիեննա*, 579, 441*ա*: 581, 316*բ*: *Վենետիկ* 1223, *էջ* 641—646: *Երեւան*, 696:

*Ἐκλογὴ τοῦ παρα τοῦ Θεοῦ διὰ τοῦ Μωυσέως δοθέντος νομόυ τοῖς Ἰσραηλίταις Հրտ.* Nalino, Rendiconti ... 156—165. Ա*մառունի*, *էջ* 187:

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ

1. *Զայս ծայրաքաղ Օրինագրութիւնքս՝ տառապեալ եպիսկոպոսս Տարսոնի թարգմանեցի ի ծերացեալ հելլենացի մատենէ, թուին ՈԽԷ* (1198), *ի նորաչէն ամուրն Լուլուայ, որ է ի գլուխ Դրանն Կիւղիկոսի. զոր ի բազմաժամանակեայ յամայութենէն մարդարնակ արար մի յեզբարց իմոց՝ Շահնշահ, եւ զկործանեալ շինուածն Յունաց յԻսմայէլացւոց՝ շինեաց ամրագոյն. եւ ընդարձակեաց նովաւ զՀայաստանեայս՝ թագաւորի Լեւոնի ձեռն որ ի Կիլիկեայս եւ Ասորւոց գաւառացն տիրէ, եւ նովաւ կարողացաւ Երկրորդ Կապադովկիոյ, յորում մայրաքաղաք Տիանայ, արտահանեալ զնորաչէն ամուրն ի փառս Քրիստոսի եւ ի զաւրութիւն քրիստոնէից: Դարձայ(եա) (ազ. եւ) ի մեծ եկեղեցին Տարսոնի, յղեցի զթարգմանեալս սա գրչութեամբ եւ աւանդեցի Հայոց:*

*2. Յետ որոյ այս եւ ի Հելլենացւոց գրոց արարի թարգմանութիւն Մովսիսական Աւրինացն եւ Լեւոնի եւ Կոստանդեայ Աւրինացն. ի նմանէ թարգմանեցի եւ զՋինուորական Օրէնքն. եւ ընծայեցի որոց սիրեն վարել սովաւ եւ հաճոյ գտանիլ Աստուծոյ, [եւ] կառավարիչք քաղաքաց եւ գաւառաց:*

*Ասորահռոմէական օրինագրքի Յիշատակարանին կից:*

Ձեռագիր: *Մարաշի օրինակ:*

Հրատ.: *Հայաստան*, 1847, *Թ*. 63. *տե՛ս Զարբհանալեան*, *Մատենադարան*, *էջ* 754—755: *Հայապատում*, *Բ*. *էջ* 432: *Յովսէփեան*, *Յիշատակարանք*, *Ա*. 509: *Հմմտ*. *Բազմավէպ*, 1935, *էջ* 186—187:

*3. Ներսէս տառապեալ թարգմանիչ եւ աւրինագրիչ Զինուորական Սահմանադրութեանս, զգուշացուցանեմ սովաւ զզաւրս:*

*Թ*. 5 *Զինուորաց սահմանադրութեան կից:*

Ձեռ. *Վենետիկ*, *Թ*. 1223, *էջ* 610 (*Բազմավէպ*, 1935, *էջ* 187):

Հրատ. *Սիսուան*, 91, *ծն*. 8: *Հայապատում*, 432, *ծն*. 7:

Գրականություն (1—6):

Josef Karst, Grundriß der Geschichte des armemenischen Rechtes. Stuttgart, 1906, S. 24—34:

*2. Կարապետ Ամատունի, Ազդեցութիւն Յուստինեան–հռոմէական օրինաց հայկական*

*իրաւունքին վրայ եւ ստորճան այդ ազդեցութեան: Բազմավէպ,* 1935, *էջ* 182—188:

3.

ԱՐԵԹԱՍԻ ԿԵՍԱՐԻՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

*Մեկնութիւնս ներկայացուած է իբրեւ գործ Անդրէաս Կեսարիոյ եպիսկոպոսի, բայց առընթեր կը յիշուի «ընդ նմին եւ Արեթասայ»: Իրողութիւնն այն է որ առաջին անգամ Մեկնութեանս ձեռք զարկած է Անդրէաս, որ կը համարուի ապրած ըլլալ Է. դարուն, Մեկնութիւնս գրած հաւանօրէն* 614*էն յառաջ:* Diekamp *համարեցաւ թէ Անդրէաս ազդեցութեան տակ գտնուած է Օյկումենիոսի, որ նոյնպէս Է. դարու կէսին Յայտնութեան Մեկնութեամբ զբաղած է: Յամենայն դէպս Անդրէաս կը յիշուի առաջին անգամ իբրեւ Մեկնութեանս հեղինակ* 895*ին, երբ դարձեալ Կեսարիոյ եպիսկոպոս մը Արեթաս Յայտնութեան Մեկնութիւն մը կը գրէ, յեցած Անդրէասի Մեկնութեան վրայ: Արեթասի աշխատասիրութիւնը վերնագիր կը կրէ. ἐκ τῶν Ανδρέᾳ τῷ μακαριωτάτῳ ἀρχιεπισκόπῳ Καισαρείας Καππαδοκίας εἰς τὴν ἀποκάλυψιν πεπονημένων θεαρέστως σύνοψις σχολική, παρατεθεῖσα ὑπὸ Ἀρέθα ἀναξίου ἐπισκόπου Καισαρείας Καππαδοκίας, «ի վաստակոցն Անդրէի երանելւոյ արքեպիսկոպոսի Կեսարիոյ Կապադովկացւոյ ի Յայտնութիւնն համառօտ տեսութիւն, ծաղկաքաղ*

*արարեալ Արեթայ անարժան եպիսկոպոսի Կեսարիոյ Կապադովկացւոց»․ որ թարգմանութեանս մէջ եղած է․ «Ի Յայտնութիւն Յովհաննու. որոյ հօրն մերոյ Անդրէի երանելի եպիսկոպոսի Կեսարու Կապադովկացւոց համառօտ տեսութիւն․ ընդ նմին եւ Արեթաս եպիսկոպոս նմին քաղաքի»։*

*Յոյն բնագիրը հրատարակուած է* Migne, Patr. gr. 106, col. 493–785:

*Անդրէասի մասին՝* O. Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, V. (Freiburg 1932) S. 102—105. *Արեթասի գործին վրայ ի մերձուստ խօսած է* Ehrhard *ու* Krumbacher*ի*, Geschichte der byzantinischen Literatur, München 1897, S. 130—131.

*Հայերէն թարգմանութիւնը ունի Ներածական մը,* (1—6, 7—10 *ցանկ*) *եւ Յառաջաբան մը էջ* 11—21*, ուր Թէոդորոս արքեպիսկոպոս Կ. Պոլսոյ տիեզերական ժողովի մէջ կը հրատարակէ Յայտնութեան գիրքը վաւերական եւ Անդրէաս եպիսկոպոսի Մեկնութիւնը ընդունելի։ Բայց Կ. Պոլսոյ պատրիարքներու թուին մէջ ոչ Թէոդորոս եւ ոչ ալ Եւթալիոս անունը կը յիշուի։*

Յիշատակ տառիս գրողի տեառն Ներսիսի գերահռչակ վարդապետի, զոր գտեալ ի մեծն Անտիոք գրեաց զսա ի լուսաորութիւն հոգւոց։

*Ես Ներսէս նուաստս ի Քրիստոս եւ տարտամս յուսամնալեաց, վերջին եւ*

նուագեալ ժամանակի ծնունդ, յընթեռնուլն զՅայտնութիւնն Յովհաննու. տագնապէի յանձն իմ առ ի յոչ գիտել զլուծումն բանից սքանչելեաց. եւ այսր անդր խուզելով զՄեկնութիւն նորին ի մէջս բարբառ ոչ գտի: Յետ որոյ եհաս ինձ ընթանալ ի մեծն Անտիոք եւ շրջելով յոր անդ վանորայս Հոռոմոց եւ Փռանգաց, այս անընդունմն բարբոքէր ի միտս իմ. ուստի եւ քննեալ գտի ի գրեանան հրաշալեւոր ուխտին սրբոյն Պաւղոսի ի քաղաքի անդ զՄեկնութիւն Յայտնութեանս ի Լուպարտ բարբառ եւ ի նոյն գիր, որով վարին Փռանգք, երկուց Մեկնչաց արարեալ. եւ փափագելով թարգմանել՝ ոչ գտի զոք որ յայնմ բարբառոյ ի Հայս կարէր յեղաշրջել: Ապա եկեալ արտաքոյ քաղաքին ի սուրբ լեառն որ ի հիւսիսոյ կողմն անդր ի մի վանորէիցն Հոռոմոց, որում անուն էր Բեթիաս, առ ոմն արգելական միայնակեաց, որոյ անուն Բասիլ, կնքեալ գտի զցանկալին ի հելլենացի բարբառ եւ ի գիր, ուղղաբան եւ վայելուչ, որ լեալ էր Աթանասի պատրարքի նորին քաղաքի: Եւ խնդրեալ աղաչանօք ի բարեմիտ առնէն՝ առեալ փութացայ զրովքն ի Հայրապետական աթոռն առ տէրն իմ եւ կաթողիկոս սուրբ՝ Գրիգորիոս, զոր ծանուցեալ ուրախ եղեւ յոյժ եւ հրամայեաց թարգմանել ի ձեռն մետրապօլտին Յերապօլսի Կոստանդեայ, որ անդ ի ներքոյ սրբոյ հայրապետին հովանեաց հանգչէր: Եւ սկսեալ օգնականութեամբն Աստուծոյ եւ սրբոյ

տեառն՝ նա ի թարգմանել եւ ես ի գրել. վերընծայեցաք եկեղեցւոյ Հայաստանեայց ուսումնասէր մանկանց զայս սքանչելի եւ աստուածային Յայտնութեան Մեկնութիւն:

Աղաչեմ զընթերցողդ եւ իմաստութեան գսիրողդ՝ յիմանալ զխորս իմաստիցն Աստուծոյ քննութեամբս՝ զսուրբ Հայրապետն Հայոց զտէրն իմ զԳրիգոր զբարեմիտն եւ զբարեսէրն եւ զաւիթն թարգմանութեանս եւ զհրամայող, մաղթեցէք ի Քրիստոս յաստիս խաղաղութեամբ պահել եւ ի հանդերձեալն ընդ իւրոց երկնից արքայութեանն ժառանգակից ընդունել: Այլ եւ զՎարդանգին մեծարգոյին որ թարգմանեաց, եւ զԲասիլ կրօնաւոր, որ գործակից եմ, Քրիստոս ողորմութեանն իւրոյ արժանաւորեսցէ աղօթիւք ձեր:

Թարգմանեցաւ աստուածային Յայտնութեանս Մեկնութիւն ի թուին Հայոց ՈԻԸ (1179) ի սուրբ եւ ի հայրապետական աթոռն որ կոչի Հռոմկլայ, շրջապատեալ յաղեղնական աղբերէն Եփրատայ, որ մատակարարէ բնակչացն զամենայն մարմնական պիտոյս խնամօքն Աստուծոյ, ընդ հովանեաւ աստուածընկալ Նշանին Վանկոյ եւ այլ սքանչելի սրբոցն որ հանգուցեալ են անդ ի փառս Աստուծոյ:

Իսկ սրբարանեցաւ[1] ի Նշանագրութե-

---

[1] Ուրիշ ձեռքէ յարմարցուած է այս Յիշատակարանին կից՝ «Վասն Թարգմանութեան պատճառի: Թարգմանեցաւ աստուածային Յայտնութեան Մեկնութիւն ի ՈԻԸ թուականութեան Հայոց. եւ սրբարանե-

*նէն քերթողական արհեստիւ ի յապահով անապատս ի սուրբ Գէորգ ի մէջ լերինս Տարօնի, որ է Գահ Կիլիկիոյ եւ խնկոյն Գանփիւլեայ, ձեռամբ նուաստ եպիսկոպոսի նորին մայրաքաղաքի Տարօնի՝ տառապելոյն Ներսէսի, շնորհիւ եւ ողորմութեամբն Քրիստոսի, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:*

= *Վիեննա*, 61, *թղ.* 109*բ* (*Ց.* 283) *եւ Լազ.* 178:

Ձեռագիրք. *Էջմիածին*, 1391, 198*ա* (1414): 1409, 169*ա* (1299): 1418, 2*ա* (1280): 1405, 165*ա* (*ԺԷ.*): 1416 (1662. *սկ. պկ.*): 1417 (*ԺԷ.*): 1419 (1318. *սկ. պկ.*): 1423 (*ԺԸ*): 1424 (1620): 1425 (1689): 1161, 1169*բ* (1407): 2516 (1387): 2520, 256*ա* (1306): *Երեւան*, 566 (*ԺԷ*): *Լազ. Ճեմ.* 178 (1685): *Երուսաղէմ*, 20) (1825): 404 (*ԺԴ. սկ. վջ. պկ.*): 425 (1679): 505 (*ԺԸ.*): 814 (*ԺԷ.*): 934 (1817): 998 (1623>1255): 1026 (1816), 1072, 147*ա* (1611): 1131 (*ԺԴ.*): 1134 (1822): 1601 (*ԺԵ.*): 1587 (*ԺԷ.*): 1681, *թղ.* 93*ա* (1285): *Վիեննա*, 56 *Ցուց.* 265): 351 (*ԺԳ. Ցուց.* 803—804): 61 (*ԺԹ. Ցուց.* 278—283): 571, 24*ա* (1283. *Ց.* 1037): 935 (*ԺԸ.*): *Պարիս*, 41 (*ԺԴ.*): *Զմմառ, Քէշիշ.* 117 (*ԺԵ.*): *Անտ.* 8, 329*ա*

---

*ցաւ ի նշանագրութենէն քերթողական արուեստիւ ի ձեռն իմոյ նուաստութեան Ներսէսի ուսումնասիրի եւ Հայոց կաթուղիկոսի եւ ի ձեռն Կոստանդեայ մետրապաւլիտի»* (*Զարբ., Մատենադարան*, 303):

(1695 · պկ ·) : 19, 2ա (1693) : *Բոլոնիա*, 3292 (*ժէ · Ցուց · Գալէմքեարեան*) :

Հրատարակութիւն : *Մեկնութիւն Յայտնութեան Ս. Աւետարանչին Յովհաննու առաքելոյ Տ. Անդրէի եւ Արեթասայ եպիսկոպոսացն Կեսարու* : *Երուսաղէմ*, 1855, 8°, *էջ* 324 :

Յիշատակարանք՝ 1. *Մեկն. Յայտն. Երուս.* 1855, *էջ* 321—324 : — 2. *Զարբհանալեան*, *Մատենադարան*, 297—303 : — 3. *Տաշեան*, *Ցուցակ Մխիթ.*, *էջ* 283 : *Հմմտ. Հանդ. Ամս.* 1906, *էջ* 2—3 : — 4. *Արարատ*, 1900, *էջ* 210—211 : — 5. *Հայապատում*, *Բ.*, 427—428 : — 6. *Ֆ. Մուրատ*, *Յայտնութեանն Յովհաննու հին հայ թարգմանութիւն*, *Երուսաղէմ* 1911, *էջ ճԻԹ—ճԼ* : — 7. *Յովսէփեան*, *Յիշատակարանք*, *Ա.*, *էջ* 473—476 :

Վկայութիւն : *Ներսէս Լամբրոնացի ընդարձակ հատուած մը յառաջ կը բերէ թարգմանութենէս իր առ Յուսիկ գրած թուղթին մէջ. ուսկից կու տամ միայն անգիրս. «Զի՞նչ ասեմք եւ զերանելի աստուածաբանին Յովհաննու սքանչելի Յայտնութիւնն ի վերայ թագաւորական քաղաքիդ, առ որ ընդունելով դանկնարկութիւն, ձայնէք որպէս զԻսրայէլն՝ Տաճարն Տեառն, Տաճարն Տեառն.* զոր ես ինքնին թարգմանեցի յօրինակէ Արանիայի քաղաքին հայրապետի. եւ գտի զլուծումն Մեկնչացն որ վասն այնր էր... : *Եւ զայս Յովհաննէս կանխաւ ի վերայ Կոստանդնուպոլսի ասէս եւ* Մեկնիչքն Անդրէաս եւ

Թէտալիոս մանրամասնաբար հելլենացի բար-բառով եւ գրով ի վերայ նորին լուծին, որ կայ առ իս նոյն թարգմանութեամբ» (*Ն. Լամբրոնացւոյ, Խորհրդածութիւն Ս. Պատարագի, Երուսաղէմ* 1842, *Յաւելուած, էջ* 24—26):

*Ուշադրութեան արժանի է, որ այս տեղիքը, զոր յառաջ կը բերէ Լամբրոնացի, կը պատկանին ոչ թէ Անդրէասի, այլ Արեթասի, որ հոս Թէտալիոս կը կոչուի* (*Մեկնութիւն, էջ* 130):

Գրականութիւն: *Մեկնութեանս վերլուծութիւնը տուած է Հ. Յ. Տաշեան, Ցուցակ, էջ* 278—283, *ուր վերհանած է մանրաւորապէս հին աղբիւրներէ կոչմունք:*

4.

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՍՐԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*Ներսէս* 1179*ին կը գրէր, թէ «յընթեռնուլն զՅայտնութիւնն Յովհաննու, տագնապէի յանձն իմ առ ի յոչ գիտել զլուծումն բանիցն սքանչելեաց»: Կը յայտնէր ասոր, թէ ունէր ձեռքի տակ Յայտնութեան Հայերէն թարգմանութիւն մը: Անոր մութ տեղիքները լուծելու համար կը կարօտէր Մեկնութեան մը, զոր չէ կրցած գտնել Հայ մատենագրութեան մէջ:* 1177*ին երբ կանչուեցաւ Հռոմկլայի ժողովին մասնակցելու՝ հանդիպեցաւ Անտիոք եւ Սեաւ* (*կամ Սուրբ*) *լեռան վանքերու մէջ փնտռեց այդ Մեկնու-*

*թիւնը․ գտաւ նախ լատիներէն թարգմանութիւն մը, եւ ապա անոր յունարէն բնագիրը, որ Անտիոքի Աթանաս եպ․ի օրինակն էր: Առաւ զայն եւ տարաւ Հռոմկլայ, ուր ապա Կոստանդին մետրապոլիտի հետ թարգմանեց: Բայց երբ ձեռնարկեց այդ թարգմանութիւնը սրբագրելու, տեսաւ որ իր ձեռքի տակ ունեցած Յայտնութեան թարգմանութիւնը շատ տեղեր կը խոտորի այն բնաբաններէն, զորոնք կը ներկայացնէր Մեկնութիւնը: Այդ թարգմանութիւնը համաձայնեցնելու համար Մեկնութեան բնաբաններու հետ հարկադրուեցաւ սրբագրել այդ թարգմանութիւնն ալ: Անկէ յառաջ եկաւ Լամբրոնացւոյ անունին հետ կապուած Յայտնութեան թարգմանութիւնը, զոր առաւ զետեղեց իր կազմած Աստուածաշունչին մէջ 1198ին: Այս այն տարին է, երբ Ներսէս աչքէ անցուց իր բոլոր գրաւոր աշխատութիւնները, դասաւորեց զանոնք եւ յանձնեց ապագային: Զգացած էր որ այս տարին իր վերջին տարին էր:*

### ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Այս Յայտնութիւն աստուածաբան աւետարանչին Յովհաննու, որոյ հարցն մերոց վարդապետութեամբ պատուեալ ի պէտս վկայութեանց, գերծաւ ի գայթագղութենէ կարծեաց ոմանց, որք այլանդակս իմացան զմանէ: Քանզի մեծն Դիոնեսիոս յաստուածաբանական ճառսն հիւսեաց զվկայութիւն*

տօրս, եւ Իրենիոս Մեղալու[2] եպիսկոպոսն, Գրիգորիոս աստուածաբանն ի Հրաժարական ճառն, Գրիգոր Նիւսեայ յԵպիսկոպոսացն ժողովոյ. եւ մեծն Կիւրեղ, Մեթոդիոս եւ Հիւպողիտոս. նա եւ անխորձն Իւրեգինէս զոր պատուեալ է Եկեղեցի ըստ նոցին հաւանութեանն դասեաց ի կարգ աստուածաշունչ Նորոց Կտակարանացն:

Որոց եղեալ եւ մեք ընթացակից՝ ի սուրբ Եկեղեցւոյ մանկունեան աւանդեցաք ի դասակարգութիւն առաքելական մատենիցս, որպէս արդարեւ զառաքելական յայտնութիւն: Եւ ստուգարան արարաք վերստին երիւրեալ ի հելլենացւոյն իմոյ նուաստ Ներսիսի թարգմանութեամբ: Ընդ որ(ում) եւ գրչութեամբ Մեկնութիւն նորին ածի յեկեղեցիս Հայոց:

Արդ որք յետ մեր լինիք ամէն ընթերցողք եւ պայծառութեան աստուածաբանն մատենիս վայելողք, տացէ ձեզ շնորհ սուրբ Հոգւոյն՝ քաղցրութեամբ առնուլ ի քիմս մտաց հոգւոյ զբանս Աստուծոյ որ անուշ է «քան զմեղր բերանոյ[3]»: Քանզի արդարեւ յիմանալն ի սմանէ՝ թիկունս դարձուցանէք ատելութեամբ ըստ Երգողին՝ «յամենայն ճանապարհաց չարաց[4]»: Այլ թէ եւ առ մեզ ողորմութիւն ցուցանէք մաղթելով ի Տեառնէ

[2] Իմացիր Lugdunum (Lyon) Ղուգդունոն. իսկ Մեղալէ՝ հմմտ. Մեգալէ Կեսարիա (Ագաթ. 428):
[3] Սղմ. ՃԺԸ. 103:
[4] Սղմ. ՃԻԸ. 101:

քաւութիւն, եւ ձեզ լիցի ողորմութիւն ըստ հրամանի Իրաւախաւսին՝ «Որ վարեցաք զաշխարհս ի ժամանակիս, յորում էանց սորին վայելչութիւն[5]»․ քանզի ակներեւ առաջաց մերոց սուրբ եւ աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ յափշտակեցաւ ի սպառսաւորութենէ քրիստոնէից, սոյն Իմայելացւոցն ի ՈԼԶ․ թուին Հայոց․ ի վերայ որոյ բազում արեանց հեղմունք եղեն Լատինացւոց բազմացեղ ազգաց, որք դաս դաս առաջատեալ նաւօք եւ քաջապինդ հաւատով եւ սրտաջան արութեամբ հասին ի Պաղեստին, եւ անդ դիակնացեալք չուրջ զքաղաքաւն՝ ըստ Երգոյն․ «եւ ոչ ոք էր որ թաղէր․ եւ մեք մնացաք նախատինք դրացեաց մերոց», (Սղմ․ ՀԸ․ 3—4) մինչեւ ի լրումն թուիս ՈԽԷ․ յորում ամի վերապատուեցաւ թագաւոր Հայոց Լեւոն, որ յՈւռբինեանց բարեպաշտ եւ յաղթող Աստուծով։ Որոյ հրաշալի արութեանն չարժեաց զմեծ իշխանսն հին Հռոմայ զՀեռի եւ նոր Հռոմայ զԱլէքս․ որք պսակեցին զսա քարամբք պատուականաւ, յեկեղեցի Տարսոնի, որ իմ անարժանութեամբս հովուի։ Զսա Քրիստոս Աստուած մեր շնորհեսցէ մեզ երկայնութեամբ աւուրց եւ անվանելի յաղթութեամբ․ եւ ի փոխեւն աստի սրբոց թագաւորացն արասցէ պսակակից եւ խորանակից ի լուսեղէն յարկսն․ եւ նմա փառք յաւիտեանս․ ամէն։

---

[5] Ա․ Կորն․ Է․ 31։

*Էջմիածնի Թ.* 146, *թղ.* 224*ա Լամբրոնացւոյ Յիշատակարանը խորագրած է «Ներսէսի Կլայեցւոյ»։ Երկու Ներսէսները դժուարին եղած է եկող սերունդին զանազանել, ինչպէս տեսանք վերադոյն քանիցս։*

Ձեռագիրք։ *Էջմիածին, Թ.* 146, 224*բ*—225*բ* (*ի վերջ Յայտնութեան*)։ *Երուսաղէմ*, 297 (1583)։ 1927 (1649)։ 1930 (1323)։ 1932 (1640)։ 1946 (1310)։ *Զետեղուած է ան թէ Աստուածաշունչի մէջ Յայտնութեան գրքին վերջը, եւ թէ Յայտնութեան Մեկնութեան կատարածին։*

Հրատարակութիւն։ *Երուսաղէմ, Մեկնութիւն Յայտնութեան*, 1855, *էջ* 319—321։ *Զարբհանալեան, Մատենադարան*, 221—222։ *Տաշեան, Ցուցակ Մխիթ.*, 282—283։ *Հայապատում, Բ.*, 427։ *Ֆ. Մուրատ, Յայտնութիւն, էջ ճԻ—ԻԵ*։ *Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.*, *էջ* 623—624։ *Արարատ*, 1910։

Գրականութիւն. 1. *Ֆ. Մուրատ, Յայտնութեանն Յովհաննու հին հայ թարգմանութիւն, Երուսաղէմ* 1905—1911։

2. *Հ. Յ. Տաշեան, Յայտնութիւն Յովհաննու, Հանդ. Ամս.*, 1906, *էջ* 1—6, 47—55, 73—79։

5.

## ՀԱՒԱՔՈՒՄՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԽՈՒԹԱՆԵՑՈՒՆՑ ԹՂԹՈՑՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ

ա. *Նախադրութիւն Թղթոյն Յակոբայ։* — *Արդարն Յակովբոս, որ էր ըստ մարմնոյ*

*եղբայր Տեառն մերոյ, գրէ զայս թուղթ առ նոսա...*

վջ. *Իսկ եթէ սուրբ պատմուճանսն զգեցուցանէ, այնու զաստուածայինն ամբողջ պահէ ի նա կերպարանս, որում ի սկզբանէ ստեղծաւ պատկերակից: Եւ այնմ որ կարող է պահել զձեզ անարատ...:*

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Զայս գիրս Բարսեղ վարժապետն, անուանի առաջնորդ Դրազարկի սուրբ ուխտին, ետ բերել փափաքանաւք ի Կոստանդնուպաւլսէ: Եւ մինչդեռ թարգմանէր զայն Գրիգոր դպիր ի Լամբրոնն՝ վախճանեցաւ հայրն (Բարսեղ):*

*Իսկ ես Ներսէս նուաստս ի Քրիստոս անագան ուրեմն վարժեալ եւ յարբունս հասեալ՝ յարմարեցի ըստ քերթողական արհեստի ի յիշատակ աշխատողացն: Թարգմանեցաւ ի թու՛՛ ՈԺԲ* (1163) *եւ սրբագրեցաւ ի ՈԻԵ.* (1176):

*Անկիւրիա, Թ.* 50, *թղ.* 228—229 *վարի լուսանցքներու վրայ* (1176), *տես Բարգէն եպ. Կիւլէսէրեան, Նախադրութիւնք Սուրբ Գրոց եւ Գէորգ Լամբրոնացի կամ Սկեւռացի. Հանդ. Ամս.* 1915, *էջ* 70—76. *Յիշատակարանս, էջ* 74: *Նոյնը Կիւլէսէրեանի Ձեռագրաց ցուցակէն հանելով՝ Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.* 465—466: *Ծանօթ եղած է Հ. Ալիշանի, Սիսուան,* 516:

Մեկնութենէս օրինակներ ծանօթ են. կը յիշեմ. Էջմիածին, Թ. 1373 (ԺԷ. վերջը թերի)։ 1409, 1ա—168բ (1298)։ 1406 (ԺԸ)։ 1407 (1596)։ 1460, 1460ա (1311)։ Երուսաղէմ, 1072, 4ա—147ա (1611)։ 1301 (ԺԴ.)։ Վիեննա, 48 (արտագրուած ԺԹ. դարուն 1725ին գրուած օրինակէ մը)։

Մանրամասն նկարագրուած Հ. Յ. Տաշեանէ, Ցուցակ, էջ 234—243։

Ուշագրութեան արժանի է Գ. Սրուանձտեանցի Բաղէշ, Խնդրակատար Ս. Աստուածածին վանքի գրադարանին մէջ տեսած մէկ ձեռագիրը, որուն բովանդակութիւնն է. 1. Վարդան Արեւելցւոյ Մեկնութիւնն Սաղմոսաց։ 2. «Իսկ ի սկիզբն Մեկնութեան Կաթողիկեայց թղթոցն ի սորին էջն գրեալ էր. Տեառն Ներսիսի Հայոց կաթողիկոսի արարեալ Մեկնութիւն առաքելական բանին (Թորոս Աղբար, Բ., էջ 261—262)։ Նման Մեկնութիւն մը կը յիշէ Հ. Ղ. Ալիշան, Շնորհալի, 115—116. որուն խօսքերը յառաջ կը բերեմ. «Սա ինքն Հայրապետս Ներսէս ալ հաւաքած է Կաթողիկեայ Թղթոց համառօտ մեկնութիւն մը՝ ի բանից Ս. Հարց, որոյ հին օրինակ մը գտնուի մեր ձեռքը, գրուած իր մահուընէն 26 տարի ետեւ, յամի 1198. յորում հեղինակին անունն յիշատակարանին մէջ քերուած է, այլ ուրիշ օրինակ յայտնապէս կը վկայէ, թէ հեղինակն էր «Հայրապետական արժանացեալ շնորհի եւ վարդապետական վիճակեալ աստիճանի,

*Տէր Ներսէս, մականուամբ Կլայեցի, հըմտասիրացն հետեւելով պարուց**, *եւ այլն․ եւ այս կըրնայ լուծանել զտարակոյս ոմանց՝ որ*[6] *իրեն չեն համարիր այս գրուածը․ զոր մանաւանդ պէտք էր հաստատել մեր օրինակին մէջ անմիջապէս Թղթոց մեկնութենէն վերջը Շնորհալւոյ գրած կամ սրբագրած Ս․ Սարգսի վկայաբանութիւնն․ եւ գրոց նախագաղափարն՝ Շնորհալւոյ եղբօրորդւոյ Գրիգոր Ապիրատ կաթողիկոսին ըլլալն***։ *Այս մեկնութիւնս Սարգսի գրածին պէս միատարր մեկնութիւն չէ այլ* Ս․ Հարց խօսքերն հատուած հատուած շարած եւ իրարու ագուցած, անուններն ալ նշանակելով»։

*Իրողութիւնն այն է, որ Մեկնութիւնս թարգմանուած է* 1163*ին եւ սրբագրուած է* 1176*ին ի ձեռն Ներսէսի Լամբրոնացւոյ, ժամանակ մը, երբ Ներսէս Շնորհալի արդէն վախճանած էր։ Մենք տեսանք վերագոյն, թէ Ներսէս Լամբրոնացի զանազան անգամներ նոյնացուած է Ներսէս Շնորհալւոյ կամ Կլայեցւոյ հետ․ այսպէս նաեւ հոս։*

*Յոյն բնագիրը* J. A. Cramer, Catenae Graecorum Patrum in Novum Testamentum, VIII, Oxonii 1844, p. 1—170 *եւ* Migne, Patrol.

---

* *Այս Յիշատակարանը, որմէ անդրագոյն տողեր յառաջ բերած է Զարբհանալեան, Դպրութիւն,* 633—634, *հանուած է Երուսաղէմի Թ.* 1072*էն է, զոր Սաւալանեանց մակագրած է «Ներսէսի Շնորհալւոյ Մեկնութիւն Կաթողիկեայ Թղթոց հետեւելով Ս. Հարց»։*

[6] *Զամչեան, Պատմ. Հայ. Գ.* 86։

** *Յիշատակարանք՝ Հայապատում, Բ.,* 441—443։ *Յովսէփեան, Ա.,* 609—614։

graec. 119, c. 451—721. *Հեղինակը* Oecumenios *Տրակկացի կը համարուի. Հմմտ.* O. Bardenhewer, *անդ*, V. 100—102. *եւ* Krumbacher, *անդ*, 131—135։

6.

ԳՐԻԳՈՐԻ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՊԻ ՎԱՍՆ ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԶԱՆԱԶԱՆ ՀԱՐՑՆ ՈՐՔ ՅԻՏԱԼԻԱ ՓԱՅԼԵՑԻՆ

*Գրիգոր Մեծ քահանայապետն* (*ծն.* 540, *վխճ.* 12 *մարտ* 604) *գրած է այս գրուածքը* 593—594 *տարիներուն, երբ առանձնացած էր իր Պետրոս սարկաւագի հետ անդորր վայր մը հանգստանալու համար։ Գրուածքս, որ* Dialogi *անուանուած է, կազմուած է, չորս գիրքէ, որոնք ունին գլուխներ։ Յօրինուած է խօսակցութեան ձեւով, այս պատճառով ալ կոչուած է Տրամախօսութիւնք։*

*Զաքարիաս քահանայապետ* (741—752) *թարգմանած է զայն յունարէնի, որ մեծ ընդունելութիւն գտած է Յունաց քով, ինչպէս կը վկայեն բազմաթիւ ձեռագիրք. որոնցմէ մին* 800*էն է։ Ներսէս Լամբրոնացի պատահած է այս թարգմանութեան Բեթիաս վանքին մէջ։ Գեղեցիկ կը նկարագրէ ձեռագրին գիւտը եւ թարգմանութեան պարագաները յետագայ յիշատակարանին մէջ, զոր ինքը զետեղած է թարգմանութեանս սկիզբը յառաջաբանականէ մը ետքը։*

*Այս տեղ կարեւոր կը համարիմ ներկայացնել գրուածքիս բաժանումները եւ նախադրութենէն մաս մը։*

Գրիգորի սրբազան պապի Երիցու Հռովմայ Բանք պատմականք առ Պետրոս նախասարկաւագ իւր վասն քաղաքավարութեան զանազան հարցն, որք յԻտալիա փայլեցին· ի չորս գիրս:

Նախադրութիւն: — *Գովելի է արդարեւ քան զամենայն ինչ ստանալ զառաքինութիւն, յորմէ ոչ ինքեանք միայն շահին, այլ եւ որք զկնի ուղիղ վարուցն հետեւին...: Արդ բազում փոյթ եղեւ ի Հնումն եւ ի Նորումն զվարուց սրբոցն զկտակ թողուլ գրով, որք պատմեցին զեղեալսն եւ մարգարէացան զառ յապա լինելոցն...: Այսպէս եւ որ մեծ է ի սուրբս Հայրս մեր ամեներջանիկ Գրիգորիոս մեծանուն քաղաքին Հռովմայ եղեալ պապ, ընդ այլ գիրս բազումս զորս պաճուճարանս եւ խոր մտածութեամբ խաւսեցաւ, երեւեցոյց եւ զվարս որք յԻտալիա փայլեցին սուրբ արք, եւ զժամանակս յորում էին եւ զտեղիս յոր եղեն: Եւ արար ի Հռովմայեցի լեզու զոր վասն նոցին զգիրս: Եւ անց ընդ մէջ ամս հարիւր վաթսուն եւ հինգ, եւ ոչ ոք փոյթ արար յեղաշրջել զգիրսս զայս ի Հռովմայեցի լեզուէն յելլադացի բարբառ: Իսկ Զաքարիա երջանիկն եւ հրեշտականման առաքելական աթոռոյն Հռովմայ պապ, որ ի վերուստ աստուածային օգնականութեամբն վերակոչեցաւ հովիւ եւ հովուապետ եւ առաջնորդ հաւատոյն, աստուածասէր եւ բարեսէր հոգին, յետ ամենայն առաքինութեան եւ ուղ-*

*զուԹեան եզ զանձն իւր եւ յաշխատուԹիւնս յայս . . .»*

*Կը յաջորդէ Ներսէսի Յիշատակարանը. տե՛ս վարը:*

Գրիգորի սրբազան պապուն Հռովմայ առ Պետրոս նախասարկաւագ նորին եկեղեցւոյ:

*Գիրք Ա. Գլուխ ԻԲ.: Յաւուր միում յի-րաց ինչ աշխարհական զբաղմանց ծանրու-Թեանէն ձանձրացայ յոյժ . . . (ԻԲ. գլուխք):*

Գիրք Բ. Սրբազան հայրապետին Հռո-մայ Գրիգորի առ Պետրոս նախասարկաւագ պատասխանի վասն բաղաբանութեան հարցն Բենեդիկտոսի (*ԼԲ գլուխք*):

Գիրք Գ. Նորին սրբազան հայրապետին Գրիգորի առ Պետրոս սարկաւագ (*ԼԳ գլուխք*):

*Գիրք Դ.* Սրբազան հայրապետին Հռո-մայ Գրիգորի ասացեալ վասն զի ճշմարիտ է հոգւոյն բան զմարմնաւորն (*գլուխք Ծ.*):

Ա. *Յետ որ ի դրախտին ուրախուԹեանն մեղաւք նախահաւրն մարդկան ազգի ի փա-ռաց նորին սրկեցաւ:*

Վջ. *որպէս զի սյսու եւ զՆատուած հաւ-տեցուսցուք, որ փառաւորեացէ զմեզ աստ եւ արժանի արասցէ երկնային փառացն: Կա-տարումն Դ. գրոցս:*

Ձեռագիրք. *Էջմիածին, Նոր ժողովա-ծոյք,* 219 (*ԺԳ./ԺԴ.*): *Վենետիկ,* 305, 153ա—191բ (1849. *Սարգիսեան, Յուցակ, Բ.,* 1165—1168), *Կտուցի վանքին բոլորգիր*

*ձեռագրէ. որ Յովհաննէս արքայեղբօր օրինակութիւնը կ'երեւայ*[7]: *Այս ձեռագիրն ըլլայ թերեւս էջմիածնի Թ.* 219:

*Ուրիշ ձեռագիրներու մէջ պահուած է Դ. գիրքը. այսպէս Նոր-Ջուղայ, Ամենափրկիչ* 163, 163*ա*—175*ա* (1292): *Վիեննա*, 33 (1852, *Ցուց.* 186): 78, 115*ա* (*ԺԸ. Ցուց.* 337): *Երուսաղէմ*, 1926, 69*ա* (1308): *Սեբաստիա*, 220 *Հ.* 180, *էջ* 66 (*ԺԸ*): *Զմմառ. Անտ.* 73, 113*ա* (1700):

*Գրականութիւն: Զարբհանալեան, Մատենադարան*, 358—361: *Յոյն թարգմանութիւնը*՝ Migne, Patrol. latina, 77, 149—432, *Բ. գիրքը, անդ*, 86, 125—204: *Հին իտալերէն թարգմանութիւն մը կը յիշէ* J. Fabricius, Bibl. Latina mediae et intimae aetatis, *հատ.* 3, (Patavii 1754), *էջ* 86, *որ կարող է «Լամպարտերէնը» ըլլալ, զոր կը յիշէ Լամբրոնացի*:

*Անդրադոյն տեղեկութիւններ գործիս մասին*՝ Bardenhewer, *անդ, էջ* 293—294:

*Հ. Տաշեան թարգմանութիւնը կը դնէ «շատ ստրկօրէն» եղած* (*Ցուց.* 186):

Դ.

## Ս. ԲԵՆԵԴԻԿՏՈՍԻ ՍԱՀՄԱՆՔ

1. Սրբոյ հօրն Բենեդիկտոսի սահմանն առաջին ընթացից կրօնաւորաց:

---

[7] *Ձեռագրին սկիզբը զետեղուած էր Գրիգոր պապի վարքը հանուած Յայսմաւուրքէն* (*Աբեղի Ե.* = *Մարտ* 13. Patr. Or. 21, *էջ* 159—162) *այժմ վերջին մասն միայն մնացած, Ցուց. Բ.* 1167:

ա. Ունկն դիք, որդեակք, խրատու հաւր ձեր, խոնարհեցուցէք զլսելիս սրտից ձերոց...

վջ. *Ապա եւ մեք վասն նորին պարտիմք համբերել ամենայն վշտաց, զի ժառանգաւորք լիցուք արքայութեան նորա:*

2. Սահմանք վանից, զոր արարեալ է աշակերտաց սրբոյ հաւրն Բենեդիքտոսի մանրամասն զգուշութիւն աւրինաց նոցին. զոր գրեաց վարդապետն Վրնջէր ի կողմ Իտալիոյ, ի վանքն Փիսկանի. եւ բերեալ յԱնտիոք ուղղեաց ըստ այսմ աւրինաց զհոչակաւոր ուխտ սրբոյն Պաւղոսի:

Բ. *Որպէս չինեն զվանսն: — Ուր հանգիրձեալ է միաբանութիւն եղբարցն բնակել ի միասին, չինել արժան է վասն բնակութեան նոցա...*

վջ. *Աստուած արարիչն, որ զաւրութեանց տէրն է, տացէ քեզ զառող*|| (*թերի*):

Ձեռագիր. *Վենետիկ*, 305, 192*բ*—219*ա* (1849: *Ցուց. Բ.* 1168): *Էջմիածին*, *Նոր ժող.* 219 (*ԺԳ./ԺԴ.*): *Երուսաղէմ*, 986 (*ԺԷ.*): *Միայն* ա. *Երուս.* 300: 1207: *Բեռլին*, 269, 266*բ* (*ԺԶ.*): *Վիեննա*, 307 (1754, *Ցուց.* 735 (*օրինակուած Հարց Բենեդիկտեանց Ս. Գէորգայ վանքի Մատենադարանի օրինակէն*):

Հրատարակութիւն. *Սահման Բենեդիկտեան Վանաց*, *Վենետիկ* 1880, 8°, *էջ* 123.

*հայ. եւ լատին թարգմ. դէմ առ դէմ. լատիներէնի վերնագիրն՝* Statim monasticum Benedictinum a Magistro Berenger concinatum a S. Nersete Lambronensi olim ex Latina in Armeniam linguam conversum et recens latinae fidei rursus redditam. Venetia 1880. *միայն Բ. մասը: էջ* 113—118 *վարք Ս. Բենետիքտոսի (ի Յայսմաւուրաց) եւ* 119—123 *լատ. թարգմ.:*

Վկայութիւնք: *Լամբրոնացու անանուն կենսագիրը. «Թարգմանեաց եւ զգիրս Գրիգորի պապուն, որ Տիալոգոս կոչի» (Հայապ.* 420): *Կիրակոս Գանձակեցի,* 63. *Ներսէս թարգմանեց «եւ զՊատմութիւն Գրիգորի պապուն Հռոմայ, եւ զՕրինագրութիւն սրբոյն Բենեդիքտոսի»: Եսայի Նչեցի առ Մատթէոս Թղթին մէջ. «Յանդիմանէ զնոսա (զԼատինս) եւ սուրբ Հայրն անապատի եւ քանոնն մաքուր վարուց ճգնաւորաց՝ Մեծն Բենետիքտոս (ա՛յսպէս) Լատինացի, գրելով այսպէս ի բանս իւր, թէ Պարտ է զչորեքշաբաթին եւ զՈւրբաթն պահօք անցուցանել մինչեւ ցինն ժամն, ապա ճաշակել» (Ճռաքաղ* 1860/61) :

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

*«Իսկ ապա ի հուսկ յետին ժամանակս ըստ թուոյ Հայոց ՈԻԸ* (1179) *յամի իմոյ Ներսիսի Տարսոնի եպ.ի ի մանկական հասակ ուսումնասիրութեան տենչանօք շրջելով ի վանորայս որք առընթեր մեծի քաղաքին*

Անտիոքայ ի լեառն որ Ռասխանձիր[1] կոչի, յափն ծովուն, Հիանայի ի տեսանելն զառաքինազարդ միայնութիւն եւ զճգնութիւն հռովմայեցի միաբանակեաց վանօրէիցն, որ այժմ կոչին Փռանգք: Եւ իբրեւ ընդ անընտել իրս սխրացեալ՝ Հարցի ընդ ումն իմաստուն կրօնաւոր որ ի Յունաց Բասիլ անուն. Ուստի՞ սոցա այսքան ուղղութեան կարգացս շնորհ, որով դերազանց զատանին այսօր ձեզ եւ մեզ: Պատասխանեաց. Ի Բենեդիկտոսէ հրամանեալ հարէն. զորոյ զվարսն պատմէ սուրբն Գրիգոր պապն: Եւ ունի՞ս արդեւք զնոյն գիրս, ասացի: Պատասխանեաց. Այո: Եւ եբեր առաջի իմ. եւ իմ փոքր մի վարժ գոլով Հելլենացի գրոյն՝ ընթերցայ առ անդ. եւ բորբոքեցաւ յիս ցանկութիւն աստուածային գրոցս թարգմանութեան: Այլ զի ոչ կամէր անձամբ վճարել զգործն՝ խափանեցաւ յայնժամ: Եւ թարգմանեցի զնորին Բենեդիքտոսի կարգ եւ զաւրէնս կրաւնաւորաց նոյնժամայն ի լատին լեզուէն ի Փռանգ վանս սուրբ Պաւղոսի որ ի քաղաքն Անտիոք, ի ձեռն Հասակակից կրաւնաւորի միոյ ի նոցանէ, Կիլամ[2] անուն: Իսկ ապա եկեալ ի վանսն որ Սիմանակլա կոչի հուպ Անարզաբոյ, յորում բազում գրեանք ի յունական գիրս աւանդեալ է, մանրամասնաբար խու–

---

[1] Սելեւկիա «որ է յառն լերին, որ կոչի ըԹըռըլխանձիր, որ է չեզր ծովու», Zeitschrift für armenische Philologie (1909), էջ 206:

[2] Guillaume.

գեալ զտի զայս գիրս. եւ հրճուեալ ի վերայ այնչափ խնդութեամբ, որպէս գիտեն փորձքն ուսումնասիրութեան, որ է նոյն եւ աստուածասիրութիւն: Առեալ գնացի ի հայրապետական աթոռն որ կոչի Հռոմկլայ յափն Եփրատայ. եւ կամաւքն Տեառն մերոյ կաթողիկոսին Գրիգորոյ թարգմանեցի զսա եւ զՄեկնութիւն Յայտնութեանն Յովհաննու ի ձեռն առաքինի մետրապոլտին Յերապոլսի Կոստանդեայ. եւ խմոփանս տկարութեամբ յեղյեղեալ եւ ուղղեալ թողի զայն յԵկեղեցի Հայոց ապացոյց բարեաց եւ հրճուականք մխիթարութեան զբաղեցելոցն ի վարս առաքինութեան:

Արդ որպէս ընկալաւ զսա Եկեղեցին հռովմայեցի ի յերջանիկ հաւրն Գրիգորի Պատմութենէն եւ Եկեղեցին Յունաց ի թարգմանութենէն սրբոյ հայրապետին Զաքարիայ, նոյնպէս եւ դուք, որ Հայաստանս Եկեղեցւոյ էք մանկունք, ընկալարուք ի նուաստ պաշտաւնակցէ ձերմէ զսոյն եւ հաւատով պատուեալ մխիթարեցէք զանձինս ի յոյսն որ ի Քրիստոս:

Ա. Գրոց վերջը.

Ներսէս տրուպ եւ անարժան,
Սուրբ Պատմութեան սիրով թարգման,
Յորոց սովաւ հոգւով ցընծան,
Հայցեմ ներումըն թողութեան:

*Յիշատակարանս Հրատարակուած է*. 1. *Սահմանք Բենեդիկտեան վանաց*, *էջ* II—III (*լատիներէն թարգմանութեամբ*՝ *էջ* VII—VIII)։ 2. *Զարբանալեան*, *Մատենադարան*, *էջ* 358—360։ 3. *Հայապատում*, *Բ*., 428—429։ 4. *Յովսէփեան*, *Յիշատակարանք*, *Ա*., *էջ* 477—480։

8.

ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆՔ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԱՑ

1. Կարգադրութիւն Աստուծով սրբոց մայրաքաղաքաց եւ մետրապոլտաց եւ արհեպիսկոպոսաց։ Եւ եդաւ այս կարգ ատենանացս քահանայապետից ըստ տիեզերական ժողովոց աւրինաց։

*Առաջին աթոռ երէցն Հռոմ գլխաւոր եւ նախապատիւ առաքելոյն Պետրոսի*...

վջ. *Հինգերորդ առաքելական աթոռ սուրբ քաղաքն Երուսաղէմ*...։

*Էջմիածին* 1898, 225*ա* (*ԺԴ*.)։ *Վատիկ*. 3, 270*ա*։ *Համտ*. *Զարբ*., *Մատ*. 500։ *Հրատարակուած* Z. f. arm. Philologie. I (1903) 198—199։ *Համտ*. Fr. C. Conybeare, On some armenian Noticial: Byzantinische Zeitschrift 5 (1896) 118—136։

2. Եպիփանու եպիսկոպոսի Կիպրացւոյ վասն նախապատիւ եկեղեցեաց իւրաքանչիւր աթոռոց մայրաքաղաքաց։

*Նախ առաջին պատրիարգ Հռոմայ*։ *Պատրիարգ Կոստանդնուպոլսի*...։

*Աստիճանք Մետրապոլտաց, արքեպիսկոպոսաց ինքնագլխաց:*

*Նախաառաջին Կապադովկիա՝ Կեսարիա....:*

կէ. *տասներորդ Տրիմիթուս. մետասաներորդն [առաջնորդ] Կարպասին:*

Ձեռագիրք: *Էջմիածին* 1898, 225*ա*—234*բ* (*ԺԴ.*): *Վատիկան*, 3, 271*բ*—284*ա* (Tisserant, *Ցուց.* 211—212): *Վենետիկ*, 261, 101*ա* (1604. *Ցուց.* 816):

Հրատարակած՝ *Յ. Ն. Ֆինկ, Եպիփան Կիպրացու՝ „Ἔκθεσις πρωτοκλησιῶν, πατριαρχῶν τε καὶ μητροπολιτῶν". Հայերէն եւ յունարէն. Թիֆլիս* 1902, 8º *փոքր*, *էջ* 120: *Յոյն ամբողջական բնագիրը հրատարակեց* H. Gelzer, Ungedruckte und ungenügend veröffentlichte Texte der Notitiae episcopatuum; Abhandlungen der Berliner Akademie der Wissenschaften, 21 (1901) 599—641. *Հմմտ. մատենախօսականս Հանդ. Ամս.* 1903, *էջ* 58—61:

*Էջմիածնի Թ.* 1698 *ձեռագրի մասին, ուսկից հրատարակած է Ֆինկ, տես* Zeitschrift für armenische Philologie 1 (1903) 1—32 *եւ* 97—120:

3. Գիր որ եղեւ առ ի Նեղոսէ կրաւնաւորէ մակակոչեցելոյ Նեղոս Դոքսապատրի, ի խնդրոյ եւ հրամանաւ բարեպաշտ մեծի թագաւորին Փռանգաց ի Սիկիլիա կղզին Ռոճերի վասն հինգ պատրիարքացն աթոռոց եւ որ նոցունց են արքեպիսկոպոսք ի մայ-

րաքաղաքսն, եւ մայրաքաղաքացն եպիսկոպոսաց եւ որք ինքնագլուխք են արքեպիսկոպոսաց եւ իւրաքանչիւրոցն վիճակք ըստ պատրիարքական աթոռոց սահմանեալ. եւ թէ երբ կամ որպէս հաստատեցաւ իւրաքանչիւր պատրիարքացն աթոռ. եւ վասն կարգաց նոցին եւ յատկական իւրաքանչիւրոցն անուանց:

*Ամենամեծատոհմ տէր իմ, վասն պատճառին զոր գրեցեր...*

Վջ. *Այս է ամենայն քաղաքք եւ իշխանութիւնք Կ. Պոլսի:*

*ՈԻԸ. Թուղթն թարգմանեցաւ ի ձեռն Ներսիսի եպիսկոպոսի եւ Կոստանդեայ մետրապաւլտի ի փառս Աստուծոյ:*

Ձեռագիրք: *Էջմիածին*, 20, 386*բ* (*ԺԷ.*): 502, 277*բ*—294*ա* (1619): 1784, 140*բ* (*ԺԷ.*): 1898, 235*ա*—245*ա* (*ԺԴ.*): *Վատիկան*, 3, 284*ա*—298*ա* (1286. *Ցուց.* 212): *Զմմառ*, *Քէչիշեան*, 195, 160*ա*—168*ա* (*ԺԷ.*): *Օքսֆորդ*, 41, 67 (*Ցուց.* 91): *Երուսաղէմ*, 700 (*ԺԷ.*): 858, 207*բ* (*ԺԷ.*): 1365 (*ԺԳ. պկս.*): *Նիկոսիա*, 16, 146*ա* (*պկս.*): *Հմմտ. Զարբանալեան*, *Մատենադարան*, 559—560:

Հրատարակած՝ *Ֆ. Ն. Ֆինկ*, *Նեղոսի Դոքսապատրի կարգադրութիւն պատրիարքական աթոռոցն: Հայերէն եւ յունարէն. Վաղարշապատ* 1902, $8_0$ *մեծ*, *էջք* 46 (Des Nilos Doxapatres *Τάξις τῶν πατριαρχικῶν*

*θρόνων* armenisch und griechisch. Herausgegeben von Franz N. Fink.

*Այսպէս պէտք է ուղղել Զարբ., Մատ.* 560 *եւ Ալիշան, Հայապատում, Ա., էջ* 114*բ «վասն հինգ պատրիարքութեանց» մասին եղած ենթադրութիւնները:*

4. Արժանապատուութիւն ի կաթողիկէ եկեղեցւոջ, զոր կալցին ժառանգաւոր սարկաւագք:

ա. *Եպի տուն արխունդուն: Սա զպատիւ անուանն միայն ունի... (Ա.—ԻԶ.):*

վջ. *սոքա լիցին ի վերայ այսոցիկ եւ մեք աղաւթից եւ բանին հպատակ լիցուք:*

Կարգ երգողացն, *որք ոչ լինին սարկաւագք, այլ կէս սարկաւագաց, եւ երգողաց եւ ընթերցողաց եւ գայլ որ հանգոյն սոցին աշտիճանաց կայցեն զձեռնադրութիւն: — Դէմէոյիկոս. լադին է: Ինքն կայ ի մէջն եւ հրաման տայ երգողացն...:* վջ. *Կուկի-սիտուս. յատին է: Սա ի գալն արքեպիսկոպոսին... եւ զգայուցեալ ճանապարհ առնէ:*

Տեառն Ներսիսի է թարգմանեալ, Եպիսկոպոսին Տարսոնի (զ)այսոսիկ կարգաւորութիւնս:

*Զմմառի Թ.* 195 *ունի.*

«Թարգմանեցաւ ի թուին Հայոց ՈԻԸ (1179) ի ձեռն Ներսէսի եպիսկոպոսի Տարսոնի եւ Կոստանդեայ մետրապօլտի»:

Ձեռագիրք: *Էջմիածին,* 1026, 274*բ* (*ժԴ.*): *Վենետիկ,* 261, 115*բ*: *Վատիկան,* 3, 298*ա*—300*ա*: *Զմմառ,* 195, 201*բ* (*ժէ.*):

Հրատարակած՝ Ֆ. Ն. Ֆինք Zeitschrift für arm. Philologie, 1 (1903) 200—204:

*Այս 1—4 գրութիւնները թարգմանուած են Հռոմկլայ, 1179ին, ի ձեռն Կոստանդին մետրապոլիտին եւ Ներսէս Լամբրոնացւոյ:*

Վկայութիւն: *Ներսէս Լամբրոնացի առ Յուսիկ Թուղթին մէջ հետեւեալ կոչումը յառաջ կը բերէ Նեղոսի գրուածքէն, զոր «Տաքտիկոն» կ՚անուանէ. «Եւ ի Տաքտիկոնն, յորում կարգ եպիսկոպոսաց սահմանի, գրեալ է, որ Հայոց կաթողիկոսն պատուեցաւ, վասն սրբոյն Գրիգորի, որպէս եւ կղզին Կիպրոսի վասն առաքելոյն Բառնաբայ. եւ յիւրեանց եպիսկոպոսացն առնուն արքեպիսկոպոսին ձեռնադրութիւն: Եւ զայս ի ձեր գրոց ունիմք հաստատեալ եւ ոչ ի Հայոց» (Խորհրդածութիւն Ս. Պատարագի, Երուսաղէմ 1842. Յաւել., էջ* 24):

5. Անուանք քաղաքաց:

*Հ. Գ. Զարբհանալեան, Պատմ. հայ հին Դպր.,* 660 *կը գրէ. «Ժամանակաւ կրտսերագոյնք կ՚ընծայեն իրեն (Ն. Լամբրոնացւոյ) նաեւ...: Անուանք Քաղաքաց շինողաց ի խնդրոյ Աբուսայիտ բժշկի»: Միսուան* 516 *ծն. Ալիշ. Շնորհալի,* 120: *Այս գրութիւնն է.*

Տեառն Ներսեսի գտեալ հարցմամբ յԱպուսայիտ իմաստասիրէն:

*Սելեւկոս Թագաւոր յետ Աղեքսանդրի շինեաց զՍելեւկիա ի յիւր անունն, որ է յառն*

*լերինն որ կոչի Ըռըսըլ Խանձիր, որ է յեզր ծովուն...:* վջ. դ. *Եդեսիա, յորոյ անունն չինեաց զԵդեսիա, որ է Ուռհա:*

*Զայսոսիկ տեառն իմոյ Ներսէսի կաթողիկոսի սրբոյ, նաեւ տիեզերալոյս վարդապետի եւ իմաստասիրի քննեալ հարցմամբ յԱպուսայիտէ իմաստասիրէ եւ բժշկէ Ասորւոց, որ էր յայժ հմուտ երկուց գիտութեանց՝ արտաքնոցն ասեմ եւ եկեղեցականիս, ասաց ճշմարիտ պատմութեամբ. որոց ողորմեսցի տէր Յիսուս Քրիստոս. ամէն:*

*Էջմիածին*, 1898, 248*ա* (*ԺԳ.*): *Ասկէ հրատարակեց Յ. Ն. Փինք*, Zeitschrift für arm. Philologie 1 (1903), *էջ* 206 (*ընդ ամէնը* 13 *տող բան*): 1770, 358*բ*[8]: *Վենետ.* 262, 92*ա* (1716. *Յուց.* 824):

6. Տեառն Ներսէսի գտեալ հարցմամբ ի յԱպուսայիտ իմաստասիրէն:

*Մատթան քահանայի որ ի ցեղէն Ղեւեայ, երեք դստերք էին...:*

վջ. *Ահա Եղիսաբեթ ազգական քո եւ նա յղի է:*

= *Էջմիածին*, 1770, 358*բ* (1654): 1898, 248*ա* (*ԺԳ.*)[9]: *Վենետիկ*, 262, 91*ա* (1716. *Յուց.*, *Բ.*, 824): *Թօփճեան*, *Յուց. Դադեան ձեռագրաց*, *Թ.* 78, 91*ա* (1625. *Յուց.* 95):

---

[8] *Այլուստ բան:*

[9] *«Այլուստ»:*

Հրատարակած՝ Ֆ. Ֆինկ, Z. f. arm. Phil. 1 (1903), 205:

*Հ. Ղ. Ալիշան, Շնորհալի, էջ* 120, *ծանօթ եղած է այս երկու գրուածքներու Վենետիկի Թ.* 262*էն. եւ ճշդիւ նկատած է, թէ այս հարցասէր Ներսէսն՝ Կլայեցի կաթողիկոսն է: Բայց եւ այնպէս, թերեւս մոռացութեամբ, Ներսէս Լամբրոնացւոյ գրուածքներու ցանկին մէջ առած է «Անուանք Քաղաքաց-չինողաց, ի խնդրոյ Ապուսայիտ բժշկի» (Սիսուան,* 516)*: Խնդրողը սակայն Ներսէս Շնորհալին է: Իրմէ մոլորած է Զարբանալեան:*

*Հաւանական է որ այս երկու (թերեւս եւ այլ նման) մանր գրութիւնները Ներսէս Լամբրոնացի զետեղած է նախորդ* 1—4 *հատուածներու վերջը. տեղիքս՝ «զայսոսիկ* տեառն իմոյ Ներսէսի *կաթողիկոսի սրբոյ» Ներսէս Լամբրոնացւոյ գրչէն կ՚երեւայ: Անշուշտ պատանեկութեան ժամանակ ձեռք բերած:*

*Ապուսայիտ կամ Բուսայիդ իմաստունէն ունինք գրուածք մը «Յաղագս կազմութեան մարդոյ», որուն սկզբնաւորութիւնն է. «Կազմեաց Աստուած զմարդն որպէս քաղաք երկոտասան դրամբք, որք են երկու աչք...:*

*Լազ. Ձեռ.* 50, 78*բ*—84*ա* (1532)*: Էջմ.* 1713, 388*բ* (*ԺԷ.*)*: Երուսաղէմ* 1584 (1448)*. Թաւրիզ Բ.* 9, 259*ա* (*ԺԴ. Ցուց. էջ* 52)*:*

*Գրուածքս աչքի առաջ ունեցած է Ասար Սեբաստացի ԺԷ. դարու սկիզբը: Ասար կը*

*գրէ, թէ Մարդակազմութեան մասին շատ բան գրած են Յոյները. «ընդ որս եւ մի ոմն ի նոցանէ, որ կոչի Ապուսայիդ, զոր առեալ ի գրոց բժշկապետացն յատուկ եւ համառօտ եւս մեզ զայս բանքս զըղորդն եւ զկարճն» (Վիեննա, Թ. 294)։ Ինձ ծանօթ հնագոյն ձեռագիրն է Երուսաղէմի Թ. 1584, յամէ 1448, թերեւս հնագոյն եւս Թաւրիզի Թ. 9, որ ԺԴ. դարէ ըլլալ կը թուի։*

*Ապուսայիդ ապրած է ԺԲ. դարուն, ծանօթ Ներսէս Շնորհալւոյ († 1173)։ Մարդակազմութեանս թարգմանութիւնը պէտք է ենթադրել նոյն դարուն։ Ինչպէս տեսանք, նման աշխատութիւն մը վերագրուած է Ն. Լամբրոնացւոյ։*

## 9.

## ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԱԿԱՆ ԹՂԹՈՑ

1. Իննովկենտիոս Բ. 1130—1143։

*Թուղթ որ բերաւ ի Հռոմէ առ Գրիգորիոս կաթողիկոսն, որ նախ էր, ի թուականութեան* ՇՁ (1131)։

*Իննովկենտիոս եպիսկոպոս ծառայ ծառայից Աստուծոյ, պատուական եղբաւր մեր Գրիգորի կաթողիկոսի Հայոց...։ Վջ. Գրեցաւ ի Հռոմ ի Լատրանն նախ քան զեւթն կաղանդաց հոկտեմբեր ամսոյ։*

*Զայս թուղթ դատք նախ քան զմեր ծնանելն յառաջ՝ բերեալ առ տէրն մեր մինչդեռ Միջագետք քրիստոնէից էր. եւ նա բնակէր*

ի Ծով գղեակն. քանզի անդ լռէաք ի տղայութեանն ի տէր Ներսէսէ թէ (անդր ի Ծով) եկն Աղպրի լեկաթն եւ խաւսեցաւ ընդ նոսին. եւ զոյն որ զկնի նորա առաքեցաւ պատասխանիս:

Էջմիածին, 1026, թղ. 218բ—228ա:

Աղպրի (Albericus) լեգատ (որ էր կարդինալ–եպիսկոպոս Ոստիայի) արեւելք եկաւ 1140ին. այսպէս գիտէ նաեւ Եռայի Նչեցի. «(Ի)նոկենդիոս պապն Հռոմայ, որ էր Շ եւ Ղ (1141) թուին Հայոց...» (Ալիշան, Շնորհալի, 172): Ուստի Լամբրոնացւոյ «ՇՁ» հարկ է ուղղել «ՇՂ»:

Նոյն լեգատը 1141ին Երուսաղէմ ժողով մը գումարեց, որուն ներկայ էր նաեւ Գրիգորիս կաթողիկոս (Ալբերիկոսի մասին հմմտ. U. Rouziès, Albéric, cardinal-évèque d'Ostie: Dictionaire d'histoire et de géographie ecclésiastiques, t. I. 1912, p. 1408—1406. եւ Ալիշան անդ. 153—158, 171—174:

2. Լուկիոս (Lucius) Գ. 1181—1185:

Թուղթ հայրապետին եւ պապուն Հռովմայ առ տէր մեր Գրիգորիս կաթողիկոս Հայոց: Ընդ որ առաքեցաւ եւ այս Ձեռնադրութեան եւ Կարգաց եկեղեցւոյ գիրքս ի նոյն հայրապետէն առ մեզ:

Լուսիոս եպիսկոպոս ծառայ ծառայից Աստուծոյ, ամենայն պատուական եղբարց, Գրիգորի կաթողիկոսի եւ ամենայն արքեպիսկոպոսաց եւ եպիսկոպոսաց եւ աբբայից, որդւոց սիրելեաց եւ ամենայն առաջնորդաց

*եկեղեցւոյ եւ ամենայն Կղերիկոսաց, ամենայն ժողովոյ լրմանդ Հայոց ողջոյն...։*

*Անապական հաւատոյ խոստովանութիւն...։* Վջ. *Գրեցաւ Նամակս ի Վրաւն (Վերոնա) դեկտ. Գ.։ — Թղթաբերն էր «Գրիգոր արքեպիսկոպոս Փիլիպպուպոլսու, որ էր ի ձէնջ առ մեզ առաքեալ»։*

*Էջմիածին*, 1026, *թղ.* 167*բ*—174*բ*։ *Վենետիկ*, 297, 173*ա*։ *Վիեննա*, 610, 11*ա*։

3. Կղեմէս 1187—1191։

*Թուղթ Հայրապետին Հռովմայ, զոր գրեաց ընդ զաւրան եւ ընդ թագաւորան, որք եկին յայս կոյս ծովու փրկել զսուրբ քաղաքն Երուսաղէմ յետ երից ամաց գերութեանն։*

*Կլեմէս եպիսկոպոս, ծառայ ծառայիցն Աստուծոյ, պատուական եղբաւր մեր Գրիգորի կաթողիկոսի ամենայն Հայոց։ Ողջոյն եւ առաքելական աւրհնութիւն։*

*Որպէս, զոր յԱստուծոյ արդար դատաստանէն աշխարհդ արեւելից ի ժամանակս մեր ընկալաւ...։* Վջ. *Գրեցաւ ի Հռովմ, ի Լադրանն, նախ քան զչորս Կաղանդաց յունիս ամսոյ եւ յԲ. ամն եպիսկոպոսութեան մերոյ։*

4. Եւ այս ընդ առաջնոյս բերաւ։

*Կլեմէս եպիսկոպոս... Գրիգորի կաթողիկոսի Հայոց ողջոյն...։*

*Հաւատամք եթէ անմոռաց ունիս ի մտի Լուսիոս պապն, որոյ յիշատակն երանութեամբ, որ նախ էր քան զմեզ, ըստ խնդրոյ ձեր առաքեաց գիրք զԿարգաւորութիւն եկե-*

ղեցւոյս Հռոմայ…: Գրեցաւ ի Հռոմ ի Լաղրանն, նախ քան ղչորսն Կաղանդաց յունիս ամսոյ եւ յԲ. ամն եպիսկոպոսութեան մերոյ.:

5. Առ պատրոնս մեր Լեւոն, որ ի սոյն ժամանակս էր իշխող Կիլիկիոյ եւ Սաւրիոյ եւ լերանց սոցին:

Կլեմէս եպիսկոպոս… մեր սիրեցեալ որդւոյ մեծապատիւ իշխանի Լեւոնի Լեռնցւոյ. ողջոյն եւ առաքելական աւրհնութիւն:

Ծրատն զոր յԱստուծոյ…:

Նոյն է եւ այս թղթիս բանքն անթերի եւ անյաւել, որպէս առաջնոյն որ առ Կաթողիկոսն սուրբ, զոր աւելորդ համարեցայ գրել կրկին:

Էջմիածին, 1026, 210ա—215բ:

Այս չորս թուղթերը հրատարակած է Ա. Տէր-Միքելեան, Արարատ, 1893, էջ 133—144: Հմմտ. Զամչեան, Գ., 143—145: Սիսուան, 466—467:

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ

Ի թուականութեան Հայոց ՈԼԴ (1185) եկն Գրիգոր եպիսկոպոս ի հայրապետէն Հռոմայ Լիւսիոյ առ Կաթողիկոսս մեր Գրիգորիոս, որ էր ի սմանէ առաքեալ. եւ եբեր զպատասխանի նամակի տեառն մերոյ եւ զԳիրս Կարգաց Եկեղեցւոյ Հռովմայեցի գրով. եւ եգիտ զՏէրն մեր ի քաղաքն Տարսոն յամսեանն հոկտեմբեր: Եւ ընկալեալ Կաթողիկոսին սրբոյ զպատուական պալիւնն եւ

զխոյրն ի լրումն պատուոյ՝ գոհացաւ Աստուծոյ: Եւ ետ զնամակ հայրապետին եւ զգիրն Կարգաց Եկեղեցւոյ յիմ նուաստութիւնս՝ թարգմանել. զոր յեղաշրջեցի ի հայ բարբառ, միայն յերիւրեալ գրանին քերթողական արհեստիւ, առանց յաւելուածոյ եւ թերութեան:

Իսկ յետ այսր ի թուականութեան ՈԼԶ (1187), ըստ մեղաց մերոց առաւ սուրբ քաղաքն Երուսաղէմ յԻսմայէլացւոց թագաւորէն Յովսէփայ. եւ որ ի նմա[նէ] Եկեղեցւոյ սպասաւորքն եւ պաւրքն ցիր եւ ցան եղեն յայսկոյս ծովուն եւ յայն<կոյս>:

Իսկ Հայրապետն Հռոմայ շարժեաց զթագաւորս եւ զիշխանս եւ զպաւրս եւ զքաղաքացիս զանազան ազգաց գալ յայսկոյս ի փրկութիւն սուրբ տեղեացն. եւ ամենեքեան բարձին յօժարութեամբ զխաչն Քրիստոսի եւ եկին մեծաւ աշխատութեամբ: Ընդ որս եկն եւ թագաւորն Ալամ<ա>նայ Փիլխարիք, որ էր ինքնակալ Հռոմայ եւ մեծ քան զամենայն թագաւորս: Եւ սա ոչ ծովով այլ ընդ ցամաքն արար ճանապարհ անթիւ զօրօք. եմուտ յՈւնկրս եւ եկեալ ձմերեաց ի Մակեդոնիայ ի Փիլիպուպաւլիս. եւ ի տուն պասեքին անց ընդ ծովն Աւիդոսոյ եւ ծանր տարժանմամբ հերձեալ զրանակս անթիւ խորանարնակ Թուրքմանացն, էջ զաւրաւքն հուպ քաղաքին Սելեփկիու Սաւրացւոց: Զոր լուեալ Կաթողիկոսն մեր Գրիգորիոս եւ իշխողն Լեւոն, ընդ որոյ տէրութեամբ էր Սե-

*լեֆկիայ, փութացան մեք հանդերձ ընդ առաջ նորա մեծաւ ուրախութեամբ իբրեւ Փրկչի այս աշխարհացս: Այլ մեղաց մեր ծանրութիւն կարճեաց զընթացս արքային. զի յանց<ս> զետոյն Սելեւկիոյ ախորժեաց լուանալ. եւ ծերութեամբն ոչ զաւրեաց ընդդէմ կալ յորձանացն՝ հեղձաւ: Իսկ մեր արամութեամբ պատահեալ եպիսկոպոսացն որք գային զկնի եւ որդւոյ նորին եւ զաւրացն, դարձաք ի Տարսոն:*

*Եւ զի խոստումն էր ինքնակալին ոսկի կնքեալ գրով Հայոց թագաւոր դնել, պահանջեաց Կաթողիկոսն սուրբ ի նոցանէ զլրումն խոստմանն: Եւ ինձ հրաման ետ զայն թարգմանել. զոր կատարեցի յաւրինակէ միոյ յեպիսկոպոսաց նորին, որ առ իս իջեւանէր՝ Մու(ն)ստեր քաղաքի, որ ունէր իւր դաս ձիավարից զկնի հազար հեծեալ: Եւ յորժամ թարգմանեցի, խորհեցան եւ ոչ կարացին յանձն առնուլ զգործն՝ յորժամ ինքնակալն բարձաւ ի միջոյ: Այլ իջին յԱնտիոք. եւ անտի ի Պաղեստին:*

*Իսկ ես զթարգմանեալ Աւրհնութիւն թագաւորին ոչ կամեցայ աղաւաղել. եդի ընդ նախաթարգմանեալ կարգաւ, վերստին յարմարմամբ: Եւ աղաչեմ զիմաստուն ընթերցողդ՝ ոչ աւելորդ համարել զմեր ի սոյն վաստակ, որ ծառայել էաք եւ Հռոմայ Եկեղեցւոյն Կարգացն, ընդ այլ գիտութեանց եւ սովաւ զովացաք եւ թողաք զկնի եկելոց ի փառս Քրիստոսի որ է աւրհնեալ յաւիտեանս:*

*Էջմիածին*, 500, 363ա—369բ (1305), 3211, 157բ: *Միւնխէն*, 9, 46ա—46բ:

Հրատարակուած: *Զարբհանալեան, Մատենադարան*, էջ 359—361: *Հ. Գ. Գալէմքեարեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Արքունի Մատենադարանին ի Միւնխէն, Վիեննա* 1892, *էջ* 24—25 (= *Հանդ. Ամս.* 1891, 343—344): *Արարատ*, 1893, *էջ* 236—237: *Ալիշան, Հայապատում, Բ.*, 430—431: *Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.*, 537—558:

*Գերմաներէնի թարգմանած է* P. Vetter, Nerses von Lampron's Bericht über den Tod Kaiser Friedrich's I., aus dem armenischen übersetzt: Historisches Jahrbuch, 1881, S. 288—291: *Հայ. թարգմ. Ներսիսի Լամբրոնացւոյ տեղեկութիւն ի վերայ մահուան կայսեր Փրեդերիկոսի Ա. ի գիրս՝ Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Ֆէթթէրի, թարգմ. Հ. Յ. Տաշեան, Վիեննա* 1895, *էջ* 46—51 (= *Հանդ. Ամս.* 1894, *էջ* 18—20: *Հմմտ. նաեւ Նոր Դար*, 1888, *թ.* 143 *«Լամբրոնացու կորած թղթերից մինը»*:

10.

ԳԻՐՔ ԿԱՐԳԱՑ ԵԿԵՂԵՑԻՈՑՆ ՀՌՈՄԱՑ

(Հռոմէական Ծիսարան:)

*Ղուկիոս Գ. պապ ուղարկած էր ի ձեռն Գրիգոր եպիսկոպոսի «զԳիրս Կարգաց եկեղեցւոյ Հռովմայեցի գրով» Գրիգորիս Դ. Տղայ կաթողիկոսին* 1185*ին: Նոյն տարւոյն*

հոկտեմբերին հասաւ Գրիգոր եպիսկոպոս Տարսոն, ուր կը գտնուէր Կաթողիկոսը։ Ինչպէս կը գրէ Լամբրոնացի, Կաթողիկոսը «ետ զնամակն Հայրապետին եւ զԳիրսն Կարգաց եկեղեցւոյ յիմ նուաստութիւնս՝ թարգմանել. զոր յեղաշրջեցի ի հայ բարբառ, միայն յերկուբեալ զբանսն քերթողական արհեստի, առանց յաւելուածոյ եւ թերութեան»։ Այս տողերը կը գրէր ան 1190էն ոչ շատ ետքը։

1190ին Փրեդերիկոս Կայսր վախճանեցաւ։ Եւ որովհետեւ խոստացած էր ան «ոսկի կնքեալ գրով» տալ Հայոց Լեւոն իշխանին արքայական թագ, կը յուսար Գրիգորիս Կաթողիկոս, թէ պիտի յաջողէր Կայսեր խոստումը իր որդիէն իրականացած տեսնել. այս պատճառով ալ, կը գրէ Լամբրոնացին, «ինձ հրաման ետ զայն (կարգն օրհնութեան թագաւորի) թարգմանել, զոր կատարեցի, կ'ըսէ, յօրինակէ միոյ յեպիսկոպոսաց նոցին, որ առ իս (ի Տարսոն) իջեւանէր, Մունստեր քաղաքի։ Եւ յորժամ թարգմանեցի, խորհեցան եւ ոչ կարացին յանձն առնուլ (Գերմանացիք) զգործն, յորժամ ինքնակալն բարձաւ ի միջոյ»։ «Իսկ ես զթարգմանեալ Օրհնութիւն թագաւորիս ոչ կամեցայ աղաւաղել. եղի ընդ նախաթարգմանեալ կարգաց վերստին յարմարմամբ»։

Եթէ Ներսէս Մինստերի եպիսկոպոսի օրինակէն կը թարգմանէ Թագաւորօրհնէքը, պիտի հետեւցնենք, թէ այն կը պակսէր Եկե-

ղեցւոյ Կարգաց գրքին մէջ: Այդ թարգմանութիւնը զոր կատարած էր, թերեւս սակաւ ինչ ազատօրէն եւ յապաւումներով, չուզեց «աղաւաղել», այսինքն ոչնչացնել, այլ վերստին յարդարումով զետեղեցի, կ'ըսէ, Եկեղեցւոյ կարգաց գրքին մէջ, որ «նախաթարգմանեալ» էր, անոր կից պահելով նաեւ այս օրինակը: Թէ այս իմաստով պէտք է հասկնալ Լամբրոնացւոյ տողերը, կը հաստատեն էջմիածնի Թ. 1026 եւ Երուսաղէմի Թ. 2673 ձեռագիրները, որոնք կը ներկայացնեն երկու Թագաւորօրհնէք, մին «ըստ մեծի եկեղեցւոյն Հռոմայ», եւ միւսը՝ «ըստ Հայաստանեայց աւրինաց»: Զունիմ այժմ տրամադրութեանս տակ այս ձեռագիրները, համեմատելու համար երկու բնագիրները, ուկից կարելի էր գաղափար կազմել առաջին եւ երկրորդ օրինակներու որպիսութեան մասին: Անոնցմէ մին գործածուեցաւ ապա 1199 յունուար 6ին եւ յաջորդ շրջանին:

Հռոմայ Եկեղեցւոյ Կարգաց գիրքս իր ամբողջութեամբը չէ պահուած մեզի: Հնագոյն օրինակը, որմէ արտագրած է Վիեննայի Թ. 610ի գրիչը Գրիգոր, 1788ին, ինչ ինչ մասեր, պակասաւոր եղած է: Գրիգոր կը գրէ. «Սակաւ բանքս գրեցան աստ ի հնագոյն Մաշտոցէ իմեքէ եկեղեցական արարողութեանց, որ առաքեցաւ ի Հայս ի տանէ Կիլիկեցւոց առ Կաթողիկոսն Հայոց Գրիգոր Տղայ ի խնդրոյ նորին ի Լուսինս հայրապետէն... յորում լիապէս գոյին պարունակեալ

խրատ եւ արարողութեանց կերպք խորհրդոց եկեղեցւոյ եւ այլոց ինչ իրաց. բայց զի պակասեալ էին թուղթք ոմանք եւ խորեալ էր ամբողջութիւն գրքոյն, վասն այն զքանի մի դուզնաքեայ բանքս հանեալ գրեցի... ի լատինացւոց լեզուէ թարգմանեալ էր. եւ թարգմանիչ սորին եղեալ է շնորհազարդ եւ երջանիկ Ներսէս Լամբրոնացին» (Թ. 610, թղ. 15բ):

Ակնարկուած ձեռագիրն է հաւանօրէն Էջմիածնի Թ. 1026 (ԺԴ. դարէ), որ կ'երեւցնէ սկիզբն եւ մէջերը թղթերու անկումներ: Այս Թ. 1026էն օրինակուած կ'երեւայ նոյն Մատենադարանի Թ. 973:

Մեր Հայրապետական Մաշտոցը, որ կը պարունակէ Կանոն օրհնութեան Ս. Միւռոնին, Օրհնութիւնն հիւանդաց ձիթի, Օրհնութիւնն Եպիսկոպոսի, Կանոն Կաթողիկոս ձեռնադրելոյ եւ Կարգաւորութիւն օրհնութեան թագաւորի ըստ մեծի եկեղեցւոյն Հռոմայ, ունի յիշատակարանս. «Նուաստ Կոստանդին կաթողիկոս գտայ զշարագրութիւնս հայրապետացն Հայոց գըրեալ ձեռամբ սուրբ հաւրն մերոյ Ներսիսի արքեպիսկոպոսի Տարսոնի, եւ ետու գրել սմա, որ է այս. Ա. ՌԾԹ» (էջ 434):

Կաթողիկոսն է անտարակոյս Կոստանդին Կեսարացի (1307—1322). այս դէպքին ՌԾԹ պէտք է կարդալ ՉԾԹ = 1310: «Շարագրութիւն հայրապետացն Հայոց» կը կոչուի Հայոց Կաթողիկոսներու Յանկը կամ գաւազանա-

գիրքը. բայց հոս պէտք է իմանալ, ինչպէս ինձ կը թուի, «Տարադրութիւնս» Հայրապետաց յատուկ կանոններու, որոնք հանուած են Լամբրոնացւոյ սկզբնագիր ձեռագրէն:

Կան ուրիշ ձեռագիրներ ալ ԺԴ. եւ յաջորդ դարերէն, որոնք ունին Կարգաց Գրքէս մասեր: Ասոնց վրայ յեցած Կարգաց գրքին ամբողջութիւնը կազմել շատ դժուարին պիտի ըլլայ: Ես պիտի բաւականանամ ներկայացնել այս տեղ առաւելապէս էջմիածնի Թ. 1026ի բովանդակութիւնը, դուրս թողլով այն մասերը, որոնք յունական Ծիսարանէն հանուած կ՚երեւան, թերեւս նոյնպէս Ներսէս Լամբրոնացւոյ թարգմանութեամբ:

Ներսէս Լամբրոնացի թարգմանած է Լատին Ծիսարանը պարզապէս ծանօթացնելու համար զայն հայ ծիսագէտներու կամ ծիսասէրներու եւ ոչ թէ գործածութեան համար: Այս իմաստով ալ գրած է. «Աղաչեմ զիմաստուն ընթերցողդ ոչ աւելորդ համարել զմեր ի սոյն վաստակ, որ ծարաւի էաք եւ Հռոմայ եկեղեցւոյն կարգացն, ընդ այլ գիտութեանց, եւ սովաւ զովացաք եւ թողաք զկնի եկելոց»:

Ներսէս ինքնին հայ մեծագոյն ծիսասէրն եւ ծիսագէտն էր. եւ գործէս առաջին հաճոյքն ինքը վայելած էր, ինչպէս կը խոստովանի. «ծարաւի էաք... եւ սովաւ զովացաք»: Անծանօթ չէին իրեն լատին, յոյն, ասորի, ղպտի եւ այլ ծէսեր, որոնց ծանօ–

թացած էր այցելութեամբ այդ ծէսերով բարգաւաճած եկեղեցիներ Տարսոնի, Կիպրոսի, Անտիոքի եւ Սեւ Լեռան վանքերու մէջ, ինչպէս կը տեսնուի իր Պատարագի Մեկնութենէն: Այս գործը գրած էր ան 1177ին: Ինչպէս գիտենք, այս երկասիրութիւնը նոր խմբագրութեան ենթարկած էր ան 1192/3ին: Այս առթիւ անշուշտ ներս առաւ հոն Պատարագամատոյցէն տեղիքներ (հմմտ. Գաթըրճեան–Տաշեան, Սրբազան պատարագամատոյց Հայոց, էջ 451—453):

Ինչպէս 1190ին Լամբրոնացի Լատին Ծիսարանէն օգտուելով կազմած էր Թագաւորօրհնէքը, նոյնպէս յընթացս դարուց այդ Ծիսարանի թարգմանութենէն մասեր մանր փոփոխութեամբ անցան հայ Ծիսարանին, ինչպէս Եպիսկոպոսօրհնէքն, Կաթողիկոսօրհնէքն, Միաբանօրհնէքն, նաեւ Քահանայութեան կարգին Ա.—Է. աստիճանները եւ այլն:

Հայ Ծիսարանի ուսումնասիրութեան համար կարեւոր եւ Լատին Ծիսարանի զարգացման պատմութեան համար օգտակար կրնայ ըլլալ Լամբրոնացւոյ թարգմանութիւնս, եթէ հնարաւոր ըլլայ լրացնել անոր մասերն եւ տպագրութեամբ հրապարակ հանել:

Առանձին աշխատանք կը պահանջէ հայերէն թարգմանութեան մասերու համապատասխան լատին բնագիրները վեր հանել: Լատին Ծիսարանի անթիւ ձեռագիրներու մէջ բազմատեսակ ձեւերով պահուած է մէն մի կանոն: Ունիմ տրամադրութեանս տակ Ed-

mund Martène. De antiquis ecclesiae ritibus, t. I—IV Venetiis 1783. *ուր սակայն թէեւ կը տեսնուին նմաններ, բայց ոչ Հայ թարգմանութեան ծառայած բնագիրները։ Ես կը բաւականանամ այս տեղ ներկայացնել հայերէն թարգմանութեան վերնագիրներն եւ սկզբնաւորութիւնները ըստ Էջմիածնի Թ. 1026 ձեռագրին, որուն հետ կը համընթանայ նոյն Մատենադարանի Թ. 973, ուրիշ առթի թողլով մանրագոյն քննութիւնը եւ ձեռագիրներու համադրութիւնը։*

*1. Կանոն եւթն աստիճանաց։*

*Սկիզբն կարգի աստիճանաց եւթանց, որք ձեռնադրին ի չորս եղանակս տարւոյն շաբաթ ուր ի գայր դարձն*

*Առաջին աստիճանք Կղերիկոսաց, որք են Սաղմոսերգուքն։ Կերպ հատանելոյ զհերս ոյնոցիկ, որք կամին յառաջել առ աստիճանս կղերիկոսութեան։*

*Զգենու եպիսկոպոսն ըստ աւրինին եւ ամենեքեան ըստ իւրաքանչիւր կարգի։ Եւ ծխէ խունկ սուրբ սեղանոյն... եւ եպիսկոպոսն ասէ զԱղաւթս. Տէր մեր նայեաց յերկրպագութիւնս մեր...։*

*Ա. աստիճան Դռնապանութեան.*
*Բ. „ Ընթերցողութեան.*
*Գ. „ Երդմնեցուցչաց.*
*Դ. „ Ջահընկալութեան.*
*Ե. „ Կիսասարկաւագութեան.*
*Զ. „ Սարկաւագութեան.*
*Է. կարգ Ձեռնադրութեան երիցու։*

*Յետ կարգալոյ զընթերցուածն եւ ասել զԱլէլուն եւ զԼեղանիայն եւ զԱւետարանն, պատրաստած լիցի զոր կամին ածել յերիցութիւն զգեստով սարկաւագութեան ունելով զուրարն...: Հարցանէ եպիսկոպոսն, եթէ Ո՞րպէս է կամ զիա՞րդ ունի քաղաքավարութիւն...:* Էջմ. 1026, 19ա—25 (վերջը պակաս): 973, 7ա—23բ: 960, 46ա: 1042: 1057, 8ա: Վիեննա, Մխիթ. 599, 143ա: Վիեննա, Կայս. Մատ. 26, 1ա (Յուց. 39):

2. *Սկիզբն կարգի կոչել եւ ընտրել եւ ածել զընտրեալն եպիսկոպոս:*

*Շաբաթ ուր, մաւտ յերեկոյին աղաւթոն զայ պապն եւ նստի ի գաւիթս եկեղեցւոյն...* (Համմ. Martène, II, 85):

Էջմ. 1026, 25ա—58ա: Զմմառ, 331, 36ա—78բ: 343, 98ա: Վիեննա, 51, 2ա:

3. *Այս է կարգ Հռոմայ եկեղեցւոյն եւ սահման, որպէս առնեն զժողով եւ զխնճոյոս եպիսկոպոսաց* (ordo ad Synodum).

*Ժողովին սուրբ եպիսկոպոսք եւ Հարք եւ երիցունք...:*

Էջմ. 1026, 58ա—67ա:

4. *Սկիզբն կարգի աւրհնութեան Եկեղեցւոյ:*

*Նախ յառաջագոյն լիցի պատրաստած եկեղեցին եւ ԺԲ. լապտեր վառեն...:*

Էջմ. 1026, 67ա—94ա:

5. *Այս է կարգաւորութիւն յորժամ ուզան միայն աւրհնեն, զոր չըջեցուցանեն. կամ*

ի նոյն տաճարն կատարի աւանդ տաճարին աւրհնութեան:

Որպէս գրեալ է՝ նախ լուանան խառնմամբ ջրոյն ընդ գինին եւ ընդ մոխիրն. եւ ապա աւծանեն սուրբ իւղովն...:

Էջմ. 1026, 94բ—97ա:

5ա. Աւրհնութիւն Սկոյ եւ մաղզմայի:

Կնքէ մեռոնաւն եւ ասէ. Յանուն Հօր...:

Էջմ. 1026, 97ա—98ա:

5բ. Աւրհնութիւն Խաչի:

Եպիսկոպոսն աւրհնէ. Աւրհնեա՛, Տէր, զԽաչ քո...:

Էջմ. 1026, 98ա—101ա:

6. Սկիզբն կարգի յաւուր տէրունական Հինգշաբաթին:

Հարկանեն զամենայն զանկակն եւ գայ ժողովն յեկեղեցին... (Հմմտ. Martène, III, 134):

Էջմ. 1026, 104ա—112բ:

7. Կարգ աւրհնութեան սրբոյ Մեռոնին:

Յորժամ կատարի աստուածային պատարագն ի սրբոյ Հինգշաբաթին...:

Էջմ. 1026, 270բ—274բ: Վատիկան, 3, 188բ: Զմմառ, 331, 2ա:

8. Ի Մեծի ուրբաթ(ու)ն:

Յետ աւրհասարակին աղաւթիցն ժողովին յեկեղեցին...:

Էջմ. 1026, 112բ—121ա:

9. Շաբաթուն սրբոյ աւուրն ի Կէ...:

Ժողովին յեկեղեցին եւ ի դաւիթն, վա-

*ունն լոյս ի հրաշ(ա)նէ եւ երթան խաչիւ ի նոր լոյսն...* (Mart. I 141. III, 96, 144):

*Էջմ.* 1026, 121*ա*—131*ա*:

10. *Կարգ երեխայութեան, որ լինի առաջի դրան եկեղեցւոյն:*

*Յառաջ հարցանէ քահանայն զանունանս..* (Mart. III. 156):

*Էջմ.* 1026, 131*ա*—150*բ*:

11. *Պատարագամատոյց Աստուծոյ որ կատարի խորհուրդն յամենայն աւր: Եւ այս միայն է եւ այլ ոչ գոյ Հռոմայեցւոցն խորհուրդ պատարագի:*

*Ի վեր ընծայ(եցուցէք զմիտս) եւ գոհացար(ուք...): Արժան եւ իրաւ...:*

*Էջմ.* 1026, 151*ա*—162*բ*: *Վատիկ.* 3, 55*ա*—60*բ*:

12. *Սկիզբն պատարագի զոր կատարեն յաւուր յորում զպատապարտ զոք կամին դնել ի փորձութիւն տաք ջրի կամ հով ջրի կամ երկաթի:*

*Էջմ.* 1026, 162*բ*—167*բ*: *Վատիկ.* 3, 60*բ*:

13. *Յառաջին շաբաթ Քառասնորդաց Չորեքշաբաթի աւրն (Մոխրոց):*

*Ասի նախ քան զպատարագն եւթն Սաղմոս եւ Լեզանիա ի ծունս...:*

*Էջմ.* 1026, 238*բ*—240*ա*:

14. *Ի սուրբ Կիւրակէն, որ աւրն է Բարեբանութեան մանկանց Տեառն մերոյ յԵրուսաղէմ:*

*Յառաւաւտին աղաւթսն աւրհնութիւն արմաւենեացն եւ ձիթենեացն, զոր առէ Քահանայն. Աստուած որ զմիածին Որդիդ քո…:*

*Էջմ.* 1026, 240*ա*—243*ա*:

15. *Սուրբ եւ մեծապայծառ Կիւրակէին Զատկին առաւաւտուն:*

*Սղմ. ոչ, այլ հարկանի ժամն եւ ժողովին առաջի դրան տաճարին…:*

*Էջմ.* 973, 104*բ*—*բ*:

16. *Աւրհնութիւն կաթին եւ մեղեր. Աւագ շաբաթ աւրն յետ պատարագին: — Աւրհնեա, Տէր, զըղխեալ կաթնս եւ զմեղրս…:*

*Էջմ.* 1026, 174*բ*:

17. *Աւրհնութիւն Պանրի եւ Ձուերոյ ի նոյն աւրն:*

(*Աղ.*) *Տէր ամենակարող Աստուած…:*

*Էջմ.* 1026, 175*ա*:

18. *Աւրհնութիւն Գառինն ի կիրակէն Զատկին. զոր առէ հետ պատարագին եւ բաշխէ ժողովելոցն:*

(*Աղ.*) *Տէր մեր որ ի պասեքս աւրհնեալ յաղեցաք…:*

*Էջմ.* 1026, 175*բ*:

19. *Աւրհնութիւն Նոր պտղոց:*

*Աւրհնեա զպտուղքս զայս…:*

*Էջմ.* 1026, 176*բ*:

20. *Աւրհնութիւն Հացի: — Աւրհնեա, Տէր, զնիւթ հացիս…:*

*Էջմ.* 1026, 176*բ*:

21. *Աւրհնութիւն Նոր կերակրոց: — Աւրհնեա, Տէր, զկերակուրքս զայս...:*

*Էջմ.* 1026, 177*ա*:

22. *Աւրհնութիւն խաղողոյ: — Աւրհնեա՛, Տէր, զպտուղ խայծեալ խաղողոյս...:*

*Էջմ.* 1026, 177*ա*:

Ծանօթութիւն Ներսէս Լամբրոնացւոյ:

*Ընդ այլ կարգս աւրհնութեանցդ էր եւ այս գրեալ ի մատեանն որ բերաւ ի Հռովմէ. զոր նախ անտես արարի. եւ յետոյ հարկաւորապէս ի պէտս եկ եւ գրեցաւ եւ տուաւ որոց սիրեն ի փառս Աստուծոյ. եւ էր գրեալ յԱւագ շաբաթուն կարգն յետ մկրտութեանն:*

*Էջմ.* 1026, 177*բ*:

23. *Կարգաւորութիւն աւրհնութեան Մոնոզոնի ըստ Հռովմայեցւոց եկեղեցւոյն սովորութեան:*

*Թէ ոչ է կլերիկոս՝ նախ առեն զաղաւթս կղերիկոսի ձեռակրութեան եւ ըստ կարգի աղաւթիցն սափրեն պսակ ի գլուխն եւ զմաւրուսն...:*

*Էջմ.* 1026, 177*բ*—181*բ*:

24. *Աւրհնութիւն Կուսանաց եւ Այրեաց յորժամ ընծայեն զանձինս եպիսկոպոսին ի կարգ կրաւնաւորութեան:*

*Բերեն առաջի եպիսկոպոսին զզգեստն որ ի կարգին է, զոր մինչ զգենու ի նոյն կարգն: Եւ ասէ եպիսկոպոսն զԱղաւթս զայս. Ա. Աղաւթքս Մայրապետի աւրհնու-*

*թիւն է. Տէր Աստուած ամենակարող, որ անցուցեր զժողովուրդ քո...:*

*Աղաւթք որ ասի յաւրհնութիւն Կուսանաց միայն եւ ոչ ամուսնացելոց կանանց. Տէր Աստուած, հայեաց ի սա...:*

*Էջմ.* 1026, 182*ա*—187*բ*:

25. *Աւրհնութիւն Աբբայի կամ Մայրապետի: — Ամենակարող Հայր, աղաչեմք զքեզ, զծառայս քո զայս...:*

26. *Կարգաւորութիւն աւրհնութեան թագաւորի ըստ մեծի եկեղեցւոյ Հռոմայ:*

*Յորժամ ժառանգաւորքն եւ ժողովն ընտրեն զոք բարձրացուցանել զոք թագաւոր, գան յարքունի ապարանս...:*

*Էջմիածին*, 1026, 188*ա*—207*բ*: 953, 490*բ*: 973, 273*բ*: *Վիեննա*, 805: *Զմմառ*, *Քէչիչեան*, 200, 114*ա*: 331, 102*ա*: 343, 39*ա*: *Վենետիկ*, 298, 18*ա*: *Սիւրմէեան*, *Ցուցակ Հալէպի*, *Բ.*, *էջ* 25—30: *Երուսաղէմ*, 2673, 156*բ*:

27. *Կարգ աւրհնութեան որով աւծանեն զինքնակալ արքայն ի նմին քաղաքին ի Հռոմ, բարձրագոյն քան զամենայն թագաւորս:*

*Նախ խոստանայ ի ձեռն Պապուն սրբոյ ինքնակալն այսպէս. Ես այս անուն շնորհաւքն Աստուծոյ ինքնակալ Հռոմայ...:*

*Էջմ.* 1026, 207*բ*—210*ա*: 973, 284*ա*: *Վիեննա*, 610, 10*ա*: *Վենետիկ*, 297, 172*ա* (*Ցուց. Բ.* 1086):

28. *Կարգ աւրհնութեան թագաւորի ըստ Հայաստանեայց աւրինաց:*

*Յետ ղգենլոյ զամենայն թագաւորական զգեստն, ուրոյն դնեն զփիլոնն եւ զթագն ի վերայ սրբոյ սեղանոյն արծաթի սկտեղբ...:*

*Էջմիածին*, 1026, 235*ա*—238*բ*: 953, 501*ա*: 969, 218*ա*: *Տիւբինգէն*, 28, 107*ա*: *Հմմտ. Արարատ*, 1893, *էջ* 236—237:

29. *Կարգ աւրհնութեան ամուսնութիւն տալոյ ըստ Հռոմայ եկեղեցւոյն սովորութեան:*

*Պատրաստի քահանայն պատարագի զգեստուքն տանից նախորակի...:*

*Էջմիածին*, 1026, 228*ա*—234*բ*:

30. *Կարգաւորութիւն աթոռակալութեան, յորժամ զայ եպիսկոպոսն նստել յաթոռն յոր ձեռնադրեցաւ:*

*Գան ընդ նմա երեք եպիսկոպոսք...:*

*Էջմ.* 1026, 243*ա*—245*բ*:

31. *Կարգ որ կատարի յորժամ զոսկերս սրբոց զսուրբ Նշխարս ածեն յարկեղացն ողջունել եւ երկրպագել ժողովոյն ի տունս նոցա կամ յայլ ուր:*

*Յետ երգոցն սարկաւագն ասէ բարձրաձայն քարոզ. Եւ ես խաղաղութեան... կայցուք բարւոք եւ բաղկատարած...:*

*Էջմիածին*, 1026, 245*բ*—249*բ*:

32. *Կարգ սրբութեան տաճարի եւ աւրհնութեան որ ի նմա սեղանոյն:*

*Նախ քան զաւր նաւակատեացն, յառաջ քան զգալ եպիսկոպոսին ի սուրբ տունն, զոր*

կամի սրբել, առաջէ նախ զմի ի սարկաւագացն...:

Էջմ. 1026, 251բ—258ա:

33. Կարգ որ լինի հանգուցանել զնշխարսն սրբոց ի տաճար որ սրբեցաւ ի նոյն աւուրս:

Պատրաստի Նշխարք սրբոցն յայլ եկեղեցի, որ առընթեր է այս տաճարի, եւ եղանէ արքեպիսկոպոսն զարդարեալ բազմութեամբ կղերիկոսաց...:

Էջմ. 1026, 258ա—260ա:

## 11.

## ԹՈՒՂԹ ԲԱՌՆԱԲԱՅ ԱՌԱՔԵԼՈՅ

«Ես Ներսէս թարգմանեցի զԹուղթս զայս ի հայ բարբառ ի Թագաւորական քաղաքս ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն»:

Յիշատակարանս կը գտնուի Հռոմ, Վատիկանեան Մատենադարանի Թ. 859 յոյն ձեռագրին մէջ, «Բառնաբայ առաքելոյն Թուղթի» յոյն բնագրին վերջը:

Յիշատակարանս նմանատպութեամբ՝ Միս. 92 (հմմտ. 91 ծ.) եւ տաս, էջ 83:

Բառնաբաս առաքելոյն անունով ունինք Թուղթ մը, որ գրուած ըլլալու է 70—130 տարիներու մէջ, ըստ գիտնոց: Զայն կարգացած է Կղեմէս Աղեքսանդրացի († 215/6 իբրեւ հարազատ գործ Առաքելոյն: Որոգինէս համարած է զայն «կաթողիկէ Թուղթ». իբրեւ այդպիսի ներս առնուած է Codex Sinaitcus-ի մէջ: Բայց եկեղեցին չճանչցաւ

պայն Կանոնական գիրք: Յերոնիմոս դասեց Թուղթս անվաւերական կամ ծածուկ գրոց մէջ:

Մխիթար Այրիվանեցի տուած է մեզի երկու ցանկ «Գիրք Հրէից ծածուկքն» եւ «Սրբոյն Կղեմայ եթէ ո՞ր գիրք ընդունելի է»· առաջինը կը յիշէ «Կաթողիկէ Թուղթք Բառնաբայ». եւ երկրորդը՝ «Թուղթն Բառնաբայ» (էջ 33): Հին թարգմանութիւն մը այս Թուղթին կամ թուղթերուն՝ ծանօթ չէ: Ինչպէս կը հաստատէ Ն. Լամբրոնացի Յիշատակագրութեան մէջ, թարգմանած է ինքը այս Թուղթը յոյն բնագրէ: Այս թարգմանութիւնը, որ մեզի հասած չէ, պէտք է կատարուած ըլլայ 1197ին Կ. Պոլիս, ուր առիթ ունեցած էր աչքէ անցնել Պատրիարքարանի յոյն ձեռագիրները:

Ներսէս հետամուտ եղած էր հայ Աստուածաշունչ Մատեանը ճոխացնել նոր յաւելուածներով, սուրբ-գրենական գրքերով. ասկէ յառաջ Աստուածաշունչի մէջ ներառած էր Յայտնութիւնն Յովհաննու, այժմ գտնելով Բառնաբաս առաքելոյն Թուղթը՝ կը թարգմանէ զայն: Կ՚երեւայ թէ այս տատամսած է նոյնին կանոնականութեան մասին:

Բառնաբասի Թուղթին նայող հրատարակութիւնք եւ քննութիւնք տես O. Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, Band I, zweite Auflage, Freiburg i. B. 1913, S. 103—116.

12.

## ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ՄԱՏԵԱՆԸ

*Մովսէս Երզնկացի օրինակած է* 1298*ին Էջմիածնի Թ.* 153 *Աստուածաշունչ Մատեանը: Այս տեղ, թղ.* 418*ր յիշատակագրած է.*

*«Փառաւորէ մարդասէրն Աստուած զհոգի տեառն Ներսէսի Լամբրոնեցւոյ, որ ի վերայ ամենայն յաւելուածոց բարեացն, զոր պարգեւեաց ազգիս մերում թարգմանութեամբ եւ մեկնչութեամբ բազմաց տառից, եւ զայս եւս յաւել, շնորհելով մեզ ի միասին զՀաւաքումն աստուածաշնչիցս, նախանձ բարի արկանելով ամենեցուն. զի մինչեւ ցնա ոչ երեւէր թէ լինել էր յազգիս մերում: Եւ ի մերումս ժամանակի գրեթէ երկուս կամ երիս միայն տեսաք յաւելեալք զկնի նորա: Եւ տես զտարապամութիւն ազգիս. զի այժմ հարիւր ամ կամ թէ եւս աւելի ի նմանէ մինչ առ մեզ եւ այնչափ զոն աճեցեալք, որչափ տասացաք:*

*Եւս առաւել զարդարեաց Աստուած զհոգիս սրբոց թարգմանչացն, որք աստուածաբար երախտաւորք են ազգիս Հայոց. որք բազում երկամբք եւ աշխատութեամբ այսպիսի անկողոպտելի գանձ պարգեւեցին մեզ»:*

*Հրտ. Արարատ,* 1904, *էջ* 127. *տակէ՝ Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ* 607—609: *Այս ձեռագրէն արտագրուած կ'երեւայ Թորոս Հռոմկլայեցւոյ օրինակը, գրուած*

1309—1310ին. ուսկից ծագած է Դաղեան Խաչիկ վարդապետի Թ. 2 Աստուածաշունչը, գրուած 1610ին, որ նոյնպէս պահած է Յիշատակագրութիւնս, տես Յ. Թօփճեան, Ցուցակ Խ. Վ. Դաղեանի ձեռագիրների, էջ 6:

Ս. Գիրքի կանոնական գիրքերը թարգմանուած էին թէեւ Ե. դարուն, բայց կը տեսնուէին անոնք հրապարակի վրայ ուրոյն ուրոյն հատորներով, որոնք կազմուած էին երկու–երեք գիրքերու միացումով: Ներսէս տեսած էր անշուշտ, Յունաց, Ասորւոց եւ Փռանկներու քով, թէ այդ մասերը որոշ դասաւորումով մէկ հատորի մէջ հաւաքուած էին: Անոնց հետեւելով հաւաքեց ինքն ալ հայ Աստուածաշունչի զանազան մասերը եւ կազմեց անոնցմով հաւաքում մը մէկ հատորի մէջ: Այդ Հաւաքումին մէջ առաւ ինչ բնագիր որ առձեռն գտաւ: Վասն զի կային բնագիրներ, որոնք թէ յունարէնէ եւ թէ ասորերէնէ թարգմանուած էին, ինչպէս նաեւ գոյութիւն ունէին սրբագրուած եւ ոչ սրբագրուած բնագիրներ:

Իր կազմած Հաւաքումին մէջ կը պակսէր Յովհաննու Յայտնութեան հին թարգմանութիւնը, բայց գտաւ զայն նոր թարգմանութեամբ մը, զոր հարկաւոր տեսաւ սրբագրութեան: Կատարեց սրբագրութիւնը եւ զետեղեց Աստուածաշունչին մէջ:

Մովսէս խրատունք ունէր գանգատելու, թէ ԺԳ. դարու ուսումնատէրք անփոյթ գրո–

նուած էին բազմացնելու Լամբրոնացւոյ Աստուածաշունչը։ Այս պատճառով ալ անծանօթ անոր գոյութեան, Սարգիս Երզնկացի եպիսկոպոսը միւսանգամ կը ձեռնարկէ նման հաւաքման մը. Թոյլ կու տամ իր գրչին անձամբ ներկայացնել գործին որպիսութիւնը.

«Զատացաւ այժմ աստուածաշունչ տառիցս համահաւաք Կտակարանաց Հնոց եւ Նորոց, զառաքելաշնորհ եւ զարհի եպիսկոպոսն մեր եւ զվերադիտող մեծի վիճակիս Եկեղեաց գաւառիս եւ մեծահռչակ քաղաքիս Երզնկայիս զտէր Սարգիս եւ զաստուածատէր եւ զամենիմաստուն իշխանն զպարոն Յովհաննէս հանդերձ աստուածատուր զաւակաւ իւրովք յիշեսջիք ի Տէր, ով պաշտաւնեայք ուրբ եկեղեցւոյ. քանզի մեծաւ փափաքանաւք եւ ջերմեռանդն սիրով շարժեալ եղեւ ի Հոգւոյն սրբոյ հոգիընկալ միտս սորա ժողովել ի մի վայր զամենայն տառս Հոգենուագ մարգարէիցն եւ զՔրիստոսի Աստուծոյ մերոյ տնաւրէնութիւնս, զկենարար քարոզութիւնն եւ զհանգամանսն եւ զսրբոց առաքելոցն զգործս եւ զնոցին քարոզութիւնն եւ զՏեառն Յովհաննու աւետարանչի որ ի Պատմոս կղզւոջն։ Զոր Տէր բարեխաւսութեամբ սրբոց մարգարէիցն եւ առաքելոց եւ ամենայն սրբոց ժողովեսցէ զսոսա յիւր արքայութիւնն. եւ նմա փառք յաւ"։

Աւրհնութիւն... ի Թուականիս Հայոց ՉԺԸ (1269)։ Արդ գրեցաւ պրակս աստուածային սուրբ մարգարէին Եսայեայ հրամա-

նաւ եւ արգեամբք տեառն Սարգսի սրբասէր եւ արհիական եպիսկոպոսի եւ նորին հարազատ որդւոյ աստուածասէր եւ քրիստոսապաշ իշխանին պարոն Յովհաննիսի, ի վարժումն անձին իւրոյ եւ ի պէտս սուրբ եկեղեցւոյ եւ ի խրատ աստուածատուր եւ դեոարրյս զուարկաց իւրոց Ներսէսի եւ Գրիգորի: Ով մանկունք սուրբ եկեղեցւոյ, աղաչեմ յիշել ի Տէր...: Ընդ նմին եւ զՄովսէս գրողս:

Թղ. 221բ. ԶՅակոբոս գծող սորին զսատանուն կրաւնաւոր, զհօգեւոր եղբայրն իմ զՄխիթար սրբասէր կրաւնաւորն աղաչեմ յիշել ի Տէր»:

Այս տուեալներէն կը տեսնուի թէ Յակոբոս եւ Մխիթար գրիչները 1269ին յԵրզնկա հրամանաւ, անշուշտ նաեւ ցուցմունքներով Սարգիս եպիսկոպոսի եւ անոր գրագէտ որդւոյ Յովհաննէսի «համահաւաք» բրած են Հին եւ Նոր Կտակարանի գրքերը: Սկզբնագիրը պահուած է այժմ Երուսաղէմ, Թ. 1925 ձեռագրին մէջ, որուն մանր նկարագրութիւնն տուած է Ց. Մուրատ, Յայտնութիւն Յովհաննու, էջ յզ—յձդ:

13.

## ՀԱՒԱՔՈՒՄՆ ՀԱՐԱՆՑ ՎԱՐՈՒՑ

Հաւաքածոյս կազմած է Ներսէս Լամբրոնացի, Հին եւ Նոր Թարգմանութիւնները յօրինուածօրէն զատաւորելով, «փոխաբա-

նոք ի միասին համարոց»։ Վերջին կերպարանքը տուած է 1192ին, խնդրանքով իր աշակերտին եւ ոստաւորին Խաչատուր անուն. գրիչն եղած է Գէորգ վարդապետ (այսպէս խմացիր Հայապատում, Բ., էջ 423, ծ. 1)։

Յիշատակարան.

Փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ յաւթեամբ զաւրութեան իւրոյ ժամանեցոյց զգրիչս յաւարտումն մատենիս, որ գրեցաւ ի պատիւ աստուածութեանն իւրոյ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Յամի Թուականութեանս Հայոց ՈԽԱ. (1192) եւ ի Հայրապետութեան տեառն Գրիգորի մակակոչելոյ Տղայի եւ ի Թագաւորութեան Յունաց Իսահակայ ի Կ. Պաւլիս, գրեցաւ Վարք սրբոց Հարցն եւ խաւսք աւգտակարք եւ բանք վարդապետութեան լիապէս, որ գտաւ առ այժմ ի զանազան օրինակս ի մի հաւաքեալ ի վանքս Սկեւռայ, ընդ հովանեաւ տեառն Աստուծոյ եւ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի տաճարի եւ մաւր իւրոյ Աստուածածնի եւ կենաւկիր պատուական սուրբ Փայտիս, հրամանաւ ճգնազգեաց եղբաւր մերոյ Խաչատրոյ։

A Վարք Հարանց։
B Զարր.։
S Սիսուան։

2 տեառն չունի B։ — 3 մակակոչելոյ չունի A։ — 7 առ չունի B։ — 10 իւրոյ չունին BS։ — 13 վա-

*Քանզի այս աստուածային այրս ստիպեալ զիմ տկարութիւնս զհամակրան եղբարս իւր Գէորգեայ՝ ընուլ զփափագ անձնանց իւրոց այսու մատենիւս. եւ ես ըստ յաւժարութեան սորա եւ ձեռնատուութեան աղաւթից յանձն առի աւելի քան զկար իմ, եւ շնորհիւն Աստուծոյ կատարեցի, ընդ ձեռամբ հոգեւոր վերակացութեան տեառն իմոյ Ներսեսի արքեպիսկոպոսի սրբոյ, որ այժմ կայ ի գլուխ սուրբ եւ հռչակաւոր այս ուխտի միաբանութեան ժողովոյ եւ հովուէ զմայրաքաղաքն Տարսոն հանդերձ գաւառաւքն Կիլիկիոյ:*

*Եւ քանզի այս աստուածային այր ընթերցաւ գրոց Աստուծոյ եւ Մեկնոց, այլ եւ փափաքանաւք ի միաւին հաւաքող. որոյ եղբայրս այս Խաչատուր կամակատար աստուաւոր եւ մաքուր անձին սրբութեամբ պաշտաւնեայ, աշակերտեալ բանից եւ նմանութեամբ ընթացից վարուց եւ բաղձանաց ի նոյն նկրտեալ. որոյ եւ սա ըստ չափոյ իւրոյ ստացաւ մատեանս գրոց հաւասար տեառն իւրոյ եւ վարժապետի. եւ զայն ի նորին յորդորմանէ եւ խրատու յաւժարութեամբ ետ գրել. քանզի միշտ յէր ի վարդապետախաւս բանից նորին»:*

*Հրատարակուած՝ Վարք Հարանց, Ա., Վենետիկ 1855, էջ Ը—Թ: Զարբհանալեան, Մատենադարան, 551—552: Յովսէփեան,*

րոց չունի B: — 34 նկրտեալ B նկրտիլ S:

Յիշատակարան, Ա., էջ 559—562: Հմմտ. նաև Սիսուան, էջ 98:

Այս Յիշատակարանը գտած է Հ. Մ. Աւգերեան. «Դէպ եղև ինձ տեսանել ուրեք զօրինակ մի Հարանց վարուց՝ գրեալ ի Սկեւռայ վանս յաւուրս Լամբրոնացւոյն ի պէտս գործածութեան նորա. որպէս մեկն նշանակեալ կայր ի յիշատակարանի գրչին. շարադրութիւն կամ թարգմանութիւն տարբեր ի սովորականէն, որպէս և ընթացքն և կարգաւորութիւնն այլազգ. ուստի յայտնի իմաստասիրեմք. թէ Լամբրոնացին ունելով ի ձեռին զյունարէն և զհայերէն օրինակս պէսպէս՝ հաւաք լեալ ի լոյս էած զայն օրինակ, որ է տաւել կարգաւորեալ. այն խակ է, բառ որոյ ապեցա և տպագրեալն. Թող զաւելորդ ինչ յաւելուածս յօտարաց» (Լիակատար Վարք և Վկայաբ. սրբոց, Ե., էջ 353):

Աւգերեան տեսած է տպագրուած Վարք Հարանցը Կ. Պոլսի 1810ին (Վարք Հարանց, 1855, Յառաջաբան): Իսկ «տպագրեալ» Հարանց Վարքը լոյս տեսած է Կ. Պոլսի 1720ին, որ գրեթէ նոյն է ծանօթ ձեռագիրներուն հետ. Հմմտ. Վիեննայի Թ. 66, մանրամասն նկարագրուած Հ. Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 290—304):

Ուշադրութեան արժանի են նաև Հ. Աւգերեանի նկատողութիւնները. «Կանոնք Ս. Բենեդիկտոսի. յորմէ ճառն խոնարհութեան բառ մասին տպագրեալ է ի Հարանց վարս» (Կ. Պ. 1720, էջ 355—358)՝ ՆՀԲ. 13ա.

ձեռ. համ. 19ա: Նկատի պէտք է առնել, որ ԺԴ. դարուն Վարդան Այգեկցին այլ յաւելուածներ մուծած է Հաւաքածոյքին մէջ. որոնց մասին խօսիլ տեղս չէ:

Վկայութիւն. 1. Անանուն կենսագիրը կը գրէ Ներսէս Լամբրոնացւոյ համար. «Զեկեղեցական հարանց վարսն յարմար ընթեռնլոյ՝ ի նոյին տեղւոջ փոխարկէր». «Թարգմանեաց զսուրբ Հարցն զվարսն» (Հայապ. 422 և 423): 2. Գր. Սկեւռացի (Սոփ. ԺԵ. 39). «Քաղեց... (զ)Թարգմանութիւնս հայեցեալ ռամկաց՝ զոր յայլասեռ լեզուաց թարգմանեալ Եկեղեցւոյ շնորհէր մանկանց. զվարս հարցն սրբոց, զկրօնաւորական ճգնաւորաց, զԱռաջնորդութիւն միաբանակցաց, զվկայութիւն նահատակաց, զՄեկնութիւն Կաթողիկեայց. որով ամենեքեամբք պայծառեալ շքեղացաւ պճնեալ զարդարեաց զեկեղեցւոյ բարեձեւութիւն»:

Սակայն ծանօթ չէ այդ թարգմանութիւններէն և ոչ մին յանուանէ: Աւետիք Պաղտասարեան 1800ին իր կազմած Հաւաքածոյքին մէջ առած է ի մէջ այլոց 1. «Յաղագս վարուց և ելից սրբուհւոյն Մարիամու Մագդաղինեայ», որուն վրայ երկրորդ ձեռք մը գրած է. «Այս ճառս թարգմանեցեալ ի Լատինացւոց ձեռամբ Ներսիսի Լամբրոնացւոյ ի հայ բառ»: 2. «Յաղագս վարուց և ելից սրբուհւոյն Մարթայի». նոյն ձեռքն վրան գրուած «Ն. Լամբրոնացւոյ թարգմանեցեալ»: Հ. Ղ. Ալիշան, որ ցուցակագրած է ձեռա-

*գիրս, կը գրէ առաջնոյն համար, թէ «Լամբրոնացւոյ միւս շարագրութեանց չի նմանիր» (Բազմավէպ, 1897, էջ 424)։ Նոյնը կայ նաև Բեռլինի Թ. 805, թղ. 303ա—304բ (1548էն)․ որուն վերջաւորութեան կ'րսուի րոկ «Թարգմանեցաւ պատմութիւնս ի լատին գրոց»։*

ՄԱՍՆ Գ.

# ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ՊԱՀԼԱՒՈՒՆԵԱՑ, ՀԱՍԱՆԵԱՆՑ, ԹՈՐՆԻԿԵԱՆՑ ԵՒ ՀԵԹՄԵԱՆՑ

## ՊԱՀԼԱՒՈՒՆԵԱՑ ԱԶԳԱՏՈՀՄԻՆ ՎԵՐՋԸ

Պատմութեան մէջ առաջին անգամ Սամփսոն Սասունիկ է, որ կը յիշատակէ «Պահլաւունի» անձին գոյութիւնը. պատմագիրս, որ աւարտած է իր Պատմութիւնը 1004ին, խօսելով 998 տարւոյ դէպքերու վրայ կը յիշէ «իշխանաց իշխան Վահրամ որդի Գրիգորոյ Պահլաւունւոյ» (էջ 270): Այս Վահրամ, որ «անթիպատ պատրիկ» տիտղոսը կը կրէ, արձանագրել տուած է իր կնոջ Սոփիայի († 1015) տապանաքարին վրայ. «Այս է հանգիստ Սոփիայ... կնոջն Վահրամայ Պահլաւունւոյ». իսկ 1029ին Մարմաշէնի եկեղեցւոյն մէկ արձանագրութեան մէջ ներկայացուած է ինքզինքը. «Ես Վահրամ... ի ցեղէն Պահլաւունի եւ ի զարմից սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչին»: Վահրամի եղբօրորդին Գրիգոր Մագիստրոս ողբալով իր հօրեղբօր մահը († 1044), կը մաղթէ անոր. «Բազմեսցիս ի գոգս ի մեծին Գրիգորի եւ ի հաւուն քո Աբուղամրի եւ Կամսարեանն Արտակոյ. քանզի ազգ սեփական եւ որդիք Աբրահամու յազգէն Բեւտուրական, ի գաւառէն Պարթեւաց, ի քաղաքէ Պահլաւ, ի ցեղէ Արշակունի, շառաւիղ մերոյն Լուսաւորչին» (Թուղթ., էջ 40):

*Մագիստրոս ինչպէս այն բովանդակ թուղթին մէջ, նոյնպէս հոս Մովսէս Խորենացւոյ ազդեցութեան տակ է։ Պարթեւ Արշակունիներու ծագումին համար նկատի ունի Մ. Խորենացւոյ Բ. 68 գլուխը։*

*Այս աւանդութեան հետեւելով է, որ Ներսէս Շնորհալի իր Վիպասանութեան մէջ (էջ 540—541) Գրիգոր Լուսաւորչի տան յաջորդութիւնը ներկայացուցած է Ս. Սահակէն մինչեւ Վասակ Պահլաւունի († 1021).*

*Ի Սահակայ սորա սկսեալ*
*Մինչեւ առ մեզ ո՛չ վրճարեալ.*
*Ի յաշխարհէս ծնընդեան եկեալ*
*Ի հայրենեաց տարամերժեալ...*
*Սակայն բնութիւն ազգին պահեալ,*
*Որ Պահլաւիկըն կոչեցեալ,*
*Թէեւ թագուն իմն ամփոփեալ*
*Յամփիկ ազանց միջի ծածկեալ,*
*Միայն ինքեանց ներհուն եղեալ*
*Որ յայնմ ազգէ գոլով սերեալ,*
*Որդի զհայր փոխանակեալ*
*Մինչեւ առ մեզըս հասուցեալ,*
*Ի նախնական հօրէ սկսեալ*
*Ի Պարթեւէն Լուսաւորեալ,*
*Մինչ ի Վասակ Քաջըն հասեալ,*
*Այն որ արեամբ նահատակեալ:*

*Այս եւ նման տեսութիւնները, որ անստոյգ աւանդութեան վրայ յեցած են, չեն կրնար իբրեւ պատմական իրողութիւն նկա-*

*տուիլ: Նախ իսկ անստոյգ է, թէ Գրիգոր Լուսաւորիչ պարթեւական ծագումէ ըլլայ. անոր Անակայ որդի ըլլալը 490ին հրապարակ հանուած է: Գրիգորին «Պարթեւ» յորջորջումը առաջին անգամ Կոմիտաս Կաթողիկոսի մէկ թուղթին մէջ յիշատակուած է*[1], *ուստի Է. դարու առաջին քառորդին: Գրիգորի տան «Պահլաւունի» նախարարական տոհմի բարձրացումը Ժ. դարուն միայն հրապարակայուր կ'ըլլայ*[2]:

*Գրիգոր Մագիստրոս Պահլաւունիներու նախահայրը կ'անուանէ «Արշակ* Կամսարեան»: *Մովսէս Խորենացւոյ համաձայն Կարենեան Պահլաւներու հայկական ճիւղը Դ. դարուն իր տանուտէրն ունէր Կամսարը.*

---

[1] *«Սուրբն Գրիգորիս* Պարթեւ *հայրապետ Հայոց մեծաց». Գիրք Թղթոց, Թիֆլիս* 1901, *էջ* 214:

[2] *Ուրիշ մը «Վասն վանօրէից Հայոց որ յԵրուսաղէմ» գրուածքին վերջը զետեղած է տեղեկութիւն. «Երանելւոյն Անաստասայ Հայոց վարդապետի գրեալ զանուանս վանօրէիցն Երուսաղեմի ի խնդրոյ իշխանին Համազասպայ Կամսարականի* Պահլաւունւոյ. *որ կամէր գնալ յԵրուսաղէմ, որ եւ գնաց իսկ... եւ ի հայրապետացն Երուսաղէմի թափեաց զՀայոց վանորայսն» (Հայապատում, Բ., էջ* 229): *Թէ գրուածքիս հեղինակն է Անաստաս, ի գլուխ հանած «ի խնդրոյ իշխանին Համազասպայ», պատճառ չունինք կասկածելու. բայց թէ իշխան Համազասպ «Կամսարական Պահլաւունի» եղած ըլլայ, ասոր դէմ կը բողոքէ ժամանակը, որ չի ճանչնար համանուն* Կամսարական *մը, եւ առաւել* Պահլաւունի *մը, բայց ծանօթ է իրեն իշխանապետն Հայոց Համազասպ Մամիկոնեան, ուսումնասէր եւ բարեպաշտօն: Այս տեղեկագիրս ուշ ժամանակի գրչէ մըն է, յամենայն դէպս Ժ. դարէն ետքը:*

*որուն անունէն տոհմը կոչուեցաւ* Կամսարական: *Կը համարիմ թէ Մագիստրոսի «Կամսարեանը» համազօր է այս «Կամսարականին». բայց ինչո՞ւ խորշած է Մագիստրոս այս պատմական տոհմանունէն:*

*Գրիգոր Մագիստրոս կը գրէր իր հօրեղբօր ներբողը 1045ին, երբ տակաւին չէր վճռուած Բագրատունեաց թագաւորութեան բարձումը:*

## ԿԱՄՍԱՐԱԿԱՆՔ

*Աւանդութիւնը, զոր տուած Մ. Խորենացին (Բ. 87, 90), կը ճանչնար Կամսարականները Կարենեան պահլաւ տունէն, անունը ստացած Կամսար տանուտէրէն, որ քրիստոնէութիւնը ընդունած է Ս. Գրիգորէն, Տրդատ Մեծի կնքահայրութեամբ: Ե. դարուն, երբ Ս. Սահակի մահուամբ (439) շիջաւ Ս. Գրիգորի արական ցեղը, Սահակի դուստրը (Սահականոյշ) կ'ամուսնանայ Մամիկոնեան Համազասպի հետ, որմէ կը ծնանի Կարմիր Վարդան, որ իրեն փեսայ կ'առնէ Արշաւիր Կամսարականը (Փարպ. 65): Կ'ենթադրէ աւանդութիւնը, թէ շարունակուեցաւ Ս. Գրիգորի շառաւիղը Կամսարականներու քով որդւոց յորդի. վասն զի անոնք, ըստ Մ. Խորենացւոյ, նոյնպէս պահլաւեան ցեղէն էին: Մամիկոնեանները, որոնց միջնորդութեամբ մտած էին Կամսարականները Գրիգորի շառաւիղին մէջ, անտեսուեցան,*

որովհետեւ Մ. Խորենացի չէր բարեհաճած զանոնք ալ պատմական տոհմէն բխեցնել:

Մինչդեռ, աւանդութեան համաձայն, գաղտնի պահած են Կամսարականները իրենց Գրիգորի շառաւիղէն յառաջագայութիւնը մինչեւ Թ. դար, պատմութիւնը շատ անգամ արձանագրած է իր էջերուն մէջ, սկսած Գ. դարու վերջին քառորդէն, Կամսարականներու արենակցութիւնը Մամիկոնեաններուն հետ. Փաւստոս կը վկայէ թէ իբր 275ին Արշաւիր Կամսարական, իշխան Շիրակայ եւ Արշարունեաց գաւառին, եւ Անդովկ իշխան Սիւնեաց. «փեսայք էին տանն Մամիկոնեան տոհմին» (Գ. 11). իբր 315ին, երբ Արշակ Բ. (297—338) կոտորեց ազգատ ըրաւ Կամսարական տոհմը, Վասակ Մամիկոնեանն էր, որ «յազգէն յայնմանէ մանկիկ մի փոքրիկ, անուն Սպանդարատ թագուցեալ ապրեցուցանէր... որ յետոյ լինէր ժառանգ աշխարհին» (Գ. 19): Այս խնամութիւնն եւ խնամարկութիւնը երկու տոհմերու կը տեսնենք նաեւ քաղաքագիտական եւ պատերազմական ասպարէզներու վրայ. որ միախորհուրդ են եւ նիզակակից իրարու հետ: Երկուքն ալ կուսակից արեւմտեան քաղաքականութեան, ուստի անհաշտ պարսկին եւ արքայութեան հետ. այս պատճառով ալ անհամաձայն Բագրատունիներու հետ, որոնք կը պաշտպանէին արքայական ուժին առաջ: 775ի ապստամբական շարժումի ձախողը եւ բերաւ իրեն հետ անձիտումը Մամիկոնեան տոհմին արքայական

տիրապետութեան տակ: Կոտորածէն վերապրողները ապաստան փնտռեցին Կայսերքով, որուն շուրջը կային, արդէն վաղ ժամանակներէ ի վեր, քաջարի Մամիկոնեաններ: Կամսարականները հանդուրժուեցան, բայց իբրեւ անբաղձալի տարր: Շիրակի եւ Արշարունիքի վերջին տէրն է Ներսեհ Կամսարական: 784ին Օթման ոստիկան, որ պիտի արշաւէր Հոնաց եւ Խազրաց դէմ, զօրակոչ ըրած էր նաեւ հայ նախարարներուն, մասնակցելու արշաւանքին իրենց հեծելազօրքով: Անոնց թուին մէջ էր նաեւ Ներսեհ Կամսարական: Արար զօրագլուխը հայ նախարարական գունդերը զետեղեց Քերանի դաշտին վրայ, ամառ ժամանակ, խորշակի ենթակայ. որուն հետեւութեամբ «ի տապախառն օդոյն» վախճանեցան հայ նախարարները եւ այրուձիէն շատերը. ի մէջ այլոց իշխանն Տաճատ, սպարապետն Բագարատ եւ Ներսեհ Կամսարական (Ղեւոնդ, էջ 161): Ինչպէս կ՚երեւայ, վերադարձողները քրխտանեալ զօրքին այս տարապարտուց կորուստը վերագրեցին Օթմանի չարամտութեան եւ բողոքեցին ամիրապետի առաջ. որ հրամայեց «խափանել զիշխանութիւն նորա». նշանակուեցաւ նոր ոստիկան: Ասով չբարւոքեցաւ սակայն դրութիւնը. Հարկապահանջութիւններն եւ հարստահարութիւնները անտանելի գործեցին բնակչութեան կացութիւնը: Չէ յիշուած թէ Ներսեհ ունեցա՞ւ իր յաջորդը. բայց կը պատմէ Ղեւոնդ, թէ եր-

կու տարի ետքը (787/8) աւելի քան 12·000 հոգի, «արք հանդերձ կանամբք եւ մանկ-տեաւ» «եւ այլք ի նախարարաց Հայոց եւ նո-ցին հեծելոց» առաջնորդութեամբ Ամատունի Շապուհի եւ իր որդւոյն գաղթեցին «փախըս-տեայ յաշխարհն Յունաց», հետապնդուած արաբ զօրքէն, որուն հետ բախումներ ալ ու-նեցան (անդ., 168): Սիրով ընդունեցաւ զա-նոնք կայսրը:

Անոնց թուին մէջ կը գտնուէին անտա-րակոյս նաեւ Կամսարական ազատներ, Շի-րակացիներ եւ Արշարունիներ. որուն հե-տեւութեամբ անտէրնչութիւն մը կը տիրէ երկրին վրայ: Վարդան պատմիչ կը գրէ թէ Մուշեղ Մամիկոնեանի մէկ դուստրը «եւ զինքն յամուսնութիւն Ջահապի ումեմն Իս-մայելացւոյ՝ թիկունս առնելով զնա... եւ զի Ջահապ յափշտակեալ էր մասն ինչ յԱրշա-րունեաց եւ խորհէր տիրել ի ձեռն կնոջն բո-լոր աշխարհին, զայն առին յինքեանս Աշոտ եւ Շապուհ (եղբարք Բագրատունիք). եւ եկեալք զկողմամբքն Շիրակայ՝ հարին զզօրսն Իսմայելի որ անդ, գրաւեցին յինքեանս զՇի-րակ եւ զԱշոցք եւ զգաւառն Տայոց» (էջ 76): Ասկէ կարելի է հետեւցնել, թէ անտիրական մնացած Արշարունիքն եւ Շիրակը աւար եղած էին Արաբացւոց, զորոնք սակայն կը յաջողին Բագրատունի եղբայրները նուաճել իրենց իշխանութեան տակ: Զայս կը հաս-տատէ Ստեփանոս Ասողնիկ, երբ կը գրէ թէ Աշոտ Մսակեր (806—826) «զանձագին արար

զգաւառն Արշարունեաց յազգէն Կամսարականաց. եւ զարքունիսն ի Կողովիտ յԱրշարունիս փոխեաց» (էջ 106)։ Այս անցքերը պէտք է դնել 786—806 տարիներու մէջ։

Դար մը պանդխտեցան փախստականները հայրենիքէն հեռու՝ կայսեր ծառայութեան մէջ։ Այս միջոցին մեծամեծ փոփոխութիւններ տեղի ունեցան արեւելքի մէջ։ Արաբական հզօր պետութիւնը տկարացած էր ներքին քաղաքային կռիւներով. Բիւզանդական գահին վրայ բազմած էր Վասիլ Հայկազն, «արշակունի» կայսրը (867—886), որուն արշաւանքները յաղթական եղած էին արեւելք եւ արեւմուտք։ Հայ նախարարները, որոնք գերի տարուած էին Սամառա, վերադարձած էին. Աշոտ Բագրատունի իշխանաց իշխան կարգուած, իսկ 885ին կրկին թագով պսակուած, Ամիրապետի եւ Կայսեր կողմէ. Աշոտ թագաւորի եւ Վասիլ կայսեր մէջ դաշնադրութիւն կնքուած։

Այս փոփոխութիւնները չէին կրնար անտարբերութեամբ դիտուած ըլլալ Բիւզանդական պետութեան մէջ գտնուած հայ գաղթականութեան կողմէ. որ ունէր իր մէջ բարձրաստիճան զինուորականներ, պաշտօնեաներ, գիտութեան մարդիկ եւ կալուածատէրներ։ Այն նախարարական տուները, որոնք գաղթած էին 787ին, եւ անկէ յառաջ եւ ետքը, թողուցած էին իրենց ետեւ նոր սերունդներ։

## ԿԱՄՍԱՐԱԿԱՆՆԵՐՈՒ ՎԵՐԱԴԱՐՁԸ ԻԲՐԵՒ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

786ի մեծ գաղթին վրայ անցած էին 100 տարիներ: Խումբ մը հայ ազատներու կ'որոշեն վերադարձ դէպի հայրենիք: Այս վերադարձի մասին լուած են հայ պատմագիրները, յանուանէ Յովհաննէս Դրասխանակերտցի կաթողիկոս, որ առ հասարակ սակաւախօս եղած է Աշոտ Թագաւորի օրով կատարուած անցքերու մասին, առաքելով իր ընթերցողները Շապուհ Բագրատունի պատմագրին, որուն Պատմութիւնը չէ հասած մեզի: Բայց Պահլաւունիներու նոյնութիւնը Կամսարականներու հետ եւ անոնց նախնիք՝ Գրիգոր, Ապուղամր եւ Արտակ Կամսարեան, կը հարկադրեն ընդունիլ ժամանակ մը, որ կը շօշափէ Ժ. դարու սեմքը, եւ հաւանական կ'ընծայեն Արտակի վերադարձը ենթադրել 885էն ոչ շատ վերջը, յամենայն դէպս Աշոտի թագաւորութեան տարիներուն:

Արտակ վերադարձաւ անշուշտ իր գերդաստանին հետ. Թոյլտուութեամբ Թագաւորին, կանխաւ հրաժարմամբ իր տոհմական անունէն եւ «Շիրակայ եւ Արշարունեաց տէր» յորջորջումէն եւ իր նախնեաց իրաւունքներէն. փոխարէն խոստում ընդունելով թագաւորէն, թէ պիտի ստանայ կալուածք եւ բարձ. Թերեւս նաեւ օժանդակութիւն ճանապարհի ապահովութեան համար: Այս ենթադրութիւնները հիմնուած են Մ. Խորենացւոյ Գ. 38ի վրայ. տե՛ս վարը:

*Արտակ ոտք կոխեց հայկական սահմանը «Պահլաւունի» տոհմանունով, որ համազօր էր «Արշակունի» տոհմանունի. անուն մը, որով կը պարծէր ժամանակակից կայսրն Վասիլ հայկազն* (867—886), *սերած հայ «Արշակունի» թագաւորական տոհմէ, ինչպէս հաւաստած էր իրեն Փոտ նախկին պատրիարքը անձամբ կեղծած վաւերագիրի մը հիման վրայ: «Պահլաւունի», ուստի պարթեւ-պահլաւական* (*եւ արշակունի*) *շառաւիղէն, որով կը հանէր արմատին՝ Անակի որդի Գրիգորի, Հայոց Լուսաւորչին, որուն եթէ ոչ արենական, բայց ապահով հոգեւոր որդին կարող էր նկատուիլ, համանիշ «Լուսաւորչական», «Լուսաւորչադաւան» բառերու: Արտակի որդին, առաջին Պահլաւունին, անուն կը կրէ Աբուղամր, զոր Աճառեան կը մեկնէ արաբ.* Աբու-Ղամր, *«որդի Ղամրի» ձեւէն. «այսպիսի մի ձեւ ծանօթ չէ ինձ, կ՚ըսէ, բայց կայ արաբ. Ղամր իբրեւ անձնանուն, որի բուն նշանակութիւնն է ազնուաբարոյ, առատաձեռն եւ շատ համբերատար մարդ»* (*Կամուս Բ.* 57). *Անձնանունների Բառարան, Ա.*, 24: *Ասրպետ, Բազմավէպ*, 1909, *էջ* 209—210, *կը ստուգաբանէ արաբ.* Աբու-Ղամէր, *«Լուսաւորիչ»: Այս Մեկնութիւնը սքանչելիօրէն կը համապատասխանէ «Պահլաւունի Գրիգոր Լուսաւորիչ» անունին:*

*Քանի գոյութիւն ունէր Բագրատունի թագաւորութիւնը՝ Պահլաւունիք հաւատարիմ գտնուեցան իրենց խոստումին, չկիրարկել*

Կամսարական տոհմանունը․ Գրիգոր Մագիստրոս Արտակի անունին կից զգուշօրէն գրած էր «Կամսարեան»․ բայց երկրէն դուրս համարձակած էր Տղայ Վասիլ տալ իր տոհմանունը «Մայրենեօք Կամսարական» (Ուռհ․ 324)։

Ուշադրութեան արժանի է, որ Պահլաւունիները զգուշացած են նաեւ կրել հին Կամսարականներու յատուկ անձնանունները՝ Արշաւիր, Ներսեհ, Հրահատ եւ այլն։

Պահլաւունիները հայ թագաւորներու ծառայութեան մէջ ցոյց տուին իրենց անձնուիրութիւնը, հաւատարմութիւնն եւ առաքինութիւնները։ Բարձրացան զինուորական բարձր աստիճաններու, սպարապետութեան, մարզպանութեան եւ այլն։ Բագրատունի պետութեան մէջ երկու գլխաւոր տոհմ գոյութիւն ունէր Ժ․ եւ ԺԱ․ դարերուն․ Բագրատունիք եւ Պահլաւունիք։ Մատթէոս Ուռհայեցի կը գրէ յամի 1040։ «Խորհեցան Բագրատունիքն եւ Պահլաւունիքն...» (էջ 10)․ այսպէս համամիտ եւ համակամ։

## ՊԱՀԼԱՒ ԿԱՄՍԱՐԱԿԱՆՔ Մ․ ԽՈՐԵՆԱՑՒՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Կամսարականներու վերադարձը Պահլաւունի անունին տակ իբրեւ սերունդ պահլաւ տոհմէ՝ տեղի ունեցած է ժամանակ մը, երբ կ՚ապրէր Մ․ Խորենացի եւ կը պատմա-

գրէր իր Հայոց Պատմութիւնը։ Ապացուցած էի այլուր, թէ Մովսէս չէր կրնար 850էն յառաջ յօրինած ըլլալ իր Պատմութիւնը, նաեւ 900էն ետքը ոչ. ուստի կը մնայ ճշդել 850—900 յիսնամեայ շրջանի մէկ տասնեակը, ուր առաւելապէս գրուած կարող է ըլլալ այս գործը։ Նկատի առնելով այժմ այն ճիգը, որով կը ջանայ Մովսէս ցոյց տալ, թէ Կամսարականները պահլաւ-արշակունի տոհմէ են, կը խորհիմ թէ արդեօք այս ճիգը որոշ նպատակ մը չի՞ հետապնդեր. այս հետապնդումը աղերս մը չունի՞ Պահլաւունեաց հետ։ Դիտուած է արդէն, թէ Մ. Խորենացի իր Պատմութեան մէջ անցքեր նկարագրած է, որոնք Չ.—Թ. դարերու պատմական դէպքերէն վերցուած, յարմարցուած են։ Այսպէս նաեւ Կամսարականներու փախուստին եւ վերադարձին պատմութիւնը նոյն գծերով կը գտնենք փոխադրուած 400 տարի յառաջ. ուշադրաւ են առհասարակ թուականներուս զուգադիպումները Կամսարականներու պատմութեան մէջ. 385, 785, 885։

Մ. Խորենացի մինչ Մամիկոնեանց հանդէպ գտնուած է հակակրութեամբ, վերաբերուած է Բագրատունիներու եւ Կամսարականներու հետ արտակարգ համակրութեամբ։ Այս տեղ նկատի պիտի առնեմ այն տեղիքները, որոնք կը հային Կամսարականներու։

Պարթեւ-Պահլաւ Արտաշէս արքայից արքայէն սերած են Կարենեան եւ Սուրենեան պահլաւները. «յորմէ Ս. Գրիգոր եւ յորմէ

Կամսարականք» (Բ. 27). «Եւ ասեն զսուրբն Գրիգոր ի Սուրենեան Պահլաւէ եւ զԿամսարականս ի Կարենեանն Պահլաւէ» (Բ. 28)։ Պերոզամատն է «նախնին մեծի ազգին Կամսարականաց». իսկ «Կամսարական» անունը առած են անոր թոռնիկէն Կամսարէն (Բ. 73), որ Մեծին Տրդատի օրով կը մկըրտուի։ Կամսար սիրելի կ՚ըլլայ Տրդատին, որ կը շնորհէ Երուանդակերտը «մարդկան ազգին Կամսարականաց, որպէս մտերմաց եւ արեան կցորդաց ազգին Արշակունեաց» (Բ. 42)։ Արշակ Բ., հայրը Պապին, «զազգն Կամսարականաց բառնայր ի միջոյ, չարակնելով ագահեալ յամուրն Արտագերս եւ ի քաղաք ոստանի նոցա Երուանդաշատ»։ «Սպանդարատ որդի Արշաւրի, քանզի ունէր կին Արշակունի, որ եւ բնակեցաւ ի նորին կնոջն ժառանգութեան ի կողմանս Տարօնոյ եւ Հաշտենից»։ Երբ կը լսէ Սպանդարատ Կամսարականներու կոտորածին բօթը «հանդերձ որդւովքն Շաւարշաւ եւ Գազաւոնիւ եւ բոլոր ընտանեօքն գնաց փախստական ի Յոյնս» (Գ. 31)։ Սպանդարատի հօրեղբայրն է Ներսեհ։

Կը թագաւորէ Պապ. Սպանդարատ եւ այլ փախստական նախարարներ կը վերադառնան Հայաստան (Գ. 36)։ Ջիրաւի պատերազմին կը մասնակցի Սպանդարատ եւ ցոյց կու տայ իր քաջութիւնը (Գ. 37)։ «Պապ դարձոյց ի Կամսարականն Սպանդարատ զա–

մենայն ինչ զոր յափշտակեալ էր հօր իւրոյ Արշակայ» (Գ. 38)։

«Իբրեւ լուան նախարարքն Հայոց... թէ կացոյց Շապուհ (զԽոսրով)՝ թագաւոր հաւատացեալ Արշակունի, եւ զմուրհակ ուխտին (Շապհոյ առ նախարարս Հայոց)՝ թողեալ զԱրշակ (Գ.) դարձան ի բնակութիւնս իւրեանց, բայց յերից պատանեաց սննդակցաց արքայի եւ մտաւոր մերձաւորաց... (անոնց թուին մէջ էր) Գազաւոն որդի Սպանդարատայ տեառն Շիրակայ եւ Արշարունեաց... վասն որոյ զժառանգութիւնս նոցա կալաւ Խոսրով յարքունիս հրամանաւ Շապհոյ, եւ ոչ եթող զկալուածս որդւոյ ի հայր, եւ ոչ զեղբօր յեղբայր» (Գ. 43)։ Խոսրովի եւ Արշակի բանակները Երեւել դաշտին վրայ կ՚ընդհատուին. կը յաղթուի Արշակի զօրքը եւ կը դիմէ փախուստի. կը հետապնդուի Սահակ ասպետէն. «ուրանոր ահագին նահատակութիւնս ցուցեալ Գազաւոնի որդւոյ Սպանդարատայ, բազում անգամ դարձեալ յարձակմամբ՝ ցրուէր զհետամուտն եւ տայր պարապ ժամ գնալոյ Արշակայ»։ Արշակ կը վախճանի. «եւ այնուհետեւ ոչ եւս կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր. այլ առաջնորդէր նախարարաց կողմանցն այնոցիկ քաջն Գազաւոն» (Գ. 46)։ «Տեսեալ նախարարացն Հայոց, եթէ ոչ կացուցին Յոյնք ի վերայ նոցա թագաւոր... խորհեցան կամաւ հնազանդել թագաւորին Խոսրովու»։ Կը դիմեն թղթով մը առ Խոսրով. «Սորաստեղատառ

*Գագաւոն* եւ ամենայն նախարարք Հայոց մասինն Յունաց *տեառն մերում Թոորովայ արքայի կողմանն Այրարատայ խնդալ*։

«*Ինքնին, տէր, գիտես զմիամտութիւն մեր առ յիշեցեալ Թագաւորին մերում Արշակայ, զոր մինչեւ ցօր վախճանի նորա անշրջելի պահեցաք. եւ արդ* խորհեալ եմք նոյնպէս ծառայել քեզ միամտութեամբ, եթէ հաստատեսցես առ մեզ դաշամբք զերիս զայս :

«Ա. չյիշել զյանցանս մեր, *զոր պատերազմեցաք ընդ քեզ ի հարկէ եւ ոչ ի կամաց*» :

«Բ. զի դարձուսցես ի մեզ զամենայն ժառանգութիւնս մեր որ ի մասինդ Պարսից, զոր հատէք յարքունիս» ։

«Գ. հնարել թափել զմեզ ի Կայսերէ. *զի մի վրդովեսցեն զբնակութիւնս մեր, որք ունիմք իշխանութիւն յայսմ բաժնի*» ։

«Եւ զայս պայման ուխտի գրեալ եւ խաչ հաստատեալ կնքեսցես. զորս տեսեալ՝ փութասցուք ի ծառայութիւն ձեր : *Ողջ լեր, տէր մեր*» :

*Թոորով կը պատասխանէ. «Ուրախացաք ընդ լուր ողջունի ձերոյ. եւ առաքեցաք ըստ խնդրոյ ձերոյ զայս պայման ուխտի.*

Ա. չյիշել զյանցանս ձեր, *զոր չունէաք առ յանցանս խակ*, այլ առ երախտաւորս զմիամտելն առ թագաւորին Արշակունեաց զոր

պաշտէիքն. զի եւ առ մեզ զնոյն յուսամք լինել:

Բ. դարձուցանել ի ձեզ զժառանգութիւնս ձեր, զոր ունիմք յարքունիս, բայց յայնմանէ, զոր ումեք պարգեւեցաք. զի ոչ շրջին պարգեւք թագաւորաց առանց վնասու, մանաւանդ զի ի դիւանի հօրն մերոյ *տեսան Տաղհոյ արքայից արքայի* եմուտ: Այլ փոխանակ ընդ այնր յարքունուստ լնումք զձերայն պակասութիւն:

Գ. Թափեմք զձեզ ի գործակալացն Յունաց թէպէտ պատերազմաւ ընդ կայսեր, թէպէտ խաղաղութեամբ:

*Եւ զքեզ, Գագաւոն, որդին իմ եւ հարազատութիւն, ոչ ըստ վաղնջուց ազգականութեանն, այլ ըստ արդեանս, որ ի մօրէ քումմէ Արշամուշայ Արշակունւոյ,* հանել զքեզ ի հայրենեաց քոց Կամսարականաց *եւ ի մայրենիս քո յիմս առնել ազգ՝* Արշակունի անուամբ պատուեցից»:

*Զայս տեսեալ Գագաւոնի՝* ընդ հուպ դարձուցանէ զբնաւ նախարարսն առ արքայն *Խոսրով*, եւ բարեբաստիկ եղեալ քաջութեամբ հանդիպի ամենայն խնդրոցն եւ խոստմանցն:

*«Բայց Սամուէլի Մամիկոնեանի յինքն ըմբռնեալ զԹուղթն Խոսրովու եւ զպատճէն Թղթոյն նախարարացն՝ զատուցեալ ի նոցանէ գնաց առ կայսրն Արկադ....: Իսկ Արկադայ բարի արարեալ նմա՝ հրամայէ զհաւասար Թղթոցն հելլէն գրով ի դիւանի իւրում դնել,*

գի պահեցին յիշատակը ազգայ ապստամ-
բողաց, որ կայ մինչեւ ցայսօր[1]»: (Գ. 38):

Մ. Խորենացւոյ այս յառաջբերութիւն-
ներուս մէջ պատմական է միայն Կամսա-
րականաց կոտորածը Արշակէն, փոխ առ-
նուած Փաւստոսէն Դ. 19[2]: Ուշադրութիւն
կ'արթնցնէ Խորենացւոյ այն ճիգը, որով կը
ճգնի պահլաւ ցեղէ եւ արշակունի առհմէ
սերեցնել Կամսարականները: Յայտնի կը
տեսնուի թէ նպատակ մը կը հետապնդէ
պատմահայրը: Ի վերջոյ կը յանգի այն կէտի,
որ Խոսրով Գ. (385) ազգակի Արշակունի
կ'անուանէ զանոնք: Բայց Դ.—Թ. դարերու
հայ պատմագիրներու քով Կամսարականները
երբեք արշակունի անունով կոչուած չեն, ոչ

---

[1] Հմմտ. Ղեւոնդ, էջ 35—36. Սմբատ Կիւրապա-
ղատն եւ նախարարքն, որոնք Եղերացւոց Փոյթ քա-
ղաքին մէջ ապաստարան գտած էին, Արդլապիզի յոր-
դորանքին վրայ «զատանալ յիւրեանցական աշխարհս»,
կը կողոպտեն քաղաքին գանձն եւ եկեղեցւոյ սպաս-
ները եւ «դարձան ի Հայս հատուածեալք ի կայսերէն
Յունաց (Փիլիպպիկոս Կայսր). կայսերն լուեալ... եւ
կոչեցեալ զառաջնորդս եկեղեցեաց... հրամայէր նոցա
նզովս գրել ի մատենի... եւ ի նոյն աւուր կարգաւորե-
ցին ամի ամի զնոյն նզովս ընթեռնուլ մինչեւ ցայսօր»:

[2] «Բայց (Արշակ) զտոհմս Կամսարականացն, որ
էին գաւառաց տեարք Շիրակայ եւ Արշարունեաց, ա-
գատ անէր եւ զգաւառսն ունէր յատուկ: Բայց յազ-
գէն յանձանէ մանկիկ մի փոքրիկ անուն Սպանդա-
րատ՝ Թագուցեալ ապրեցուցանէր սպարապետն զօրա-
վարն Հայոց Վասակ, որ յետոյ լինէր ժառանգ աշխար-
հին: Թագաւորն Արշակ հրաման տայր յԱրշարունեաց
գաւառին շինել իւր բերդ մի անուամբ Արտագերս անուն»
(Փաւստ. Դ. 19): Արտագերսի շինութիւնը եղած է
նախաքրիստոնէական դարուն. անոր պարիսպները քան-
դուած էին...: Վերջին շինութիւնը տեղի ունեցած
է Դ. դարուն առաջին քառորդին Արշակ Բ. Թագա-
ւորի օրով:

դրակմանութեան եւ ոչ ալ արձանագրութիւններու մէջ։

Այն երկու թուղթերը, որոնք փոխանակուած են Գագաւոնի եւ Խօսրովի մէջ, յայտնապէս կ'ակնարկեն Ը.—Թ. դարու դէպքերը, երբ Կամսարականք թողլով իրենց հայրենիքը Շիրակ—Արշարունիք փախան Յունաց աշխարհը, (785ին) եւ վերադարձան Պահլաւունի—Արշակունի անունին տակ, Աշոտ Ա. Բագրատունի թագաւորի օրով, 885ին։ Պարզապէս զուգադիպութի՞ւն համարելու է Մ. Խորենացւոյ քով Կամսարականաց վերադարձը 385ին, ճիշդ 500 տարի յառաջ։ Տեղիքս. «առ երախտաւորս (համարիմ) զմխամաելն (ձեր) առ թագաւորին Արշակունեաց, զոր պաշտէիքն» կարելի չէ՞ Վասիլ կայսեր մերձեցնել, որ Արշակունի էր։

Վերադարձի պայմանները՝ կնքուած երկու կողմէ՝ ճշդիւ կը համապատասխանեն 885ի հանգամանքներուն։

Խորենացին արձանագրած է զայն իր պատմութեան մէջ ժամանակը փոխադրելով 500 տարի յառաջ։

Ասկէ կը հետեւի եւ այն որ Մ. Խորենացւոյ Պատմութիւնը գրուած է 885—900 տարիներու մէջ։

Գրիգոր Մագիստրոս մինչեւ իր հայրն եւ հօրեղբայրը երեք սերունդ կը յիշէր, որոնց ժամանակագրութիւնը կրնանք կազմել մօտաւորապէս.

1․ *Արտակ Կամսարեան* 850—900
2․ *Աբուղամր Պահլաւունի* 900—950
3․ *Գրիգոր Պահլաւունի* † 985
4․ *Վահրամ* († 1044), *Վասակ* († 1021)։

*Գրիգոր Պահլաւունի, Աբուղամրի որդին կը յիշուի* 981*ին սպարապետ տիտղոսով․ իր որդին Վահրամ նոյն դարու վերջը կ՚անուանուէր* անթիպատ պատրիկ, *ուսկից կը տեսնուի թէ լաւ աղերսին մէջ էր Կայսեր հետ։*

*Պահլաւունիք* 1042*ին ունէին «իբրեւ* 30 *ազատներ»* (*Արիստ․ Լաստ․, էջ* 47)։ 1045*ին կը վերջանայ Բագրատունեան թագաւորութիւնը․ Հայաստան կ՚ենթարկուի Բիւզանդական կայսրութեան։ Բիւզանդիոն չգիտցաւ երկրին պաշտպանութեանը համար տեղական զինուորութեան ոյժ տալ։ Փոխադրեց ազատները Միջագետք․ որուն հետեւութեամբ թէ նոր գրաւած սահմանները չկրցաւ պաշտպանել Սելջուկեանց յարձակումներուն առջեւ, եւ թէ Միջագետք փոխադրուած ժողովուրդը պահել իր ծառայութեան տակ։ Պահլաւունիններու եւ Բագրատունիններու մեծ մասը հեռացաւ երկրէն։ Կը պատմէ Մ․ Ուռհայեցի, թէ* 1112*ին վախճանեցաւ Գող Վասիլ Հայ իշխանը Քեսունի մէջ․ «եւ եղեւ սուգ սաստիկ ամենայն տանն Հայոց․ վասն զի առ նա էին ժողովեալ մնացեալ զօրքն Հայոց եւ ամենայն ազգն Բագրատունեացն եւ Պահլաւունեացն եւ որդիք թագաւորացն Հայոց եւ ամենայն ազգն Պահլաւունեացն հանդերձ ա-*

*պատագունդ զօրօքն Հայոց առ նա կային հանգուցեալ մեծաւ փառաւորութեամբ եւ աթոռ հայրապետութեանն առ նա եղաւ» (ի Կարմիր վանս)... Եւ տան գիշխանու-թիւն Վասլին՝ Տղայ Վասլին, որ էր* մայրե-նեօք յազգէ Կամսարական, *անեալ եւ զար-գացեալ ի տան Վասլին որպէս զորդի ի ծոց հօր իւրոյ»* (*էջ* 323—324)։

*Դժբախտաբար պատմագիրը Վասիլի ոչ Կամսարական մօր անունը տուած է եւ ոչ ալ հօրը «ազգը» կամ ազգանունը։ «Մայրե-նեօք յազգէ Կամսարական» կ՚ենթադրէ Պահ-լաւունիները։ Վերջինն է Վասիլ, որ Կամ-սարական անունը կրած է։*

## ԱԶԳԱԾԱՌԸ

*Պահլաւունիները աճեցան եւ բազմաւա-ճեցան ընթացս մէկ ու կէս դարու* (885—1050)։ *Արիստակէս Լաստիվերտցի* 1042*ին պահլաւունի ազատներու թիւը հաշուած է «իբրեւ* 30»։ *Ասոնք չորս սերունդի զաւակ-ներ են։ Պատմութեան մէջ յիշուած են ա-նոնցմէ ոմանց միայն անունները, երբեմն առանց մասնաւոր ճիւղագրական մանրա-նշումներու. որով կը դժուարանայ անոնց ա-նունները ներս առնել պահլաւունի ազգածա-ռին մէջ։ Մեզի ծանօթ է մասնաւորապէս Ապուղամրի Պահլաւունւոյ Գրիգոր որդւոյն ճիւղը, որ արական գծի վրայ մարեցաւ երրորդ սերունդի մէջ. բայց ճիւղաւորուե-ցաւ իգական գծի վրայ, որ երեք ճիւղ կը*

*ներկայացնէ, ըստ Թուղ Բջնեցի Գրիգոր Մագիստրոսի դուստրներու, որոնք հարս գացին իշխանական տուներու: Մինչ Գրիգորեանք 1045էն ետքը հեռացան մայր հայրենիքէն, ինչպէս կ՚երեւայ Հասանեաններէն ոմանք չարունակեցին մնալ հայրենիքի հողին վրայ:*

*Պահլաւունի իգական գծի վրայ բուսած ճիւղերը, որոնք նոյնպէս նկատի պիտի առնուին, կը ստորաբաժանուին համեմատ այն իշխանական տուներու, որոնք կազմուեցան: Այս ճանապարհի վրայ օղակուեցան իշխանական տուներ իրարու աղջիկ տալով եւ առնելով: Տեւեց այս տուրեւառը մինչեւ 1300, մօտաւորապէս*

*Պահլաւունիներու ազգածառը կազմելու առաջին փորձերը կը պարտինք Ե. Դիւլորիէի եւ Հ. Ղ. Ալիշանի, Շնորհալի, էջ 8—14, ազգածառ «Երկրորդ Պահլաւունիք», բնագրէն դուրս առանձին:*

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

*Ազգաբանութեանս համար մեր աղբիւրներն են. քարեայ արձանագրութիւններ, ձեռագրական յիշատակարաններ եւ ժամանակակից պատմագիրներ: Ունինք աչքի առաջ.*

*Ալիշան, Այրարատ = Հ. Ղ. Ալիշան, Այրարատ բնաշխարհ Հայաստանեայց, Վենետիկ* 1890:

*Ալիշան, Հայապատում = Վենետիկ* 1901 (*մեծադիր*):

Ալիշան, Շիրակ. Վենետիկ 1881:

Ալիշան, Շնորհալի = Շնորհալի եւ պարագայ իւր. Վենետիկ 1873:

Ալիշան, Սիսուան. Վենետիկ 1885:

Աճառեան, Անձնանուններ = Հ. Աճառեան, Հայոց անձնանունների բառարան. հատոր Ա.—Դ. Երեւան 1942—1948:

Բասմաջեան, Արձանագրութիւնք = K.J. Basmadjian, Les inscriptions arméniennes d'Ani, de Bagnair et de Marmachên. Paris 1931 (extrait de la Revue de l'Orient chrétien, 1920—1930).

Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, ի լոյս ընծայեց Կ. Կոստանեանց. Աղեքսանդրապոլ 1910:

E. Dulaurier, Recueil des historiens des Croisades. Documents armeniens. T. I, Paris 1869, p. CXVII—CXXI.

Թորոս Աղբար. Ա. Բ. = Գ. Վ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար Հայաստանի ճամբորդ, մասն Ա. եւ Բ. Կ. Պոլիս 1879—1884:

Գրիգոր Սկեւռացի, Ներբող = Գրիգորի Սկեւռացւոյ Ներբողեան ի սուրբն Ներսէս Լամբրոնացի. Վենետիկ 1854 (Սոփերք հայկականք, ԺԵ):

Լալայեանց, Վասպուրական = Ե. Լալայեանց, Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի: Ա.: Թիֆլիս 1915:

*Կոստանեանց Կ., Վիմական տարեգիր. Պետերբուրգ* 1913:

*Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն. Վաղարշապատ* 1898:

*Մխիթար Այրիվանեցի, Պատմութիւն ժամանակագրական. Պետերբուրգ* 1867:

Մըսըրլեան Գէորգ, *Ականաւոր Հայեր Եգիպտոսի մէջ, քաղուած Մագրիզիէ եւ այլ նշանաւոր պատմագիրներէ. Գահիրէ* 1947:

*Յովսէփեան, Յիշատակարանք = Գարեգին Ա. Կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, Ա., Անթիլիաս* 1951:

*Ներսէս Շնորհալի, Զափաբերականք. Վենետիկ* 1830:

*Սամուէլ Անեցի, Ժամանակագրութիւն. Վաղարշապատ* 1893: *Էջ* 204—212. *Պատմութիւն ազգին Ռուբինեանց* (= *Պատմ. Ռուբ.*): *Էջ* 212—223. *Համառօտ պատմութիւն Ռուբինեան իշխանաց* (= *Համառօտ Պատմ. Ռուբ.*): *Էջ* 224—243. *Սամուէլ Սկեւռացւոյ Յիշատակարանը Սաղմոսաց Մեկնութեան* (= *Սամ. Սկեւռացի*):

*Սարգիսեան, Ցուցակ = Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ ձեռագրաց Վենետիկի Մխիթարեանց, Ա. եւ Բ. Վենետիկ* 1914:

*Սմբատ = Սմբատայ սպարապետի տարեգիրք. Փարիզ* 1859:

*Սիւրմէեան, Օշին = Նկարագիր Օշին թագաւորի ձեռագիր ժամագիրքին. Նկարագրեց*

*Արտատպ. արքեպիսկոպոս, Անթիլիաս* 1933 : *էջ* 93—102 *Համառօտ պատմութիւն ժամանակաց Հեթում Կոռիկոսեցւոյ* :

*Տաշեան, Ցուցակ* = *Հ. Յ. Տաշեան, Ցուցակ ձեռագրաց Վիեննայի Մխիթարեանց. Վիեննա* 1895 :

## Բ. ՊԱՀԼԱՒՈՒՆԵԱՑ ՊԱՅԱԶԱՏՆԵ՛Ը

1. Արտակ Կամսարեան. *կը յիշէ զինքը Գրիգոր Մագիստրոս, Թուղթք, էջ* 40, *իբրեւ նախահայր Պահլաւունեաց. ապրած հաւանօրէն Թ. դարու երկրորդ կէսին* (850—900°) :

2. Աբուղամր Ա. *որդի Արտակի. կը յիշուի իր Գրիգոր որդիէն եւ Ապլղարիպ թոռնիկէն* (§ 3 *եւ* 11). *հմմտ. նաեւ Գր. Մագիստրոս, Թուղթք, էջ* 40 : *Իր որդիներէն կը յիշուի միայն Գրիգոր* :

3. Գրիգոր Ա. (Համզէ), *որդի Աբուղամրի, սպարապետ Հայոց* : *Իր կնոջ անունն է* Շուշան (*Շուշիկ*) *տիկնաց տիկին* : *Կը յիշուի* 981*ին Կուաշի* (*Կօշի*) *արձանագրութեան մէջ.*

ՆՎ. ԹՈՒԱԿԱՆԻՆ Ի ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ԽԱՉԿԱ ԵՒ Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՍՄԲԱՏԱ ԵՒ ՅԱՍՊԱՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՑԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԱՇՈՏՈ...

*Ալիշան, Այրարատ*, 145—146 :

*Իսկ* 980—982*ին շինեց հօրը Աբուղամրի յիշատակին Անւոյ Աբուղամրենց Ս. Գրիգորը. հոս կան արձանագրութիւններ.*

ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾ... ՈՂՈՐՄԵԱ ԳՐԻԳՈՐՈՅ ԾԱՌԱՅԻ ՔՈ:

*Բասմաջեան, Արձանագրութիւնք, Թ. 3:*

ԿԱՄԱՒՔՆ ԱՍՏՈՒԾՈՅ. Ի ՆԽԳ ԹՈՒԱԿԱՆԻՍ ԵՍ ՇՈՒՇԱՆ ՏԻԿՆԱՑ ՏԻԿԻՆ ԶՈՒԳԱԿԻՑ ԳՐԻԳՈՐՈՅ ԻՇԽԱՆԻ ԵՏՈՒ ԶՄՐՐՈՒԱՆԱՑ ԿՈՒՂՊԱԿՍ Ի ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ...:

*Բասմաջեան, անդ, Թ. 4:*

ՅԱՆՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԿԱՄ ԵՂԵՒ ԻՄ ՇՈՒՇԱՆԱՅ ՏԻԿՆԱՑ ՏԻԿՆՈՋ. ՈՐ ԵՏՈՒ ԶՄՐՐՈՒԱՆԱՑ ԿՈՒՂՊԱԿՍ Ի ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ. Ձ. ԴՐԱՄ. Է. ՄԵԴԻԱՅԻ. ԵՒ Ծ. ՄՐՐՈՒԱՆԱՑ. ԺԶ ԱՒՐ ԺԱՄ Ի ՔՐԻՍՏՈՍ:

*Բասմաջեան, անդ, Թ. 5: Արձանագրութեանս մէջ «Է» թիւը պէտք է կարդալ «Լ», որով Լ + Ծ կու տայ գումարը «Ձ»: Այս գումարի փոխարէն կը կատարուի «ԺԶ աւր ժամ». մէկ մի ժամին պատարագն է 5 դրամ:*

*Ստ. Ասողնիկ կը յիշէ յամի 998. «իշխանաց իշխան Վահրամ որդի Գրիգորոյ Պահլաւունւոյ» (էջ 270): Գրիգոր Մագիստրոս, Թուղթք, էջ 42—43, ուղղելով իր խօսքը հանգուցեալ Վահրամ հօրեղբօր կը գրէ իր Գրիգոր պապին մասին. «Քառասնից եղեալ ամաց՝ ուղղափառ խոստովանութեամբ փոխեալ առ Աստուած, թողլով զմայր քո (Վահրամայ) ամաց երեսնից. որ (Շուշան) ի նմին իսկ կրօնից արժանացեալ խարազնազգեստ եւ անսուաղ ճգնութեամբ բազմամեայ խաչակցութեամբ կեցեալ եւ ժուժկալեալ ննջեաց»: Հ. Ղ. Ալիշան վերոյիշեալ*

արձանագրութեան 981 թուին եղակէս ա-նելով Գրիգորի ծնունդը նշանակած է 941։ բայց չկայ որ եւ է փաստ 981 մահուան տա-րին համարելու. յամենայն դէպս 988ին կեն-դանի չէր ան. ուստի մահը ենթադրելու է 982—987 տարիներու մէջ, միջին հաշուով 985ին։

Գրիգոր ունեցաւ 5 զաւակ. անոնք են 1. Վահրամ. 2. Վասակ. 3. Համզէ. 4. Ապըլ-ղարիպ. 5. Սեդա դուստր։ Վերջոյն յի-շուած արձանագրութեան մէջ Տաշան խօսք կ՚ընէ Մրուանի մը մասին, որ ըլլալու է Սե-դայի ամուսինը։ Գրիգորի որդիք զանիկա իրրեւ եղբայր չեն յիշատակած։

Գրիգոր կ՚երեւայ թէ երկանուամբ կո-չուած է նաեւ Համզէ, այնպէս կը կարդանք Մաստարայի արձանագրութեան մէջ. «Ի ՆԿԴ (1015) թուականութեանս Թորգոմեան, ես Վահրամ իշխանաց իշխան, որդի Համզէի, թողի զՄաստարայի չարխան վասն Գագկայ շահնշահի կենաց | ։ Այս գրոյս չունի ոք իշ-խանութիւն, ոչ ես, ոչ Համզէ եւ ոչ ի մերոց ոք եւ ոչ յիշխանաց» (Ալիշան, Այրարատ, 136). ընդունելով թէ հոս «Վահրամ իշխա-նաց իշխան որդի Համզէի» Գրիգորի որդին է (§ 5), իսկ երկրորդ անգամ յիշուած Համզէ «մանուկն Համզէ» է, նոյնպէս Գրիգորի որ-դին եւ Վահրամի եղբայրը (§ 7)։

4. Թերեւս Ապուզամրի սերունդէն ըլլայ այն Վահրամը, որուն որդին Սմբատ մա-գիստրոս չինողն եղած է Բագնայրի եկեղեց-

*ւոյն* (1012), *յիշուած* 998*ի արշաւանքին* (*տես վարը*)։ *Դժբախտաբար մեզի չէ պահուած Բագնայրի արձանագրութիւնը, ուր յուսալի էր նշմար մը գտնել տոհմանունի մասին*։

*Այս Վահրամի որդին եւ Սմբատ Մագիստրոսի եղբայրն ըլլալու է Տիգրան պատմագիրը, զոր կը յիշէ Վարդան Արեւելցի. «այս բան Վահրամայ որդւոյ Տիգրանայ պատմագրի»* (*էջ* 94)։ *Մխիթար Այրիվանեցի այս պատմիչը պատմագիրներու շարքին մէջ դասած է իբրեւ «Վահրամ Տիգրանակերտացի»* (*էջ* 37. *Պատկանեան*)։ *Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ* 107 *յառաջ բերած է Տաթեւի մէկ ձեռագրէ հատուածս. «Գտաւ թուղթ ի հնագրեանս Տիրանայ Պահլաւունւոյ, թէ* **ՅԾԸ** *Թ.* (909) (*իմացիր՝* **ՅԺԵ** [866]) *տարեաց Փոտ պատրիարքն Կոստանդնուպոլիս...»*։ *Այս տեղեկը կը լուսաբանէ Վարդանի յառաջբերութիւնը այն իմաստով որ Տիրան որդին է Վահրամայ եւ Վահրամ պահլաւունի է. բայց ո՛չ նոյն Գրիգոր Պահլաւունւոյ Վահրամ որդւոյն հետ, որ կը պատկանի Ժ. դարու* 950 *շրջանին*։ *Ժ. դարու Բ. կէսին կը յիշատակուի ուրիշ Տիգրան մ՚ալ, Տիգրան մարզպան Անձեւացեաց, որ* 983*ին Աբուդլուֆ ամիրայի դէմ մղուած արշաւանքին մասնակից է* (*Ասողնիկ*, 189—190)։ *Ասոր դուստրն էր Սոփիա, որ Վահրամ Պահլաւունւոյ կինն էր*,

*վախճանած 1015ին (տե՛ս վարը)։ Կարելի՞ է մտածել, թէ Վահրամ Պահլաւունեաց որդին Տիրան մարզպան եւ տէր Անձեւացեաց կարգուած ըլլայ։*

5. Վահրամ *Ա. իշխանաց իշխան, որդի Գրիգորի Ա.։ Պահլաւունեաց տոհմին մեծագործ ներկայացուցիչն է Վահրամ. ժամանակին ականաւոր դէմքը, հզօր պատերազմիկ, պատկառազդեցիկ, շինարար եւ ջերմ աստուածապաշտ։ Իր նկարագիրը տուած է եղբօրորդին Գրիգոր Մագիստրոս (Թուղթ ԺԱ., էջ 39—41)։ Իսկ իր մեծագործութեան առհաւատչեայ է Մարմաշէնի եկեղեցին, որ կը կրէ արձանագրութիւն, գեղեցիկ պատմական յիշատակարան մը, ուսկից կ'առնեմ տողերս.*

ՇՆՈՐՀԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՍ ՎԱՀՐԱՄ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆ ԵՒ ԱՆԹԻՊԱՏ ՊԱՏՐԻԿ, ՈՐԴԻ ԳՐԻԳՈՐԻ ԻՇԽԱՆԻ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ, Ի ՑԵՂԷ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ ԵՒ Ի ԶԱՐՄԻՑ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ. ՈՐ ՅԱՒԱՆԴԻՍ Ի ՔՐԻՍՏՈՍ ՅՈՒՍՈՅՆ ՀԻՄՆԱՐԿԵՑԻ ԶՍՈՒՐԲ ԵՒ ԶՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՈՒԽՏՍ ՄԱՐՄԱՇԷՆ։ ՍԿՍԵԱԼ Ի ՆԼԷ (888) ԹՈՒԱԿԱՆԻՆ ՀԱՅՈՑ, ՅԱՒՈՒՐՍ ՍՄԲԱՏԱՅ, ՈՐԴՒՈՅ ԱՇՈՏՈՅ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐԻ. ՄԻՆՉԵՒ Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՅՈՎԱՆՆԻՍԻ, ՈՐԴՒՈՅ ԳԱԳԿԱՅ, ՀԱՅՈՑ ՇԱՀԱՆՇԱՀԻ, ԱՌՆ ԻՄԱՍՏՆՈՅ, ՇԻՆՈՂԻ ԵՒ ԽԱՂԱՂԱՐԱՐԻ. ԵՒ Ի ԹՈՒԱԿԱՆԻՍ ՀԱՅՈՑ ՆՀԷ (1029)։ ԵՒ ԿԱՏԱՐԵՑԱՔ ՄԵԾ ՋԱՆԻՒ ԵՒ ԲԱԶՈՒՄ ԾԱԽԻՒՔ. ԵՍ ԵՒ ՄԱՅՐ ԻՄ ՇՈՒՇԻԿ ՀԱՅՈՑ ՏԻԿՆԱՅ ՏԻԿԻՆ ԵՒ ԵՂԲԱՐՔ ԻՄ ՎԱՍԱԿ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆ, ՈՐ ՆԱՀԱՏԱԿԵՑԱՒ Ի ԹՈՒՐՔԱՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ, ԵՒ ԱԲԼԽԱՐԻԲ ՀԱՅՈՑ ՄԱՐԶՊԱՆ ԵՒ ՄԱՆՈՒԿՆ ՀԱՄԶԷ. ՈՐՔ ԼԻՔ ԱՐԵՆԱՅՆ ՏԱՄՔ ԵՒ

ՏՈՀՄԻՒ ՀԱՒԱՏԱՐԻՄՔ ՏԵՐԱՆՑ ՄԵՐՈՑ ԵՒ ՆԱՀԱՏԱԿԵԱԼ Ի ՎԵՐԱ ՏԱՆՍ ՀԱՅՈՑ. ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԱՐԵԱՄԲ ՄԵՐ ԵՒ ՈՐԴՒՈՑ ՄԵՐՈՑ ԵՒ ԳԱՆՁՈՒՑ ԱՒԱՏՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՀՆԱՐԻՒՔ ԽՆԴՐԷԱՔ ԶԽԱՂԱՂՈՒԹԻՒՆՆ ԱՇԽԱՐՀԻՍ ԵՒ ԶՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԵԱՑ: ՇԻՆԵՑԱՔ ԵՒ ԱՅԼ ԲԱԶՈՒՄ ԵԿԵՂԵՑԻՍ ԵՒ ՎԱՆՈՐԱՅՍ. ԲԱՅՑ ԶՏԵՂԻ ՀԱՆԳՍՏԵԱՆՍ ՄԵՐՈՑ ԱԹՈՒԵԼ ՊԱՏՈՒՈՎ ՄԵԾԱՑՈՒՑԱՔ ԵՒ ԼԻԱՑՈՒՑԱՔ ԱՄԵՆԱՅՆ ԴՈՑԻՒՔ. ԼԵՐԱՄԲՔ ԵՒ ԴԱՇՏԱՒՔ. ԱՒԵԼԻՑԵՑԱՔ Ի ՄԱ ԳԵՂՍ ԵՒ ԱԳԱՐԱԿՍ ԳԱՆՁԱԳԻՆՍ...: ԵՒ ԶԱՐԴԱՐԵՑԱՔ ԶՍԱ ԱՄԵՆԱՅՆ ԿԱԶՄՈՒԹԵԱՄԲ Ի ՅԻՇԱՏԱԿ ՅԱՒԻՏԵՆԻՑ ՄԵԶ ԵՒ ՈՐԴԻՈՑ ՄԵՐՈՑ: ԵՒ ԿԱՐԳԵՑԱՔ Ի ՁԵՌՆ ՍՈՒՐԲ ՀԱՒՐ ԵՐԵԱՄԲԱՒ ԵՒ ՈՐ ԶԿՆԻ ՅԱՋՈՐԴԵՑԱՒ ՍՈՍԹԵՆԷՍ, ՆՈՐԻՆ ՈՐԴԻԱՑԵԱԼ: ԵՒ ՓՈԽԱՐԷՆ ՀԱՏՈՒՑՄԱՆ ԸՆԿԱԼԵԱԼ ՄԵՐ Ի ԺԱՌԱՆԳԱՒՈՐԱՑ ՍՈՒՐԲ ՈՒԽՏԻՍ՝ ՏԱՐԻՆ. Զ. ՔԱՌԱՍՈՒՆՔ ԱՆԽԱՓԱՆ ՄԻՆՉԵՒ Ի ԳԱԼՈՒՍՏՆ ՔՐԻՍՏՈՍԻ...»:

(*Բասմաջեան, Արձանագրութիւնք, Բ. 212*):

*Ստ. Ասողիկ (էջ 270) ի թիւս այն իշխաններու, որոնք 998/9ին Գագիկ թագաւորէն Դաւիթ Կիւրապաղատին օգնութեան ղրկուեցան պարսիկ Մամլանի դէմ, կը յիշէ նաեւ Վահրամը,* ըստ ձեռագրին *այսպէս. «Իշխանաց իշխանին Վահրամայ որդւոյ Գրիգորոյ եւ Ամրատայ մաժիստրոսի որդւոյ Վահրամայ եւ մարզպանին Աշոտայ պահլաւունոյ, որ զՄարմաշէն շինեաց. որ զԲգնէրն շինեաց»: Մալխասեան ընագրին մէջ առած է* Շահնազարեանի *ներկայացուցած ընթերցուածը. «...Վահրամայ, որդւոյ Գրիգորոյ Պահլաւունւոյ, որ զՄ. եւ զԲ. շինեաց, եւ Ամրատայ Մ. որդւոյ Վահրամայ եւ մարզ-*

*պանին Աշոտոյ»։ Ինծ կը թուի թէ Ասողիկի բնագիրը ունեցած է յաւանդագրութիւններ, որոնք սխալմամբ բնագրին մէջ անցուած են. կ'առաջարկեմ կարդալ.* «... որդւոյ Գրիգորոյ պահլաւունւոյ, որ զՄարմաշէն շինեաց. Եւ Սմբատայ մաժիստրոսի որդւոյ Վահրամայ, որ զԲրգներն շինեաց, եւ մարզպանին Աշոտոյ»։ *Սակ. Ասողիկ 1004ին կարող էր Մարմաշէնի շինութեանց մէկ մասը միայն տեսած ըլլալ. իսկ Բջնիի վանքին կամ եկեղեցւոյն շինութիւնը Մ. Այրիվանեցւոյ համաձայն կը պատկանի Սմբատի. «Սմբատ մագիստրոսն շինեաց զԲջնոյն» (էջ 57)։ Նոյնը ունին նաեւ Կիրակոս Գանձակեցի. «Շինեաց եւ Սմբատ մագիստրոսն զկաթողիկէն վանքն որ Բջնոյն կոչի» (էջ 50). Եւ Առաքել Դաւրիժեցի. «ՆԶԹ (կարդա՛ ՆՃԲ). Սմբատ մագիստրոսն զԲջնոյ Դրանոյ շինեաց» (էջ 622)։ Մարմաշէնի շինութեան առաջին շրջանը եղած է 988—994, ինչպէս կը վկայէ Սամուէլ Անեցի, անշուշտ հին արձանագրութեան մը հիման վրայ, որ չէ պահուած մեզի. «Սկիզբն շինուածոյ մեծանուն եւ վայելչաշէն տաճարներն եւ հոյակապ ուխտին Մարմաշինոյ ի քրիստոնասէր իշխանաց իշխանէն Վահրամայ (ձեռագիր մը կ'աւելցնէ. «որ է թոռն Ապուղամրի»), սկսեալ ի ՆԼԷ (այլ. ՆԼԵ) թուին եւ աւարտեալ ի ՆԽԳին» (էջ 103). Հմմտ. նաեւ Մխ. Այրիվ. 71)։*

*Յովհաննէս Սմբատ թագաւորի մահէն*

եաքը, երբ Կայսրը կը պահանջէր Անին. Վահրամ եղաւ, որ գահ բարձրացուց Աշոտի որդին Գագիկ Բ.: Արիստակէս Լաստիվերտացի կը գրէ. «Իսկ Վահրամ այր հզօր եւ անուանի եւ բարեպաշտութեամբ յոյժ մեծ, որպէս թէ ոչ ըստ հաւատոյ նմա պահյալ, համնկերձ իւրովք ազգակցօք՝ որդւովք եւ եղբօրորդւովք իւրովք երեսուն այրաք, ոչ միաբանեցան ընդ նմա (Վեստ Սարգսի), այլ կոչեցեալ առ ինքեանս զԳագիկ որդի Աշոտոյ, թագաւորեցուցին ի վերայ իւրեանց եւ իմաստութեամբ եւ հնարիւք մուծին ի քաղաքն» Անի, 1042ին (էջ 47): Բայց Գագիկ հրաւիրուելով Կայսեր քով, կ՚արգելափակուի հոն: Յոյն բանակը կը գրաւէ քաղաքը: Յունական բանակին հետ ընդհարման ժամանակ, Դուինի դրան առջ, «մեռաւ մեծ իշխանն Հայոց Վահրամ համնկերձ որդւովն» (Գրիգորիւ), «որ մեծ սուգ հասոյց Հայոց» (Լաստ. 53. Ուռհ. 115 եւ 99—100. Սմբատ 157): Այս տեղի կ՚ունենայ 1045ին աշնան: Կը թաղուի Մարմաշէնի մէջ:

Վահրամի տիկնոջ անունն է Սոփիա, որ էր դուստր Տիգրան Հայոց մարզպանի, տեառն Անձեւացեաց: Տիգրան մարզպան կը յիշուի 983ին (Ս. Ասողիկ, էջ 189—190): Սոփիա վախճանած է 1015ին եւ թաղուած Մարմաշէն. տապանագիրն է.

ԱՅՍ ՀԱՆԳԻՍՏ Է ՍՈՓԻԱՅ ԱՂԱԽՆՈՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ, ԿՆՈՋ ՎԱՀՐԱՄԱՅ ՊԱՀԼԱՒՈՒՆՒՈՅ ԻՇԽԱԽԱՆԱՑ ԻՇԽԱՆԻ. ԴՈՒՍՏՐ ՏԻԳՐԱՆԱՅ ՀԱՅՈՑ ՄԱՐԶ-

ԳԱՆԻ ՏԵԱՌՆ ԱՆՁԵՒԱՑԵԱՑ ՄԵԾԻՆ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ. ԿՈՉԱՒՐԵԱ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ ՓՈԽԵՑԱՑ ԵՒ ԹՈՂԻ ՁԶԱԽԱԿՍ ԻՄ ՏՐՏՈՒՄ... Թ. ՆԿԳ:

(*Բասմաջեան, Թ.* 210):

*Ս. Գեւորգի Մարի պատմութեան մէջ կը յիշուի* 967*ին «Յակոբ Հայոց մարզպան» Անձեւացեաց աշխարհի* (*Հայապատում, Բ.*, 296):

*Վահրամի որդիներն են.* 1. Ապուղամր. 2. Գրիգոր:

6. Վասակ Հայում, *որդի Գրիգորի Ա. Իշխանաց իշխան: Կը գրէ իր մասին Արիվանեցի* (*յամին* 1045). *Գրիգոր Մագիստրոս. «սա է որդին Հայում Վասակայ շինողին Բջնոյ, Կոչենոյ եւ Կայծոնոյ. զոր յանդէտս սպանին ի Սերկեւլէ»* (*էջ* 74): *Վասակի մահուան թուին է* 1020/1: *Մահուան պարագան մանրամասնօրէն պատմած է Մ. Ուռհայեցի, յամին* 1020*, այժմ թղթերու տեղափոխութեամբ գետեղուած* 972 *տարւոյն տակ* (*էջ* 11—14. *Ամրաս*, 29—30. *Հմմտ. Այրարատ*, 164): *Յիշած է զինքը եղբայրն Վահրամ* 1029*ին Մարմաշէնի արձանագրութեան մէջ* (§ 5):

*Ալիշան, Շիրակ*, 12, *սխալ մեկնելով Թովմա Արծրունւոյ շարունակողին տեղիքը* (*էջ* 309) *համարած է, թէ Վասակի կինն էր Ա. Ա. դուստր Աշոտի* (*այսպէս նաեւ Աճառեան, Ա.* 84. 1)*. այս տեղւոյն ուղիղ մեկնութիւնը տես վարը, Թոռնիկանք:*

*Վասակ ունեցաւ ուստր մը՝* Գրիգոր Մագիստրոս *եւ դուստր մը* Սեդա: *Ալիշան կը յիշէ երկրորդ որդի մ'ալ* Ապուղամր *անուն. վարկածելով (Տոհմածառ, Ալիշան, Ա.,* 24, 2). *աղբիւրը ինծի անծանօթ. այս պատճառով ալ չեմ առներ Ազգաբանութեանս մէջ:*

7. Ապլղարիպ, *որդի Գրիգորի, մարզպան: Կը ներկայացնէ ինք զինքը Անիի Ս. Փրկիչ եկեղեցւոյ արձանագրութեան մէջ այսպէս.*

Ի ՆՁԴ (1035) ԹՈՒԱԿԱՆԻՍ ԵՍ ԱՊԼՂԱՐԻՊ ՄԱՐԶՊԱՆ ԵԿԻ ՀՐՈՎԱՐՏԱԿ Ի ՍՄԲԱՏԱՅ ՇԱՀՆՇԱՀԷ ԱՌ ԿԱՅՍՐՆ ՅՈՒՆԱՑ ՄԻԽԱՅԼ Ի ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՈԼԻՍ. ԵՒ ՇԱՏ ԶԱՆԻՒ ԵՒ ՄԵԾԱԾԱԽ ԳԱՆՁԻՒ ԲԵՐԻ ՄԱՍՆ Ի ՍՐԲՈՅ ԽԱՉԷՆ ԵՒ... ԶՆՇԱՆ ԼՈՒՍՈՅ ԿԱՆԳՆԵՑԻ Ի ՊՍԱԿ ՀԱՐՍԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ...:

*(Բասմաջեան, Արձանագրութիւնք, թ.* 13):

*Երկրորդ անգամ* 1036*ին.*

ՅԱՄՍ ԱՍՏՈՒԱԾԱՊԱՏԻՒ ԵՒ ՀՈԳԵՒՈՐ ՏԵԱՌՆ ՊԵՏՐՈՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԵՒ Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՍՄԲԱՏԱՅ ՈՐԴՒՈՅ ԳԱԳԿԱՅ ՇԱՀԱՆՇԱՀԻ. Ի ՆՁԵ ԹՈՒԱԿԱՆԻՍ, ԵՍ ԱՊԼՂԱՐԻՊ ՄԱՐԶՊԱՆ, ՈՐԴԻ ԳՐԻԳՈՐՈՅ ԻՇԽԱՆԻ ԵՒ ԹՈՌՆ ԱՊՈՒՂԱՄՐԻ ԵՒ ԵՂԲԱՅՐ ՎԱՀՐԱՄԱՅ ԵՒ ՎԱՍԱԿԱՅ, ՇԻՆԵՑԻ ԶՍՈՒՐԲ ՓՐԿԻՉՍ Ի ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻՍ ՅԱՆԻ. ՇԱՏ ԶԱՆԻՒ ԵՒ ՄԵԾԱԾԱԽ ԳԱՆՁԻՒ. ԵՒ ԳՆԵՑԻ Ի ՀԱԼԱԼ ԸՆՉԻՑ ԻՄՈՅ ԿՈՒՂՊԱԿԱՆԻ Գ. ՁԻԹԱՀԱՆՔ ԵՒ ԱՅԳԻ ԵՒ ՀՈՂԵԱՐ. ԵՒ ԵՏՈՒ Ի ՍՈՒՐԲ ՓՐԿԻՉՍ. ԵՒ ԶԱՐԴԱՐԵՑԻ ՈՍԿՈՎ ԵՒ ԱՐԾԱԹՈՎ ԵՒ ԱԿԱՄԲՔ ՊԱՏՈՒԱԿԱՆՈՒՔ. ԵՒ ԵՏՈՒ ԱՒԵՏԱՐԱՆ ԵՒ ՏԱՒՆԱԿԱՆ.

ԵՒ ՆՈՐՈԳԵՑԻ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՒՔ. ԵՒ ԿԱՆԳՆԵՑԻ ՄԻՒ ԱՌԱՋԻ ՍՈՒՐԲ ՓՐԿՉԻՍ...:

*(Բասմաջեան, անդ, Թ.* 14):

*Նոյն տարւոյն կ՚արձանագրէ Գեւորգ Կաթողիկոս.*

Ի ՆՉԷ ԹՈՒԱԿԱՆԻՍ ՀԱՅՈՑ... ԿԱՄ ԵՂԵՒ ԻՆՁ ՏԵԱՌՆ ՊԵՏՐՈՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ, ՏԱԼ ԶԱՅԳԻՆ ԱՇՆԿԻ... ՔՐԻՍՏՈՍԱՍԷՐ ՄԱՐԶՊԱՆԻՆ ԱՊԼՂԱՐԻՊԱՅ ՈՐԴՒՈՅ ԳՐԻԳՈՐՈՅ ՊԱՀԼԱՒՈՒՆՈՅ, ՎԱՍՆ ԱՌՆՈՒԼ ՍԻՐՈՅՆ ԵՒ ԵՐԱԽՏԵԱՅՆ ԶՈՐ ԾԱՌԱՅԵԱԼ ԷՐ ԶՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԱԹՈՌՍ... ԻՍԿ ՆԱ ԸՆԾԱՅԵԱՑ ՅԻՒՐ ՇԻՆԵԱԼ ԵԿԵՂԵՑԻՍ ՍՈՒՐԲ ՓՐԿԻՉՍ ԲԱԺԱԿԻ ՎԱՍՆ ՓՐԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՅՆ ՅԻՇԱՏԱԿ ՀՈԳՒՈՅ ԻՒՐՈՅ: ԱՐԴ ԵԹԷ ՈՔ ԶԱՊԱՐԱՆՍԴ ԶՈՐ ՇԻՆԵԱԼ Է ԱՊԼՂԱՐԻՊԱՅ ԱՌ ՍՈՒՐԲ ՓՐԿՉԻՍ ԵՒ ԿԱՄ ԶՈՐ ԻՆՁ ՏՈՒԵԱԼ Է Ի ՊԷՏՍ ԵԿԵՂԵՑԻՈՅԴ՝ ԵՒ ՍՐՈՇԷ ՈՔ... ՆԶՈՎԵԱԼ ԼԻՑԻ...:

*(Բասմաջեան, անդ, Թ.* 15):

*Անի Ապուղամրենց եկեղեցւոյ պատին վրայ ունինք արձանագրութիւն* 1040էն.

Ի ՆՁԹ ԹՈՒԱԿԱՆԻՍ ԵՍ ԱՊԼՂԱՐԻՊ ՀԱՅՈՑ ՄԱՐԶՊԱՆ, ՈՐԴԻ ԳՐԻԳՈՐՈՅ ԵՒ ԹՈՌՆ ԱՊՈՒՂԱՄՐԻ ՀԱՅՈՑ ԻՇԽԱՆԱՑ, ԹԷՊԷՏ ԵՒ ԱՆՏԵՍ ԷԻ Ի ՀԱՒՐԷ ԻՄԷ ՅԱՂԱԳՍ ԿՐՍԵՐՈՒԹԵԱՆ. ԱՅԼ ՀԱՐԿԵՑԱՅ Ի ԲՆՈՂԱԿԱՆ ՍԻՐՈՅՆ ԵՒ ՇԻՆԵՑԻ ԶԱՅՍ ՀԱՆԳՍՏԱՐԱՆ ՀԱՒՐ ԻՄՈՅ ԳՐԻԳՈՐՈՅ ԵՒ ԵՂԲԱՒՐ ԻՄՈՅ ՀԱՄԶԷԻ ԵՒ ՔԵՌ ԻՄՈՅ ՍԵԴԱՅԻ. ԵՒ ՇԻՆԵՑԻ ՍԵՆԵԱԿ Բ. ԶՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՆՈՍ ԵՒ ԶՍՈՒՐԲ ՔՐԻՍՏԱՓՈՐ: ԵՒ ՊԱՅՄԱՆ ՔԱՀԱՆԱՅԻՑԴ ԱՅՍ Է. ՈՐ ԶԱՄԷՆ ՈՒՐԲԱԹ Ի ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՆՈՍ ԺԱՄՆ ԻՄ ՄԱՒՐՆ ՇՈՒՇԱՆԱՅ ԱՐԱՍՑԵՆ ԵՒ ԶՇԱԲԱԹՆ ԻՄ ՀԱՒՐՆ ԳՐԻԳՈՐՈՅ. ԵՒ Ի ՍՈՒՐԲ ՔՐԻՍՏԱՓՈՐ ԶԱ-

ՄԷՆ ՈՒՐԲԱԹ ԻՄ ՔԵՌՆ ՍԵԴԱՑԻ ԵՒ ՁՇԱԲԱԹՆ ԻՄ ԵՂԲԱՒՐՆ ԱՐՆԵՆ ՀԱՄԶԷԻ....:

(*Բասմաջեան, անդ., թ.* 16: *Նոյն տարիէն՝ անդ., թ.* 17):

*Կայ նաեւ արձանագրութիւնս, անթուական, ի Հաղբատ.*

ԵՍ ԱՊԼՂԱՐԻԲ ՈՐԴԻ ԳՐԻԳՈՐՈՅ ԵՏՈՒ ՁԱՐԽՈՒԵՐՈՑՆՆ Ի ՀԱՂԲԱՏ ԳԱՆՁԱԳԻՆ ԱՐԱՐԵԱԼ ՎԱՍՆ ՅՈՎԱՆԻՍԻ (ԹԱԳԱՒՈՐԻ) ԱՐԵՒՇԱՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԻՆՁ ՄԵՂԱՑՍ ԹՈՂՈՒԹԵԱՆ [ ]:

(*Կոստանեանց, Վիմ. տարեգիր, էջ* 15):

*«Անտես էր ի հօրէ իմմէ յաղագս կրօնութեան» իմացած է Աճառեան, Անձնանուններ, Ա.,* 21, 4. *«Փոքր էր դեռ, երբ հայրը մեռել էր եւ չէր յիշում նրան». կարելի է նաեւ, թերեւս ճշգրտագոյնս, հասկնալ. «ծնած ըլլալով հօրս մահէն ետքը». այս իմաստին կը համապատասխանէ Ապլղարիբ անունը: Ծնունդը իբր* 985*ին: Իրմէ ժառանգ չի յիշուիր:*

8. Համզէ *որդի Գրիգորի. կը յիշուի* 1029*ին Մարմաշէնի արձանագրութեան մէջ «մանուկն Համզէ»* (§ 5) *եւ* 1040*ին Ապլղարիպի արձանագրութեան մէջ* (§ 7) *արդէն վախճանեալ:*

9. Սեդա *դուստր Գրիգորի: Կը յիշուի մօրը Շուշանի անթուական* (§ 5) *եւ Ապլղարիպի արձանագրութիւններու մէջ* (§ 7), 1040*ին արդէն վախճանեալ: Առաջին արձանագրութեան մէջ յիշուած Մրուանը թերեւս*

*Սեդայի ամուսինն ըլլայ. Ալիշան, Շիրակ,* 53, *կը գրէ «համանօրէն որդի նոցա էր եւ Մրուան», այս ինքն քոյր Սեդայի:*

10. Ապուղամր որդի Վահրամայ: *Ունինք իրմէ արձանագրութիւն մը Անի* 1031*էն, Ս. Առաքելոց եկեղեցւոյ պատին վրայ.*

ՆԶ ԹՈՒԱԿԱՆԻՍ ՇՆՈՐՀԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՍ ԱԲՈՒՂԱՄՐ ՈՐԴԻ ՎԱՀՐԱՄԱՅ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆԻ ԵՏՈՒ ԶԿԱԹՆԱՈՒՏԻ ԱՐՏՆ Ի ՍՈՒՐԲ ԱՌԱՔԵԱԼՔՍ ՎԱՍՆ ԵՂԲԱՒՐ ԻՄՈՅ ԳՐԻԳՈՐՈՅ ԱՌՈՂՋՈՒԹԵԱՆ ԵՒ ԿԵՆԱՑՆ ՅԵՐԿԱՐՈՒԹԵԱՆ:

(*Բասմաջեան, Թ.* 10):

*Իսկ Ապուղամրենց Ս. Գրիգորի պատին վրայ կը կարդանք անթուական արձանագրութիւնս, որ կը համարուի, թէ ընդ մէջ* 1031—1033 *տարիներու գրուած ըլլայ. երբ պատահած է Ապուղամրի մահը.*

ԿԱՄԱՒՔՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՍ ՎԱՀՐԱՄ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆ ԵՏՈՒ ԶԻՄ ՈՐԴԻՈՅՆ ԶԱՊՈՒՂԱՄՐԻ ՈԳԵՔԱԺԻՆ ԵՒ ԳՆԵՑԻ Ը ԿՈՒՂՊԱԿ... ԵՏՈՒ Ի ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ... Ի ՏԱՐԻՆ Գ ՔԱՌԱՍՈՒՆՔ: ԱՐԴ ԷԹԷ ՈՔ ՀԱԿԱՌԱԿ ԳԱՅ... ԱՊՈՒՂԱՄՐԻ ՄԵՂԱՑՆ ՊԱՐՏԱԿԱՆ ԼԻՑԻ...:

11. Գրիգոր *որդի Վահրամայ: Իր եղբայրն Ապուղամր* 1031*էն իրեն առողջութիւն կը մաղթէր* (§ 10) *հիւանդութենէ մը, որմէ կը տառապէր Գրիգոր: Նոյն կամ յաջորդ տարին մեկնած էր Գրիգոր Մուֆարգին դարմանուելու համար Ցիաէ բժիշկէն. որմէ ստացած դեղագրերը պահուած են հայ*

*բժշկարաններու մէջ (Հմմտ. Հ. Ղ. Յովնանեան, Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի. Վիեննա* 1897, *էջ* 136, 415—420. *Յովսէփեան, Յիշատակարանք, էջ* 672)։

*Գրիգոր նահատակուեցաւ* 1045*ին իր հօրը Վահրամի հետ Դուինայ առջեւ մղուած պատերազմին մէջ (Մ. Ուռհայեցի,* 98. *Արիստ. Լաստ.,* 53. *Գր. Մագիստրոս, Թուղթք,* 41)։ *Գրիգոր Մագիստրոս (անոր) ակնարկելով հօր եւ որդւոյ ի միասին նահատակութիւնը կը գրէ այլաբանօրէն. «...ոչ մերձ առ քեզ արժանացեալ իմ, զի հայրենական պատկին թերեւս հասեալ բախտի ըստ հարազատին քո Տիգրանայ. այլ՝ եթէ ոչ այլ միւսումն Գրիգորի յուղարկաւորութեան եւ որբանեկութեան զկնի հօր ի ձեռին...»։*

Տիգրան։ *Ալիշան այս Տիգրանը համարած է «Տիգրան որդի Գրիգորի (Ա.) եղբայր Վահրամայ» (Այրարատ). իսկ Աճառեան (Ա.* 548, 137)*. «Գրիգոր Պահլաւունի (Համզէ մանուկն), որդի Գրիգոր Համզայի եւ հօրեղբայր Գրիգոր Մագիստրոսի, եղբայր Վահրամայ եւ Տիգրան Պահլաւունեաց. մեռաւ մանուկ հասակում»։ Թէ ի՞նչպէս այսպիսի եզրակացութեան հասած է Աճառեան յիշեալ տեղիքերին վերլուծումով, ինձ անմեկնելի է։ Այս տեղ յիշուած «Տիգրանը» հաւանօրէն Մ. Խորենացւոյ Ա.* 29 (30) *կ'ակնարկէ, ուր Տիգրան նիզակովը կը շամփրէ զԱժդահակ, որով կը հանէ «ի բարեբախտութիւն»։ Չկայ այլուստ վկայ, ոչ Համզէ մանկան Գրիգոր*

*յորջորջումի եւ ոչ ալ Տիգրանի Վահրամի եղբայր ըլլալու ի նպաստ։*

Սմբատ որդի Վահրամայ Մագիստրոս. *Ալիշան (Այրարատ) եւ իրեն հետեւելով Աճառեան Դ.* 550, 62. *կը համարին որդի Վահրամայ որդւոյ Գրիգորի։ Բայց Վահրամ, որ յիշած է իր արձանագրութիւններու մէջ իր եղբայրներու եւ զաւակներու անունները, խօսք չէ ըրած ամենեւին Սմբատի մասին։ Անշուշտ Ալիշան նկատի ունի Ասողնիկի «Սմբատ Մագիստրոս որդի Վահրամայ Պահլաւունւոյ», որ Բագնայրի շինողն է։ Այս անեցիքի մասին խօսեցանք վերագոյն* § 5։

12. Գրիգոր որդի Հոլում Վասակայ, *մագիստրոս եւ մատենագիր։* 1020/1*ին, երբ Վասակ Հոլում թշնամւոյն դէմ կռուի կ'երթար, յանձնարարեց «զտուն իւր եւ զամուրն Բջնի որդւոյ իւրում Գրիգորի» (Ուռհ.* 11—12)։ *Հայրը չվերադարձաւ կռուէն։* 1042*ին, երբ թագաւոր օծուեցաւ Գագիկ Բ., թագադիրն էր Գրիգոր։* 1045*ին Գագիկ Բիւզանդիոն գացած էր Կայսեր քով եւ հոն արգելափակուած։ Գրիգոր, որ հմուտ էր յոյն լեզուին, մեկնեցաւ կայսերական քաղաք բանակցելու Կայսեր հետ։ Երբ համոզուեցաւ, թէ անհնար է թագաւորին վերադարձը, դարձաւ ինքը Անի Մագիստրոս տիտղոսով. յանձնեց իր կալուածքները կայսերական իշխանութեան եւ ստացաւ փոխարէն կալուածքներ Միջագետքի մէջ։ Կայսրը կարգեց զինքը Տարօնի եւ Միջագետքի դուքս։ Կռուեցաւ*

*Թուրք-սելջուկեանց հետ։ Վախճանեցաւ իբր 1057ին։ Իր տիկնանց տիկինը կը բնակէր Դարոնից բերդը կենդանի տակաւին 1073ին։*

*Գրիգոր Մագիստրոս գրագէտ էր, ծանօթ յոյն լեզուին, ուսկից թարգմանութիւններ կատարած է։ Հասած է մեզի իր թղթոց հաւաքածոյքը. ունի տաղաչափական գրուածքներ։ Իր կենսագրութիւնն եւ գրական գործերը քննութեան պիտի առնուին այլուր։*

*Գրիգոր Մագիստրոսի զաւակներն են.* 1. *Վասակ.* 2. *Վահրամ-Գրիգորիս Կաթ.* 3—5 *Ա. Բ. Գ. դստերք, որոնց անունները չեն յիշուած։ Հ. Մ. Չամչեան, Պատմ. Բ.* 929 *կը գրէ. «Եղեն Մագիստրոսի որդիք չորք. Վահրամ, Վասակ,* Վասիլ *եւ* Փիլիպէ. *եւ քանի մի դստերք... այնպէս եւ Վասիլ եւ Փիլիպէ կարգեցան ի գործս իշխանութեան. եւ գործեցին բազում գործս քաջութեան»։ Թէ ի՞նչ աղբիւրէ առած է Չամչեան այս Վասիլ եւ Փիլիպէ անունները եւ գործերը, ինձ ծանօթ չէ. այս պատճառաւ ալ չեմ առներ Ազգաբանութեան մէջ։*

13. Սեդա *դուստր Հոլում Վասակայ։ Ունինք իրմէ անթուական արձանագրութիւն մը Բագնայրի մէջ.*

ԵՍ ՍԵԴԱ ՏԻԿՆԱՅ ՏԻԿԻՆ, ԴՈՒՍՏՐ ՄԵԾԻՆ ՎԱՍԱԿԱՅ, ԶՈՒԳԱԿԻՑ ՎԱՀՐԱՄԱՅ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆԻ ՈՐԴԻՈՑ ԱՇՈՏՈՑ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆԻ. ՏԱՍԱՆՈՐԴԵՑԻ ԶՎԱՍՏԱԿՍ ԳԵՂՁՆ ԽՄՈՑ ԳԱՂՏԱՑԻ, ԸՆԾԱՑԵԼՈՎ Ի ՍՈՒՐԲ ՈՒԽՏՍ ԲԱԳՆԱՅՐԻՍ. ՎԱՍՆ

ՅԻՇԱՏԱԿԻ ԶԱՒՐԱԿԱՆԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ՝ ՀԱՒՐՆ ԽՈՐՈՑ ՎԱՍԱԿԱՅ ՓՈԽԵՑԵԼՈՑ ՅԱՇԽԱՐՀԷՍ...։

*(Բասմաջեան, թ. 144)։*

*Սեղա քոյր Գրիգոր Մագիստրոսի, ամուսինն է Վահրամ իշխանաց իշխանի, որդւոյ Աշոտ իշխանաց իշխանի։ Համանօրէն իր որդին է* Սմբատ պատրիկ. *որդի Վահրամայ։ Սա կը գրէ* 1071—1078 *թուականներուն. «Ես Սմբատ պատրիկ որդի Վահրամայ ի թագաւորութեանն Յունաց Միխայլին որդւոյ Տուկծին եւ ի կուրապաղատութեանս Մարեմայ թագուհւոյն...» գրել տուի կ'ըսէ Յովհաննէս գրչի Աւետարան մը. «ի սմին ամի արժանաւորեաց զիս մարգարէն Աստուած առնուլ զձեռ եւ զկարգ կրօնաւորութեան» (էջմ.* 275. *Յովսէփեան, Յիշատակարանք, էջ* 251—254)։ *Յովսէփեան կը համարի թէ ան Բգնոյրի շինողն ըլլայ* (§ 5). *ժամանակագրութիւնը չ'արդարացներ զայս։*

*Կը յիշուի նաեւ «Համամ որդի Սմբատայ»* 1081*ին Հաւուց Թառի մէկ արձանագրութեան մէջ* (*Ծովական*, 182)։ *Որդի՞ Վահրամեան Սմբատի։*

14. Վահրամ *Վեստ, որդի Գրիգոր Մագիստրոսի, այն* Գրիգորիս կաթողիկոս *Վկայասէր* (1065—1105, *յունիս* 3)։

*Վահրամ իր հօրը կենդանութեան գործած էր զինուորական ծառայութեան մէջ եւ առած Վեստ պատուանունը։ Ամուսնացած էր. կնոջ մահէն ետք նուիրուած ա–*

տական կեանքի։ Ընտրուեցաւ Խաչիկ Բ. կաթողիկոսի վախճանելէն (1060) ետքը՝ թափուր աթոռին վրայ յաջորդ (1065) Գրիգորիս անունով։ Կատարեց ուղեւորութիւններ. թարգմանեց վկայաբանական գրութիւններ, թարգմանել տուաւ յունարէնէ եւ ասորերէնէ զանազան գրուածքներ։ Կազմեց Հայոց Տօնամակը (Ճաշոց գիրքը)։ Իր խնամքին տակ առաւ իր քեռորդիները։ Իր կենսագրութեան եւ գրական գործերու մասին պիտի խօսիմ այլուր։

15. Վասակ որդի Գրիգոր Մագիստրոսի, դուքս։ Վարդան Արեւելցի Պահլաւունի հայրապետաց գրուածին մէջ կը գրէ, թէ Գրիգոր Մագիստրոս երբ յանձնեց իր կալուածները Մոնոմախ Կայսեր, փոխարէն ստացաւ իրեն համար «դքսութիւնն Միջագետաց» եւ իր որդւոյն Վասակի համար «զԱնտիոքայ դքսութիւնն»։ Կ՚երեւայ թէ աչքի առաջ ունեցած է ան Մ. Ուռհայեցւոյ տեղիքս. «Ամ ՇԻԵ (1076/7). յայսմ ժամանակի սպանաւ Վասակ իշխանն Հայոց, որդի Գրիգորի Մագիստրոսին եւ եղբայր Տէր Գրիգորիսի։ Սա էր դուքս ի յԱնտիոք քաղաքին» (էջ 213. տե՛ս Վարդան, 104)։ Վասակ այս պաշտօնին կոչուած պիտի ըլլայ 1073էն. մինչ դի 1068—1072 Անտիոքի դուքսն էր Խաչատուր Հայկազն (J. Fr. Laurent, Le duc d'Antoche Khatchatour: Byzantinische Zeitschrift 1930, S. 405—411 = Խաչատուր իշխան Անտիոքի. Հանդ. Ամս. 1930, էջ 303—310)։

*Պէտք չէ շփոթել զինքը միւս Վասակ Պահլաւունեաց հետ, որ նոյնպէս Գրիգոր Մագիստրոսի որդի է, բայց Հասանեան գերդաստանէն, վախճանած 1094ին։*

17. *Ա. Դուստր Գրիգոր Մագիստրոսի. անունը չէ յիշուած. ամուսնացած է Ապլբասի որդի Վասակի հետ։ Տես Վասակ* § 22։

18. *Բ. դուստր Գրիգոր Մագիստրոսի. անունը չէ յիշուած. կին գացած է Սասունի Թոռնիկ իշխանին։ Տես Թոռնիկեանք։*

16. *Գ. դուստր Գրիգոր Մագիստրոսի. անունը չէ յիշուած. կինն եղած է Ծովքի իշխանին։*

*Ալիշան, Այգածառ. կը յիշէ Դ. դուստր մ՚ալ, որ կինն եղած է վեստ Սարգիսի։ Առանց տարակուսի նկատի առած է Ալիշան ալ այս Տիկորի արձանագրութիւնը* 1042*էն* (*Շիրակ*, 135)։

*Ալիշան Այգածառին մէջ առած է հինգերորդ դուստր մ՚ալ Գրիգոր Մագիստրոսի Մարիամ անունով, որ կինն եղած է Աբուլմսեհ կիւրապաղատի* († 1123)։ *Տես այս մասին վարը՝ Թոռնիկեանք։*

*Պահլաւունի բունին կը պատկանի նաեւ* Գարբաճիէլ, *բայց անծանօթ կը մնայ մեզի անոր հայրանունը, մասնաւորիչ ընելու համար բունին վրայ իր տեղը։ Ունինք Սանահինի մէջ իր որդւոյն* Տապուհի *արձանագրութիւնը* 1061*էն.*

Ա. Թագաւորներ.

1. Արտակ
2. Աբուղամր
   - 3. Գրիգոր Ա. Համզէ + Շուշան
     - 5. Վահրամ + Սոփիա
       - 10. Ապուղամր
       - 11. Գրիգոր
     - 6. Վասակ
       - 12. Գրիգոր
         - 15. Վասակ
         - 14. Վահրամ-Գրիգորիս
         - 16.—18. Դստերք Ա.—Գ.
       - 13. Սեդա
     - 8. Համզէ
     - 7. Ապլղարիբ
     - 9. Սեդա
   - 4. Վահրամ

«Ի թուականիս Հայոց ՇԺ·ի թագաւորութեան Կիւրիկէի որդւոյ Դաւթի արքայի, ի հայրապետութեան տեառն Դէոսկորոսի, եւ Շապուհ իշխանաց իշխան, որդի Գարբանիէլի, ի տոհմէ Պահլաւունի, յազգէ Արշակունեաց ||| գնեցի զՈռնակայ տափն եւ եւտու զնա յաստուածաշէն մայրաքաղաքն Սանահնոյ» (Կոստանեանց, Վիմ. տարեգիր, էջ 24)։

«Ի Հայրապետութեան Դիոսկորոսի» կրկնուած է նաեւ Սանահնի 1063 տարւոյ արձանագրութեան մէջ (անդ)։ Ուշադրութեան արժանի է, որ 1060—1065 տարիներուն դատարկ էր կաթողիկոսական–հայրապետական աթոռը, Խաչիկ Բ·ի մահէն ետքը եւ Գրիգորիս Վկայասէրի ընտրութենէն յառաջ։

Անուն Գարբանիէլ յիշատակուած է նաեւ 1278ին Հաղբատի մէկ արձանագրութեան մէջ. Միթիլաստն, եղբօրորդի Հաղբատի Յովհաննէս եպիսկոպոսի եւ առաջնորդի, եւ որդի Գարբանիէլի եւ Աստյի (անդ, 120)։ Հմմտ. Ζουρβανέλης = Զորաւանէլ։ Ծագումը պարսկան ըլլալու է։

## ՊԱՏՈՒԱՍՏՈՒԱԾ ՊԱՀԼԱՒՈՒՆԻՆԵՐ

Պահլաւունիներու արական գիծը շիջաւ Գրիգոր Մագիստրոսի թոռներու մէջ, որոնք չթողուցին ժառանգ։ Բայց պահլաւական արիւնը պատուաստուեցաւ ուրիշ իշխանական տուներու, որոնք պարծեցան պահլաւունի

*ծագումով: Այս պատուաստումը կատարուե-ցաւ միջնորդութեամբ Բջնեցի Գրիգոր Մա-գիստրոսի երեք դուստրներու, որոնք հարս գացին Ապիրատեանց եւ Թոռնիկեանց:*

ՀԱՍԱՆԵԱՆՔ

*Կ՚ըսուի, թէ Ապիրատ Հասանեան «յան-նշանից մեծացեալ» է: Ասոր երկու որդիք, Ապլջահապ եւ Վասակ եղբարք կը փեսայա-նան Գրիգոր Մագիստրոսի, կին առնելով ա-նոր երկու դուստրները: Մ. Ուռհայեցի Վա-սակը կ՚անուանէ «պահլաւ» եւ որդիքն եւ թոռները՝ պահլաւունի: Այսպէս նաեւ Ապլ-ջահապի որդիք:*

1. Հասան. *սա էր հայրն Ապիրատի. իր մասին աւելի բան չենք գիտեր:*

2. Գրիգոր–Ապիրատ *որդի Հասանի, մագիստրոս: «Զամանէ սակն յաննշանից մե-ծացեալ. եւ վասն խելացի եւ առատ ձեռացն՝ մինչ լինել տէր* 12.000 *հեծելոց: Որ չինեաց վանքը ուխտն Կեչառուս, որպէս Վահրամ իշխանն զՄարմաշէն»* (*Վարդան*, 97): *Մխի-թար Այրիվանեցի կը գրէ յամի* 1031. *«Ապի-րատ իշխան,* 12.000 *հեծելի* (*տէր*). *սա չի-նեաց զԿեչառուս եւ նհան գառուն Երեւանոյ»* (*էջ* 73): *Կեչառուքի եկեղեցւոյն արձանա-գրութիւնը պահուած է. եւ է հետեւեալը* (*Յովսէփեան, Խաղբակեանք, Գ., էջ* 27. *համմ. Բ., էջ* 3—9).

ՆՁԲ Թ. ՀԱ. Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԳԱԳԿԱ ԵՒ Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՍԱՐԳՍԻ ԵՍ ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՌՈՍ ՈՐԴԻ ՀԱՍԱՆԱ ՇԻՆԵՑԻ ԶԵԿԵՂԵՑԻՍ ԻՆՁ Ի ԲԱՐԷԽՕՍՈՒԹ(ԻՒ)Ն ԵՒ ԻՄ ՊԱՐՈՆԻՆ ԵՒ ԻՄ ՈՐԴԻԵԱՑՆ. ՈՐՔ ԸՆԹԷՌՆՈՅՔ ԶԻՍ ՅԱՂԱՒԹՍ ՅԻՇԷՑԷՔ Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս ԱՂԱՉԵՄ:

*Ինչպէս ուշադիր եղած է Ալիշան (Այրարատ, 259) թուականը ՆՁԲ (1033) պէտք է կարդալ ՆԾԲ (1003), ընդունելով թէ Ծի Ձ ընթերցումը փորագրչին մէկ սխալն է. վասն զի արձանագրութեան մէջ յիշուած անունները «Գագիկ» թագաւոր եւ «տէր Սարգիս» հայրապետ 1003 տարին կ'ենթադրեն: Եւ եթէ Վարդան եւ Մխիթար Այրիվանեցին եկեղեցւոյն շինողը Ապիրատ կ'անուանեն, կը հետեւի ասկէ, թէ Գրիգոր եւ Ապիրատ[8] մէկ անձնաւորութեան կրած երկանուններն են:*

*Գրիգոր Ապիրատ պէտք է երկրորդ արձանագրութիւն մ'ալ ունեցած ըլլայ Կեչառոյքի իւրաշէն Եկեղեցւոյ վրայ. որմէ մաս մը պահուած է հետեւեալ արձանագրութեան վրայ: 1051ին Բջնեցի Գրիգոր Մագիստրոս, երբ նկատեց որ Բագրատունեաց թագաւորութեան հողերը 1045ին ժառանգեց Կայ-*

---

[8] *Անունս կարելի չէ ստուգաբանել հայերէն* ապիրատ *բառով: Թերեւս աղաւաղուած ձեւն ըլլայ* ապիպատ [illegible] *պատուանունին, արտասանուած նախ* ապիրպատ, *ապա* ապիրատ, *որուն նշանակած կարող է ըլլալ* ապիրատ *բառը: Բայց թէ Ապիրատ ընդունա՞ծ է Բիւզանդիոնի արքունիքէն «ապիպատ» տիտղոսը, չէ վկայուած:*

*տանդին Մոնոմախ կայսրը· եւ այս ժառան-գութեամբ եկեղեցիները որթոդոքս Եկեղեց-ւոյ սեպհականութիւն կ՚ըլլային, բարեխօսեց Կայսեր քով, որ Պահլաւունեաց սեպհական եկեղեցիներէն Մարմաշէնը եւ Կեչառոյքը իրենց հողերով ազատ ըլլան ամէն հարկէ եւ ձեռնմխութենէ: Կայսրը շնորհեց Մա-գիստրոսի այս խնդրուածքը եւ ի հաստա-տութիւն տուաւ կայսերական մատանիով կնքուած հրովարտակներ:*

*Այս մասին գրուած է Կեչառոյքի Ս. Աստուածածին եկեղեցւոյ հարաւային պա-տին վրայ, երեք լուսամուտներու տակ Թ. 1 արձանագրութիւնս.*

1.

Ի ՀԻՆԳՀԱՐԻՒՐԵՐՐՈՐԴԻ ԱՄԻ ԹՈՒԱԿԱՆՈՒ-ԹԵԱՆՍ ԹՈՐԳՈՄԵԱՆ, Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՍՈՒՐԲ ԵՒ ԻՆՔՆԱԿԱԼ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԿՈՍՏԱՆԴԻԵԱՑ ՄԱՒՆՈՒ-ՄԱԽԻՆ, ԲԵՐԱՒ ՈՍԿԻ ՄԱՏԱՆԻՍ, ԶՈՐ ՀԶԱՒՐԻՆ ԵՒ ԱՌԱՔԻՆՈՑՆ, ԲԱՐԵՊԱՇՏԻՆ ԳՐԻԳՈՐՈՅ ՄԱԳԻՍՏՐՈ-ՍԻՆ, ԿԻՏԱՒՆՏԻՆ ԵՒ ԴՈՒԿԻՆ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ԵՒ ՏԱՐԱՒՆՈՅ ԱՐՇԱԿՈՒՆՈՑՆ ԵՒ ՀԱՅԿԱԶՆՈՑՆ ՄԵԾԱՒ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ԱԶԱՏԵԱԼ ԷՐ ԶՄԵԾ ԵՒ ՀՌՉԱԿԱ-ՒՈՐ ԵԿԵՂԵՑԻՔՍ ԻՒՐ. ԵՒ ՈՉ ԱՅԼ ԻՆՉ ՀԱՅՑԷ. ԲԱՅՑ ՄԻԱՅՆ ԱՂԱՒԹՍ ԱՌՆԵԼ ՍՈՒՐԲ ԵՒ ԻՆՔՆԱ-ԿԱԼ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԿՈՍՏԱՆԴԻԵԱՑ.

2.

*«Ընդ նմին ծառային Քրիստոսի Գրիգորոյ եւ որդոց իւրոց. եւ յիշատակ կարգեալ յե-կեղեցիքս Կեչառուաց ցուր մագիստրոսն*

*կենդանի է ամեանեյն (իմացիր՝ ամենայն) չարաթ ուր պժամն Հասանայ արա(ս)ցեն անխափան. եւ յետ եկեղցն՝ Մագիստրոսին արա(ս)ցեն անխափան։ Արդ որ ոք այժմ վճռի հաստատնոյ խափանել ջանայ, թէ առաջնորդաց ոք իցէ կամ յիշխանաց կամ ի քահանայից, այնպիսին Յ եւ ԺԸ հայրապետացն նզովեալ եղիցի եւ բաժինն ընդ Յուդայի եղիցի եւ ընդ տիրասպան քահանայիցն։ Եւ այս գիր մեր է Յովանիսի շնորհիւն Աստուծոյ Բջնոյ եպիսկոպոսի եւ սուրբ եւ մեծի հաւրս Բարսղիս. եթէ ոք այս գրոյս խափանել ջանայ, այնպիսին նզովս չարաչարս ընկալցի ի սրբոյ լուսաւորչէն Գրիգորոյ եւ յամենայն սրբոց եւ ի մէնջ։ Կատարիչք գրոյս աւրհնեալ եղ(իցին)»*[1]։

*Արձանագրութեանս առաջին մասը կը պատկանի Բջնեցի Գրիգոր Մագիստրոսի յիշատակին. երկրորդը, բոլորգիր, մասն է մագիստրոս Գրիգոր Ապիրատի արձանագրութեան։ Թէ արդեօք «ընդ նմին» հին արձանագրութեա՞ն կը վերաբերէր, թէ առաջին մասի գրչէն է, կը մնայ խնդրական։ Ապիրատ կը խնդրէ որ «չարաթ ու(ու)ր պժամն» Հասանայ (այսինքն իր հօրը Հասանին համար) կատարուի, քանի ինքը, Ապի-*

[1] *Լուսանկարից հրատարակուած՝ Գարեգին Վ. Յովսէփեան, Քարտէզ հայ հնագրութեան, էջ 14—15 եւ տախտակ ԺԳ. Թ. 21։ Հմմտ. Շահխաթունեան, 194։ Ալիշան, Այրարատ, 260. Լալայեան, Ազգ. Հանդ. ԻԳ. 127.։ Կոստանեանց, Վիմական տարեգիր, 23::*

րսա, կենդանի է, իսկ իր մահէն առաջ իրեն համար ըլլայ: Զայս կը հաստատէ Յովհաննէս Բջնոյ եպիսկոպոս եւ (Կեչառայքի՞). մեծ հայրն Բարսեղ: Ուշադիր ըլլալու է որ այս տարուայ (1051) կամ անկէ քիչ յառաջ կամ առաջ Բջնոյ եպիսկոպոսն էր Եփրեմ. ինչպէս կը տեսնուի Գրիգոր Մագիստրոսի ԾԸ (էջ 131—132) եւ ԿԷ (էջ 158) թուղթերէն: Ուստի Յովհ. եպիսկոպոս եւ Բարսեղ մեծ հայր կը պատկանին 1003 շրջանին, երբ կառուցուեցաւ եկեղեցին:

Կայ նաեւ կեղծ արձանագրութիւն մը 1031էն, ուր Հաւուց Թառի եկեղեցւոյ շինութիւնը Գրիգոր Մագիստրոսի կ'ընծայուի: Այս եւ այլ նման խնդրոց վրայ տես իմ յօդուածս՝ Գրիգոր Ապիրատ, որդի Հասանայ, Մագիստրոս († 1021): Պատմական ուսումնասիրութիւն. Ա կ օ ս, 9 (1945), 109—121:

Կը պատմէ Վարդան թէ Աշոտ արքայեղբայրը կը կալանաւորէ Յովհաննէս թագաւորը եւ «առ ի ձեռս մեծ իշխանին Ապիրատն կոչեցելոյ՝ պահպանել զնա. եւ նա յօժար կամօք առեալ տանի զնէ յաթոռ իւր յԱնի, ասելով. Զիա՞րդ ձգեցից զձեռս իմ յօծեալ Տեառն եւ խելագար մի եղից ի տեղւոջ սորա» (էջ 97): Բայց այս կասկածելով Ապիրատ, թէ թագաւորը կարող է զինքը իբրեւ կուսակից Աշոտի նկատել, կ'առնէ զօրքը եւ Դուինի այլազգի Աբուսուարի քով ապաստան կը փնտռէ. բայց կը դաւաճանէ

*իրեն Ապուսուար* (*Մ. Ուռհայեցի*, 10—11)։ *Ստեփաննոս Օրպէլեան*, *ժամանակագրու-թիւն*, *էջ* 12 *կ'արձանագրէ յամի ՆՀ* (1021). *«Թուրքն էհար զԱպիրատն»*։

*Գրիգոր—Ապիրատ թողուց երկու որդի* 3. Ապլջահապ *եւ* 4. Վասակ, *եւ ինչպէս կ'երեւայ, դուստր մը*։

*Ապլջահապ եւ Վասակ կազմեցին գեր-դաստաններ. որոնց մասին պիտի խօսինք*։

5. *Դուստր. իմէ կը համարիմ արձա-նագրութիւնս* (*Շիրակ*, 135)։

ՆՂԶ ԹՎ. ՅԱՆՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ. ԵՍ ՏԻԿ(Ն)ԱՅ ՏԻԿԻՆ ԴՈՒՍՏՐ ԳՐԳՈՐՈՅ ՄԱԳԻՍՏՐՈՍԻՆ ԵՒ ԱՄՈՒ-ՍԻՆ ՍԱՐԳՍԻ ԱՐԵՒԵԼԻՑ ՎԵՍՏԻՍ ԹՈՂԵԱԼ ԵՄ ԶՏԻ-ԿՈՐՈՑ ԶԳԱՃԳԽՈՏՍ ՇԱՀԱՆՇԱՀ ԱՐԵՒՇԱՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԻՄ ԾՆՈՂԱՑՍ ՀՈԳՈՑՆ...։

*Բջնեցի Գրիգոր Մագիստրոս տիրացաւ 1045ին. հոս յիշուած Գրիգոր Մա-գիստրոսը հաւանօրէն Գրիգոր—Ապիրատն է, որ 1003ին Կեչառուքի շինողն եղած էր եւ վախճանած 1021ին*։

### Բ. ԺՈՂՎԾՈՅ ԸՆԴԻՐԸՆՏԵԸՆ-ՊԸՀԼԸՒՈՒՆԻՔ

Ա. Դուստր Գրիգոր Մագիստրոսի։

*Նկատի առնելով, որ Ծովքի իշխանա-կան տան մայրն եղած է Բջնեցի Գրիգոր Մա-գիստրոսի մէկ Դուստրը, եւ Անւոյ* (*Խա-չէնքի*) *իշխանական տան մայրը նոյնպէս*

Բջնեցւոց դստրներէն մէկը, եւ այս տուներու առաջին սերունդները կրած են Ապիրատ, Հասան, Վասակ եւ Ապլջահապ անունները, կու գամ այն համոզումի, թէ երկու տուներու հայրերը եղած ըլլան Գրիգոր Ապիրատի այն երկու որդիները, որոնք Ապլջահապ եւ Վասակ կը կոչուէին։

Մ. Ուռհայեցի իր Տարեգրութեան մէջ կը գրէ թէ Ապուսուար երբ սպաննել տուաւ Ապիրատը (1020), «իշխան ոմն Սարի անուն... առեալ զկին եւ զորդիս նորա (տալ. նոցա) եւ զհեծելագունդ զօրան եւ գնաց յԱնի. եւ թագաւորն Յովհաննէս... որդեաց նորա (Ապիրատի) Ապլջահապայ եւ Վասակայ եւ Սարէ եւ ամենայն զօրացն տայր... գաւառս եւ իշխանութիւնս» (11)։

Ասոնք, ինչպէս կ՚երեւայ, Անւոյ Պահլաւունեաց, Վահրամի եւ Գրիգոր Բջնեցւոյ, պաշտպանութեան տակ աճեցան եւ եղան Բջնեցի Գրիգորի փեսաներ։ Վկայուած է, թէ Վասակի կինը Գրիգորի դուստրն է. բայց լռած է պատմութիւնը ի մասին Ապլջահապի։

| Որդիք Ապլջահապի | Որդիք Վասակի |
| --- | --- |
| Ապիրատ | Հասան |
| Վասակ | Ապլջահապ |

Մինչ Վասակ մնաց Արեւելք (Անի, Խաչէնք), Ապլջահապ կ՚երեւայ թէ 1045ին իր տներով հետ գաղթեց Միջագետք եւ տիրացաւ այն տեղ Ծովք ամուր բերդին։

Ապլղահապ[1] օրհնուեցաւ չորս արու զաւակներով. ասոնք են՝ 1. Գրիգորիս, 2. Վահրամ, 3. Վասակ, 4. Ապիրատ. այս կարգով պիտի խօսիմ այս չորս հարազատներու մասին, թէ եւ, ինչպէս կ'երեւայ, երիցագոյն եղբայրն է Ապիրատ, որ մնաց մինչեւ մահը իբրեւ տէր Ծովքի:

6. Գրիգորիս որ յԵգիպտոս: — Գրիգորիս Վկայասէր Կաթողիկոս իբր 1082ին առած հետը իր քեռորդին Գրիգորիս արքեպիսկոպոս, կը մեկնի Կ. Պոլիս. կը մնայ հոն ժամանակ մը զբաղած թարգմանութիւններով: Այս թարգմանութիւնները կը յանձնէ իր քեռորդւոյն, որպէս զի տանի Քեսուն, ուր ի պահ վասիլ իշխանին, եւ ինքը պիտի իրեն, ի միասին երթալու Երուսաղէմ: Գրիգորիս արքեպիսկոպոս կը հասնէ դէպի Քեսուն. բայց նաւը հոն յաւն հասնելէ մղուած կը հասնի Եգիպտոսի ծովափ: Անտեղ կը հիւրասիրուի խալիֆայէն: Կաթողիկոսը զալով Քեսուն կ'իմանայ թէ քեռորդին կը գտնուի Գահիրէ: Ինքն ալ կ'երթայ հոն. կը մնայ ժամանակ մը Եգիպտոս (իբր 1085—1097): Անկէ կ'անցնի Երուսաղէմ: Հոն էր 1098ին, երբ առնուեցաւ Ս. Քաղաքը խաչակիրներէն: Ժամանակ մը վերջը կը վերադառնայ Եգիպտոս. հոն Կաթողիկոս կ'օծէ

[1] Ամուսնոյն անունը չէ յիշուած. բայց որովհետեւ անդրանիկ որդւոյն՝ Ապիրատի դուստրը անուանուած է Մարիամ, կարելի է մտածել թէ յանուն մօրն յորջորջուած ըլլայ:

Գրիգորիս արքեպիսկոպոսը. ապա կը մեկնի Քեսուն (1100)։ Կը վախճանի 1105ին։

Գրիգորիս Վկայասէր Ճաշոցի յիշատակարանին մէջ յիշած է իր քեռորդին գովութեամբ. «զԳրիգորիս համանուն իմ եւ համազգի, որ եւ գրիչ եւ յօրինիչ գրոցս»։ Նոյն գրոց մէջ յիշատակութիւն ըրած է անոր մասին նաեւ Կիրակոս վարդապետ. «զհամանուն կարեւոր իւր (Վկայասէրի)՝ Գրիգորիս» (Յովսէփեան, Յիշատակարանք, էջ 270—271)։

Գրիգորիս իր յաջողութիւնը կը պարտի այն պարագային, որ իր այցելութիւնը Եգիպտոս զուգադիպեցաւ Պէտր էլ Ճէմալ հայազգի բայց իսլամացած վէզիրի (1073—1094) իշխանութեան շրջանին։ Սա Միջագետք գտնուած ժամանակ կազմած էր իր շուրջը կարիճ եւ փառահեղի զինուորներէ բանակ մը եւ եկած Եգիպտոս եւ գրաւած երկիրը։ Ան կարողացած էր մաքրել Եգիպտոսը խուժադուժ եւ անփառահեղի տարրներէն, հաստատել կարգ եւ կանոն, բարձրացնել տնտեսութիւնը եւ բարենորոգել աշխարհը։ Կ՚ըսուի թէ ունէր ան իր տրամադրութեան տակ չորս հազար հայ զօրք արայն զօրանոցներու մէջ. Թոյլ տուաւ Հայոց, որ գաղթեն Եգիպտոս եւ շինեն մայրաքաղաքին մէջ իրենց սեփական բնակարաններ։ Կարճ ժամանակի մէջ Հայոց թիւը բարձրացաւ 30.000ի։

Եգիպտոսի խալիֆային եւ վէզիրին այս բարեկամական վերաբերութենէն քաջալերուած Գրիգորիս Վկայասէր Կաթողիկոս իր քեռորդին Գրիգորիս կարգեց Եգիպտոսի Հայոց առաջնորդ, զոր ապա Կաթողիկոս օծեց: Կարգադրեց նաեւ որ Գրիգորիսի եղբայրներէն Վահրամ եւ Վասակ Եգիպտոս իջնան. անոնց յարեցան ապա Ապիրատի Վասիլ եւ Զօրավար որդիք եւ Վահրամ Թոռնիկը: Այս անունները կը յիշէն Ներսէս Շնորհալի իր Վիպասանութիւն մէջ (էջ 547) եւ Արաբ աղբիւրները: Ներսէս կը գրէ.

Անդ ի յաթոռն սուրբ եղեալ
Զառ ի քեռէն որդի ծնեալ,
ԶԳրիգորիս համանուանեալ,
Զհօրն մերոյ (Ապիրատայ) եղբայր եղեալ.
Զայն որ շնորհօք Հոգւոյն լցեալ...
Ըզհամազգիս ըզկնի ձըգեալ,
Զարի եղբարս իւր քաջացեալ,
Ըստ Յեսուայ զօրապետեալ,
Որոյ Վահրամ վերաձայնեալ,
Միւսոյն Վասակ անուանադրեալ.
Որք վեհագոյն փառս ընկալեալ...:

7. Վահրամ ու յԵգիպտոս:

Արաբ աղբիւրներու համաձայն առաջ դերը խաղացած է Վահրամ (Պէհրամ էլ Էրմէնի) որ քեռորդին էր Գրիգորիս Վկայասէրին եւ եղբայրը Գրիգորիս Ապիրատեանի եւ Վասակի: Սա մտերիմը Հաֆըզ խալիֆայի կը յաջողի 1135ին ձեռք բերել վէզի-

րութիւնը եւ միահեծան իշխել Եգիպտոսի։ Կը կարգէ իր եղբայրն Վասակ (Նասիք) վերին Եգիպտոսի Գուս նահանգին վարիչ։ Վարչական եւ զինուորական մեծ պաշտօններու կը բարձրացնէ իր Ապիրատ եղբօր երկու որդիները՝ Վասիլ (Պասիլ) եւ Զօրավար (Զարգա)։ Իր շուրջը ունէր հայ բանակը։ Հետամուտ էր երկրին կարգերը հաստատել եւ անտեսութիւնը ծաղկեցնել։ Բայց մահմեդական աշխարհի մէջ հայ վեզիրի բոլոր բարենորոգումները նկատուեցան հարստահարութիւններ։ Վահրամի դէմ ապստամբեցուց Ռուտվան Պին Վալախշի ոժգուտարրը։ Վահրամ փութաց օգնութեան հանիլ իր եղբօր Վասակի. բայց գտաւ զանիկա սպաննուած խուժանէն (1137)։ Ռուտվան յինքն կորզած էր վեզիրութիւնը. խոհեմութիւն համարեցաւ Վահրամ պահ մը հեռանալ երկրէն. գնաց Թլպաշար (կամ Ծովք)։ Անկէ գանգատեցաւ Հաֆըզ խալիֆային անցուցարձերու մասին։ Աղաչեց խալիֆան, որ Վահրամ վերադառնայ իր քով։

Վահրամ պահանջեց նախ ապահովութեան թուղթ մը իր համար. ապա իր եղբօր որդիներու եւ քեռորդւոյն համար ապահովութեան թուղթ Եգիպտոսէն ելլելու, ինչպէս նաեւ ազատ ելք կամ պաշտպանութիւն մնացեալ ազգայիններու համար։ Թուղթերը տրուեցան. եւ վերադարձաւ Եգիպտոս, իրաւունք տրուեցաւ, որ ձերմակ վանքի մէջ կրօ-

*նուէրի: Բայց քիչ յետոյ խալիֆան իր մօտ կ'առնէ Վահրամը իբրեւ խորհրդական* (1138)*: Կը վախճանի* 1141*ին եւ կը թաղուի Տէյր էլ խանտաք հայկական վանքին մէջ* (*Մըարյեան*, 64—79):

8. Վասակ որ յԵգիպտոս: *Կը գրէ Մ. Ուռհայեցի, թէ* 1110*ին փառանգ եւ հայ զօրքը Սամոսատ ժողվեցան. «զայր եւ զկնի նորա իշխանն Հայոց Ապլղարիպն զօրօք իւրովք, որ նստէր ի քաղաքն որ անուանեալ կոչի Բիր». եւ կը քալեն ընդդէմ Թուրքաց Սամոսատան ատապատյարի* (*էջ* 314)*: Իսկ յամին* 1117 *կը պատմէ, թէ Ուռհայի Գողտին եւ Սրճոյ Կոլորան կոմսերը «գնացին ի վերայ Հայոց իշխանին, որում անունն կոչէր Ապլղարիպ, որ էր եղբայր Լիկոսին եւ որդիք Վասակայ, այր քաջ եւ պատերազմող. որ բնակեալ էր ի Նդէնն առաջին ակրն Թլպաշարայ. եւ ի Գշուրեց տանեալ էին բազում տեղիք քաջութեամբ իւրեանց. եւ ուժգին զօրութեամբ առին զքաղաքն զԲիրն եւ շինեցին իւրեանց բնակարան. վասն զի էին քաջք եւ անուանիք պատերազմաց. ունէին իւրեանց զօրականս այս հազար»: Գողտին կոմս կը պաշարէ Բիրը. զոր քաջաբար կը պաշտպանէ Ապլղարիպ տարի մը. բայց ի վերջոյ «առ փառնդին եւ առ վշտացն անճարեալ լինէր Ապլղարիպն եւ տայր զԲիրն եւ զամենայն գաւառն ի Գողտայինն եւ ինքն գնաց առ իշխանն Հայոց առ Թորոս Ռուբինեան որդին յԱնաւարզա»* (*էջ*

337—338)։ *Այս տեղիքը Համառօտութեամբ յառաջ բերած է Վարդան իր Պատմութեան մէջ, ուր Ապլղարիպի եւ հօր եւ եղբօր անունները յիշած է. «Ի վերայ Ապլղարիպին Հայոց իշխանին*, որդւոյ Վասակայ, եղբօր Լիկոսին» (*էջ* 117—118)։

9—10. *Այս տեղէն կ՚ուսանինք, թէ Վասակ ունէր երկու որդի* Ապլղարիպ *եւ* Լիկոս, *որոնք նուաճումներ բրած են Մծբինի, Թըլպաշարի եւ Պիրի շրջաններու մէջ, ամբողջ գաւառ մը, զոր ապա առնլուած են Թողուլ Պաղտինին եւ սա ընծայած է Մրձոյ կոմսին* (1117*ին*)։ *Ուստի Վասակ եւ որդիքը, որոնք չափահաս էին, ձգած էր Միջագետք եւ ինքը գաղթած Եգիպտոս, ուր կարգուած է Գուս նահանգի նահանգապետ եւ սպանուած* 1137*ի խռովութեանց ժամանակ*[1]։

11. Ապիրատ որդի Ապլջահապի, *իշխան Ծով գղեակի։ Իր որդին Ներսէս Շնորհալի կը ներկայացնէ զինքը «պաշտօնի ազգաւ սեռեալ», եւ նկարագրով՝*

*Աստուածային շնորհօք լցեալ,*
*Եւ երկիւղիւըն զարդարեալ,*
*Գեղապաճոյճ անձն երեւեալ,*
*Իշխանութեամբ շքեղացեալ.*
*Զնախնական անուն առեալ*
*Որ Ապիրատն էր յորջորջեալ,*

[1] *Այս իմաստով պէտք է ուղղել ինչ որ գրած էի Հանդ. Ամս.* 1954, *էջ* 26—27, *թ.* 15—17 *եւ էջ* 31, *ծ.* 5։

*Թոռն մեծին Գրիգորի լեալ,*
*Որ Մագիստրոս մականուանեալ*[2]:

*Ապիրատի ամուսինն էր Վանենի, որմէ ունեցաւ 4 զաւակ, Վասիլ, Զօրավար, Գրիգորիս եւ Ներսէս եւ դուստր մը՝ Մարիամ անուն:*

1112/3*ին, երբ որդին Գրիգորիս նոր ձեռնադրուած էր Կարմիր Վանքի մէջ, բօթը կը լսուի, թէ Ապիրատ նահատակուած է նետահար, «որ ի Ծովին յայն պատահեալ»:*

*Ապիրատի կնոջ անունը հաղորդած է Գրիգոր գրիչ այն Աւետարանին մէջ, զոր օրինակած է* (1173/4*ին*) *Շնորհալւոյ համար եւ սեպհականութիւնը եղած է Գրիգոր Դ. կաթողիկոսին. «Յիշեսջիք... զքրիստոսասէր իշխանն Վասիլ (Զ. Վասակ)... զմիւս եղբայրն զԶաւրավար (Զ. զԱպիրատ) եւ զքոյր նոցա Մարիամ յայրութեան եւ ի սրբութեան վախճանեալ եւ զծնաւղսն նոցա զբարեպաշտ իշխանն Ապիրատ եւ զմայր նոցա Վանենի» (Յովսէփեան, էջ* 458):

*Ըստ այսմ Ապիրատի որդիքն են* 1. *Վասիլ.* 2. *Զօրավար.* 3. *Գրիգորիս կաթողիկոս եւ* 4. *Ներսէս.* 5. *Մարիամ:*

12—16. Վասիլ *որդի Ապիրատի, տէր Կառկառոյ: Ինչպէս յիշեցինք վերագոյն, Վասիլ իր եղբօր Զօրավարի հետ գերուած էր Եգիպտոս. անոնք վերադարձան իրենց հօրը*

---

[2] *Վիպասանութիւն,* 553:

*սպանուելէն* (1137) *ետքը: Մ. Ուռհայեցի կը գրէ յամին* 1149/50. *Ճօսլին «առաքէ զմնացեալ զօրսն իւր հետ բարի եւ մեծահաւատ իշխանին Վասլին, որ էր եղբայր կաթողիկոսին* (*Գրիգորիս Գ.*) *եւ Տէր Կոռկոռոյ»: Ճանապարհին Թարա-Ասլան կը կալանաւորէ «զՎասիլ եղբայր կաթողիկոսին. եւ տարեալ առաջի մեծի գզեկին Կոռկոռոյ, քանզի անդ էին կինն եւ որդիքն Վասլին»: Կոռկոռոյ բերդը կը յանձնուի: «Եւ զիշխանն զՎասիլ ընդ իւր տարեալ յերկիրն իւր* (*առ Մասուտ սուլտան*) *մեծաւ փառաւորութեամբ եւ տուեալ երկիր որպէս սիրելի եղբօր իւր»* (*էջ* 396—397)*: Սամուէլ Սկեւռացի կը պատմէ թէ Հեթում Ա. Լամբրոնացի «մին ի դստերաց* (*Մարեմիկ անուն*) *փեսայացոյց զեղբայր կաթողիկոսին Հայոց Գրիգորի* [*Մագիստրոսի*] *զՎասիլ, որք էին թոռունք Գրիգորոյ Մագիստրոսի Բջնեցւոյ: Իսկ յետ վախճանին Հեթմոյ պայազատեաց զհայրենի աթոռն հարազատ որդի նորա Աւշին: Սմա հարսնացոյց փեսայն իւր Վասիլ զդուստր եղբօր իւրոյ Զօրավար անուն»* (*Սամ. Անեցի, Ցուց.* 226)*: Իսկ Սասունի տիրոջ Վեցենի որդին Զորտուանէլը, որ Բջնեցի Գրիգոր Մագիստրոսի դստեր թոռնիկին որդին էր, «փեսայացուցանէ ընդ դուստր Վասլի եղբօր Գրիգորիսի* (*Գ.*) *Հայոց կաթողիկոսի, հզօրի եւ մեծի, որոյ անունն* Վանինէ *ճանաչի»* (*Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.*, 397. *տես վարը Թոռնիկեանք*):

*Ուստի Վասիլի զաւակներն են.* 1. Գրիգոր *Դ. Տղայ Կաթողիկոս* († 1193). 2. Վանինէ, *որ կին եղաւ Զորտուանէլի.* 3. Ա. Ա. դուստր, *որուն որդին* Վահրամ *Կաթողիկոս ընտրուեցաւ* Գրիգոր Ե. *անունով* († 1194. *Հմմտ. Սամ. Անեցի*, 164. *Սմբատ*, 106. *Հայապատում Բ.* 412)։

17—22. Զօրավար որդի Ապիրատի։ *Զամչեան Գ.* 18 *կը գրէ. «Շահան՝ որ մականուամբ Զօրավար կոչիւր»։ Ժամանակակիցներէն ոչ ոք Շահան անուանած է Զօրավարը. նաեւ իր եղբայրներն եւ զաւակները ոչ, որոնք իրենց հայրը Զօրավար անուամբ կը ճանչնան* (*Ն. Շնորհալի, Չափաբերականք, էջ* 165, 226—227, 361, 557. *Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.*, 475, 583)։ *Հաւանօրէն նկատի առած է Զամչեան Շահանդուխտ անունը, որ դուստրն էր Զօրավարի, ուստի ստուգաբանուած՝ «դուստր Շահանի». մինչ ըլլալու է «թագաւորներու դուստր», գործածուած արդէն նախորդ դարերուն* (*Աճառեան, Անձնանուններ, Դ.*, 106—107)։ 1130—1137 *տարիներուն, երբ ան Եգիպտոս կը զինուորէր, Արաբները կոչեցին զինքը* Զարգա, *որ* Զօրավարի *աղաւաղումն է* (*Մըարլեան*, 79)։ 1201*ին յիշատակագիր մը կոչած է զինքը «մեծ սեւաստոս Զօրավար»* (*Յովսէփեան, անդ*, 691)։ 1174*ին գրուած Աւետարանի գրիչը Գրիգոր, որ Գրիգոր եւ Ներսէս կաթողիկոսներու եղբայրն Վասիլ անուանած էր վրիպակաւ «Վա-*

*սակ»*, *նաեւ «զամենայն բարեաց աւրինակն աշխարհի զմիւս եղբայրն» Զաւրավար կո–չած է նոյնպէս սխալմունքով «զԱպիրատ»* (*Յովսէփեան*, *անդ*, 458):

*Զօրավարի զաւակներն են*. 1. Ապիրատ, *կոչուած* «Գրիգոր Զ. կաթողիկոս (1194—1203). 2. Միքայէլ (*իշխա՞նն Բերդկան*, *Սի–սուան*, 471. *Համա. նաեւ* 331: *Իր մասին Յովսէփեան*, *անդ*, *էջ* 691). 3. Վասիլ. 4. Թագուհի (*ամուսինը՝ Բակուրան*, *Տէր Պապեռոնի*, *Յովսէփեան*, 583). 5. Շահանդուխտ (*ամուսինն Օշին տէր Լամբրոնի*):

23. Գրիգորիս Գ. Փոքր Վկայասէր. կա–թողիկոս (1113—1166, *յուլիս*):

24. Ներսէս Դ. Կլայեցի (Շնորհալի) կաթողիկոս (1166 *ապր*. 17—1173 *աւգ*. 13):

25. Մարիամ. *Ներսէս կը գրէ* 1121*ին*, *քրոջը մասին. «որ յաշխարհի կարգս մտեալ»* (*էջ* 557), *այսինքն՝ ամուսնացած էր. լռուած է անոր ամուսնոյն անունը. սա վախճանած է* 1151*էն յառաջ թողլով իր այրի կնոջ «ման–կունս». անոնցմէ մին է Վահրամ: Նոյն տարւոյն կը գրէ Ներսէս* (*էջ* 226):

*Եւ Մարեմայ քեռ ընտրելոյ,*
*Ի յայրութեան բարի անելոյ,*
*Որ յետ մանկանց որ ըստ մարմնոյ*
*Ստանայր մանկունս ըստ Աստուծոյ:*

*Յաջորդ տարւոյն* (1152) *կը յայտնէ, թէ մահացած է Վահրամ.*

*Եւ Մարեմայ ճըգնաւորի,*
*Քեռ ըստ մարմնոյ մեր պանծալի,*
*Եւ Վահրամայ իւր զաւակի*
*Հանգուցելոյն առ Քրիստոսի* (էջ 165)։

1173*ին կը յայտնէ Գրիգոր գրիչ, թէ Մարիամ վախճանած է «այրութեան եւ ի որբութեան»* (*Յովսէփեան*, 458)։

26. Վահրամ, (*Պէհրամ քեռորդի Պաւլլի = Վասլի*) *որդին Մարիամի կը յիշուի արաբերէն վաւերագրի մը մէջ, թէ կը գտնուէր* 1137*ին Եգիպտոս, եւ ունէր ապահովութիւն վերադառնալու հայրենիք։ Մըսըրլեան,* 79)։ *Վերադարձաւ անշուշտ իր երկու մօրեղբայրներու հետ։ Ինչպէս տեսանք, ան* 1152*ին հանգուցեալ էր։*

### Բ. ԴՈՒՍՏՐ ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ

27. Վասակ *որդի Գրիգոր–Ապիրատ Մագիստրոսի։*

1021*ին երբ Ապիրատ սպանուեցաւ Ապուսուարէն Վասակ եւ Ապլղարհատ վերադարձան Անի. Յովհ. Սմբատ սիրով ընդունեցաւ զանոնք* (*Ուռհ.* 11) *եւ յանձնեց հաւանօրէն անոնց քրոջ, որ կինն էր Վեստ Սարգսի։*

*Վարդան Արեւելցի կը գրէ. «Ի ՇԽԳ* (1094) *թուին տարաբեաց Փաւլուն ամիրայն Գանձակայ զՎասակ պահլաւ որդի* (*Ապիրատ*–)*Գրիգորի մագիստրոսի ամենայն զօրօքն Առանայ յանաւրիկ ամուրն Բաղաց եւ Կապանին, որ եւ խարէութեամբ հնարեալ*

մօրն անդր» (103)․ Նոյնը կը կրկնէ Մխիթար Այրիվանեցի յամի 1094․ «Փադլուն ամիրայն առաքեաց զՎասակ Պահլաւունին, զորդի Գրիգորի Մագիստրոսի բազում զօրօք ի վերայ Բաղաբերդոյ, որք խաբէութեամբ սպանին զՍենեքարիմ արքայն Հայկազն եւ առին զերկիրն Սիւնեաց․ եւ այն եղեւ սկիզբն աւերելոյ Տաճկաց ի վերայ նոցա» (էջ 76)։ Պէտք է իմանալ Գրիգոր որդի Վասակայ Ապիրատեանց, տես վարը, Թ․ 4։

Վասակի որդին Բարսեղ 1081/2ին կ'օծուի Ազուանից Ստեփաննոս կաթողիկոսէն կաթողիկոս․ «եւ եկեալ գայր Բարսեղ կաթողիկոսն Հայոց ի Թագաւորաբնակ քաղաքն յԱնի․ եւ եկեալ ամենայն տունն Շիրակայ գնայ ընդ առաջ նորա․ եւ ահա գայր Վասակ հայր տէր Բարսղի եւ եղբարքն նորա Հասան եւ Գրիգոր եւ Ապլջահապ արք քաջք եւ հզօրք, հանդերձ եպիսկոպոսիւք, եւ նստուցին զտէր Բարսեղ յաթոռ տեառն Պետրոսի» (Ուռհ․ 221)։ Սամուէլ Անեցի կը գրէ․ «ՇԼԲ (1083) թուին նստաւ տէր Բարսեղ յաթոռ հայրապետութեան, որդին Վասակայ» (117) յԱնի։

28․ Բարսեղ կաթողիկոս գնաց Գրիգորիս Վկայասէրին․ որուն մահէն (1105) ետքը մնաց Շուղրի վանքը․ վախճանեցաւ 1113ին արկածով։ Օծեց իրեն յաջորդ Գրիգորիս Փոքր Վկայասէր։

Վասակ կին առած էր Բջնեցի Գրիգոր Մագիստրոսի դուստրը (անունը չէ յիշուած),

*եւ ունեցած իրմէ չորս որդի․* 1․ Հասան, Գրիգոր, Ապլջահապ *եւ* Բարսեղ: *Ուռհայեցի կը շեշտէ, թէ Գրիգորիս Վկայասէր* 1074*ին երբ Անի կը գտնուէր, եպիսկոպոս ձեռնադրեց «զԲարսեղն,* զքեռորդին իւր, *զորդին Վասակայ»* (211):

29—30․ Հասանի եւ Ապլջահապի *մասին չունինք մանրամասնութիւններ․ անոնք կենդանի էին տակաւին* 1080*ին*:

31․ Գրիգոր Կիւրապաղատ *որդի Վասակայ․ կը գովուի իբրեւ քաջարի զօրավար:*

*Վարդան Պատմիչ կը գրէ թէ Մանուչէ ամիրայն Անւոյ, «ած ի քաղաքն զամենայն միացեալ իշխանսն, որպէս եւ մեծաւ հանդիսիւ ընդ առաջ ելեալ մուծանէր ի ներքս զԳրիգոր զորդի Վասակայ, զԹոռն Ապիրատին․ զոր ասեն ունել ի գլուխ ազատաց կանանցն* 500 *թագս երեւելիս, զի տէր էր մեծ զօրաց եւ բազում ազատաց: Եւ էր եղբայր տէր Բարսղի...»* (103—104):

1094*ին, ինչպէս կը պատմէ Ստ․ Օրբէլեան* (*էջ* 320)․ *«Յանդգնեցեալ... Իսմայէլականացն ընդ գեղեցիկ եւ ամուր թագաւորութիւնս Բագրատ... ելեալ ամիրայն Պարտաւայ եւ Ռանայ եւ Գանձակայ բազում զօրօք գայ ի պատերազմ ընդ Սենեքերիմայ, ընդ որում էր Շիրակայ իշխանն Գրիգոր Ապիրատեան: Իմացեալ զայն Սենեքերիմայ եւ ամրացուցեալ զամենայն աշխարհն յանառիկ ամուրսն․ ելեալ ապա անիծեալ ամիրայն եւ տեսաւ զի անհնարին էր ի մարդկանէ․ յուղարկէ զԳրի-*

զոր իշխանն Անեցի, որ պատճառաւ ինչ կայր առ նմա, առ Սենեքերիմ արքայն, եւ ասէ. Երդմամբ հաւանեցո զնա գալ առ իս, եւ առնեմք ընդ միմեանս ուխտ. եւ մեծամեծ պարգեւօք արձակեմ զնա. ապա թէ ոչ հաւանեցուցանես, եւ զքոյդ գլուխ առաջն հատանեմ: Գնացեալ ապա Գրիգորին այն զչար ճանապարհն, եւ մտեալ առ Սենեքերիմ եւ մեծամեծ երդմամբ հաւանեցուցանէ զնա գալ առ ամիրայն. որք եւ եկին ի միասին: Իսկ տեսեալ զնա չարաթոյն զազանին, եւ սանեաց ուխտին եւ յարձակեալ... եսպան զԹադաւորն. եւ ինքն անց գնաց յաշխարհ իւր»: Նոյն դէպքը, ինչպէս տեսանք վերադոյն § 27, Վարդան, ասէ Մխ. Այրիվանեցի ներկայացուցած էին կատարուած Վասակի կողմէ. պէտք է իմանալ Գրիգոր որդի Վասակայ Ապիրատեանց:

Մատթէոս Ուռհայեցի կը գրէ յամի 1098/9. «Յայսմ ամի զօրաժողով արար Գրիգոր Կուրապաղատն յԱրեւելս... գնացեալ ի վերայ Թուրք բանակին ի գաւառն Աշորնէք: Վասն զի էր այր քաջ եւ հզօր եւ պատերազմող, գնացեալ զօրօքն իւրովք ի գեղն որ ասի Կաղզուան եւ հասեալ ի վերայ Թուրքին եւ պատերազմաւ հարեալ զնոսա եւ արար հալածական»: Վերադարձին թշնամի դարանակալէ մը նետահար կ՚ըլլայ: «Եւ եղեւ սուգ մեծ Շիրակայ եւ ամենայն տանն Հայոց: Արդ այսպիսի օրինակաւ մեռաւ քաջ զօրականն եւ մեծ հաւատացեալն Աստուծոյ Գրի-

*զօր... ի յազգէ քաջաց եւ ի պատերազմող զօրականաց, յազգէ Պահլաւունեաց»* (*էջ* 328)։ *Վարդան նոյնը կը պատմէ այսպէս․ Էլխազի կ'ապատակէ «ընդ միջոցս աշխարհի մինչեւ յԱնի քաղաք»․ Գրիգոր կը յարձակի անոնց վրայ, կը սպաննէ Էլխազիի հսկայ եղբայրը․ «որ զկնի աւուրց նահատակեցաւ զերծուցեալ ի մահուանէ զամիրայն Անւոյ զՄանուչէ․ եւ տարեալ թաղեցին զնա ի Կեչառուս... եւ Մանուչէ եւ ամենայն զօր բանակին Հայոց զկնի դիոյն»* (*էջ* 109)։

32․ *Գրիգորի որդիներէն յանուանէ կը յիշուի՝* Հասան մագիստրոս․ *Մխիթար Գոշ Բարսեղ եպիսկոպոսն Անիի եւ Գրիգոր-Ապիրատ կը ներկայացնէ «որդիք մագիստրոսին Հասանայ»* (*Հայապատում, Բ*․, 390)։ *Իսկ Ստ․ Օրբելեան կը յիշէ «Մեծ իշխանն Հասան որդի Գրիգորի, յազատացն Սենեքերիմայ»․ որ* 1086*ին Նորաշինիկ գիւղն եւ Ձեռաւի վանքը նուիրած է Տաթեւին* (*էջ* 326—327)։

33․ Գրիգոր-Ապիրատ, *մագիստրոս*։ *Վարդան պատմիչ կը գրէ իր մասին շատ մութ տողեր․ յամի ՈԻԳ* (1174)․ *«Ի նմին ժամանակի ել ի բանակէն Կարուց մեծ իշխանն Ապիրատն․ եւ եկին յԱնի․ սա էր եղբայր եպիսկոպոսի քաղաքին՝ տեառն Բարսղի, որ աղաչեաց զթագաւորն Վրաց․ եւ ետ փոխան նմա ամիրայ, եւ առ զնա* 17․000 *դահեկան»* (*էջ* 130)։ *Հ․ Ղ․ Ալիշան կ'իմանայ․ «Յետ այսորիկ Բարսեղ եպիսկոպոս*

քաղաքին աղաչեալ զԹագաւորն Վրաց՝ փոխանակ Իւանէի կացոյց ամիրայ Անւոյ զեղբայր իւր Ապիրատ, որ նոր զերծեալ էր ի բանտէն Կարուց» (Շիրակ, 100)։ Ստեփանոս Օրբէլեան, Ժամանակագրութիւն, էջ 18, կը գրէ յամի 1160. «ի նոյն ամի ազատեցաւ Ապիրատն գնով»։ Շար կաթողիկոսացն Աղուանից, որուն հեղինակը Մխիթար Գոշ կը համարուի, ունի տեղիքս. Գորգի Թագաւորն Վրաց (1154—1184) «առնոյր զքաղաքն Անի միանգամ եւ երկիցս՝ կոչելով եպիսկոպոսին Բարսղի եւ եղբարց նորա, որդւոցն մագիստրոսին Հասանայ» (Հայապատում, Բ., 390)։

Իր զաւակներէն կը յիշուի միայն Սարգիս քահանայ։

34. Բարսեղ կարգուած էր Անիի եպիսկոպոս։ Կը գրէ Վարդան, թէ 1186ին «առին Անեցիք զՄատաքար, զհայրենիս տեառն Բարսղի» (էջ 133). ունինք իրմէ արձանագրութիւն մը 1191էն Լմբատայ եկեղեցւոյն վրայ. «Ես տէր Բարսեղ գնեցի զվանքս յանօրինաց» (Շիրակ, 164)։ Կը յիշուի 1160—1191 տարիներուն իբրեւ «հայրապետ» եւ «կաթողիկոս»։

ա. Ի ՈԹ (1160) թւ. ի թագաւորութեանն Փատլնոյ, ի հայրապետութեանն տէր Բարսղի... (Արձ. Շիրակ, 41)։

բ. Յիշատակագիր մը կը գրէ 1172ին, թէ Բարսեղ արքեպիսկոպոս «եկեալ ի գաւառէն Խաչենոյ... եղեւ... վերատեսուչ համայն

քրիստոլ(ն)էից Հայոց, որ ընդ դաւազանաւ թագաւորութեանս Վրաց, յաջորդեալ զաթոռ տեառն Գեորգայ (առաջնորդին Հաղբատայ) ...էր ի հարց եւ ի հաւուց ազատ (յ)ազատաց եւ մեծազգի ի մեծազգեաց...» (Յովսէփեան, Յիշատակարանք, էջ 407—410)։

գ. Արձ. 1173է. «Յամս աստուածապատիւ եւ հոգեւոր տեառն Բարսղի Հայոց կաթողիկոսի եւ յամիրապետութեանն բարիանուն Սուլղանի որդի Ամիր Մահմուտի Թոռն Մանուչէի. յամի ՈԻԲ. թու...» (Շիրակ, 85)։

դ. Արձ. 1174է. «Ի ՈԻԳ. թուիս Հայոց, ի հայրապետութեան Նահանգիս մերում տեառն Բարսղի...» (Շիրակ, 21)։

ե. 1181ին Աւետարան մը կը գրուի Հոռոմոսի վանքին մէջ «ի հայրապետութեան տեառն Բարսղի եւ յառաջնորդութեան ուխտիս Խաչատրոյ» (Յովսէփեան, անդ, 484)։

զ. 1187ին Բարսղի Վեցօրեայքը կ'օրինակուի նոյն վանքին մէջ «ի հայրապետութեան մեծարգոյ եւ հռչակաւոր տանն Աստուծոյ տեառն Բարսղի եւ եղբաւրորդւոյ նորա աստուածարեալ մանկագոյն քահանայի Սարգսի, զորս պահեսցէ տէր Աստուած... հանդերձ եղբարբք եւ ազգաւ» (անդ, 518)։

է. Արձ. 1195էն. «Ի թվ. ՈԽԴ. յառաջին ամի կաթողիկոսութեան տեառն Բարսղի...» (Շիրակ, 22)։

ը. Արձ. 1198էն. «Ի հայրապետութեան տեառն Բարսղի» (անդ, 22)։

*Մահը Հ. Ալիշան, Շնորհալի,* 13 *ծ. նշանակած է* 1203*ին։ Նոյնը չէ կրկնած Շիրակի մէջ։*

*Ուշադրութեան արժանի է հոս, որ* 1173*ին, երբ վախճանեցաւ Ներսէս Շնորհալի, Հիւսիսային Հայաստան* (*Հաղբատ*) *Բարսեղ «Կաթողիկոս» կը հռչակուի. եւ ապա երբ Գրիգորիս Տղայ կաթողիկոս կ՚ընտրուի, Բարսեղ «հայրապետ» յորջորջումը կ՚ընդունի։ Նոյնպէս նաեւ* 1194/5*ին, երբ Գրիգորիս Ե. քարափէժ կ՚ըլլայ, Բարսեղ «Կաթողիկոս» կը յորջորջուի երկրորդ անգամ. բայց Գրիգորիս Զ.ի գահակալութենէն ետքը* (1195) *Բարսեղ դարձեալ «հայրապետ» կը ճանչցուի։*

1177*ին ներկայ էր Հռոմկլայի ժողովին, «Բասիլիոս արքեպիսկոպոս թագաւորանիստ քաղաքին Անւոյ* (*Շնորհալի, Ընդհանրական,* 198)։

*Գրիգոր Տղայ* (51) *եւ Ներսէս Լամբրոնացի* (218, 227) *Անեցի կ՚անուանեն զինքը. զոր Լամբրոնացի խստիւ քննադատած է եւ յիշած անգամ մ՚ալ յանուանէ. կը գրէ առ Լեւոն ակնարկելով Հաղբատացիները. «զի նոցա կամացն լրումն Բարսղի կաթողիկոսութիւնն է եւ ո՛չ իմ ի ճշմարտութենէ մոլորումն»* (*էջ* 228)։ *Այս մասին աւելի ունեցանք խօսելու վերագոյն, էջ* 67—69։

## ՊԱՀԼԱՒՈՒՆԻՆԵՐՈՒ ՎԵՐՋԻՆ ՇԱՌԱՒԻՂՆԵՐՆ ՑԱՆԻ

*Մարմաշէնի, Բագնայրի եւ Անիի արձանագրութիւնները ԺԳ. դարէն կը ներկայացնեն դէմքեր, որոնք կը հաւաստեն թէ իրենք ծագումով Մեծին Վահրամի տունէն են. «Թոռունք Վահրամայ իշխանաց իշխանին»* († 1044)։ *Բայց իրենց եւ Վահրամի միջեւ առնուազն* 150 *տարիներու դատարկութիւն կայ. գոնէ* 3 *սերունդ։*

*Թէեւ չեմ կրնար ապացուցանել անոնց կապը Վահրամեան տան հետ. բայց կարեւոր կը համարիմ յիշել զանոնք Պահլաւուներու ազգաբանութեան մէջ։*

35. *Ստեփաննոս Օրպելեան (Պատմ., էջ* 384—385) *խօսելով* 1177 *տարուայ դէպքերու մասին, կը գրէ թէ Իվանէի բանակին մէջ էին Կայենեցին Հասան եւ Անեցին Գրիգոր Ապիրատեանց, որ ապա կ՚անուանուի «Գրիգոր Մագիստրոսեանց»։ Այս Գրիգոր Մագիստրոսեանց Անեցին Հասանի որդին եւ Բարսեղ եպիսկոպոսին եղբայրն է։ Ժամանակը կը պահանջէ որ իր որդին եղած ըլլայ Ապուղամր։ Ես այս տեղ նկատի կ՚առնեմ միայն Ապուղամրի յաջորդները։*

36—38. Ապուղամր *եւ որդիք* Գրիգոր Մագիստրոս *եւ* Ղարիբ։

*Մարմաշէնի արձանագրութիւնը* 1225*էն. յառաջ կը բերեմ յապաւումներով.*

«Ի ժամանակս բարեպաշտից եւ աստուածասիրաց պատրոնաց մերոց աթաբակ Իւանէի եւ մանդատորթա խուցէս Շահնշահի. հրամանաւ սոցին վերստին նորոգումն եղեւ... սորոյ կաթողիկէիս Մարմաշինոյ ի ձեռն որդւոց Ապուղամրի մագիստրոսի՝ տէր Գրիգորոյ արհի եպիսկոպոսի եւ հարազատի իմոյ Խաթիին, թոռանց Վահրամայ իշխանաց իշխանին, զարմից եւ շառաւեղի սորոյն Գրիգորի, շինողի ի հիմանց մեծաւ տենչմամբ եւ յուսով զսայ...: Իսկ ի ՈՀԴ թուականիս Հայոց ճաջ եւ արի զաւրականն Քրիստոսի սիրելի եղբայրն իմ Խարիփն, իմով կամակցութեամբ... հանեալ արտաքս զշինականսն... զարդարեցաք զսա ոսպսիւք...: Մինչ առ այսչափ կատարեցաւ, առժամայն զեղեցկազեղ եղբայրն իմ Խարիփ մագիստրոսն, զովեալն յամենայն լեզուաց, մարտիրոսացաւ ի պատերազմի անաւրինաց. եւ միայն մնացի ես Գրիգոր... ի նմանէ: Զմարմին նորա բերեալ թաղեցաք առ դրան սորոյ կաթողիկէիս, մերձ առ նշխարս հաւուն մերոյ Վահրամայ իշխանի...» (*Բասմաջեան*, *Թ*. 214):

*«Տէր Գրիգոր վերակացու մայրաքաղաքին Անւոյ» ունի արձանագրութիւններ* 1215*էն ի Բագնայր* (*Բասմաջեան*, *Թ*. 160). 1216*էն* (*անդ*, *Թ*. 48) 1217*էն* (*անդ*, *Թ*. 49) *կը յիշուի* 1215*ին* (*անդ*, *Թ*. 159). *իսկ* 1233*ին «ի առէրութեան տեղւոյս* (*Բագնայրի*) *Գրիգորի Մագիստրոսի, որդւոյ Ապուղամրի եւ*

յառաջնորդութեանս հաւր Սիմէոնի» (անդ., թ. 166)։

1232ին պատրոն Խաւրաս Աւետարան մը կը նուիրէ Բազնայրի վանքին «ի տերութեանն տեղւոյն տեառն Գր(ի)գորոյ, որ Մագիստրոսն ասի, վերայդիտող (ա)թոռոյս Անւոյ, եւ յառաջնորդութեան հաւր (Ս)իմեոնի եւ այլ համակամ եղբարց» (Էջմ. թ. 1519. Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., 888)։

Գրիգոր Մագիստրոս ունեցաւ երեք որդի. Տէր Սարգիս, Վահրամ իշխան եւ Ապուղամր։

Ղարիբ որդի Ապուղամրի։ Վախճանած է 1225էն քիչ յառաջ։ Թաղուած է ի Մարմաշէն. տապանագիրն է անթուական։ «Այս է հանգիստ Ղարիփիս որդւոյ Ապուղամրի» (Բասմաջեան, թ. 217)։

39—43. Սարգիս արքեպիսկոպոս. որդի Գրիգոր Մագիստրոսի։ Մարմաշէնի թ. 215 արձանագրութիւնը, որ շատ թերակատար պահուած է, կ'երեւայ թէ մահարձան մըն է Գրիգոր Մագիստրոսի (42) Վահրամ որդւոյն, կանգնուած Աբուղամր եւ տէր Սարգիս եղբայրներէ. յառաջ կը բերեմ ինչպէս հասած է.

Շնորհիւն Աստուծոյ այս արձան մշտնջենաւոր է ||| Գրիգորոյ որդւոյ Ապուղամրի, թոռն Վահրամայ իշխանի. հաստատեալ է ի սկզբանէ զկաթողիկէ եկեղեցի յիշ || ցի ամն (*) Աբուղամր եւ եղբայր իմ տէր Սար–

գիս տու|||աց տեղի յա|||ն տանն ք. այլ կայր եկեղեցոյ սորա |||| մերոց Վահրամ իշխանին. կիսաւրեայ ժամանակս փոխեցաւ առ Աստուած...:

*Այս տէր Սարգիսն է որ կը յիշուի 1262ին Բագնայրի Թ. 180 արձանագրութեան մէջ.* «ՉԺԱ. ի վերադիտողութեան մայրաքաղաքիս Անու տէր Սարգսի, տեառն տեղոյս» (*Բասմաջեան, անդ*):

*Կ'երեւայ թէ իր որդւոյն է Մարմաշէնի հետեւեալ անթուական արձանագրութիւնը.*

«Ես տէր Գրիգորս (որդի) տեառն Սարգսի, ետու զիմ սուրբ Նշանս ի սուրբ ուխտս Մարմաշէնի. եւ փոխարէն հաստուցման զվարդեւորին քառասունքն եւ զեաչին ութաւրէին մինչ ես կենդանի եմ՝ տեառն Սարգսի. եւ յետ վախճանին՝ ինձ» (*Բասմաջեան, անդ, Թ.* 220):

Ապուղամր *որդի Գրիգոր Մագիստրոսի: Սա ունի Բագնայրի մէջ արձանագրութիւններ.*

Չժ. կամաւն Աստուծոյ. ես Ապուղամր որդի Մաքիստրոսի, որ գնեցի զկէս Կաղզուցն ի Տիգրանեանց եւ ետու ի սուրբ Աստուածածինս ի մեր սուրբ ուխտս. որ զփոխարէնն մաւտ ի Քրիստոս ի Վահրամ իշխանն ի յիմ եղբայրն վճարէ (*Բասմաջեան, Թ.* 177):

ՉԺԱ. կամաւն Աստուծոյ ես Ապուղամր, որդի Մագիստրոսի, թոռն Վահրամ իշխանին, վասն ի Քրիստոս յուսոյն ետու զանձա–

զին հայրենիքն, զԿաղզուց կէսն իւր հողովն եւ ջրովն ի սուրբ Աստուածամայրս մեր սուրբ ուխտս, որ մաւտ ի Քրիստոս զփոխարէնն ի յիմ մայրն վճարէ՝ ի Յամէսն... (*անդ, թ.* 179)։

43. Յովհաննէս *որդի Աբուղամրի։ Կը յիշէ Ստեփանոս Գիլան գրիչ* 1308*ին, որ գրած է Բագնայրի Աւետարանին մէջ յիշատակագրութիւն «ի հայրապետութեան մերոյ նահանգիս Շիրակ գաւառիս՝ Հեծի եւ մարզաւորի տէր Յոհաննիսի, որդոյ Ապուղամրի, իշխեցող տեղոյս» (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա.,* 891)։

## Գ. ԹՈՌՆԻԿԵԱՆՔ ՍԱՍՈՒՆԻ

### Ա. Դուստր Գրիգոր Մագիստրոսի։

1. Թոռնիկ *իշխան Սասունի։ Մ. Ուռհայեցի կը գրէ յամին* 1072. *թէ Փիլառտոս «յղեաց եւ կոչեաց զքաջն Թոռնիկ զտէրն Սասնոյ գալ նմա ի հնազանդութիւն»։ Կը մերժէ Թոռնիկ այս հրաւէրը։ «Յայնժամ կոչեաց Փիլառտոս զտէր Գրիգորիս (Վկայասէր) եւ ասէ ցնա, եթէ Քո՛ փեսայ է Թոռնիկն. գնա եւ կոչեա զնա ինձ ի հնազանդութիւն։ Իսկ տէր Վահրամն վասն չար բարուցն Փիլառտոսին՝ յոչ կամաց գնաց առ Թոռնիկն եւ այլ ոչ տեսաւ զերեսն Փիլառտոսին» (էջ* 206—207)։ *Այս տեղիքը յայտնապէս կը վկայէ, թէ Թոռնիկ կին առած էր Գրիգորիս Վկայասէրի քոյրը, որ էր դուստրն*

*Գր. Մագիստրոսի, որուն Թուղթերուն մէջ կը գտնենք չորս Թուղթ գրուած առ «Թոռնիկ իշխանն Մամիկոնեան» (Թղ. ՀԴ—ՀԷ): Թոռնիկ կը նահատակուի 1073ին «մօտ ի բերդն իւր յԱշմուշատ քաղաքի» (Ուռհ. 208):*

*Այս ամուսնութենէն կ՚ունենայ Թոռնիկ երկու որդի՝* Ջօրտուանէլ *եւ* Վասակ. *որոնք 1073ին «ի պատանեկան հասակի» էին (Ուռհ. 210):*

2. Ջօրտուանէլ *Ա. որդի Թոռնիկի: Կը յիշուի 1101ին Նոբելիսիմոս պատուանունով պատուած: Այս տարւոյն կը գրէ իրեն Աշա-րին Խոզանի (Խորձեանի) դուքն դաւանաբանական Թուղթ մը, զոր շարադրած էր պրոտոնոտարն Թէոփիստէ: Ջօրտուանէլ կը յանձնարարէ Պօղոս Վ. Տարօնեցւոյ պատասխանել այս Թուղթին:*

*Ջօրտուանէլ ունեցաւ որդի մը Վեգէն անուն: Իր եղբօր Վասակի մասին չունինք այլուստ տեղեկութիւն:*

3. Վեգէն *որդի Ջօրտուանէլի. իր ամուսինն էր Մելեքատի Արծրունի. որմէ կ՚ունենայ երկու որդի.* Գրիգոր, *որ վաղամեռիկ կ՚ըլլայ, եւ* Ջօրտուանէլ:

*Կը պատմէ Վարդան (էջ 124), թէ Շահի-Արմէն արշաւած է Սասուն եւ կալանաւորած Վեգէնէն, ապա արձակած «ոխով եւ երդմամբ սիրոյ». բայց եւ այնպէս ժամանակ մը վերջը Շահի-Արմէն «էառ... զՍասունք ի Վեգենայ ամենայն փառորէիւքն. եւ*

*պահէր ի խոր խաղաղութեան զամս վաթսուն»* (1125—1185):

*Ստեփաննոս Օրբելեան, ժամանակագրութիւն, յամի ՈԻ.* (1176) *կ'արձանագրէ. «ի նմին ամի մեռաւ Վիգէն տէրն Սասնոյ»:*

*Անունս Արիստակէս գրիչ յիշած է քանիցս* Վեգեն *գրութեամբ. Միքայէլ Ասորի իր ժամանակագրութեան մէջ (Հատոր Գ., էջ* 396) *տուած է* Bākēn *ձեւով, որ կ'ենթադրէ, ըստ Մարկվարտի* (Südarmenien, S. 481) Wēkēn *հայ ձեւը: Վարդան պատմիչ ունի «Վիգէն»: Ճշգրտագոյնը կը համարիմ* Վեգեն, *ինչպէս ներկայացուցած է ժամանակակիցն Արիստակէս գրիչ (տե՛ս վարը):*

4. Զորտուանէլ *Բ. որդի Վեգենի. որ կին առաւ Վասիլ Պահլաւունեաց դուստր Վանենէ, քոյրը Գրիգոր Դ. Տղայ կաթողիկոսի, որ ծնաւ իրեն.* 1. *Վասիլ (Հեթում),* 2. *Շահինշահ.* 3. *Թոռնիկ եւ դուստր մը Կատա անուն, որ կին գնաց «Շահինշահի որդւոյ Գրիգորի, թոռին Կատակալոսի, որդւոյ Կամենի մեծի, ի Խեզայ գաւառ, ի մեծ ամրոցն որ կոչի Սագուկ» (կամ Ուգուկ): Կատա այս ամուսնութենէն ծնաւ երկուորեակ, որոնցմէ մին՝ Շահմելիք, իսկ միւսը վախճանեցաւ տղայերքին: Զորտուանէլ Ա.ի եւ իր որդւոց եւ թոռանց մասին տես Արիստակէս գրչի գեղեցիկ Յիշատակարանը* 1169*ին արտագրած Աւետարանին վերջը (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ* 397—406. J. Markwart, Südarmenien, *էջ* 517—530. *եւ Ակի–*

*նեան, Մատենագրական հետազօտութիւններ, Գ., էջ* 83—88):

5. Վասիլ *որդի Զարեաւանէլի: Սմբատ պատմիչ կ'անուանէ զանիկա Հեթում, իբրեւ երիցագոյն որդի Զարեաւանէլի (տես* § 6):

6. Շահինշահ *որդի Զարեաւանէլի: Միքայէլ Ասորի իր ժամանակագրութեան մէջ* (III, 395—396, *հրտ.* Chabot*-ի) կը պատմէ թէ Շահինշահ իր* 1184*ին գացած է իր մօրեղբօր Գրիգոր Դ. Կաթողիկոսին քով Հռոմկլայ. երբ Կաթողիկոսը կը մեկնի Տարսոն, յինքն կը գրաւէ Հռոմկլան: Լեւոն զայս Կաթողիկոսը՝ կ'առաջարկէ վերադառնալ զօրագնդով մը եւ կը պաշարէ բերդը: Անձնատուր կ'ըլլայ Շահինշահ: Ապա կը վերադառնայ Սասուն. ուր կը յաջողի ետ առնել Բալաշա-մուր ամրոյէն այն ամրոցները, զորոնք Սօքման Բ. Նասրէդդին (Շահի-Արմէն) գրաւած էր իր պապէն՝ Վեղենէն: Այս կը պատահի* 1185*ին:*

*Բայց կ'երեւայ թէ Շահինշահ կարող չըլլար երկարատեւ պահպանել իր ամրոցները. վասն զի կը գրէ Սմբատ պատմիչ յամի* 1189. *թէ «Զայսու ժամանակաւ եկին որդիքն Զարեաւանելի ի Սասնոյ, քեռորդիք տէր Գրիգոր կաթողիկոսի Հայոց, առ պարոն Լեւոն. արք քաջամարտք. որ աւագին երետ զդուստր եղբօրն իւրոյ Թորոսին, զանուանեալն Ալիծ, եւ ետ նմա զՄախս, որոյ անուն էր Հեթում. եւ Շահնշահին երետ զՍելեւկիա եւ (զ)Կրասեր գաւառն Թորոսին՝ Փի-*

յիսն (որ) կայր առ մայրն Լեւոնի» (Հջ 105)։ Իսկ յամի 1193. կ՚արձանագրէ. «Ի մայիսի վեշտասանին փոխեցաւ ի Քրիստոս կաթողիկոսն Հայոց տէր Գրիգորիս մականուն Տղայ... մեռան եւ մեծ իշխանքն, քոյրորդիքն կաթո–

Գ. Թոռնիկեանք Սասնոյ։




ղիկոսին՝ պարոն Հեթում եւ պարոն Շահնշահն ի մէկ ամիս՝ քեռին եւ քոյրորդիքն։ Եւ զոր յուսաք վասն մահուանն չկարեմ աստ գրել, զի առեն թէ պարոն Լեւոն եղեւ պատճառ. այլ գաղտնաբան Աստուած գիտէ» (Հջ 106)։ Կրկիկիոյ պատմիչն կ՚ուեցնէ. Պեմոնդ Գ. բրինձն Անտիոքայ եւ Լեւոն Ա. թագաւոր «հաստատեցին ուխտ սիրոյ խնա–

մութեան ընդ մխեանս. եւ ես Լեւոն զդուստր եղբօրն իւրոյ Ռուբենի՝ զԱլիծն, որ յառաջագոյն Հեթումն ունէր՝ եղբայրն Շահնշահի, տուաւ որդւոյն Բռնծին՝ Ըսեմընդին» (Հայապատում, Ա., 78—79:

ԳՐԻԳՈՐ ՏՈՒԿ ԱՐԵՒԵԼՑ

Թովմա Արծրունւոյ շարունակողը (էջ 309—310) կը պատմէ, թէ Ապուսահլ Արծրունի, որդին Թոռնիկի (1097—1121), տէրն Աղթամարի եւ Ամիւկի, կին առած է Մարիամ տիկնայ տիկինն, դուստրն Գրիգոր Արեւելից տուկի, որ էր տէր եւ իշխող «գաւառացն Ծաղկոտան եւ Կոգովտի եւ մեծ աւանին Անգեղտանն»:

Հ. Ղ. Ալիշան այս Գրիգոր տուկն նոյնացուցած է Բջնեցի Գրիգոր Մագիստրոսի հետ եւ ներս առած է Մարիամը Պահլաւունեաց Ազգածառին մէջ: Եւ որովհետեւ Մարիամ կը ներկայացուի «Թոռն Ապուղի», այս Ապուղը նկատուած է Վասակ Հոլոմի կինն եւ Գր. Մագիստրոսի մայրը: Իրեն հետեւած է Աճառեան:

«Ապուղ» կրճատուած ձեւն է Ապուսխան անունին, այնպէս կը կոչուէր Բուլղարներու Յովհաննէս Վլատիսլաւ թագաւորի որդին եւ Աճարոն Կոմսաձագին Թոռնիկը, որ ժամանակ մը իշխանն եղած էր Կարնոյ գաւառին: Իր որդին է Գրիգոր եւ Թ[illegible] Մարիամ: Ազգածառն է.

1. *Նիկոլա, կինը Հռիփսիմէ*

|

2. *Ահարոն կոմսածագ*

|

3. *Վլատիսլաւ թագաւոր*

|

4. *Ալուսիան թագաւոր*

|

5. *Գրիգոր տուկ*

|

6. *Մարիամ, կին Աբղլմաեհի*

*Այս մասին ընդարձակ խօսած եմ Հանդ. Ամս.* 1955, *էջ* 115—136:

## Գ. ՀԵԹՈՒՄԵԱՆՔ (ՕՇԻՆԵԱՆՔ) Ի ԼԱՄԲՐՈՆ

### ՕՇԻՆ Ա.

*Երբ նահանջեց յունական բանակը Սելջուկեանց յառաջխաղացութեան առաջ, երբ գրաւուեցան Ալփասլանէն Անի, Մանազկերտ, Կարս, Կարին* (1064) *եւ տակաւին Հին Հայաստանի սահմանները, եւ անհանդուրժելի եղաւ կացութիւնը նոր տէրերու տակ, գաղթողներու նոր կարաւաններ կազմուեցան, որոնք կը դիմէին կայսերական հողեր: Ասոնց թուին մէջ էին Վասպուրականէն Ապլղարիպ եւ Աղուանից աշխարհէն Օշին. որոնք ճանապարհին միացան իրարու: Ներկայացան Կայսեր եւ առաջարկեցին անոր իրենց ծառայութիւնը: Այս մասին կը գրեն.*

1. *Սամ. Անեցի* (117). *«Ի ՇՀԲ.* (1123) *ամին ի բնութենէն Տաճկաց ել Օշին իշխանն*

ի ժառանգութենէ իւրմէ, որ կոչի Մայրեաց Ջուրք հանդէպ Գանձակոյ, ունելով ընդ իւր զեղբայրն իւր զՀայկամ եւ զմայրն իւր եւ զամուսինն իւր, պատուականաւք իշխանօքն եւ ամենայն կահիւն (ագ. գահիւն), ունելով ընդ իւր եւ զՄասն սուրբ առաքելոյն Պետրոսի: Եւ եկեալ յաշխարհն Կիլիկեցւոց: Եւ աջողմամբ Քրիստոսի եւ սուրբ Մասին առաքելոյն էառ ի Տաճկաց զամրանալ բերդն Լամբրոն որ է առ ստորոտով լերինն Տաւրոսի ի գահ մայրաքաղաքին Տարսոնի»:

2. Լամբրոնեցի գրիչ մը 1173ին. «Այս ամս... ի Նախարարաց Թագաւորին Հայոց Գագկայ, որոյ անուն Ապլղարիպ յորջորջիւր, եկեալ առ արքայն Յունաց Միքայէլ, մտեալ ի ծառայութիւն ինքնակալին. որոյ պարգեւեալ զիշխանութիւն աշխարհիս Կիլիկեցւոց. ընծեալ նմա Թագաւորն զՏարսոն քաղաք հանդերձ ընդ ձեռամբ անկեալ գեղեկաւք: Եւ սա եկեալ բնակեցաւ ի սմա եւ շինեաց իւր բնակութիւն: Ընդ ժամանակս ընդ այս սուրբ եւ շնորհալից Մասն (ագ. մասն) սուրբ առաքելոյն Պետրոսի կայր առ սմա...: Եւ զի ունէր ընդ իշխանութեամբ իւրով զգեօղս ամուրս եւ վայելուչս ի լերինս Տաւրոսի անուամբ կոչեցեալ Լամբրուն եւ Պապառուն, շինէր յարկ բնակութեան սուրբ առաքելական Մասինն <ի Լամբրուն> եւ անդ ունէր ի պահեստի հանդերձ այլ եւս պատուական նշխարաւք եւ մասամբք ի Ս. Խաչէն. եւ զայլ եւս գանձս իւր ամրացուցա-

*նէր ի սոյն գիւղի. զոր եւ պարգեւէր միում ի հաւատարիմ իշխանաց իւրոց, որ կոչէր Աւշին, զաւանս գաւառաւք իւրովք: Եւ ինքն յար ունէր բնակութիւն ի Տարսոն քաղաքի: Ընդ այն ժամանակն զօրանայր անօրէն ազգն Իսմայելացւոց. եւ յառ եւ յաւար հարկանէր զամենայն երկիրն. մինչեւ եհաս ի Կիլիկեցւոց աշխարհն եւ առեալ զգեղեցկաշէն եւ զհոյակապ քաղաքն Տարսոն եւ զամենայն բնակեալսն ի նմա ի սուր սուսերի մաշէր: Բայց... միայն անհպելի ամուրն Լամբրուն ընդ իշխանութեամբ Աւշնի, վասն յոյժ դժուարարնակ սահմանացն եւ առաւել ամրութեան բերդին»* (Յովսէփեան, Ա. 551/2:

3. *Սամուէլ Անեցի* 1190ին, նոյնը կը պատմէ այսպէս. *«Յորժամ յափշտակեցաւ յԻսմայելացւոցն մայրաքաղաքն Անի եւ տարագրեցան թագաւորքն մեր ի գաւառս եւ յիշխանութիւնս արքայիցն Յունաց: Այր ոմն յիշխանացն Հայոց Ապլղարիպ անուն, որ էր ի տանէն Վասպուրականի, իբրեւ զմտերիմ եւ զխոհեմ եւ զայր ի գործ պատերազմի, առաքեցաւ յինքնակալէն Ալեքսէ ի գաւառս Կիլիկեցւոց՝ իշխել մայրաքաղաքին Տարսոնի եւ Մամեստիոյ: Որ եկեալ տիրէր ոգա հայրենի կարգօք եւ օրինօք եւ մնայր ի հաւատարմութեանն Յունաց...: Սա եղիտ ի սորին լերինս Տաւրոսի եւ ի գլուխ քաղաքիս Տարսոնի երկու անմատոյց դղեակս, միոյն անուն Լամբրոն եւ միւսումն Պապեռոն. որք եւ ունէին շուրջ զինքեամբ գեօղս*

ևս առանս։ ԶՊապեռոնն ի՛ւր սեփականեաց գանձուց շտեմարան և շինեաց եկեղեցի մեծ <ի Մլճոյ վանս> գամբարան սահմանեաց իւր և իւրոցն։ Եւ զԼամբրոնն ետ ի մտերիմ և ի սիրեցեալ իշխանն, որ եկեալ էր ընդ իւր յաշխարհէն Հայոց՝ անուն Աւշին և ա-ւանդեաց ի նա զՄառն (այլ. զմառն) մեծի և զգլխաւորի ասպարելոցն Պետրոսի... և իւր սեփական ունել զրերս և զդաստառ։ Որ եկեալ ազգատոհմաւ իւրով և գնեալ զա-նասիկս ամրացեալ՝ շինէր բազ կարի...։ Իսկ Ապլղարպայ վախճանեալ՝ եղաւ ի Պա-պեռոնն. և առեալ Տարսոնի մի յիշխանաց իւրոց՝ փեսայ Աւշնի։ Յորոյ աւուրն յար-ձակեցաւ ազգն Իսմայելացւոց ի վերայ գա-ւառս Կիլիկիոյ ի Ծ<ԽԲ> թուականին Հայոց և զամենայն դաշտային գաւառն ա-ւերեաց. էառ և զՏարսոն և որով ճարա-կեաց զքրիստոնեայսն։ Իսկ Աւշինն միացեալ յանմատչելի ամուրս անփորձ և մտերմա-ցեալ Յունաց արքային՝ առնոյր ի նմանէ ա-նուն պատուոյ և տուրս գանձուց առատա-պէս։ Յետ սորա վախճանին տիրեաց որդի իւր Հեթում հայրենի աթոռոյս և պատուե-ցաւ ի Յունաց արքայէն Ալեքսէ՝ սեբաստոս անուամբ» (Յովհէփեան, անդ, էջ 541—543)։

4. Ապլղարիպի մասին կը գրէ Մ. Ուռ-հայեցի յամի ՇԻԸ (1079/80). «Յայսմ ժա-մանակիս Գագիկ արքայ Հայոց... էջ ի Տար-սոն քաղաքն առ Ապլղարիպն իշխանն Հայոց, որդի Հասանայ, որդւոյ Խաչկայ Խլին առն

քաջի՝ ի Վասպուրական գաւառէ: Սա գնացեալ առ Աբլղարիբն սիրոյ աղագաւ, որ վասն խնամութեան կոչեցեալ էր զԳագիկ՝ Աբլղարիբայ եւ յաղագս պատճառի ինչ ուշ եղեւ գործ խնամութեան» (էջ 29. Համմա. նաեւ Վարդան, 106): Աբլղարիբ կ'ուզէր տալ իր դուստրը Գագիկի Դաւիթ որդւոյն:

Այս վկայութիւնները ունին հակասական կէտեր: Թ. 1 Օշինի գաղթը կը նշանակէ 1073ին: Թ. 2 Աբլղարիբի հանդիպումը կայսեր կը դնէ Միքայէլ Է-ի (1076—1078) օրով, իսկ Թ. 3 Ալեքսի (1081—1118) օրով. ըստ Մ. Ուռհայեցւոյ ան Պապեռոնի մէջ էր 1078/9ին:

Կայսրը կը շնորհէ Աբլղարիբի «զիշխանութիւնն աշխարհին Կիլիկեցւոց», այսինքն Տարսոնի եւ Մամեստայի (Մոպսուեստիա, Միսիս): Միքայէլ Ասորի[1] խօսելով 1072—1086 տարիներու դէպքերու վրայ, կը գրէ թէ Փիլարետոս (Philaretos), որ նուաճումներ կատարած էր Մարաշ, Ուռհա, Քեսուն եւ Անտիոք, Կ.Պոլիս դնաց, պատուեցաւ կայսեր կողմէ սեբաստոս տիտղոսով եւ կարգուեցաւ իշխան Տարսոնի եւ Մոպսուեստայի: Յոյն հեղինակներ կը յիշեն Փիլարետոսի անունը 1078ին[2], առանց յիշելու այս ազգեյութիւնն եւ Տարսոնի իշխան կարգուիլը: Ասորի պատրիարքը կ'երեւայ թէ Աբլղարիբը

[1] Michel le Syrien, Chronique, III, 173 (Հայ. թարգմ., Երուսաղէմ 1871, էջ 399. «Եւ ասեն Յոյնք եւ տուին Փիլարետոսին պարգեւս եւ կոչեցին Սեւաստոս»):

[2] Lebeau, Histoire de Bas Empire, XV, 71—72

նոյնացուցած է Փիլարետոսի հետ, երկուքն ու հայազգի։

Ապլղարիպ եւ Օշին Կայսեր ծառայութեան մէջ մտան հաւանօրէն 1073ին։ Ուղարկուեցան Տարսոն Միքայէլ Է. Կայսեր հրամանով 1076ին, Օշին ենթակայ Ապլղարիպի։ Վերջինս վերապահեց իրեն Պապեռոնը. իսկ Օշինի յանձնեց Լամբրոնը։ Ապլղարիպ ունէր դուստր մը միայն, զոր կը փափագէր հարսնացնել Գագիկ Բ.ի Դաւիթ որդւոյն (1078/9). որ չյաջողեցաւ։ Ան վախճանեցաւ հաւանօրէն 1080ին, յանձնելով իշխանութիւնը իր իշխաններէն մէկուն, որ փեսայացած էր Օշնի։ Այս իշխանին անունը լռած է պատմութիւնը։ Հ. Մ. Ջամչեան, որ անխոհեմութիւնն ունեցած է պատմական անանուն դէմքերուն ինքնատեղծ անուններ բաշխել, այս անգամ այդ անանունը յորջորջած է «Սահակ»[3]։ Խօսքը Մոնաստրասի մասին է (տես էջ 415)։

Աննա Կոմնենեան, դուստրը Ալեքս Կայսեր[4], կը պատմէ թէ 1081ին, երբ Ալեքս Կայսր զօրակոչ ըրած էր ընդդէմ Robert Guiscardի որ կ'ուզէր Նորմանդիան (Իտալիոյ հարաւը) խլել Բիւզանդացիներէն, մասնակցեցաւ զօրակոչին նաեւ Օշին իր քաջերով։

«Երբ ինքնակալը, հայրս, կռուի մէջ էր Ռոբերտի հետ, ինչպէս յիշած եմ, պատերազմի ընթացքին, կռուի մը միջոցին, կեղա

[3] Պատմ. Հայոց, Բ., 1005. Գ. 10. տե՛ս Սիսուան, 71. Աճառեան, Անձնանուններ, Դ., 368, 100։
[4] Anne Consnene, Alexiade, t. III, Paris 1954.

*մը, որ բարձր էր միւսներէն գլխով եւ թիկունքով, պատրաստեց նիզակը, ախրթեց երիվարը, խոյացաւ ինչպէս կայծակ Ասպետի վրայ։ Սա թուրը ձեռք առած էր, երբ սասցաւ Կեղտին ահաւոր հարուածը եւ վիրաւորուեցաւ ծանրապէս. նիզակը քերելով թոքը մխրճուած էր երիվարին կռնակը։ Բայց ան առանց վարանելու այս վէրքէն եւ առանց վար իյնալու թամբէն, զետեղուեցաւ թամբին վրայ աւելի ամուր, իջեցուց թուրը բարբարոսին սաղաւարտին վրայ եւ ճեղքեց երկուքի գլուխն ալ, սաղաւարտն ալ։ Երկուքն ալ տապալեցան երիվարներէն. Կեղտը մեռած էր, Ասպետը կը շնչէր տակաւին։ Իր սպասաւորները վերցուցին զինքը արդէն արիւնաքամ եւ մեծ զգուշութեամբ բերին Իշխանակալին. ցուցուցին անոր նիզակն եւ վէրքը, եւ պատմեցին Կեղտին մահը»* (XI. Չ, 7։ *Հմմտ. Զամչեան, Գ.* 10)։

*Օշին կը բաժնէ։ «Կայսրը յիշեց, կ՚ըսէ Աննա Կոմնենեան, Ասպետին քաջութիւնն եւ յանդուգն գործը. նկատի առաւ նաեւ անոր ծնունդն եւ առհմին ազնուականութիւնը, եւ ուղարկեց զանիկա* (1085*ին*) *իբրեւ առաջնակարգ զօրավար, Կիլիկիա, ընդդէմ Տանկրեդի, սորատապեցարք ախողոսով»* (*անդ.*)։ *Այլուր կը գրէ. «Սա Արքայի շատ քաջ եւ շատ արթուն զինակիրն էր»* (*ԺԲ.* 2, 3). *«Սա գլուխն էր Արշակունեաց առհմին, ծնած թագաւորական արիւնէ»* (*ԺԲ.* 2, 6)։ *Եւ դարձեալ. «Իշխանակալը կանչեց Թորին Աս–*

ըեքի գլուխները, այս ինքն Կոստանդնուպէնը և Մոնաստրասը. առաջինը կը պաշտպանէր Լաւոդիկեան և երկրորդը՝ Տարսոնը: Լաւոդիկէա ուղարկեց Պեծէաար, մինչ Տարսոնն, ինչպէս նաև բոլոր քաղաքներն և գաւառները, որոնք Մոնաստրասի իշխանութեան տակ էին, յանձնեց Ասպետին: Սա կ'ինէար Հայաստանի ազնուական գերդաստանէ. սա համբաւուած էր որպէս քաջ. ամենուրեք տարածուած էր անոր հռչակը այս ժամանակ» (ԺԲ. 2, 1):

Ապլղարիպ վախճանած էր հաւանօրէն 1080էն ոչ շատ վերջը և զինուորական իշխանութիւնը յանձնուած Մոնաստրասի. որուն յաջորդն եղաւ Օշին (Ասպետ) 1085ին:

Սամ. Անեցի կը գրէ թէ Օշին «էառ ի Տաճկաց զախտաւոր բերդն Լամբրոն»: Բայց Թ. 2—3 կը վկայեն թէ երբ մտաւ Օշին Լամբրոն, բերդը ամայի էր: Իսմայելացւոց արշաւանքը, զոր կը յիշէն, հաւանօրէն տեղի ունեցած է 1093ին. որուն մասին կը գրէ Մ. Ուռհայեցի յամի ՇԽԲ. «Դաշտն... գնաց ի Տրապոզոն և հաւանեցոյց զնա և զամենայն քաղաքն ծովեզերաց և կացեալ յայնմ աշխարհին զամիսս վեց» (էջ 246): 1097ին, երբ Տանկրետ Տարսոն հասաւ, գտաւ հոն Իսմայելացի պահակներ: Օշին յաջողած էր պաշտպանել Լամբրոնի գաւառը: Ուստի Թ. 3ի տեղիքը. «Ի Շ (1051) Թուականին Հայոց» Իսմայելացիք յարձակեցան Տարսոնի վրայ, պէտք է լրացնել ՇԽԲ (1093), որուն

*համար Օշին վարձատրուած է Կայսեր կողմէ․ «առնոյր ի նմանէ անուն պատուոյ և տուրս գանձուց առատապէս»։*

*Աննա Կոմնենեան կը պատմէ թէ Տանկրետ պատանդական թուղթեր Ասպետ Օշինի դրած ըլլայ (ԺԲ. 2, 2)։ Մենք գիտենք, որ 1097ին երբ սկսաւ առաջին Խաչակրութիւնը, կնքուած էր Բողուէնի և Կայսեր մէջ դաշնագրութիւն. Խաչակիրները իրենց գրաւած վայրերը Կայսեր պիտի վերադարձնէին և Կայսրը պիտի օգնէր իրենց պարէններով։ Այս պատճառաւ ալ երբ սովի մատնուած էին ցամաքով եկող Խաչակիրները, Հայ իշխանները ընդ առաջ եկան անոնց, ինչպէս կը գրէ Մ. Ուռհայեցի և կը վկայեն արևմտեան պատմագիրները։ Ուռհայեցւոյ վկայութիւնն է. Հայ իշխանքն «որ կային բնակեալ ի Տաւրոս լեառն, Կոստանդին որդին Ռուբինայ, և երկրորդ իշխանն Բազունի և երրորդ իշխանն Օշինն, սոքա զամենայն կարիս կերակրոյ տարէին առ զօրսն փռանգաց» (էջ 259)։*

*Սամուէլ Անեցի Օշինի հայրենիքը ցոյց կու տայ «Մայրեաց ջուրք հանդէպ Գանձակայ»։ Գանձակ քաղաքը կը գտնուէր Աղուանից Ուտի նահանգին Արշակաշէն (հին Շակաշէն) գաւառին մէջ (Մ. Դասխուրանցի, Պատմ. Աղուանից, Բ. 32. Գ. 21 «Գանձակ յԱրշակաշէն գաւառի». Հմմտ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 229. 233)։*

*Աննա Կոմնենեան գրած, թէ Ասպետ-*

Օշին ազնուական տոհմէ է, թագաւորական արիւնէ, գլուխ Արշակունի տան։ Անշուշտ այսպէս ներկայացուած էր Օշին Ալեքս Կայսեր։ Կը նպաստէր առ այս «Արշակաշէն» գաւառին անունն եւ Աղուանից աւանդութիւնը, թէ իշխանազուն տուներէն ոմանք «Երանշահիկ» են, Արշակունի արիւնէն, Վաշական թագաւորի սերունդէն։ Կոմնենուհին կ՚անուանէ Օշինը Ասպիետ (Aspietes), անշուշտ խորշելով իրեն համար բարբարիկ Աւշին անունէն, որ փոխառութիւն է Afshin միջին պարսկական անուան (հմմտ. Justi, Iranisches Namenbuch, 252—253)։ Փռանկ հեղինակ մը, Raoul de Caen կը յիշէ Ուրսինոս (Ursinus) հայը, որ հրաւիրած է Տանկրետը երթալ գրաւել Մամեստրան (Մսիսը), որ Թուրքերուն ձեռքն էր. Chalandon, Les Comnènes, II, 105, կը նոյնացնէ զինքը Օշինի հետ (Grousset. Hist. des Croisades, I. 47)։

Հ. Մ. Չամչեան Օշինի մահը կը դնէ 1110 տարւոյն մէջ (Գ. 88). զոր պահած են նորագոյն պատմագիրք։ Օշինէն կը յիշուին որդի մը միայն՝ Հեթում եւ դուստր մը, որ եղաւ կին Գաբրիէլի իշխանին։

Օշինի եղբօր Հալկամի մասին կը պակսի անդրագոյն տեղեկութիւն։

2. Հեթում Ա. որդի Օշնի Ա.։ Յունական պահակազօրքը Միջագետքի եւ Կիլիկիոյ մէջ տկար էր։ 1098ին երբ Խաչակիր բանակները նուաճեցին Երուսաղէմը, ապա զօրագունդերը հետամուտ եղան Կիլիկիոյ եւ

*Միջագետքի մէջ քաղաքներ գրաւել. անոնք հասան մինչեւ Տարսոն: Կիլիկիայի մէջ վաղ արդէն ջանքեր կը տանէին Ռուբինեանք բերդեր գրաւելու եւ անկախ իշխանութիւն հաստատելու, յաջող եւ անյաջող բաղխումներով կայսերական զօրամասերու հետ: Սամուէլ Անեցի կը գրէ, թէ «յետ ժամանակաց անձուկ բազում նեղութիւն կրեաց ի նոցանէ սեբաստոսն Հեթում վասն Հայրենի բերդին. եւ զերծեալ յամենայնէ օգնութեամբն Աստուծոյ եւ սուրբ առաքելոյն Պետրոսի. փարթամացաւ եւ մեծացաւ օգնութեամբ թագաւորին Յունաց Յոհաննու* (1118—1143)*: Եւ զի ունէր որդիս վայելուչս եւ քաջս, որք կատարեցան հասակաւ առաջի իւր. ամուսնացոյց զամենս ի նոցանէ: Եւ զաւագ որդին, որոյ անուն Օշին, եթող ընդ իւր մեալ առանց ամուսնութեան. իսկ Սմբատայ որ յետ նորա՝ ետ զՊապեռոնն. եւ միոյ ի դստերացն փեսայացոյց զեղբայր կաթողիկոսին Հայոց Գրիգորի [Մագիստրոսի] զՎասիլ, որք էին թոռունք Գրիգորոյ Մագիստրոսի Բջնեցւոյ»* (*էջ* 225—226)*:*

*Հեթում վախճանած ըլլալու է* 1143*էն ոչ շատ վերջը: Իր զաւակներէն մեզի ծանօթ են Օշինի եւ Սմբատի անունները. թէ Հեթումի զաւակները քանի՞ էին եւ որո՞նց հետ ամուսնացան, չգիտենք. Պատմութիւնը կը յիշէ միայն անոնցմէ մէկը, որ ամուսնացաւ Ապիրատի որդւոյն Վասիլի հետ. որմէ ծնաւ Գրիգոր Դ. Տղայ կաթողիկոս:*

Իր անունով կոչուեցաւ այնուհետեւ Օշինեան տոհմը «Հեթմեանք»:

Հեթմեանք երկու ճիւղի բաժնուեցան. Հեթմեանք Լամբրոնի եւ Հեթմեանք Պապեռոնի: Որովհետեւ սակաւ են մեր տեղեկութիւնները Պապեռոնեանց մասին, պատշաճ կը համարիմ խօսիլ նախ անոնց մասին։։ Այս ճիւղէն ընձիւղեցան Կոստանդեանք, որդիք Կոստանդին Մոզոն Թագաւորահօր. որոնք յանձին Հեթում Ա. Թագաւորի պատուաստուեցան Ռուբինեան արքայական տան հետ. եւ կը պատկանին արքունական տան ճիւղագրութեան: Այս տեղ պիտի յիշուին անոնք միայն իբրեւ որդիք Կոստանդինի:

### ՀԵԹՄԵԱՆՔ Ի ՊԱՊԵՌՈՆ

Սմբատ որդի Հեթում Ա. Լամբրոնի տիրոջ († 1151): Սամուէլ Անեցի կը գրէ, թէ Հեթում Ա. Լամբրոնի եւ Պապեռոնի տէրը իր կրսեր որդւոյն «Սմբատայ... ետ զՊապեռօնն» (էջ 226): 1151ին Թորոս գրաւեց Յոյներէն Մսիսը: Դուքսն Անդրոնիկոս 12.000ով, որոնց մէջ կը գտնուէին նաեւ Պապեռոնի եւ Լամբրոնի տէրերը, կը հասնի քաղաքին դրան առաջ: Թորոս գաղտնօրէն ճեղք մը բանալով քաղաքի պարսպին մէկ կողմը՝ կը յարձակի Յունական բանակի թիկունքէն, գիշերախառն: «Մեռան ի կուփն առաջի դրան քաղաքին պարոն Սմբատ, տէր Պապառոնին, պարոն Վասիլ տէր Բարձրբերդոյ եւ պարոն Տիրին եւ պարոն Տիգրան,

*որ էին ի կողմն Ցունաց թագաւորին» . իսկ Օշին, Սմբատի եղբայրը, կը մնայ ողջանդամ Թորոսին ձեռքը գերի* (*Սմբատ*, *էջ* 95—96) :

*Սմբատ թողուց երկու մանչ եւ մէկ աղջիկ՝* 1. Բակուրան. 2. Վասակ. 3. Ռիթա :

Ռիթա *հարսնացաւ Թորոս Բ.ի Ստեփանէ եղբօր: Այս ամուսնութենէն ծնան* Ռուբէն Բ. *եւ* Լեւոն Ա. *թագաւոր*:

Բակուրան, *իր հօր վախճանելէն ետքը տէր եղաւ Պապեռոնի: Կնութեան առաւ Ապիրատի Զօրավար որդւոյն* (*Ն. Շնորհալւոյ եղբօրորդւոյն*) *դուստրը* Թագուհի, *քոյրն Գրիգոր Ապիրատ կաթողիկոսին եւ մօրաքոյրն Ն. Լամբրոնացւոյ: Լեւոն Ա.ի օծման հանդէսին* (1198) *ներկայ էր «Իշխանն Պապեռոնին՝ Բակուրան»* (*Սիս.* 471) :

Վասակ, *որ տէրն էր «բերդին Ակուսոյ եւ Լամոսոյ եւ կողմանց նոցա»: Վասակի որդիներն են* Կոստանդին *եւ* Սմբատ :

Կոստանդին, *կոչուած Մոզոն, կարգուեցաւ Ռուբինեան իշխանութեան սպարապետ, ապա՝ պայլ եւ թագաւորահայր* († 1263) : *Կին առաւ Լամբրոնի տէր Հեթում Բ.ի դուստրը Տամ Աւիծ* (*Տամավիծ*) :

*Այս ամուսնութենէն ունեցաւ* 1. *Հեթում* (*Ա. թագ.*), 2. *Բարսեղ* (*եպ. Դրազարկի*), 3. *Սմբատ Գունդստապլ*, 4. *Օշին տէրն Կոռիկոսի: Աւիծի մահէն ետքը կին առաւ Պիաթրիչէ* (*Սիսուան*, 76) :

Սմբատ, *տէրն Սարվանդիքարի. ունեցաւ որդի մը* Ճօֆրի։

Ճօֆրի, *տէրն Սարվանդիքարին. առաջին ամուսինն էր Ալիծ. եւ երկրորդը Կեռան, դուստրը Լամբրոնի տիրոջ Կոստանդինի։ Իր մասին տես վարը Կոստանդին Լամբրոնացի։*

ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐ

1. *Հեթում Ա. տէր Լամբրոնի. «ունէր որդիս վայելուչս եւ դստերս, որք կատարեցան հասակաւ առաջի իւր...։ Սմբատայ... ետ զՊապեռօնն. եւ միոյ ի դստերացն փեսայացոյց զեղբայր կաթողիկոսին Հայոց Գրիգորի (Փոքր Վկայասէրի) զՎասիլ»* (*Սամ. Անեւոացի, էջ* 225—226)։

2. *Մահն Սմբատայ առաջի դրան Մսիսի* (*Սմբատ, էջ* 95—96. *տես վերը էջ* 419)։

3. *Ստեփանէ կը սպանուի* 1164*ին. ան էր եղբայր Թորոսի եւ Մլեհի։ «Իսկ կինն Ստեփանէի էր դուստր պարոն Սմբատայ Պապառոնի տիրոջն եւ քոյր պարոն Բակուրանայ, որ տիրեաց — յետ սպանման պարոն Սմբատայ հօրն իւրոյ առաջի Մսիսոյ դրանն — Պապառոնին. որ էառ զորդայքն իւր եւ գնաց առ իւր եղբայրն պարոն Բակուրան. եւ անդ սնուցանէր զորդայքն իւր։ Եւ էր նա կին իմաստուն եւ անուն նորա Ռիթա։ Էր եւ պարոն Վասակ, եղբայր Բակուրանայ, տէր բերդին Ակուռոյ եւ Լամոսոյ եւ կողմանց նոցա. եւ պարոն Բակուրան, տէր Պապառո-*

նին, էր այր բարի եւ առատ եւ սիրելի Աստուծոյ եւ մարդոյ» (Սմբատ, էջ 99—100)։ Հմմտ. նաեւ Պատմ. Ռուբ. (Սամ. Անեցի, 208 եւ 218. Սամ. 138)։

4. Մլեհ կը սպանուի 1175ին. «Եւ առաքեն ի Պապառոնն եւ բերեն զաւագ որդին Ստեփանէի զՌուբէն դնել յաթոռ, զոր անդանդաղ առաքեաց քեռին իւր պարոն Բակուրան» (Սմբատ, 102)։

5. Իբր 1205ին «Լեւոն (Թագաւոր Լեւոն) վասն Անտաքացի Թագուհւոյն, զոր ունէր Թագաւորն՝ բանս բամբասանաց... զԹագուհին իւր ձեռօքն ծեծեց խիստ. հազիւ կարաց որդի քեռոյն իւրոյ Վասակայ՝ Կոստանդին (Մոզոն) պրծուցանել զնա ի ձեռացն կիսամահ. զոր յղարկեց ի զընտան ի բերդն Վահկայն։ Եւ ունէր ի նմանէ դուստր մի տղայ Ռիթա անուն, զոր սնուցանէր մայր Թագաւորին տիկնաց տիկինն [զ]Ռիթայն. որոյ յիշատակ նորա օրհնութեամբ» (Սմբատ, 116)։

6. «Եւ եղեւ այլ Կոստանդին գունդստապլն, որ էր քեռորդի Թագաւորին Լեւոնի եւ տէր Բարձրբերդոյ եւ Պապեռոնին» (Պատմ. Ռուբ. 209)։

7. «Եւ զայս ձեռամբ իմով գրեցի
Զի յիշատակ ինձ եղիցի...
Սմբատայ գունդստապլի,
Հօր իմոյ Կոստանդնի
Եւ մօր իմոյ Տամարիծի»։

*Յիշատակարան Սմբատ Գունդստաբլի* (*Միսուան*, 72):

8. *Աւետարան մը կ'օրինակուի* 1225*ին ի Տարսոն «ի յիշխանութեանս աստուածասէր եւ բարեպաշտ իշխանաց իշխանին մերոյ եւ սպարապետիս Հայոց Կոստանդեայ քեռորդւոյ Թագաւորին Հայոց»* (*Յովսէփեան*, 843):

9. *Գրիգոր Ապիրատ կաթողիկոս կը յիշատակագրէ* 1194*ին*, *Ներսէս Շնորհալիէն իրեն ընծայուած Աւետարանին մէջ. «Յիշեցէք ի Քրիստոս եւ զբարեպաշտ իշխանն, զմեծ սեւաստիաւսն զԲակուրանն, զորդի Սմբատայ որդւոյ Հեթմոյ սեւաստաւսի տեառն Լամբրաւնին եւ Պապեռոնին, որում զԱւետարանս շնորհեցի. ընդ նմին եւ զքրիստոսասէր ամուսինն իւր զԹագուհի զըստ մարմնոյ քոյր իմ, որոց ողորմեսցի տէր Յիսուս Քրիստոս աստ եւ ի հանդերձելումն, ի թւ. ՈԽԳ»* (*Յովսէփեան*, 583):

10. Ծոփքի: *Պատմ. Կիլիկիոյ* (*Սամ. էջ* 210—211). *Լեւոն Ա. Թագաւորի դուստրը Զապէլ կը պսակուի Անտիոքի կոյր բրինձի որդւոյն Ֆիլիպի հետ. Ֆիլիպ կ'օծուի թագաւոր: Իսկ նա չար խորհուրդը կ'ունենայ «զեկեղեցիսն Հայոց եւ զիշխանսն զամենեսին» ջնջել եւ անոնց տեղ Ֆռանկներ դնել: «Զոր լուեալ ոչ կարացին տանել այնպիսի ամպարշտութեան. այլ յաւուր միում մինչ կային ի Թիլն բերդ*, Ծոփքի տէրն Սարվանդիքարին *եւ պռօքսիմոսն Տրդատ կալան զնա*

*եւ անտի տարեալ եղին ի բանտի յանառիկն Բարձրբերդ եւ անդ վախճանեցաւ»:*

*Միքայէլ Ասորւոյ ժամանակագրութեան շարունակողն կը պատմէ այս դէպքը. «Ի թուին Հայոց ՈՀԳ (1224) Փիլիպ Թագաւորն թարրով հօր իւրոյ (Պեմունդայ) կամեցաւ ըմբռնել զերկուս մեծամեծ իշխանսն՝ զպարոն Կոստանդին, որ էր Թագաւորահայրն, եւ զպարոն Կոստանդին Լամբրոնին տէրն, զոր իմացեալ յառաջեաց պարոն Կոստանդին (Թագաւորահայրն), եւ ըմբռնեաց զնա ի Թիլն Համտնոյ, եւ տարաւ ի Բարձրբերդ եւ անդ վախճանեցաւ... (էջ 518):*

Դ. Հեթմեանք Պապեռոնի:



Հեթմցիէ:

Յովհաննէս Զ. Մեծաբարոյ կաթողիկոս, որդի Կոստանդեայ որդւոյ Օշնի:

Գրիգոր գրիչ ի Սկեւռա 1215ին օրինակած է Աւետարան մը ի հայրապետութեան տեառն Յոհաննիսի որդւոյ Կոստանդեայ» (Յովսէփեան, Յիշատակարանք, 783): Սմբատ պատմիչ այս Կոստանդինը «որդի Օշնի» գիտէ. կը գրէ. «էր սա (Յովհաննէս) ազգաւ Հեթմցի, որդի Կոստանդեայ որդւոյ Օշնի» (էջ 115): Բայց Օշին Բ. այս անուն որդի չէ ունեցած, եթէ իր որդիներէն մին, այսպէս Ապլիրատ, երկանուն չէ եղած: Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, 505, այս Կոստանդինը կը համարի հօրեղբայր Հեթմոյ-Հեղիի եւ Ներսէս Լամբրոնացւոյ, ուստի եղբայր Բ. Օշինի եւ որդի Ա. Հեթումի: Այլուստ ծանօթ չէ այս Կոստանդինը:

1193ին գրուած Աւետարանի մը մէջ կը կարդանք յիշատակագրութիւնս. «Ես Սմբատ ... որ խնդրեցի զսուրբ Աւետարանս ի հօրեղբօրէ իմմէ եւ ի հոգեւոր տեառնէն մեր Յոհաննիսէ Հայոց կաթողիկոսէ եւ նա շնորհեաց զսա ինձ ի վայելումն... եւ ի յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողաց եւ եղբօր... ՈՀ» (1221: Յովսէփեան, անդ, էջ 817—818): Սմբատ չէ յիշած հօրը անունը:

Յովհաննէս կաթողիկոս վախճանեցաւ 1221ին:

Յովհաննէս արքայեղբայր 1278ին Աւետարան մը կը գրէ. «ի վայելումն աստուա-

ծառէր իշխանին պարոն Սմբատայ, որդւոյ հանգուցելոյ եւ բարեպաշտ իշխանին պարոն Կոստանդնի եւ հանգուցելոյ մօրն իւրոյ տիկին Շահանդուխտին եւ հանգուցելոյ եղբարցն պարոն Բակուրան եւ պարոն Կոստանդ» (Միւնխէն, Թ. 1, Յուց. 8. Սիսուան, 293—294): Ալիշան կը ծանօթագրէ առ այս. «Յաւագ իշխանաց եւ ի սոյն իսկ զարմէ Թագաւորահօրն (Կոստ. Մողնի) էին սոքա, որպէս վկայէ Պատմիչն Թագաւորական, Թէպէտ եւ յոյն ասիցէ զՍմբատ, որպէս կոչէ եւ զայլս ոմանս ի Հայոց. վասն ծխի ինչ կրօնից: Տակաւին «տղայ գոլով (Սմբատ)




հասակաւ» յամի 1263, ըստ Պատմչին մերոյ, առաքեցաւ սա ի մարտին Մանիօնի ընդդէմ Խարամանին, եւ դովեցաւ եւ պարգեւելով

յարքայէն եւ յարքայհօրէն՝ առաքեցաւ առ մայրն եւ առ եղբարս իւր» (Սիսուան, 146, ծան. 5)։

ԼԱՄԲՐՈՆԻ ՀԵԹՈՒՄԵԱՆՔ

3. Օշին Բ. որդի Հեթում Ա.ի։ ԺԲ. դարու երկրորդ քառորդին զօրացած էր Կիլիկիոյ մէջ Թորոս իշխան։ Սա «տիրեաց Վահկային եւ անտի զօրացեալ էառ զբազում գաւառս»։ Մանուէլ Կայսր (1143—1180) զիջեց իրեն ինչ ինչ բերդեր, պայմանաւ որ մնայ կայսերական ծառայութեան մէջ։ Երբ հեռացաւ Կայսրը Կիլիկիայէն, Թորոս շարունակեց իր նուաճումները։ Ան Մսիս քաղաքին մէջ էր, երբ Անդրոնիկոս դուքս «ժողովեաց զզօրս Յունաց. եւ կոչեաց ընդ իւր զտէրն Լամբրունին (զՀեթում) եւ զՆաթանիյեանքն, որք էին տէրք Ասկուռայ եւ այնմ յեռնակողմանցն... եւ եկին ի վերայ Թորոսի ի Մսիս»։ Բայց Թորոս գաղտնօրէն ճեղք մը բանալով քաղաքի պարիսպէն՝ կը յարձակի թշնամւոյն վրայ թիկունքէն եւ կը կոտորէ. կը սպաննուի Օշինի եղբայրը եւ Պապեռոնի տէրը Սմբատ. «եւ կալաւ (Թորոս) զՕշին տէրն Լամբրունին»։ Օշին ազատութեան համար 40.000 ոսկի փրկանք առաջարկեց։ Առաջին 20.000ը վճարեց անմիջապէս. եւ միւս կէսին համար պատանդ դրաւ իր մէկ կամ երկու տարեկան որդին Հեթում, որ տակաւին մկրտուած ալ չէր. մկրտուեցաւ Թորոսի կնքահայրութեամբ։ Այս կը պատահի 1151/2ին։

Հեթում անա Թորոսին քով եւ սիրուեցաւ անկէ իր կայտառ կերպարանքին եւ զգօնութեան համար, նոյն իսկ հաճեցաւ իր դուստրը անոր հարսնութեան տալ, օժիտին հաշուելով այն 20.000 ոսկին, զոր պիտի վճարէր հայրը. եւ ուղարկեց հօրը: «Եւ էառ բազում գանձ ի նմանէ եւ ապա ազատեաց զնա. յետ որոյ փեսայացուց զորդի նորա զՀեթում ի դուստր իւր Ռիթա» (Պատմ. Ռուբինեանց, 207. Սմբատ, 96):

Թորոսին նպատակն էր բարեկամացնել իրեն Լամբրոնացիները եւ հեռացնել Կայսեր հնազանդութենէն: Անհրաժեշտ էր այս իրեն համար, կարենալ տէր ըլլալու լեռնային Կիլիկիոյ: Անառիկ Լամբրոնը Կայսեր ազդեցութեան տակ կը խափանէր իր անդրագոյն նուաճումները: Լամբրոնացիք սակայն տրամադիր չէին խզել իրենց յարաբերութիւնները Կայսերական իշխանութեան հետ եւ ենթարկուիլ Ռուբինեանց ազդեցութեան տակ: Բիւզանդացիք, որոնք կ'ընդդիմանային Ռուբինեան իշխաններու անկախութեան ձգտումներուն, կը ծառայեցնէին իրենց քաղաքականութեան նաեւ այլազգիները եւ անոնց հետ Լամբրոնացիները: Այսպիսի դէպք մը կը յիշէ Կիլիկիոյ Պատմիչն (Սիսուան, 81) եւ Սմբատ (113). թէ Օշին Բ. ընդդէմ Թորոսի «երբեմն առաջնորդ եղեալ Թուրքին՝ եւ եկեր ի վերայ Ադանայ, էառ զնա եւ բազում կոտորածս արար ի նա. որ եւ ասէին թէ հինգ հարիւր կոյս աղջիկ տարան, թող զայլ ան-

*թիւն»։ Այս պատճառաւ Թորոս սրտմտած* (1165) *գնաց աւերելու Լամբրոնի սահմանները։ Ներսէս Լամբրոնացի կը գրէ.*

*«Յաւուրսն յայնոսիկ յառնէր խռովութիւն ի մէջ երկուց իշխանաց հայասերից այսպիսի օրինակաւ։ Քանզի էին (Լամբրոնեանք) պատուով ի Յունաց արքայէն սեբաստոսութեամբ. եւ էին ընդ ծառայութեամբ եւ հնազանդութեամբ նորա։ Իշխանն, որոյ անուն Թէոդորոս, տէր գոլով լեռնային կողմանց Փռիւգացւոց եւ բազում գաւառաց, եւ թէկն ածէր ընդդէմ թագաւորին Հոռոմոց պէսպէս պատճառաւ, մոռացեալ զերդմնակուռ դաշինսն՝ որ ի միջի եւ զհնազանդութիւն նորա։ Իսկ բարեպաշտ իշխանն Օշին, որ եւ սա տէր գոլով լեռնային կողմանց Փռիւգացւոց եւ բազում գաւառաց որ ի դահ Կիլիկիոյ, ունելով զանառիկ դղեակն ի Թիկունս Տաւրոս լերինն վերադիտակ մայրաքաղաքին Տարսոնի հաւատարմապէս մնացեալ ի հնազանդութիւն արքային Հոռոմոց։*

*«Իսկ ամբարտաւան իշխանն Թէոդորոս ի խռովութիւն շարժէր ընդ բարեպաշտ իշխանին Օշնին վասն անքիծ հաւատոցն հաւատարմութեան, զոր ունէր առ թագաւորն Հոռոմոց։ Եւ վասն այսր պատճառի ոչ սակաւ խռովութիւնք լինէր եւ հեղմունք արեան ի մէջ երկուց իշխանացն. մինչեւ հարկ լինել սրբազան կաթողիկոսին տեառն Գրիգորիսի շարժել զբանաւոր եւ զիմաստուն եղբայրն իւր զարքեպիսկոպոսն զտէր Ներսէս առաքել*

*ի մէջ սոցա. որպէս զի խոհականութեամբն իւրով հնարեսցի համոզել զսոսա ի խաղաղութիւն: Որ եւ աշխատասիրաբար ճանապարհորդեալ գայր առ նոսա եւ զհաւատացեալ գործն արդեամբք կատարէր ի ձեռն իւրոյ միջնորդութեանն՝ անքակ սիրով կապակցելով զսոսա ընդ միմեանս:*

*«Եւ ինքն ի սէր հարազատ ընտանեացն դիմէր: Քանզի դուստր եղբօր սորա էր օրինաւոր ամուսին Օշնի սեւաստոսին. զոր եւ առեալ գերազոյն իշխանն զորբանեալ արքեպիսկոպոսն ի ճանապարհ անկեալ բերէր յիւրն սեպհական աւանն՝ ըստ արժանի պատուով մեծարեալ ի մէջ հարազատ ընտանեացն եւ կարեւոր բարեկամացն. օրհնեալ զնոսա եւ զգղեակն եւ զամենայն բնակիչս գաւառին. եւ ինքն դէմ եդեալ գնայր առ հարազատ եղբայրն իւր սրբազան կաթողիկոսն տէր Գրիգորիս» (Ընդհանրական թուղթք Ս. Ներսիսի Շնորհալւոյ, Երուսաղէմ 1871, էջ 86):*

*Օշինի համար գրուած է Վենետիկի Մխիթարեանց քով պահուած Յովհաննէս Ոսկեբերանի վարքը. կը խնդրուի յիշել «մեծազգափ սեւաստոսն եւ զտանուտէր պարոնս Աշին... մեծանուն արքայազգափ սեւաստոսն Աշին» (Միսուան, 81—82, Յովսէփեան, Յիշատ. Ա. 462):*

*Օշին իրեն կին առած էր մերձաւոր խնամութենէ Զօրավար իշխանի դուստրը Շահանդուխտ, Գրիգոր եւ Ներսէս կաթողիկոսնե-*

րու եղբօր դուստրը, որմէ ունեցաւ 1. Հեթում, 2. Սմբատ–Ներսէս, 3. Ապիրատ, 4. Շահինշահ, 5. Գրիգոր, 6. Մարիամ, 7. Շուշան եւ 8. Տալիթա:

Օշին վախճանեցաւ հաւանօրէն 1167/8 տարւոյն, մայիս 17ին «ի աւուրք ի ծերութեան հասակին՝ յաթոռ իւր եւ ի մէջ եղբարց եւ զաւակաց, օրհնութեամբ փոխեցաւ առ Քրիստոս. եւ եցոյց անդրանիկ որդւոյն՝ Հեթմոյ՝ գահերութիւն հայրենի աթոռոյն» (Սամ. Սկեւռացի, 227) եւ թաղուեցաւ Սկեւռայի եկեղեցւոյն մէջ, զոր կառուցած էր իր տոհմին դամբարան:

Այն տեղ գտան իրենց հանգստարանն նաեւ տիկին Շահանդուխտ–Մարիամ (վախճանած 1195էն յառաջ), Մարիամ եւ Գրիգոր (վախճանած 1190էն յառաջ):

## ԳԻՐՔ ՅԻՇԱՏԱԿԻ ՆՆՋԵՑԵԼՈՑ

Յամսեան մայիս ԺԷ հանգեաւ ի Քրիստոս մեծանուն սեբաստաւսն Օշին հայր սեւաստաւսի Հեթմոյ, տեառն Ներսէսի, Ապիրատի, Շահինշահի եւ Գրիգորի եւ քուերց սոցին Թագերի (ի լուս. Մարեմ Թագուհէ), Շուշան Թագուհէ եւ Տալիթայի:

Յամսեան ապրիլի ԻՋ. հանգեաւ ի Քրիստոս մայր սոցին Մարիամ կրաւնաւոր ամենայն առաքինութեամբ զարդարեալ[5]:

5 Շահանդուխտ կրօնաւորած ժամանակ կոչուած է Մարիամ:

*Յամսեան յունիս Բ. վախճանեցաւ ի Քրիստոս Մարեմ Թագուհի քորք (քոյր) սոցա։*

*Յամսեան ապրիլի ԺԸ. փոխեցաւ ի Քրիստոս եղբայր սոցա Գրիգոր. որոյ ողորմեսցի Քրիստոս։*

*Աւետարան, Թ. 27 Նոր-Ջուղայի Ամենափրկիչ վանքի, գրուած Սկեւռայ Գր. Ապիրատի համար* 1195*ին։*

4. Հեթում Բ. *որդի Օշինի, սեբաստոս։ Ծնած է* 1150/1*ին, վախճանած ընդ. մէջ* 1212—1218 *տարիներուն։ Տակաւին մանկական հասակին պատանդ ուղարկուած էր Թորոս Իշխանի բերդը, փրկանաւորելու համար իր հայրը* (1151/2)։ *Թորոս կը հարսնացնէ իր դուստրը Փիլիպ՝ Հեթումին եւ կը վերադարձնէ Լամբրոն։ Հեթում չսիրեց Փիլիպը. երբ վախճանեցան Թորոս եւ Օշին, եւ ինքը տէր եղաւ Լամբրոնի, դարձուց իր խօսեցեալն հերանց. եւ կին առաւ Ա. Ա. որ ծնաւ իրեն.* 1. *Կոստանդին.* 2. *Օշին.* 3. *Աւիծ* (*Տամալիծ*), *որ կինն եղաւ Կոստանդին Մոզոն արքայահօր եւ պայլի։* 1201*ին Լեւոն Ա. խարկանօք դրաւեց անառիկ Լամբրոնը եւ Հեթում բանտարկուեցաւ. ապա կրօնաւորեցաւ Հեզի անունով։ Իր կենսագրութիւնը տուած եմ վերը, էջ* 116—130։

Սմբատ, *որ կոչուեցաւ* Ներսէս *եւ եղաւ արքեպիսկոպոս Տարսոնի։*

Ապիրատ *եւ* Շահինշահ *որդիք Օշինի, ինչպէս կը գրէ Ներսէս Լամբրոնացի, էին*

Ե. ՀԵԹՄԵԱՆՔ ԼԱՄԲՐՈՆԻ

1. Օշին Ա. Հայկամ

2. Հեթում Ա. — դուստր + Իշխան Պայլեանի

3. Օշին Բ. + Շահանդուխտ — Սմբատ — Վասակ

Սմբատ-Ներսէս — Ապիրատ — Շահինշահ — 4. Հեթում Բ. — Գրիգոր — Մարիամ — 5. Շուշան- Տաղիթա Թագուհի + Պագուրն — Ներսէս քհյ.

Օշին Գ. — 6. Կոստանդին + Սանփանէ — Ալիծ + Կոստանդին Թագաւորահայր — Ալիծ

9. Հեթում Գ. + Թեֆանօ — 12. Օշին Դ. + Ալեաց Մարաջախտ — 7. Կեռան + Հօփրի որդի Սմբատայ — Թեֆանօ

10. Կեռան Թագուհի Լևոն Բ.ի — 11. Ալիծ սենեշալէս — Մարիուն — Սմբատ — 8. Կոստանդին + Ալիթա դուստր Հեթմոյ Թլ. — Օշին — Զապէլ — Շահանդուխտ — Լևոն

Կոստանդին Բ — 13. Հեթում Դ. Մառաջախտ — Թեֆանօ

*«յարտաքին գաւառս տիրողք» (Յովսէփեան, Յիշ. 631)։ «Մեծանուն իշխանն Ապիրատ» 1195ին օրինակել տուած է Կոստանդին գրչին Աւետարան մը (Նոր Ջուղայ, Ամենափրկիչ, 27)։ Ճահինշահ ներկայ էր 1198ին Լեւոնի թագաւոր օծութեան հանդէսին. «Իշխանն Լամբրոնին Հեթում, Իշխանն Լուլւայ Ճահինշահն» (Սիսուան, 471)։ Լուլւա ամուր բերդը Տարօնի շրջակայքի մէջ էր (անդ, 114)։*

Գրիգոր *որդի Օշինի Բ., կրտսերն էր եղբայրներուն. եւ եղած է վարդապետ, 1190էն յառաջ (Հայապատում, 418)։ «Յամ-ւեանն ապրիլի ԺԸ. փոխեցաւ ի Քրիստոս եղբայր սոցա Գրիգոր, որում ողորմեսցի Քրիստոս» (Գիրք յիշատակի ննջեցելոց)։*

Մարիամ *դուստր Օշին Բ.ի։ Սամուէլ Սկեւռացի կը գրէ 1190ին. «Յիշեցէք... զմեծանունն Օշին հանդերձ երից զաւակաւն Մարիամաւ եւ կրտսեր որդեկաւն Գրիգորիւ, զի հանգիցեն ի գոգն Աբրահամու» (Հայապ. 418)։ Վախճանած է 1190էն յառաջ, յունիս 2ին։ Իր որդին է Ներսէս քահանայ։*

Ճուշան Թագուհի *ամուսնացած էր Սիր Պայռին գունդստաբլի հետ. որուն մասին կը գրէ Սմբատ պատմիչ յամի 1188. «Սպանաւ ամենագովելի ձիաւորն սիր Պայռին գունդստաբլն ի բերդն Պառկանայ, ուր գնացեալ էր, ու դադանայր զերկրն». (Լչ 105)։ Կիլիկիոյ պատմիչն կ'աւելցնէ. «Զկնի երկուց ամաց էառ զօրութեամբ զՊառկանայ՝ Լեւոն եւ*

եսպան զբերդաւագն · զՏփխլի ամիրա, որ սպանեալ էր զԳագիկն եւ որդի հարիւր» (Սիսուան, 331):

Շուշան Թագուհի կը յիշուի 1212ին Լամբրոնի մօտ Յոհանայ վանքը գրուած ձեռագրի մը մէջ. ուր յիշել կը խնդրուի «զստացողք սորա զհոգեւոր տիկնայք, զտիկին Շուշան Թագուհի եւ զբարի շառաւեղն իւր զտիկին Ալիծ եւ զամենայն ազգատոհմ իւրեանց.. նաեւ զբարի բողբոջ բոյս իւրեան զպարոն Մալին» (Յովսէփեան, Յիշատակարանք, 759):

Նոյն ձեռագրին մէջ ուրիշ յիշատակագրութիւն մը կայ. «Անմոռաց յիշեցէք զստացողս սորա զմատաղ զաւրավարն Մալին եւ զփոխեցեալն ի Քրիստոս զծնաւղս նոցա (նորա՞) եւ զամենայն նախնիս» (անդ):

Ուրիշ ձեռ. Աւետարան մը 1221էն ի Տարսոն գրուած է «ստացուածովք եւ ամենաբարի տիկնոջ Ալիծի» համար: Կը խնդրուի յիշել՝ «զնախաստացեալ տիկին Ալիծ եւ զբարի ծնաւղն իւր զՇուշան Թագուհի, զոր պահեսցէ Քրիստոս խաղաղութեամբ... ի մխիթարութիւն որոց եւ այլեաց եւ առաւել կրաւնաւորաց զատուց...: Զքրիստոսասէր եւ զքաջարին զհայր սորա՝ զՍիր Պաղտայն՝ զփոխեցեալն առ Քրիստոս յիշեսջիք ի Տէր. ընդ նմին եւ զքոյր եղբաւրուհայս՝ զտիկին Ակայ զփոխեալն առ Քրիստոս եւ զամենայն ազգատոհմն եւ զբարի շառաւեղն ի բարի ար-

մասոյն՝ զքրիստոսատուր պատանին զՍիր Մաւլին զզունդատայլ Աստուծոյ քաղաքին Անտիոքայ, զքուերորդի աստուածասէր անկ-նոջս յիշեսջիք» (Յով. 813—814):

Այս տեղ կը պատկանի Փլորենտոյ Լաւ-րենտեան Մատենադարանի Թ. 20 ձեռա-գրին յիշատակարանը, որուն գրիչն է Գէորգ.

«Յամի ՈՁԱ (1232) Թուականութեան Հայոց գրեցաւ այս իրիցաւրհնէից հրամանաւ եւ ծախիւք սրբազան եւ մեծազգի արքեպիս-կոպոսին տէր Յոհաննիսի, ի վայելումն ան-ձին իւրոյ սրբասիրի եւ ի յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց ննջեցելոց, եւս առաւել բա-րեպաշտ հաւրն իւրոյ Սիր Պաղտոյնի, որ ի տիս մանկութեան իւր հանգեաւ ի Քրիս-տոս... եւ զքրիստոսասէր ծնաւղն իւր զտի-կին Թեւհանու հանգերձ դստերբ իւրով Տամ Ակացլու յիշեսջիք ի Տէր: Եւ դարձեալ կրկին աղաչեմ յիշեսջիք եւ զաստուածասէր իշխանն զպարոն Վասիլ Մալխասեցին, որոյ յիշա-տակն աւրհնութեամբ եղիցի» (Յովսէփեան, Յիշատ. 899—900. առած եմ Հ. Գ. Գալէմ-քեարեանի անտիպ Ցուցակէն):

Տալիթայի մասին անդրադարձի տեղեկու-թիւն չունինք:

Թէ Շուշան Թագուհի եւ Թէ Տալիթա որբանալէ ետքը հետեւելով իրենց մօրը Շահանդուխտի օրինակին քաշուած են Լամբ-րոն եւ կրօնաւորած իրենց եղբօր Ներսէսի առաջնորդութեան տակ:

Սամուէլ Անեցի 1190/1ին յիշել կը

*խնդրէ Շահանդուխտը, Ներսէս Լամբրոնացւոյ մայրը, որ «այժմ կրօնաւորեալ ի ձեռաց որդւոյ իւրոյ՝ սուրբ հօրս՝ երկու դստերօքն Շուշանաւ եւ Տալիթայիւ, որք նորին ճգնոց շաւղացն հետեւին, զիմխիթարեցին ի կեանս գաւակաց իւրեանց եւ եղբարց» (Հայապատում*, 418):

*Շահանդուխտ կրօնաւորելու ժամանակ փոխած է իր անունը եւ կոչուած Մարիամ. Գիրքն յիշատակած ննջեցելոց արձանագրած է. «Յամսեան ապրիլի ԻԶ. հանգեաւ ի Քրիստոս մայր սոցին Մարիամ կրաւնաւոր ամենայն առաքինութեամբ զարդարեալ»:*

*Շուշան կենդանի էր տակաւին* 1212*ին: Անշուշտ ան ալ կրօնաւորութեան ժամանակ փոխած էր անունը: Թերեւս նոյնպէս Մա*րիամ *անուանուած: Իր քեռորդին Ներսէս քահանայ Գրիգոր Սկեւռացւոյ յօրինած Ներբողեանն ի Ներսէս Լամբրոնացի նամակով մը կը նուիրէ առ սիրելի «հարազատն իմ Մարիամ», վստահութեամբ թէ հաճելի պիտի ըլլայ այն իրեն: Ներբողեանը գրուած էր* 1204*ին: Որովհետեւ մայրն Շահանդուխտ-Մարիամ* 1195*էն յառաջ, իսկ անոր Մարիամ դուստրը, Ներսէս քահանայի մայրը,* 1190*էն յառաջ վախճանած էին, կը մնան Շուշան եւ Տալիթա: Վերջնոյս մահուան տարին ծանօթ չէ. բայց գիտենք որ* 1212*ին կենդանի էր Շուշան: Կարող էր Ներսէս իր մօրաքոյրն «սիրելի հարազատ իմ» կոչել:*

*Այս նամակը հրատարակուած է Սի-*

տուան, էջ 99—100 ծն.: Յովսէփեան Յիշատակարանք, 730:

Զ. Շուշանի ազգածառը:




Աւիծ (Տամափիծ) դուստր Հեթում Բ-ի, կին Կոստանդին Թագաւորահօր: Տես վերագոյն, Հեթմեանք Պապեռոնի:

Օշին Գ. որդի Հեթում Բ-ի: Ներսէս Լամբրոնացւոյ համար կ'օրհնակուին 1198ին Յովհաննէս Ոսկեբերանի Անդրիադականն ճառք. գրիչը կը յիշէ հոս Հեթում սեբաստոսի ծաղկեալ զաւակները՝ «զԱւշին անդրանիկն իւր եւ զԿոստանդին» (Յովսէփեան, Յիշատ. 631): Կը պատմէ Կիրակոս Գանձակեցի թէ Լեւոն Ա. Թագաւոր «խօսէր ընդ Հեթում բանս ախորժականս մտաց նորա. Կամք էին իմ առնել ընդ քեզ կապակցութիւն սիրոյ. եւ տալ զդուստր եղբօր իմոյ Ռուբենի՝ զՖիլիփան՝ ի կնութիւն որդւոյ քո երիցագունի՝ Օշնի. եւ Հեթում շնորհակալութեամբ ընկալաւ զբանն»: Հարսանիքը տեղի պիտի ունենար Տարսոն: Երբ Լամբրոնեցիք

*քաղաք իջան, Լեւոն «կալաւ զնոսա. եւ առաքեաց ճառ զՀամբրոնն առանց մարտի*[6]*»:* *Թէ ինչ եղաւ այնուհետեւ Օշինի բախտը, ծանօթ չէ:*

6. Կոստանդին Ա. որդի Հեթում Բ.ի տէր Լամբրոնի: *Թէեւ Կիրակոս Գանձակեցի կը գրէ թէ Լեւոն Ա. թագաւոր Լամբրոնը գրաւելէն ետքը «եդ ի նմա զմայրն իւր զաւիկնանց տիկին. եւ գրեաց նզովս ոչ եւս տալ զնա իշխանի ումեք, բայց միայն արքունի լիցի. զի հանապազ, ասէ, տեարք նորա ապստամբք են լեալ վասն ամրութեանն»: Բայց, կը պատմէ նոյն պատմագիրը, թէ Լեւոնի մահէն (1219) ետքը Կոստանդին թագաւորահայրը «ընդ իւր միաբանեալ զկաթողիկոսն Յովհաննէս եւ զայլ իշխանսն՝ թագաւորեցոյց զորդին իւր զՀեթում... կամեցաւ թիկունս օգնականութեան իւր առնել... զԿոստանդին համանուն իւր, զորդին Հեթմոյ (Լամբրոնացւոյ)՝ զաներն իւր. եւ տայ ի նա զԼամբրոնն՝ զնախնականն իւրեանց, եւ եդ զնա թագադիր որդւոյ իւրոյ: Իսկ նա յետ աւուրց ինչ ըստ հայրենի սովորութեան իւրեանց ապստամբեաց ի քուերորդւոյ իւրոյ յարքայէ Հեթմոյ: Եւ թէպէտ շատ ջանաց Կոստանդին հայր արքային եւ ինքն իսկ արքայ, ոչ կարաց ածել զնա ի հաւանութիւն հնազանդութեան. զի ձեռն ետ նա ի սուլտանն Հոռոմոց (1228). եւ այսպէս կայր նա*

---

[6] *Կիր. Գանձակեցի,* էջ 157 *եւ Սմբատ.* 113—114:

պատառմբ»։ Սուլտանը, որուն վրայ յեցած էր Կոստանդին, Թաթարներու յառաջխաղացութենէն վախնալով երբ փախուստի կը դիմէ, Հեթում կը նուաճէ Լամբրոնի շրջակայքը։ «Ապա յղեաց Կոստանդին դեսպանս առ արքայն խնդրել զհաշտութիւն եւ տալ զորդիս իւր արքային ի ծառայութիւն, եւ ինքն միալ ի բերդին։ Եւ արքայն ոչ կամեցաւ։ Երկիցս եւ երիցս յղեաց. իսկ արքայն եւ հայրն ոչ կամեցան»։ Կոստանդին կը դիմէ Իկոնիոնի սուլտանին, զորս առած կու գայ եւ կ՚աւերէ «զբազում տեղիս եւ գաւառս»։

Բայց կը յաջողի թագաւորը խորտակել Կոստանդինի ուժը. «եւ փախեաւ միայն պատառմբ իշխանն եւ սակաւք ընդ նմա. ոյպէս եօթն անգամ հարաւ ի նմանէ. ապա եմուտ յամրոցն իւր եւ ոչ իշխէր համարձակիլ յաջ կամ յահեակ» (էջ 157—158)։

Կոստանդինին մասին ունինք ցրիւ տեղեկութիւններ. Սամուէլ Անեցւոյ շարունակողը կը գրէ յամի 1216. «Ի սոյն ամի Քայքաուզ սուլտանն պաշարեաց զբերդ Կապանն եւ կալաւ զիշխանն Հայոց զԿոստանդին գունդստաբլն, որ կոչեցաւ աւագ պարոն, եւ զԿոստանդին զԼամբրոնին տիրոջ ադայն եւ զԿեռսակ» (էջ 147)։ Նոյնը կը յիշէ գրչագիր մը, գրուած ՈԿԵ (1216)ին ի Տարսոն. «յորում ժամանակի զաւրաժողով եղեալ անուրքէն ազգն Հագարու առ դղեկան որ Կապան կոչի. իսկ աստուածասէր թագաւորս

*մեր ժողովեալ զամենայն քրիստոնեայս որք ընդ իշխանութեամբ նորին էին, այլ եւ զռա-միկս քաղաքաց եւ դեղջկաց. իսկ եւ զկրաւ-նաւորս եւ զքահանայս՝ զայլ ի մի վայր ա-ղաչել զԱստուած...: Իսկ յանաւրէն զաւ-րացն զունդ հատեալ ապստամբեալ աւերէին զսահմանսն ուր եւ կարէին: Իսկ քրիստոսա-սէր արքայս մեր առաքեալ զքեռորդին իւր զԿոստանդին զունդստապլ զաւրաւք սակա-ւուք ընդդէմ առ ի չթողացուցանել զաւե-րումն սահմանաց մերոց: Զայն գիտացեալ անաւրինացն՝ զիմեցին ի վերա նոցա. եւ ա-յս զբազումս յանաւրինացն սրակոտորս ա-րարեալ կամեցան դառնալ անդրէն ի բանակս իւրեանց: Իսկ ապա գիտացեալ զայն անաւ-րէն ամիրապետին իւրեանց՝ առաքէ բազում զաւրս ի վերայ նոցա. եւ նոցա եկեալ զաղ-տագողի կալան զելս ճանապարհի զաւրացն որ ի մէջն էին եւ սուր եդեալ կոտորեցին զնոսա եւ զբազումս ձերբակալ արարեալ տարան ի գերութիւն յաշխարհ իւրեանց. կա-լան եւ զԿոստանդին զունդստապլ եւ զերկու իշխանս ընդ նմին՝ զԿեռսակ եւ զմիւս Կոս-տանդին զորդի Հեթմոյ սեւաստաւսի[1]»:* Ամիրապետն է ըստ Սմբատի Իկոնիոնի Ազր-տին Քայքաւուզ սուլտան. Սմբատ կը գրէ. Հայ բանակին սպարապետն էր Կոստանդին, որ պարտուեցաւ. «եւ ի տեղն առին ծառայ

[1] Աչքի առաջ ունիմ ձեռագրիս Յիշատակարանին յուսանկարուած երկու երեսները. չէ նշանակուած, թէ ուր կը գտնուի ձեռագիրը:

զպարոն Կոստանդին զորդին Հեթմոյ Լամբրոնին տիրոջն, որ էր իւր աներ, եւ զՎեստակ՝ զՄիկոյ տէրն, զԱզիլ զՕքսենց եւ այլ իշխանք եւ ձիաւորք» (էջ 118). Հմմտ. Նաեւ Միք. Աս. 511—513)։ Լեւոն Թագաւոր յաղթականին բերդեր զիջելով «չառ զիւր իշխանքն»։

Միքայէլ Ասորիի շարունակողը կը գրէ յամի 1224. «Փիլիպ թագաւորն Թորոսով Հօր իւրոյ (Պեմունդայ) կամեցաւ ըմբռնել զերկուս մեծամեծ իշխանսն՝ զպարոն Կոստանդին որ էր թագաւորահայր եւ զպարոն Կոստանդին Լամբրունին տէրն», բայց ձախողեցաւ դաւը (էջ 518, տպ. 1871)։

Հեթում Նղրեցի կը գրէ յամի 1245, թէ «Խիաթաունին սուլտանին զօրքն պաշարեցին զՏարսուս. որոց էին զօրագլուխք Շամսադին Ասպահանի սահիպն եւ Կոստընդին տէրն Լամբրունին» (Ժամանակագրութիւն. Հմմտ. նաեւ Հեթում Կոռիկոսցի, Ժամանակագրութիւն, 98, տպ. Սիւրմէեան)։ Սմբատ պատմիչ կը պատմէ նոյնը. Բայ Խորոմշահ սուլտան «առաջնորդութեամբ պարոն Կոստանդեայ Լամբրոնի տիրոջն՝ մտաւ ընդ Պապառոնին լեառն ի վայր ու այրեաց զամէնն». նոյնը կը կրկնուի 1246ին. երկու անգամ ալ թագաւորին կ՚ըլլայ յաղթութիւնը (էջ 122—123)։ Կիլիկիոյ ժամանակագիրն կը գրէ յամի 1250, թէ Կոստանդին «սպանաւ սրով» (Սիսուան, 85). իսկ Հեթում Կոռիկոսցի կ՚արձանագրէ. «ՈԽԹ (1250). ի յունիսի ԻԹ. կա-

տարեցաւ ի սրոյ պայն իմ տէրն Լամբրոնին» (Սիւրմէեան, էջ 98)։

Իշխանին գովութիւնը հիւսած է Յուսիկ գրիչ, որ օրինակած է 1237ին Լամբրոնի տիրոջն համար Գրիգոր Նարեկացւոյ Աղօթամատոյցը.

«Բարեպաշտ եւ աստուածասէր իշխանաց իշխանս Կոստ՛՛ սեբաստոս եւ թագադիր Հայոց, տէր անմատչելի դղեկին Լամբրոնի, ի բարի արմատոյ բարի շառաւիղ, որդի մեծազօր սեւաստոսին Հեթմոյ, որդւոյ Օշնին, որդւոյ Հեթմոյ, որդւոյ Օշնին, որք յաշխարհէն արեւելից եկեալ ընդ այլ ազատացն՝ ընդ բռամբ ածին զանառիկ բերդս Լամբրոն, եւ ժառանգեցուցին հարք որդւոց, եւ էհաս մինչեւ ի սա։ Որ եւ ըղձալի տենչմամբ փափագաւղ սա միշտ գրոց ընթերցման, եւ պայծառացուցիչ եկեղեցեաց եւ սրբոց մենաստանաց, որք ընդ ձեռամբ սորին հովուին, եւս առաւել փոյթ ունի բարեկարգութեան սոցա եւ շինման քան ի հողս աշխարհականս. որ եւ յայժ վայելչացոյց սպասուք սրբութեան ի պատիւ մեղաքաւիչ եւ կենդանարար բաշխման մարմնոյն տէրունեան, որ եւ միշտ տաչարի սիրով սրբութեան աղլաատուրէ առաւելեալ ի նոյն, նաեւ աստուածաշնորհ իմաստիցն որ ի սմա գերազանցէ ամենայնիւ քան զբարեպաշտ նախնիսն իւր եւ զհաւ, որ եւ յայժ վայելչացոյց եւ ամրացոյց զաստուածապահ ամրոցս Լամբրոն, պարսպաւք եւ գեղեցիկ բրճաւք,

սիրայլի եւ գեղեցիկ շինմամբ տաճարաց եւ սրբաշէն յարկաց, ի վայելս իւր եւ աստուածասուր զաւակացն, եւ յիշատակ բարեաց ազգաց յազգս. եւ միայնացեալ սա ի ծնաւղաց եւ յեղբարց եւ քերց եւ ի բարեպաշտուհի զուգակցէն, պահպանեալ միշտ վերին աջոյն զաւրութեամբ, նախախնամութեամբ եւ աւգնականութեամբ մարդասիրին բնակէ յամրոցս իբրեւ հաւ զձագս ընդ թեւաւք հնդեկին զաւակաւք, սփոփանաւք Հոգւոյն սրբոյ. զի եւ որք ունէին զթոյնս չարութեանն թշնամիք մերձակայք դրացմոռաստ երախտիան, զոր ի նմանէ առ նոսա՝ մոռացան. եւ յայտնի երեւեցուցին զմթերեալն ի վաղուց հետէ, որով եւ յետս նհանջեալ ամաւթալից դարձան, յափշտակեցին զառ եւ զաւար գեղից եւ ագարակաց, որ եւ աւարին ոչ գոյ համար:

Արդ բարեպաշտս այս որպէս ի վերոյ յիշատակեցաք, զրոց ընթերցման փափագեալ՝ սիրեաց եւ զայս գիր սուրբ, եւ հրամայեաց ինձ իւրոյ սեպհական ծառայի զաւակի, անպիտան եւ յետին քահանայի, թարմատար եւ փցուն գրչի Յուսկան, գրել զսա լայն եւ ընդարձակ գրով, որպէս զի դիւրընթերց լիցի իւր եւ բազմաց. եւ իմ ըստ կարողութեան հնազանդ գոլով սմին յաղագս հայրենի եւ բնական սիրոյն որ առ սա, եւ բազում բարերարութիւն գտեալ ի սմանէ, իբրեւ հայր ի վերայ որդւոյ, ըստ ըղձալի տենչմանն եռափափաք աստուածսիրու-

թեանն, սկսայ եւ կատարեցի ողորմութեամբն Քրիստոսի, ի թուականիս Հայոց ՈՁԶ (1237), ի դիտապետութեան տեառն Կոստ՟ եւ ի թագաւորութեան քաջորդւոյ սորին բարեպաշտ թագաւորիս Հեթմոյ, ի սուրբ ուխտս Սկեւռայ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս եւ Մար իւրոյ Աստուածածնին եւ կենսունակ եւ քրիստոսաւանեա սուրբ Նշանիս:

Արդ զամենեսեան աղաչեմ... զմերոյ յիշատակեալ բարեպաշտ եւ աստուածասէր իշխանաց իշխանս մեծապատիւ սրբասուրս յիշեսջիք ի Քրիստոս, հանդերձ աստուածապարգեւ ողջայաւք իւրովք, որ անուամբ յորջորջին Հեթում եւ Աւշին. եւ զատերայ՝ Կեռանին, Թէֆանոյի եւ Շահանդուխտին. որում տացէ Տէր Յիսուս ժամանակս երկայնս եւ բազմաւրեայք լիցին ի վերայ երկրի անխռով եւ անսասան ի փորձութեանց հոգւոյ եւ մարմնոյ բազում խաղաղութեամբ եւ անսպառ ուրախութեամբ վայելեալք (Հ. Ն. Ակինեան, Յուցակ Ձեռագրաց Պր. ժար Մաթեւոսեանի ի Գահիրէ, Թ. 9, Թղ. 357ա—360բ. անտիպ):

Կոստանդինի իշխանութեան առաջին տարիներուն Սկեւռայի պարծանքն էր Գրիգոր Սկեւռացի. որ գրած է «ի Խորհուրդ մեծի աւուր Ուրբաթուն... ի խնդրոյ աստուածասէր իշխանին Կոստանդեայ Լամբրոնացւոյ» (Վիեննա, Թ. 166, 1ա) եւ ի Ս. Պատեքն. սրբոյն վերջաւորութեան կ՚ըսուի (համառօտէն ժամանակակից Յակոբ գրիչէն).

«Եւ որ բանիս եղեւ պատճառ
եւ զըղձալիս իր էառ.
Զիշխանացս մեր իշխան,
զԹագադիրս արքունական.
ԶԿոստանդին տէր Լամբրոնի,
եւ բարեպաշտ Սեւաստոսի:
Հարսն մաքուր եւ սուրբ դշխոյ,
փառն սորա աղերս մատո.
Զի ընդ երկայնս զսա տացէ,
տամբ եւ բնաւ հնազանդելովք...»:

(Վիեննա 166, 85ա): Նոյն գրիչը Թղ. 234բ կը գրէ. «Հայցեցէք յաստուածպաշտ Տեառնէ յաղագս մեծապատիւ իշխանաց իշխողիս մերոյ Կոստանդեայ եւ բարեշաւղաց որդւոց իւրոց Հեթմոյ եւ Աւշնի, որ է տէր աստուածապահ ղղեկկիս Լամբրաւնի» (Յովս. 1012): Թ. 166 ձեռագրիս գրութեան տարին եւ տեղը չէ կրցած ճշդել ցուցակագիրն Հ. Յ. Տաշեան, նոյնպէս Գ. Յովսէփեան (Յիշատ., էջ 1012): Տեղւոյն համար բաւական էր «տէր աստուածապահ ղղեկկիս Լամբրաւնի». այսինքն Սկեւռայի վանքը. տարին է հաւանօրէն 1229էն քիչ յառաջ կամ վերջը. յամենայն դէպս 1241էն յառաջ, երբ Յովսէփ Դրագարկ կը գտնուէր: Յովսէփ գրչէն ունինք Աւետարան մը գրուած ՈՀԸ (1229)ին ի Սկեւռա «յիշխանութեան աստուածապահ ղղեկկիս Լամբրոնի՝ Կոստանդեայ» (Համամճեան, Ցուց. ձեռագրաց Իկոնիոնի. անտիպ):

Կ'երեւայ այս տեղիքներէն, թէ Կոստան-

*դին Լեւոն Թագաւորի կենդանութեան առ-ղէն կարգուած էր տէր Լամբրոնի եւ էր նիզակակից անոր բանակին։ Այս Կոստանդին արքայահայր, որուն աներորդին էր Կոստանդին, պատիւն տուած էր իրեն իր որդւոյն Հեթումի* թագադիրն *ըլլալու, որուն համար հպարտ էր Լամբրոնի տէրը (Հմմտ. Սիսուան, 84)։*

*Կոստանդինի կինն էր* Ստեֆանէ, *յայտնի չէ, թէ որ իշխանական տոհմէ։ Ունեցաւ․* 1․ *Հեթում Գ․ տէր Լամբրոնի․* 2․ *Օշին մարաջախտ․* 3․ *Կեռան (կինը Ծօֆրիի) եւ* 4․ *Շահանդուխտ։*

7․ Կեռան *դուստր Կոստանդինի Բ․ կին Ծօֆրիի Սարւանդիքարի տիրոջ։ Սիմէոն գրիչ ՉԸ* (1239) *թուականին գրած է Աւետարան մը Արքայակաղնի վանքին մէջ «յիշխանութեան իշխանաց իշխանին մերոյ Ծօֆրէ եւ որդւոցն Կոստանդի, Սմբատի եւ Աւշնի» եւ կը խնդրէ յիշել «զտիկինն Կեռան... եւ զհանգուցեալ տիկինն (Ծօֆրիի) Ալիծ (հաւանօրէն առաջին կինը) եւ զեղբայրն (Կեռանի) զՀեթումն» (Թորոս Աղբար, Բ․,* 437)։

*Ուրիշ գրիչ մը, մեծանունն Թորոս Ռոսլին 1265ին նկարազարդած է Աւետարան մը «հրամանաւ եւ ծախիւք մեծազգի եւ բարեպաշտուհի տիկնոջն տիկին Կեռանի, որ է ի շառաւիղէ սուրբ հայրապետացն Հայոց․ արդարեւ ողջախոհ եւ երկիւղած յԱստուծոյ եւ դուստր պարոն Կոստանդեայ տեառն Լամ-*

բրունին, ածեալ ի կնութիւն չքնաղաշուք պարոն Ճօֆրէ տեառն Քարին Սարուանդայի։ Որ եւ յետ փոխելոյ նորա յաստեացս († 1261), սա նուէր յայրութեան՝ պարապեալ աղաւթից եւ պահոց... լեալ կրաւնաւոր... յանունն փոխելով Աննա զնա կոչէին» (Երուսաղէմ, Թ. 1956)։

1274ին Օշին իշխան Աւետարան մը գրել կու տար Կոստանդ գրչին. որուն յիշատակագիրը յիշելով Օշինի քոյրն Կեռան եւ այլ պարագաները կ'աւելցնէ. «Նաեւ յիշեսջիք զհանգուցեալ փեսայն սոյն իշխանին՝ զքաջաւորն Ճօֆրի, զտէր աստուածաչէն զղեկին Սարվանդայ» (Հանդ. Ամս. 1898, էջ 246)։

Ճօֆրի Պայլեոնի Հեթմեաններէն է, որդի Սմբատի, եղբօր Կոստանդին Մօզօն արքայահօր։ Սմբատ Լեւոն Ա. թագաւորի օրով կարգուած էր իշխան Սարուանդայ քարաբերդին. իրեն յաջորդեց Ճօֆրի։ Լեւոն Ա. թագաւորի վախճանելէն ետքը երբ ամուսնացուցին անոր Զապէլ դուստրը Ֆիլիպի հետ եւ Ֆիլիպ օծուեցաւ Տարսոնի մէջ թագաւոր, «յաւուր միում, մինչ կային ի Թիլն բերդ, Ճօֆրի տէրն Սարվանդի քարին եւ պռօքսիմոսն Տրդատ կալան զնա եւ անտի տարեալ եդին ի բանտի յանառիկն Բարձրբերդ. եւ անդ վախճանեցաւ» (Պատմ. Ռուբինեանց. Սամ. Անեցի, էջ 210/11)։ Կ'ըսուի թէ Ճօֆրիի միտքն էր կնութեան առնել Լեւոնի այրիացեալ կինն Սիպիլ. բայց թոյլ չէր տուած իր հօրեղ-

թայրն Կոստանդին պայլ (Սիսուան, 209)։ Ճօֆրէ վախճանեցաւ 1261ի դեկտեմբերին․ Հեթում պատմիչ կը գրէ իր Համառօտ Ժամանակագրութեան մէջ․ «Զժ... ի նոյն ամի Հեթում թագաւորն Հայոց փեսայացոյց զԿոստանդին զորդի տեառն Սարվանդի քարին ի դուստրն իւր յՌիթայն։ Եւ ի նոյն ամի մեռաւ Ճաւֆրի տէրն Սարվանդի քարին» (հրա. Սիւրմէեան, էջ 98)։

Ճօֆրէ նախ ամուսնացած էր տիկին Ալիծի հետ եւ ունեցած անկէ երեք զաւակ․ 1․ Կոստանդին․ 2․ Սմբատ․ եւ 3․ Օշին։ Երկրորդ անգամ ամուսնացաւ Կոստանդին Լամբրոնացւոյ դստեր հետ, որ կը կոչուէր Կեռան։

8․ Կոստանդին որդի Ճօֆրէի, տէր Սարուանդի քարին։ Կենդանի էր տակաւին հայրը, երբ Կոստանդին, 1261ին, փեսայացաւ արքունի տան, կին առնելով Հեթում Ա․ի դուստրը Ռիթա․ «Ռիթայն եղեւ կին Կոստանդին Սարվանտիքարին տիրոջն» (Պատմ․ Ռուբին․ 211)։ Նոյն տարւոյն վերջը վախճանեցաւ Ճօֆրէ եւ Սարուանդի քարն ժառանգեց Կոստանդին։ 1265ին գրուած Աւետարանին գրիչը կը նուիրէ իր յիշատակին տողերս․ «Պարոն Կոստանդին երկիւղին Աստուծոյ զարդարեալ եւ արժանապատուութեան թագաւորին եւ փեսայ Հեթմոյ սուրբ արքային ամենայն Հայոց եւ պարկեշտազեղ եւ սրբահոգի տիկինն իւր տիկին Ռիթայն, դուստր սուրբ արքային․ եւ երկոքին հարազատ եղ-

քարքն իւր պարոն Սմբատ եւ պարոն Աւշին» (Երուսաղէմ, Թ. 1956)։ Ուրիշ մը կը մաղթէ. «Շնորհեա մեզ, Տէր, ընդ երկար աւուրս զԿոստանդին բարեպաշտ իշխանն Թագադիր Հայոց Կիլիկեցւոց նահանգիս եւ տէր Սարուանդիքարի» (Էջմիածին, Թ. 2629)։ Եւ 1278ին Պաւղոս գրիչ կ'օրինակէ «Յոհնանց Ս. Կարապետի» վանքին համար Աւետարան մը. «ի վերադիտողութեան այսմ անապատի քրիստոսասէր եւ բարեպաշտ իշխանաց իշխանին պարոն Կոստանդիա տեառն Սարվանդի քարին», որ «էր հեզ ըստ խրատուն, գթած եւ ողորմած... շնորհեսցէ զսա մեզ Տէր ընդ երկայն աւուրս հանդերձ պայծառացեալ հարազատաւքն իւրովք պարոն Սմբատիւ եւ պարոն Աւշնիւ փիթթեալ մանկամբք եւ ծաղկեալ արգասիւք» (Լալայեանց, Ցուց. Վասպուր., էջ 99—102)։

Դաշնագիր մը 1271էն Կոստանդինի ստորագրութեամբ տես Սիսուան, էջ 210 հանդերձ նմանահանութեամբ։

Սմբատի մասին չկայ որ եւ է տեղեկութիւն։

Օշին. իր մասին կը գրէ Ալիշան (Սիսուան, 209). «Կոստանդնի յաջորդեաց եղբայր իւր Օշին, թերեւս յետ միւսոյ եղբօր իւրոյ Սմբատայ, որոց ոչ յիշին պայազատք, բայց դուստր մի Օշնի՝ Զապէլ անուն, որ տուաւ ի կնութիւն Թորոսի որդւոյ Կիրայ Իպլենեան ազնուական Փռանկի եւ Մարեմայ դստեր արքային Հեթմոյ»։

9. Հեթում Գ. որդի Կոստանդինի Ա. տէր Լամբրոնի: Ամուսին էր Թեւանու: Ժամանակակիցները կը ներկայացնեն զինքը քաղցրաբարոյ. վախճանած վաղաժամ, իբրեւ «արեամբ նահատակ վասն հաւատոց», այս ինքն ինկած ընդդէմ այլազգեաց մղուած պատերազմի մէջ, հաւանօրէն 1266ին:

Իր մահէն ետքը Թեւանու կ'այրիանայ եւ կը կրօնաւորի. ինչպէս կ'իմանանք 1274ին գրուած Յիշատակարանէն. «Զստացող սորա (ժզլանք Վարդան Արեւելցւոյ) զմեծապատիւ բարեպաշտ մայրն Կեռան Թագուհէ (իմացիր՝ Թագուհւոյ)՝ Թեւանու... յիշեսջիք... զվերոյ գրեալն զհօգեւոր մայրն ամենայն կրօնաւորաց եւ զաստուածատուր դստերքն իւր...: Զոր ունելով մեծապարծ եւ բարեպաշտ կրօնաւորն Թեւանու... հրամայեաց գրել ի յիշատակ իւր» (Պարիս, Ազգ. Մատ. Թ. 42. առկէ Վենետիկ Թ. 294. Սարգիսեան, Ցուցակ, Բ., 1068): Օշին Թագաւորի Յայսմաւուրքի մէջ արձանագրուած է իբրեւ մահուան օր. «Յունիս ԻԸ. յայսմ աւուր վախճանեցաւ տիկնայ տիկին (Թեւանու) Կեռանն Թագուհէ (Թագուհւոյ) մայրն» (Հայապատում, 544):

Իշխանուհի Թեւանու ծնաւ Հեթումի երեք դուստր. 1. Կեռան Թագուհի. 2. Ալիծ եւ Մարիուն:

10. Կեռան թագուհի, դուստր Հեթում Գ.ի տեառն Լամբրոնի: Ռուբինեանց Պատմութիւնը (Սամ. Անեցի, 212) յիշելով

*Լեւոն Բ.ի թագաւոր օծուիլը, կը գրէ. «Սա էառ կին զԿեռան դուստր Հեթմոյ տեառն Լամբրոնին եւ ծնաւ նմա որդիք է... եւ դստերս Գ.»: Իսկ Հեթում Կոռիկոսի տէրը կը նշանակէ իր համառօտ ժամանակագրութեան մէջ, յամին 1262. «ՉԺԱ. ...վախճանեցաւ թագաւորահայրն Հայոց Կոստանդին աւագ պարոնն: ...Ի սոյն ամի կարգուեցաւ պարոն թագաւորորդին Հայոց Լեւոն (ընդ Կեռանի). որ եւ ի նմին ժամու խառնեցաւ Լամբրուն ընդ թագաւորութիւնն Հայոց: Եւ ի սոյն ամի ծնաւ (ի Կեռան թագուհւոյն) անդրանիկ դուստրն Լեւոնի թագաւորին* Զապլունն»: *Հեթում մի առ մի նշանակած է յաջորդ ծնունդներն ալ, որոնք են. Հե*թում (1265), Ֆիմի (1266), Սիպիլ (Ա.) (1269), Թորոս (1270), Ռուբէն (1272), Զապլուն (1274), Սմբատ *եւ* Սիպիլ (*Բ.*) *խեղեփք* (1276), Կոստանդին (1277), Ռիթա *եւ* Թիֆանօ *խեղեփք* (1278), Ներսէս (1279), Օշին *եւ* Ալինախ *խեղեփք* (1283). *որոնցմէ ոմանք վաղամեռիկ եղած են:*

*Կեռան* 1272*ին սուացողն եղած է Երուսաղէմի Թ.* 2563 *Աւետարանին* (*Ցուցակաթ, էջ* 204): *Թղ.* 380*ա Լեւոն Բ. թագաւորի, Կեռան թագուհւոյ եւ զաւակներու նկարը: Իսկ* 1283*ին ստացած է Թագուհին Աւետարան մը, զոր օրինակած է Ստեփանոս քահանայ Սկեւռայի մէջ. հոս կը գրէ գրիչը. «Գերապատուեալս իշխանութեամբ ի բարի արմատոց մեծափառ թագուհին Հայոց Կե–*

ւան դուստր Իշխանաց Իշխանին Հեթում սե-
բաստուսի, որոյ զերկիւղն աստուածային
յինքն ամփոփեալ զգլուխ եւ զսկիզբն ամե-
նայն բարեգործութեան իւրոյ խորհուրդ
բարի ի միտ արկեալ եւ գրել զքառավտակ
սուրբ Աւետարանս ի յիշատակ հոգւոյ իւրոյ եւ
ծնողաց իւրոց եւ բնաւ զարմից, կենդանեաց
եւ ննջեցելոց եւ ի լուսաւորութիւն մանկանց
նորածնելոց նոր Սիոնի։ Արդ... յիշեցէք
զստացաւղ սորին զբարեպաշտ Թագուհին Կե-
ռան հանդերձ սուրբ Թագաւորաւն Լեւոնիւ.
եւ զծնաւղս իւրեանց եւ զդեռաբոյս ծիրա-
նածին մանկունս նոցա...։ Յորում ամի եւ
բարեպաշտ անդրանիկ որդին արքայիս մերոյ
պարոն Հեթում զձիաւորութեան աստիճան
ընկալաւ. եւ այժմ տիրէ աստուածապահ
դղեկիս եւ այլ շուրջակայ գաւառացս» (Աւե-
տարան Գանձակի Ս. Յովհաննէս եկեղեցւոյ,
հրտ. Քաջբերունի, Արձագանք 1886, էջ 278—
279. եւ Բարխուդարեանց, Արցախ, 39—40։
Արտագրութիւն մը՝ Երեւան, Թ. 947, Թղ.
96ա—97բ. Հայաստանում, 482—483)։

Յիշատակագիր մը 1285ին կը գրէ.

«Յիշեցէք եւ զամենաբարեգործ եւ զքրիս-
տոսասէր դշխոյ արքայիս մերոյ (Լեւոնի Բ.)
զօրհնեալն ի կանայս զԹագուհին զԿիր Ան-
նայ, որ մայրաբար խնամօք զբոլոր եկեղեց-
ւոյ որդիս յանձանձէր եւ զհայրական այցա-
նութիւն ամենայն աղքատաց յառատաձիր
տուրս զուարթամիտ ողորմածութեամբ լնոյր։
Իբրեւ զնորատունկ ձիթենի ծաղկեալ լուսա-

ւոր գործովք եւ բարեբայս ծննդովք կատարեալ ի սակաւուն զերկայն ժամանակաց վաստակ եւ զարդիւնս ելից. եւ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, յորժամ արքայ Նորին ազգս մեր՝ ճանապարհորդեալ էր յԱրեւելս ի դուռն խանին Արղունի» (Սամ. Անեցի, Յաւել., էջ 242. նոյնը՝ Վիեննայի 78 (Ցուց. 333), Թ. 617, 83ա—բ. մասեր՝ Թ. 382, Թղ. 177բ. տես Ցուցակ, էջ 834—835 եւն):

Օշին Թագաւորի համար գրուած Յայսմաւուրքի մէջ օգոստոս Թ. արձանագրուած է. «Յայսմ աւուր ✠ Թագուհին Հայոց Կեռան ի մեծ Թուին Հայոց ՉԼԴ յօգոստոս Թ. (Հայապատում, էջ 544—545):

Նոյնը կը հաստատէ Օշին Թագաւոր. «ՉԼԴ. փոխեցաւ ի Քրիստոս ամենազովելին հոգւով եւ գեղեցիկն տեսով առաքինի մայրն իմ Կեռան Թագուհին Հայոց յաղուեստոսի ի Թ» (տպ. յաղուեստսի ԻԹ): Այսպէս արձանագրուած է Հեթում Կոռիկոսեցւոյ համառօտ ժամանակագրութեան մէջ, Օշին Թագաւորի համար գրուած ժամագիրքի մէջ, հրտ. Միքայէլեան, էջ 100:

Ըստ այսմ պէտք է ուղղել Միսուանի 484 եւ 519 էջերը:

11. Ալիծ դուստր Հեթում Գ.ի, սինէջալեան եղաւ Կիպրոսի, այսինքն ամուսինը Փիլիպպոս Իպլինեանի, որ սեննեկալն էր Թագաւորութեանն Կիպրոսի (Միսուան, 85). Սանփանոս Գոյներիցանց 1310ին ի Կիպրոս

*գրած է Գործք Առաքելոց մը «Հրամանաւ աստուածասէր եւ բարեպաշտ պարոնին տիկին Ալիծին, մօրաքոյր Թագաւորացն Հայոց» եւ Աւետարան մը* 1312*ին՝ «ի հրամայական խնդրոյ աստուածասէր եւ բարեպաշտուհի պարոնին տիկին Ալիծի սինէջալէսի Կիպրոսի, որ էր դուստր պարոն Հեթմոյ, որ տէր էր Լամբրունին»: Կ'աւելցնէ գրիչը՝ «Արդ վերոյգրեալ բարեպաշտուհի պր՛՛ բազում ամս խնամարկեաց զիս բազում եւ մեծ գթով, գրեթէ որպէս որդեսէր ծնաւղ զանդրանիկ իւր, այնպէս գթաց ի նուաստս եւ յանարժանս» (Խաչիկեան, ԺԴ. դարի հայերէն ձեռագրերի Յիշատակարաններ, Երեւան, էջ* 68)*: Կը յիշուի նաեւ* 1316*ին Սմբատ գրչէ, որ Սաղմոսարան մը գրած է ի Լեւքոսիա «ի թագաւորութեանս Կիպրոսի ու Հէուէ... որ եւ կանգնեցին զգեղեցիկ եւ զպանծալի տաճարն ի քաղաքն Մաղասամ (կարդա՛ Մաղուսա)...: Աղաչեմ յիշել ի Քրիստոս զՏիկնայեաց տիկինն, զսինէջալէս աստուածապահ կղզոյս Կիպրոսի եւ զծնողս իւր» (անդ, էջ* 123)*:*

Մարիուն *դուստր Հեթում Գ.ի: Օշին թագաւորի Յայսմաւուրքի մէջ իբրեւ յիշատակ ննջեցելոց գրուած է. «Դեկտ. Բ. Յայսմ աւուր տիկին Զիմի կրօնաւորն, քոյրն Լեւոն (Բ.) թագաւորի եւ տիկին Մարիունն քոյրն Կեւոն թագուհէ» (Թագուհեաց: Հայապատում,* 545)*: Իր մասին աւելի տեղեկութիւն չունինք:*

12. Օշին Դ. *որդի Կոստանդին Լամբրոնի տիրոջ, մարաջախտ։ Իր ամուսինն է Ակաց, որմէ ունեցաւ.* 1. Կոստանդին. 2. Հեթում *եւ դուստր մը՝* Թեփանօ։

*Սմբատ պատմիչ (էջ 137) ԺԳ. դարու հայ մարաջախտներու թուին մէջ կը յիշէ. «Պարոն Օշին Լամբրոնացին, Մանիշոյ տէրն, պարոն Հեթում իւր որդին»։ Իսկ Տարեգրքին մէջ արձանագրած էր (ընդ մէջ* 1293—1297 *տարիներուն). «Եւ մեռաւ պարոն Օշին մարաջախտն։ Եւ կարգեցին զԻթայն (դուստրն Լեւոն Բ.ի) եւ տուին թագաւորութեան տիրոջն» (էջ* 137)*։ Նոյն ձեւով կը կրկնուի տեղիքս Պրուսայի Ենիճէ գիւղի* 1296*ին աւարտած Յայսմաւուրքի լուսանցքին. «Յայսմ ամի հանգեաւ աստուածասէր եւ բարեպաշտ իշխանն պարոն Աւշին մարաջախտն Հայոց։ Յայսմ ամի տարան զթագաւորին Բ. դուստրն կառաւք եւ յէծելաւք ի Կոստանդինուպաւլիս» (Մանկունի, Յիշատակարանք. անտիպ)։ Եւ Հեթումի Ժամանակագրութեան մէջ. «ՉԽԳ (եւ ՉԽԴ). «Եւ ի նոյն ամի մեռաւ մարաջախտն Հայոց պարոն Աւշին, որդին պարոն Կոստանդեայ Լամբրունին տիրոջն։ Եւ ի սոյն կարգեաց (Հեթում Բ. թագ.) դքոյր իւր զԻւիթայն. եւ եղեւ ըմբրուրէս ամենայն Կոստանդինուպաւլսի» (Հրատ. Սիւրմէեան,* 100)*։ Ըստ այսմ Օշինի մահուան տարին է* 1294/5*։ Իւիթա թագուհի ամուսինը Կ. Պոլսոյ Միքայէլ Թ. աթոռակից կայսեր* (1295—1320)։

*Իր մարաջախտութեան տարիներն են* 1274—1295 ։

*Կոստանդին գրիչ ի Սիս* 1274*ին գրած է նկարազարդ Աւետարան մը․ զոր յանձնարարած է «խոհեմն ի խորհուրդ եւ ջերմն ի բարեպաշտութեան, յաղթողն ի ճակատս, հարազատն յիշխանութեան մեծ զաւրավարն Հայոց Աշխին, որդի մեծ իշխանաց իշխանին Կոստանդեայ տեառն Լամբրոնի»։ Կը խընդրուի յիշել «զբարեպաշտ մարաջախտն Հայոց Աշխին․․․ եւ զմերձաւորս պարոնին Աշնի․․․ նախ զշրջափակեալն զնովիմբ որպէս զնորատունկս ձիթենոյ զաստուածատուր եւ զառոգապտուղ զաւակսն, զկորովանիզակ եւ զքաջազաւր իշխանն իշխանաց եւ զաւարթաբարոյն եւ զգեղանձնեայն Կոստանդին, եւ զգեռաբոյս պատանին Հեթում եւ զհամեստ դուստրն Թէֆանու, մանաւանդ զնմանն առաքինութեան Սառայի՝ զամուսին բարեպաշտ իշխանին Աշնի զտիկինն Ակաց»* (*Հանդ․ Ամս․* 1898, *էջ* 244—247) ։ *Կը յիշուի նաեւ «մեծ իշխանն Հեթում Զաւտկանց, անդեկնոսն (յն․ սինդիկոս, փաստաբան) նոյնոյ իշխանին»*։

Կոստանդին *Բ․ի մասին տեղեկութիւն չունինք*։

13․ Հեթում Դ․ *որդի Օշին մարաջախտի, մարաջախտ։ Կը յիշուի* 1274*ին իբրեւ «դեռաբոյս պատանի»։* 1295*ին, երբ կը վախճանի հայրն Օշին, կը կարգուի մարաջախտ եւ կը ժառանգէ Մանիշոյ բերդին տէրու-*

թիւնը (Սմբատ, 137)։ 1307ին, Սիս գումարուած ժողովին ներկայ էր «Սմբատ մարաջախտ, տէրն Ասկուռայ» (Պալճեան, Պատմութիւն, էջ 276), ուսկից կրնանք հետեւցնել, թէ Հեթում վախճանած է այս թուականէն յառաջ։

Հ. Ղ. Ալիշան (Սիսուան, էջ 371) կը գրէ թէ Հեթումիս կինն էր Ֆիմի, Սիդոնի տիրոջ Գալիանի դուստրը եւ Ա. Հեթում թագաւորի դստեր Ֆիմիի թոռը։

Սիսուանի հեղինակը կը համարի դարձեալ, թէ Հեթում Դ.ի յաջորդած է «ի մարաջախտութեան՝ եղբայր իւր Սմբատ, տէր Պինակին եւ Ասկուռոյ (1307ին) եւ մեռած յամի 1316 (էջ 85, 485)։ Ալիշանի աղբիւրներն են հոս Սմբատ (էջ 137) եւ Սիսի եւ Ատանայի ժողովներու գործերը (Պալճեան, Պատմութիւն, էջ 276 եւ 297), որոնք թոյլ չեն տար սակայն նման եզրակացութեան յանգիլ։



# ՅԱՆԿ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ

# ՈՒՂՂԵԼԻՔ

| Էջ | տ. | | Կարդա՛ |
|---|---|---|---|
| 1 | | Կղեմես | Կղեմէս |
| 117, | 15 | աղջկան։ | աղջկան, Ռիթայի (Սամ. Անեցի 117)։ |
| 421, | 4 | Աւիծ | Ալիծ |
| 432, | 17 | Փիլիպը | Ռիլթան |
| 435, | 2 | Մաւլին | Մանո(ւ)էլ |
| 446, | 13 | Շահանդուխտ. | յաւե՛լ 5. Թէփանօ։ |
| 446, | 14 | Կոստանդին Բ. | Կոստանդին |